ԻԸ

305բ Զստացաւղ սորա յիշեցէք ի տէր՝ զԿիրակոսն, որ ստացաւ զսա յիշատակ իւր...

ԻԹ

310բ Ո՛վ սուրբ ընթերցողք և հաւատացեալ ունկնդիրք, յիշեցէք ի Քրիստոս զստացաւղ ճառիս՝ [զգանկրար Սարգիսն, և զիւր ծնողքն...], և զապիրատ գրիչս...։

Լ

316բ Քրիստոս աստուած,... Թող զյանցանս զստացաւղի ճառիս զՀայրապետ քահանայի և զիւր ծնողացն...։

ԼԱ

324ա Քրիստոս աստուած ընդ սրբոյն Յովսեփայ ողորմեա և ընկալ զհոգի ստացողի ճառիս զՄարգարէ ջուլհակին, և զիւր ծնողացն, և զգրողիս, և զկարդացողիս, և որք լսեն սիրով։ Եղիցին աւրհնեալք նաև զոգի եղբաւր Մարգարէին՝ զԱւետիք ջուլհակին, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս՝ յառաջ Գ. (3), ամաւ, և ետ զինս գրոցս յիշատակի, Թող նմա տէր աստուած զյանցանս նորա։

ԼԲ

326բ Զստացաւղ ճառիս՝ զպատուելի [ծերն զԱմպետ կտաւագործն, իւր ծնողաւքն] յիշեցէք ի տէր, ո՛վ սուրբ ընթերցողք, և զգրողս...։

ԼԳ

327բ Զստացաւղ ճառիս [զՅովաննէսն և զբարի ամուսինն իւր՝ զԳոզն] յիշեցէք ի Քրիստոս...։

ԼԴ

333բ Սուրբ յարութեանդ քո, Քրիստոս աստուած, արժանի արա յարութեան կենաց զստացաւղ ճառիս [զՃաշիկ երէցն, ծնաւղաւքն], և զգրողս...։

ԼԵ

335ա Ո՛վ, աստուածասէր ընթերցողք և ունկնդիրք այսմ հոգևոր պատմութեանս, յիշեցէք ի սուրբ աղաւթս զստացաւղ ճառիս զնոն Կիրակոսն և զիւր ծնողսն...։

ԼԶ

340ա Զստացաւղ սուրբ ճառիս՝ զՇահն յիշեցէք ի Քրիստոս, և զԿոստանդ քահանայ, որ փոխեցաւ ի կենացս առ Քրիստոս՝ յոյսն ամենեցուն, և զմեղաւոր հոգս՝ զՆատեր գրիչս...։

ԼԷ

344բ Հայր ամենակալ...մաքրազարդեա զհոգի և զմարմին ստացողի ճառիս զՄեծպարոնն և զծնողաց նորա...։

ԼԸ

340ա Զստացող ճառիս զՍտեփան Վանեցի յիշեցէք ի Քրիստոս և թողութիւն մեղաց խնդրեցէք, և զՍտեփանոսն, որ ետ գրել զսա յանուն Ստեփնա, և զապիրատ գրիչս...։

ԼԹ

355բ Ո՛վ ընթերցողք... յիշեցէք յաղաւթս ձեր զստացող սորա զԲաբելի ոսկերիչն, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ նմա և իւր ծնաւղացն, զի թէպէտ փոքր է սա քանակիւ, այլ յոգնակի ուրախութեամբ, և որք յիշէք և խնդրէք արքայութիւն, նոյնպէս ձեզ լիցի թողութիւն...։

Խ

369բ Սուրբ փառաւորեալ տիրուհի աստուածածին Մարիամ, բարեխաւսեա առ սուրբ երրորդութիւնն, զի թողցէ զյանցանս ստացող ճառիս քո հրաշալի փոխմանն [զՄարգարէ քթանգործն, և զեղբայր նորա զԱւետիք ննջեցեալ], և զամենայն ժողովրդեանս...

ԽԱ

390ա Քրիստոս աստուած...տուր...ստացաւղի ճառիս Սատուն ապրեփեցին և մեղաւք մեռեալ գրողիս զկենդանութիւն ուրախութեամբ, զի քո ամենայն ինչ կարելի է, եթէ կամիս...։

ԽԲ

393ա Զստացող ճառիս՝ զդիւա սուրբ խաչին պատմութեանս, զՈւստիանէ կին ոմն քրիստոսասէր յիշեցէք ի Քրիստոս...։

ԽԳ

396ա Քրիստոս աստուած, քո սուրբ խաչիս բարեխաւսութեամբ արա մասնակից սուրբ և երանելի թագուհոյն Հեղինեայ և սուրբ եպիսկոպոսին Կիւրղի զոգի ստացողի ճառիս [զԱննային՝ զփոխեցելոյն ի Քրիստոս]...։

ԽԴ

413բ ...Զստացող սուրբ կտակիս՝ զներբողեանս անմարմնոցն, զԹոբոս քահանայն և ծնօղս նորա յիշեցէք...։

ԽԵ

435բ Քրիստոս որդի աստուծոյ... թող զամենայն սխալանս ստացողի ճառիս [զԳորգն, և Գուհար տիկինն, և զՆարշան, և զկողակից նորա զՈւստիանէն]...։

ԽԶ

481բ Զստացող ճառիս զքրիստոսազգեաց հայրապետին սուրբ Իգնատիոսի՝ զՎարդերես ջուլհակն յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ։*

* Գրված է ձեռագրի ստորին լուսանցքում այլ ձեռագրով։

խէ

494ա *Քրիստոս աստուած…գթա ի հոգի ստացողի սորա* [Ստեփաննոս *ժամկոչի*], *բարեխաւսութեամբ քո արիւնաներկ նահատակին Ստեփաննոսի նախավկայի…։*

խը

497ա Զ*Ստեփաննոս* հեւսն* *յիշեցէք ի տէր և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, ով սուրբ պաշտաւնեայք աստուծոյ։*

խթ

520բ *…Ողորմեսցի տէր մեր Յիսուս Քրիստոս ստացողի սորա [բարեմիտ և քրիստոսասէր կնոջն* Եղիսաբէթի, *որ շատ աւգնեաց ի կազմ սորա], և գրողիս, և թողցէ զխալանս ամենայն ումեք…։*

ծ

535ա *Քրիստոս աստուած, կամաւ հաւր և սուրբ հոգւոյդ քում էակից փառակցացդ ողորմեա ստացողաց սորա՝* Աստուածատուր թաւկրին, *և մաւր նորա* Մարթայի, *և* Լուսերուն, *և ամուսնոյն իւրոյ, և այլոց, որք փոքր փոքր աւգնեցին ընչիւք, ըստ կար և ըստ կամս, դու հազարապատիկ հատո, զի քո գործ է ողորմութիւնն…։*

ծա

536բ *Յիշեցէք ի տէր զհաւատարիմ պատանին զ*Սաքի դերձակն *և զիւր ծնողսն, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, և ձեզ լիցի թողութիւն, և մեզ՝ գրողիս, և ամենայն ժողովրդեանս։*

ծբ

542բ *Քրիստոս աստուած…արա մասնակից և պսակակից…զստացաւղ սորա [զերկայն* Թորոս, *ծնողաւքն, և տամբ, և զաւակաւք], և զգրողս անարժան…։*

ծգ

548բ *Քրիստոս աստուած…թող զմեղս ստացողի սորա [*զՂարա-Սարգսին, *իւր ամուսնաւն և ծնողաւքն], և դասէ զհոգիս սորա մերձաւորագոյն առ սուրբսն…։*

ծդ

561բ *Քրիստոս, յոյս արարածոց, սրբոց քոց մանկանցն Եփեսացւոց բարեխաւսութեամբ արա նոցին մասնակից և պսակակից զստացաւղ սորա* զԽաչատուն, *որ վասն յուսոյն, որ ի քեզ կալաւ զսա յիշատակ իւր…։*

ծե

562ա Զ*Մկրտիչ ժամկոչն յիշեցէք ի տէր և զաստուած ողորմիսն ասացէք…։*

ծզ

565բ *…Յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զստացող սորա [*զԱվրան կտաւագործն *և զիւր ծնօղքն]….*

* *Իմա՝ «հիւսն»։*

ծէ

572բ *Զստացող սորա* [զՄարտիրոսն՝ *զորդի* Վարդանայ] *յիշեցէք ի Քրիստոս...։*

ծը

575ա *Քրիստոս աստուած, քո սուրբ առաքելոցն բարեխաւսութեամբ տուր վարձս զբարեպաշտ կնոջն* Սոփեա, *որ պատեաց զքո սուրբ Նահատակին...և տուր ի քո լուսեղէն հանգերձիցն այս բարեպաշտ կնոջն աալիթիս, որ այս մատեանի եբեր ծածկոց վասն սիրոյ զքեզ, տէր, և որք քո են, և քեզ փառք։*

ծթ

582ա *Ո՛վ սուրբ քահանայք, ընթերցողք և ունկնդիրք, յիշեցէք ի տէր ...ստացօղ ճառիս սուրբ Մկրտչին՝* զՄկրտիչ դանկագործն, *և զհայրն իւր* զՎարդապետն, *և զմայրն իւր, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ ամենայն մեղաց, և ձեզ լիցի թողութիւն, և Քրիստոսի փառք յաւիտեան։*

կ

590բ *...Յիշեցէք յաղաւթս ձեր զստացող սորա* [զԹաստա բազազն], *և խնդրեցէք յաստուծոյ թողութիւն...։*

կա

617բ *Քրիստոս աստուած քո սուրբ և լուսաւոր նշանաւն լուսաւորեա զհոգի ստացողի սորա* [զՀեքում դարբինն], *և զխաւարեալս մեղաւք՝ զգրող սորա...։*

կբ

619բ *Ո՛վ երանելի սուրբ նահատակ* [*Դաւիթ Դունեցի*]... *աղաչեա զտէրն վասն ստացողի սորա* [զԱղբարշահ գինեծախն] *և գրողիս...։*

կգ

621ա *Քրիստոս աստուած...ընկալ զոգի ստացողի սորա...* [զԳրիգորէս էգեպանն]*...։*

կդ

630ա *...Խնդրեցէք յաստուծոյ... զի զթասցի և թողցէ զյանցանս ստացողի սորա* [սանդրգործ Պարոնշահին] *և զգրողիս...։*

կե

639ա *Տէր աստուած...զխնդիրսն, որ ի քէն ընկալեալ է, տուր ստացողի սորա՝ բարեմիտ և սրբասէր կնոջս* Մանանային, *և արա մասնակից սրբոյն...*

կզ

649ա *Քրիստոս աստուած... զթա ի ստացող սորա* [զՅովանէս կտաւգործ] *և ի մեղաւոր գրողս...։*

կե

658ա *ԶԳրիգոր պատանեակն՝ զկր[տ]սեր որդին իմ յիշեցէք ի տէր, զի ի թղթին կոկելն շատ աշխատեցաւ, հատուցէ նմա տէր վարձս բարեաց աստ և ի հանդերձեալն։*

կը

664բ Էփեպան Տուրքին *է ճառս յիշատակ։**

կթ

667բ *...Ողորմեա ստացողի սորա* [զՆրկայն Կարապետ ջուլհակն] *և ամենայն մերձաւորաց։*

հ

671բ *Զստացող սորա* զՇահ Պալենցին *և* զԿոստանդ *երէց՝ զփոխեալն յիշեցէք և աղաւթեցէք...։*

հա

700բ *Տէր աստուած, ողորմեա, ստացաւղի սորա* Գրիգորու, *որ ուրախութեամբ ետ զգինս սորա ըստ տեառն բանին, թէ վաճառեցէք զինչս ձեր և տուք տեառն. և միոյն հազարապատիկ հատուսցէ ձեզ։ Եւ սա ի չքաւորութենէ իւրմէ զանձն խարեաց և զհողին ուրախացոյց և արկ ի սեղանն տեառն, և զսա յիշման արժանի արարէք, և որք յիշէք յիշել լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որում փառք։*

հբ

713բ *Զստացաւղ ճառիս* | | | *միայնակեացն, որ էր ի տղայութեանն յազգէն Բոծորայ, և եբաց Քրիստոս զաչս նորա, և հայեցաւ ի Քրիստոս, և հաւատաց, և եղև միանձնաւոր և սուրբ ճգնաւոր, յիշեցէք յաղաւթս, ով ընթերցողք։*

* Գրված է այլ ձեռագրով։





## 447.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Բրիտ. Թնգ. 6 (Or 2679) Կոնիբ. Ցուց. էջ 8*

*Հետ. ստացող՝* Ստեփաննոս

291ա *...Արդ, յայսմ դառնաչեալ և ի տարտարոս ժամանակիս, որ է թիւս Հայոց տումարիս ՉՂԷ. (1348), քանդեալ և աւերեալ եղև աշխարհս ամենայն առհասարակ յարիւնարբուս ազգէն Նետողաց, և եղև անապատ ի մարդոյ և յանասնոյ, և տարածեցաւ սով... և բազում առաքելաշէն եկեղեցիք դրունքն փակեցան, և աղաւթք և սուրբ պատարագք խափանեցան, և սպասք և սուրբ աւետարանք գերի վարեցան։ Ցորում հանդիպեալ այսմ սուրբ աւետարանիս աստուածասէր և երջանիկ քահանայն* Ստեփաննոս*...ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւղաց իւրոց* Գրիգորոյ *և* Ղրէլի, *և եղբարցն* Ըռստակիսի *և* Ներսէսի, *և տիրուհոյ իւրոյ* Խէկարի, *և քուրոջն* Մարթայի, *և զաւակացն* Թումայի, *և* Սադդումելիքի, *և* Թանմելիքի, *և ազգայնոցն ամենեցուն...։*

*Արդ, ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց և ի վաստակոց... և ետ վերստին ծաղկել և կազմել զսա...։**

## 448.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 37, Տ.-Ավետիսյան, Ցուցակ, 170-171*
*(տես նաև 1351)*

*Գրիչ՝* Սիոն
*վայր՝* Վայոց Ձոր, Հերմոնի վանք

289ա-
-291ա *...Պայծառ և ոսկիանկար աստուածաշունչ գիրս ստանալ կամեցան երկիւղածքն Քրիստոսի* Այնախօջայ *և բարէպաշտ ամուսինն իւր* Բախտիկն, *զայս՝ այս աստուածային կտակ, ի վայելումն անձին և յիշատակ բարի անուանցն առ աստուած, և ծնողացն իւրեանց, և զաւակաց՝* Մի[ր]անայ *և* Մարիանէի, *և ամեն[այն ա]րեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոց։*

---

* *Ունի նաև այլ հիշատակագրություններ, որոնց բովանդակությունը վերապատմում է հրատարակիչ Կոնիբերը անգլերեն լեզվով. դրանք են. ա) ՌԲ.(1553) թ. Աստուրի (?), նրա կին Խուվանդի և նրանց որդիների կողմից սույն ավետարանը Եզեկիայի սուրբ Աստվածածին եկեղեցուն նվիրելու մասին («որ եղին ի յԹւահայ ի սուրբ Աստուածածին», էջ 292), և բ) «Յիշեցէք զՊաւլին, որ գնեց զաւետարան[ս] և Դ. (4) արծաթն և խաչ մի, որ ի վերայ բեւեռեցին...» (էջ 292)։*

*Մրդ, եղև սկիզբն և կատարումն սորին ի նահանգիս* Սիւնեաց, *ի գաւառս, որ կոչի* Ձոր Վայոց, *ի մենաստան* Հերմոնի *վանս անուանելոյ, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի, ի թուականութեանն Հայկազեանս տոհմի հաւթնհարուր* Եսուն *և խաւթն (1348)-երորդի, ձեռամբ* Միռնի, *ի դառն և ամբարի ժամանակի խազմ և խռովարար բռնակալլոյն՝ ջնջելոցն ի դպրութենէ անուանցն։ Ի տէրութեան և յիշխանութեան, որ ի կայս և ի կոյս նահանգաց* Սիւնեաց, *աստուծով զօրացեալ մեծ իշխանաց իշխանին* Բէշքէնայի *և հարազատ եղբօրն նորին* Իվանէի՝ *որդոց բարի պաշտըմամբ փոխեցելոյն առ Քրիստոս յոյսն ամենեցուոյն պարոն* Բիրքէլին:

*Արդ, որք հանդիպիք ի վայելումն աստուածային սուրբ աւետարանիս յիշեցէք զարժանին յիշատակի և օրհնութեանց զ*Այնախօշէն, *և զամուսինն իւր զ*Բախաիկն, *և զաւակս նոցայ՝ զ*Միրանն *և զ*Մաբիանէ, *և զծնողս նորայ, և զամենայն արեան մերձաւորսն։*

## 449.

## Մ Ա Շ Տ Ո Ց

***Թորոս Աղբար. Բ. էջ 307 (Սր. տաճար Թարգմանչ)***

*Գրիչ՝* Ներսէս
*վայր՝* Տիվրիկոյ գաւառ, Աւթմնա վանք

*...Գրեալ ի գաւառին* Տիվրիկոյ, *ի վանք, որ կոչի* Աւթմնա, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ձեռամբ...*Ներսէսի. *ի թուակ[անութեան] Հայոց ՉՂէ. (1348), ի սեպտ[եմբերի] Ժ. (10)։ Արդ, աղաչեմ չմեղադրել սղալանացս...քանզի տեսանէաք զբազում դիակունս մարդկան մեռեալս առաջի մեր, եւ ցնդէր միտս իմ իբրեւ զվայրենազնաց գազան եւ հազիւ առ իս ժողովէի յերկիւղէ մահուն, եթէ ոչ ժամանէի յաւարտումն տառիս, քանզի առ մեզ այլ եհաս ի ցաւոց տարաժամ մահուան, այլ ներողութեամբն աստուծոյ զերծաք...*

## 450.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

***Երևան 7857 (տես նաև 1433 թ.)***

*Գրիչ՝* Աւետիք որդի Նատերի
*վայր՝* Սուրխաթ

ա

288բ *...Ցամի թուաբերութեանս...տեառն մերոյ Ցիսուսի Քրիստոսի... ՌՅՃ. (1350) և ի Հայոցն թուականի ՉՂէ. (1348)* եղև զրաւ գրչութեան սրբոյ աւետարանիս ձեռամբ* Աւետիս *սարկաւագի՝ նուաստ և յետին գրչի, յաշխարհս* Հոնաց, *որ այժմ* Ղրիմ *յորջորջի, ի հովա-*

** Թվականի վերջին թվանշանը գրված է այնպես, որ կարող է կարդացվել նաև «Ե», սակայն, ի նկատի ունենալով այն, որ քրիստոնեական թվականը նշանակված է 1350, կարելի է անկասկած համարել ՉՂէ. ընթերցումը։*

*կաւոր և ի հոյակապ քաղաքիս, որ կոչի* Սուրխաթ, *ի հողեանբս
վերի, որ* Ծղրճիս *անուանի, առ ոտն սուրբ* Խաչիս, *ի հայրապետու-
թեան տէր* Մխիթարայ, *և յեպիսկոպոսութեան նահանգիս տեառն* Ստե-
փաննոսի *արքեպիսկոպոսի ամենայն հիւսիսական կողմանց, և յերկրոր-
դի Նորին* Յոհաննես *կրաւնաւորի՝ կորովամիտ սոփեստի և յոյժ ուղ-
ղափառի։ Ի խնդրոյ աստուածասէր և բարեպաշտ առն* Պաւղոսի, *ձեռն-
տուութեամբ* Վարդանն *քահանայի, յիշատակ անջնջելի* Յովաննեսի, *որ
է որդի* Պաւղոսի, *ի տիս երիտասարդական մեկնեալ յամենայն ցան-
կութեանց, ցանկալի բաղմոց ի վայրս սրբութեան և ողջախոհ իմաս-
289ա տութեամբ, մաքուր քո || ղաքավարութեամբ վկայեալ ի բաղմոց,
կայր խաղաղութեամբ ըստ իւրում կենցաղավարութեանն։ Եւ յան-
կարծակի իբրև գդող գիշերի եհաս ի վերայ նորա տարաժամ հայրե-
նադիր խորշակ հնչման հողմուն մահու, որ տիրեալ է ի վերայ ամե-
նայն նանրատեսակ բնութեան մարդկան, ժամանեաց ի կէտ կոչման
հրամ[ան]աւ անմահին աստուծոյ, և փոխեցաւ ի կենացս, և եմուտ
առ* Քրիստոս՝ *յոյսն ամենեցուն, զանունն ի յերկրի եթող և հոգւով
սրբով ել յերկինս, ուր տէրն մեր կամեցաւ, և սուգ անմխիթար և
կսկիծ անմոռանալի եթող ծնաւղաց իւրոց՝* Պաւղոսին *և* Աւագտիկնայ,
*և եղբարց իւրոց* Լուսերոյն *և* Շնոհրքրին,* *և ամենայն ծանաւթից
իւրոց. իսկ յաւանդել հոգւոյ իւրոյ զիմաստութիւնն Սողոմոնի արար,
որ ասէ թէ՝ իմաստութիւնն յելս ճանապարհացն զովի և զոր ունէ
ինչս յաստուծոյ շնորհեալ պարգևացն ոչ եթող անարգ յերկրի, այլ
էարկ ի սեղան հոգևոր և գանձեաց յերկինս, որ է եկեղեցի յերկրի, և
ետ հրաման, որ զամենայն արդար ստացուած[ս] իւր ժողովեալ՝ ի
պէտս քահանայից և եկեղեցւոյ աւան[դի]ցեն,** որ և մի է ի յիշա-
տակացն սուրբ և աստուածախաւս աւետարա[նս], որ գրեցաւ յիշա-
տակ և բարեխաւս առ Քրիստոս։ Արդ, ո՛ք հա[ն]դիպիք այսմ աս-
տուածաբան մատենիս յիշեցէք ի սուրբ աղաւթս զՅովաննեսն, և զծը-
նօղսն նորա, և զեղբարսն, և զամենայն մերձա[ւորսն], և զ*Վարդան
*քահանայ, որ ետ գրել զսա, և զեղբայր նորա զԱ | | | քահանայ,
և զնուաստ գրիչս* զԱւետիք *և զնկարիչ***, և զհ[այրն] իմ զ*Նատեր, *և
զմայրն իմ, և զեղբարսն. և որք յիշէք՝ [թողու]թիւն խնդրեցէք ամե-
նայն յիշեցևլոցս, և աստուած զձերն թող[ցէ]։*

Բ

*Յիշեցէք և զհոգևոր եղբայրն մեր զ*Սարգիս *զանկրաւն, զի յոյժ
սիրող է և պահող պատուիրանացն տեառն, և հանձնեաց | | | ի գիրս
մեր, զոր և դուք պարտիք յիշել ի Քրիստոս, և առ Նմին | | | զանպի-
տան գրիչս* զԱւետի[ք], *և դուք յիշիք ի Քրիստոսէ, և որ յանդգնաբար ի
ջնջե[լ] փութայ բանիցս, որ է | | | և ինքն ի կենաց դպրութենէն։****

---

* *Անունը ջնջված է, բերված ձեր՝ կասկածելի։*

** *Վերջին տողերի աջ եզրերը մաշված են, որոշ տառեր չեն ընթերցվում։*

*** *Ավետարանիչների նկարները շատ հաջող են։*

**** *Այս հիշատակագրությունը գրված է 288բ–289ա էջերի ներքին լուսանցքներում։*

## 451.

### ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ, ԱԼԲԵՐՏՈՍԻ

Երևան 104

Գրիչ՝ Անդրէաս
վայր՝ Կաֆա

398բ Ցամի մարդեղութեանն Քրիստոսի աստուծոյն մերոյ ՌՅԾ. (1350),* յամսեանն նոյեմբերի ի Ը. (8) դրեցաւ տառս, որ կոչի Ալ-պերտ, ի մայրաքաղաքն Կաֆայ, ընդ հովանեաւ սրբոյն Նիկօղայոսի, յորոյ առաջնորդ և հոգաբարձու էր առաքելաշնորհ եպիսկոպոսն տէր Ռեմննես, ձեռամբ նուաստ փրտ Անդրէասի, որ է ի կարգէ միաբա-նողաց...։ Ո՛վ եղբարք, որ և կարդաք և կամ օրինակէք, անմեղա-
399ա դիր լերուք սգալ գրիս, ես դրա || գիր չէի, այլ հարկ արարին ի վերայ իմ գրել | | |

## 452.

### ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆՔ

Վիեն. 293, Տաշ. Ցուց. էջ 721 (տես նաև 1377 Թ.)

Գրիչ՝ փրա Յակոբ
վայր՝ Կաֆայ

ա

299բ Այս գծածք հանդիսադիր խմբից առաջնոցն տառից տրամախոհ իմաստասէր մակացու արանց ի Դաւթի եռամեծէ ընթադրեցաւ Արդ, աղաչեմ զամենեսեան միով՝ տէր ողորմաւ յիշել զապերախտս Յի-սուսի իմո՝ զաղքատս փրա Յակոբս. յիշօղք յիշեալ եղիջիք...։

բ

299բ Ցամի ծննդեան տեառն և փրկչին Ռ Յ. եւ Ծ. երորդին (1350),** եւ ի յամսեան յուլիսին կատարեցաւ գիրքս սուրբ առաքելոյն Յակոբա տօնին, փրա Յակոբս աղքատ հոգին, միաբանողաց եղբարց կարգին, ձեռնտուութեամբ աստուածային, գրեցի զգիրս, որ է փիլիսոփայական արուեստին, որ և Սահմանքն Դաւիթ Անյաղթ փիլիսոփին ընդ նմա լինին, ի փառս տեառն համազօրին, եռականին եւ միակին եւ ի պատիւ իսկ միշտ կուսին՝ Մարիամու աստուածածնին, ի մայրաքաղաքն ի Կա-ֆաին, ընդ հովանեաւ սբբոյն Նիկօղաոսին, սքանչելագործ հայրապե-

* Ընդօրինակության տարեթիվը համարում ենք ոչ թե 1350-ը, այլ 1348, որովհետև առաջնորդվում ենք հայկական թվականներով. իսկ քրիստոնեական ՌՅԾ. (1350)-ին համապատասխանում է հայկական ՉՂէ. (1348) թվականը (տես նախորդ հիշատակարանը)։

** Տես նախորդ ծանոթությունը։

*աին։ Ո՛վ եղբարք՝ իմաստ բանին, անմեղադիր լերուք անիմաստանիս...։**

**453.**

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

***Փիրզ. 6275, էջ 152—153 (Աբաքկիրի եկեղեցի)***

*Կազմող՝* Կարապետ
*վայր՝* Մատներոյ վանք

*Արդ, ի յայսմ դառնացեալ ժամանակիս, որ է թիւս Հայոց ՉՂԷ. (1348), երջանիկ և ընտրեալ կրօնաւորն* Ստեփաննոս՝ *հայր և առաջնորդ սուրբ ուխտին* Մատներոյ վանիցն* *և սքանչելագործ զօրավարին սրբոյն Գէորգայ, վերստին ետ կազմել զսուրբ աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ և ամենայն երախտաւորաց սուրբ ուխտին։ Եւ ես՝ ունայնս ի գործոց բարեաց՝ սուտանուն* Կարապետ *կազմող, աղաչեմ զհանդիպեալսդ սուրբ աւետարանիս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր* զՍտեփաննոս *սրբասնեալ կրօնաւորն՝ զհայրն վանից և զմիւս* զՍտեփաննոսն՝ *զծերունի հայրն, զերանելի կրօնաւորն, որ է բարի բարուք և սուրբ վարուք։*

**454.**

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

***Մաքսուդ. Ցուց. Ազուլիսի. 21, Արարատ, 1911 թ., էջ 564—565 (տես նաև 1321 թ.)***

*268բ* *...Ըստ նմին աւրինակի և սրբասնեալ և ուղղափառ, քաջ և արի յաղթող քահանայս* Գրիգոր *անուն կոչեցեալ, առեալ զսուրբ աւետարանս ի հալալ յարդեան իւրոյ, յիշատակ իւր, և կենակցին իւրոյ* Սիմիկին, *և ամենայն մերձաւորաց իւրոց, և ի վայելումն որդոյ իւր* Սեբեկայ *և* Յորդանանու. *և ոչ եղև կատարեալ սիրոյ իւրոյ* Սեբեկայ *ելանել ի կենցաղոս, տղայ մանուկ կենաւք, և եթող սուգ մեծ և զառն կսկիծ հաւր և մաւր և եղբաւր իւրոյ։*

*Ես* Գրիգորս *տուի իմ սրտի յաւժարութեամբ զսուրբ աւետարանս* Գաղիտոյ *սուրբ Գէորգին,* Գրիգոր *արեգի ձեռամբն, իմ որդւոյն՝* Սեբեկին *հոգոյն յիշատակ, որ քանի աւետարանս կենդանի է յեկեղեցու դռանն, տարէնն Բ. աւր ժամ կատարեն, մի աւրն քառասնից տօնին, շաբաթ աւրն, սպասաւորք սուրբ Գէորգին անխափան կատարեն, կատարողքն աւրհնին յաստուծոյ։ Ով յանդգնի, ի հանել ջանայ յեկեղեցոյն, գրաւէ, կամ ծախէ, կամ գողանայ, զվարձքն Ցուգայի*

---

** Գրված է անկանոն տողաչափությամբ։*

*** Փիրղալամյանը կցում է հետևյալ ծանոթությունը. «Երկու Մատնավանք անուամբ ուխտ կայ ի Հայս, մէնն ի Տարօն և միւսն ի Բղնունիս, յարևմտից կուսէ Ուշտունեաց ծովուն, բայց ի սոցունէ որն է, չէ ինձ յայտ»։*

առնու և զԿայենին և զխաչահանուացն Քրիստոսի, և ոչ լինի թողութիւն և փրկութիւն՝ ոչ աստ և ոչ ի հանդերձելումն։ Ես Գրիգոր արեղէս վկայ, ես Բոգոս (°) վկա, ես Գերգս վկա։ Ի թվ. ՉՂԷ. (1348)։ Ես Ստեփանոս այրեղէս, որ զգիրս գրեցի, վկայ եմ։

## 455.

### ԲԱՐՍՂԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻՈՅ ՑԱՂԱԳՍ ԿՐՕՆԱՒՈՐԱՑ

**Երևան 2811**

Գրիչ՝ Յոհանէս

146բ Քրիստոս աստուած, քո սուրբ և ընտրեալ հայրապետին Բարսղի բարեխաւսութեամբ, և աղաչանաւք ամենայն սրբոց և սիրողաց քոց, ողորմեա ստ[աց]աւղի գրոց, որ ջերմեռանդ սիրով խնդրեաց Ստեփանոս կուսակրաւն կրաւնաւորի, ընդ նմին և անարժան գծողիս՝ Յոհանէս արգելականի, և անմեղադիր լերուք խոշորութեան գրոյս, զի սիրտ է պտուղ և ոչ այլ ինչ իրաց, յիշեցէք և զՅակոբ ու[ս]ուցիչ մեր և զՄխիթար պատանեկ, և ինքն, որ առատն [է] ի տուրս՝ ձեզ և մեզ ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Ի թվականիս ՉՂԷ. (1348) գրեցաւ գիրքս։

## 456.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ե. Լալայան, անտիպ (Վարդաշէնի սբ. Աստուածածնի եկեղեցի)*

*Հետ. ստացող՝* Թուղթաթի իշխանուհի
*վայր՝* Որերան վանք

ա

*Փառք...որ արժանի արար զամենայն հաւատացեալս պէս պէս եւ զանազան եղանակաւք գտանել զարքայութիւնն աստուծոյ. ոմանք պահաւք եւ աղօթիւք ապրեցան ի տանջանաց, ոմանք ողորմութեամբ զողորմութիւն ընկալան ի Քրիստոսէ, ոմանք տկարագունիցն աւգնելով ողորմութիւն գտին յաստուծոյ, ոմանք աղքատութեամբ եւ վասն Քրիստոսի անընչութեամբ ապրեցան, ոմանք մեծութեամբ եւ բարեպաշտութեամբ զգանձս իւրեանց յեղլով ի դուռն եկեղեցւոյ՝ հաճոյ եղեն աստուծոյ, որպէս եւ երանելի եւ բարեպաշտ իշխանաց իշխանս* Թուղթաթի, *դուստր* Իւանէ *թագաւորատոհմ եւ բարեպաշտ իշխեցողի* Որոտան *գաւառի։ Արդ, սայ հարսն բերեալ ի տունս Հայոց մեծաց եւ թագաւորատոհմն, հարազատ եւ քաջազաւր իշխանաց իշխանին՝ որդւոյն* Շահուռեցոյ՝ *նահանկակալի Հայկազեն գաւառիս* Վայոց Ձորոյ, Վահրամայ *անուն կոչեցեալ, յազգէն մեծ* Տարսայիճենց, *եւ ամուսին սորայ՝ նոյնպէս թագաւորատոհմ եւ իշխանաց իշխան, բարեպաշտ եւ աստուածայսէր, որոյ անուն* Գոնցայ *ճանաչէր։ Արդ,* Վահրամ *իշխան երիտասարդ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս եւ եթող սուգ անմխիթար յետամնացաց իւրոց։ Եւ ունէր երիս որդիս՝ նորայբոյսք եւ ըստընդեալք, թողեալ յաշխարհիս։ Ամուսին սորա* Գոնցայ *բազմաջան աշխատութեամբ եւ դառն չարչարանաւք հասուցեալ ի չափ հասակի, որ էին պարծանք Հայոց աշխարհիս ցոցայ(*) կոչի* Ուքան, Ամադայ *եւ* Հասան, *սոքա սպառազինութեամբ քաջացած ընդդէմ այլասեռից, նահատակեցան ի վերայ քրիստոնէից եւ թերայնկատար օրով ի Քրիստոս փոխեցան, եւ կրկին թողին սուգ անմոռանալի ծնաւղաց իւր և կենակցաց իւրեանց։*

*Արդ,* Թուխթաթի, *կենակից գոլով կորովի եւ քաջայզաւր իշխանին* Ամադային, *որ ի վերայփոխիլն իւրում եթող մեծ աշխարումն եւ սուգ տանս* Վայոց Ձորոյ։ *Եւ ամուսին սորա* Թուխ[թ]աթի *անմխիթար գոլով յամենայնի, բայց միայն դուստր մի ի սփոփումն եւ ի մխիթարութիւն անձին իւրոյ՝* Նաթիլ *անուն, դեռաբոյս եւ նորայպսակ, զոր տէր աստուած հասուսցէ զնայ, գլխովն իւրով խորին ծերութիւն, ամէն։*

*Արդ, բարեպաշտ* Թուխթանի *յեւթ* (?) *յեւյց գրան հին եւ նոր կտակարանաց, որ ասէ թէ՝ երանի, որ ունի զաւակ ի Սիոն եւ ընտանի ի վերին Երուսաղէմ, եւ ըրանն մարգարէին Դաւթի, որ ասէ՝ մարդոյ որպէս խոտոյ են աւուրք իւր, որպէս ծաղիկ վայրի, այնպէս ծաղկէ, շնչէ ի նմայ հողմն, ոչ է եւ ոչ երևի տեղի նորայ։ Սայ յիշելով թէ սուտ է կենցաղս այս՝ եղ զյոյս իւր ի գուռն եկեղեցոյ, որ տանէ զարքայութիւն, այս լինի փրկանք առն իւրում* Ամատային. *եւ գնեց զաւետարանս ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր եւ ծովայծանալ, եւ գեղեցիկ եւ քաղցրահայեց, եւ առիւծաբազուկ առն իւրում* Ամատային, *եւ զեռայոյս զաւակին իւրոյ՝* Նաթիլին, *եւ ամենայն արեան մերձաւորաց իւրոց, ամէն։*

*Արդ, ես՝ անարժան* Թուխթանի, *դուստր* Իւանէ Որոտան *իշխեցողի, քոյր քաջ քարտուղարի եւ երջանիկ բարունապետի* Յովաննէս *վարդապետի, հարսն մեծ* Սահունեցեանց, *կենակից հզաւր եւ մեծ իշխանին* Ամատին, *շինեցի* զԵրեքան *ժամատունս զԱստուածածնիս, եւ զասեր լալեցի (**), *եւ գնեցի զաւետարանս ի հալալ արդեանց իմոց եւ ետու* Երեքան *սուրբ Աստուածածնին, յիշատակ ինձ, եւ առն իմում* Ամատին, *ըսկեսեր եւ սնուցչին եւ երախտաւորին իմոյ՝ աստուածայսէր եւ բարեպաշտ պարոն* Գոնցին, *եւ զաւակին իմ* Նաթիլին, *եւ հաւր իմ* Իւանէ, *եւ մաւր իմ* Տիկնանց *տիկնայ, հարազատ եղբարց իմոց* Հասանայ և Ջաֆարի, *եւ ամենայն արեան մերձաւորաց իմոց։*

*Ով որ զայս եկեղեցիս ծառայեսցէ՝ տարէն երեք աւր պատարագ կատարեն՝ զտաւն զաւագ հինգշաբթին եւ զվարգեւառին եւ զծաղզարդարին, որչափ ես կենդան եմ՝* Ամատային** *առնեն, ինչ ես մեռնեմ՝ ինձ առնեն, կատարիչքն աւրհնին յաստուծոյ եւ խափանիչքն դատին ի տեառնէ։*

*Եւ գնեալ եղեւ սայ ի դառն եւ ի նեղ ժամանակի, ի բռնակալութեան տաճկաց* Մելիք Աշրափին *եւ* Աշտարին(*), *եւ ի դանութեան* Էգիլ Սրանին, *որ էին դատաստանք նոց[ա] սուերք եւ անիրաւ, եւ իշխանութեան քաջ զաւրավարին Հայոց, աստուածասէր եւ բարեպաշտ իշխանաց իշխանին* Բեշքենայ *եւ* Իւանէ, *եւ յետ աստուածասէր եւ երկիւղալից թագաւորայշնորհ պարոն* Բիւրդելին *եւ* Վախախին, *որ ի Քրիստոս փոխեցան։ Յետ սոցա մահուանն անկաւ սով սաստիկ, կոտորեցան յերից մասանց Հայոց աշխարհս, եւ յետ սովուս մխիթարութեան եհաս աստուածասաստ բարկութիւն ի վերայ մեր, եւ անկաւ մահ տարաժամ յամենայն աշխարհս, եւ տարաւ զկէսայմասն աշխարհիս, եւ այս վասն ծովացեալ մեղաց մերոց եղեւ։ Եւ դեռ ոչ կու դառնանք, այղ կու աւելունք չարիս՝ նման անաւրինաց։ Եւ զայս ամենայն տեսանելով երկիւղալից* Թուղթանի, *ստացաւ աստուածային զանձս հոգևոր։ Ով որ հանդիպիք, կամ ուսմամբ, կամ աւրինա-*

---

* *Մեր ձեռքի տակ եղած ընդօրինակության մեջ՝ «ամսա[մ]տին» (*), ուղղում ենք ըստ իմաստի՝ «Ամատային»։*

կաւք, յիշեսջիք զաստուածասէր եւ զբարեպաշտ զԳոնցա եւ զԹուղ-թանի եւ զամենայն վերոյգրեալս ի սմա։ Մի ոք իշխեսցէ հանել զսայ ի սուրբ Աստուածածնէս Երերան, կամ գողանալով, կամ իւիք պատճառանաւք։ Ով որ զայս յիշատակարանս ջնջէ՝ ջնջի ի կենաց գրոյն, ով զայս աւետարանս արտաքս հանէ՝ արտաքսեալ եղիցի յարքայութենէն աստուծոյ։

Գրեցաւ յիշատակարանս ի վանս Երերան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ Գէորգայ զաւրավարիս, ձեռամբ անարհեստ եւ մեղսայմակար[գ] եւ փցուն գրչի Վախանայ, ի թւայրերութիւն Հայկազեան տումարիս ՉՂԸ. (1349)։ Աղաչեմ ընդ վերայգրեալսն զիս յիշման առնել արժանի, ով սուրբ մանկունք Սիոնի, եւ աստուած յիշողացդ եւ յիշեցելոցն առհասարակ ողորմեսցի։ Ամէն, եղիցի, եղիցի։

Բ

Եւ այս զաւրավարս՝ քաջ Ամատայս, էր նիզակակ[ից] եւ կորովաձիգ ասպարապետ ի դրան թագաւորաշուք իշխանաց Բիւրթելին եւ Վախախին, սիրեցած յամենից, որպէս հարազատ որդի։ Եւ յորժամ փոխեցաւ առ տէր եւ տրտմեցոյց զամենեսեան, ոչ գոլով ժառանգ հայրենեաց իւրոց։ Եւ վասն յոյժ սիրոյ, որ սիրէին պարոն Բիւրթելն եւ Վախախն զպարոն Ամատայն, ետուն զթոռն իւրեանց՝ զորդի Բեշքենայ զԿուկայն,* ժառանգ էառ(՞) յետայնմաց եւ տէր հայրենեաց Վարեամայ սրդոյ Շակուռեցոյն՝ Երերան եւ Վանացն եւ Քալատակին եւ այլ հայրենեացն ամենայնի։

Արդ, Կուկայս այս զովելի, սայ որդի մեծ իշխանի Բեշքենայ քաջ զաւրավարի, որդի մեծի Տարսայիճի։ Սա հրամանաւ իւր մեծ նախնին երեկ տէր այսմ գաւառի, տէր և աստուած յամենայնի տացէ սմա զաւրք զովելի. ըտենց, որ նմանն չլինի։ Յիսուս Քրիստոս՝ յոյս աշխարհի, աւրհնէ զպարոն յայսմ նահանկի, զԿուկոնից զեղեյիկ, զեղեցիկ եւ զեռ[արոյս] կենակիցն իւր զնայ[թի՞լ], երկու կենաւք եւ երկու աշխարհաւք պահեայ անսասան մինչ ի խոր ծերութեան ամ։

Արզ, որք այս հա[յրեՑն]ե[ա]ցս դաւի ան[ի կամ հա]նելոյ ջանայ կա[մ] | | | ելն դրկելոյ [հայր]ենեացս | | | հայրապետ[աց նզ]ոված** եւ | | | եւ մասն զՈւդայի ն ու զխաչա[հանուացն առցէ՞]***

* Ընդօրինակության մեջ՝ «զկնի այն», ուղղում ենք ըստ բովանդակության։

** Ընդօրինակության մեջ՝ «Ով Ած» (Աստուած)։

*** Այս և ութհարյուրի չափ այլ ձեռագրերի նկարագրություններ, որոնք եղել են Ե. Լալայանի Ձեռագրաց Ցուցակի անտիպ մասում, այժմ բացակայում են Պետ. Պատմական Թանգարանում պահվող Ե. Լալայանի արխիվից։ Վարդաշենի ս. Աստվածածնի եկեղեցում մի ժամանակ պահվող սույն ավետարանի հիշատակարանների հետ մենք ծանոթացանք պատահական մի ընդօրինակությամբ, որը կատարված է Լալայանի Ցուցակից, 1920-ական թ.թ. վերջերին։ Ձեռագիրը գրված է 1314—15 թվերին։ Գ, Դ, Ե, Զ, հիշատակագրությունները պետք է որ տեղադրվեին նշված թվականի տակ, սակայն մեր ժողովածուի սկզբի մասում լրացումներ կատարելն, արդեն, կապված լինելով մեծ դժվարությունների հետ, մենք 1349 թվաշարքում տեղադրեցինք Թուխթանի իշխանուհու հիշատակարաններից բացի, նաև ձեռագրի մյուս հիշատակարանները։ Մեր ձեռքի

Ձեռագրի գրիչ՝ Բարդաղ
վայր՝ Եղեգիս քաղաք

Գ

Աւարտեցաւ սուրբ եւ տիեզերալոյս վարդապետութիւնս Քրիստոսի աստուծոյ մերոյ կամաւ հաւր և նախախնամութեամբ հոգոյ նորա...ի թուաբերութեան Յաբեթական տումարի ՉԿԴ. (1315), յամս առաջնորդութեան արհիեպիսկոպոսի տեառն Յովհաննէսի մականուամբ Աւրպէլ կոչեցելոյ. ձեռամբ նուաստ եւ ոսկեգիր գրչապետի Բարդաղի, աշակերտի մեծ րաբունապետի Խաչատուր Կեչառեցի, գծագրեցաւ ի քաղաքիս յԵղեգիս, ի տէրութեան արեաց վեհագունի, իշխանաց իշխեցողի, մեծ կոմսի եւ կոգնակալի Բուրթելին եւ նորին հարազատի Բուղտային, ի խնդրոյ սրբասնունդ քահանայի Սահակայ, որոց ողորմեսցի Քրիստոս աստուած վերագրելոցն ի սմա յաւուր ի միւսանգամ գալստեան նորա։ Յիշեցէք յաղաւթս զՇնորհվոր տիկին՝ զմայր Պարոն Շահին, որ բարիոք սպասաւորեց սրբոյ աւետարանիս։

Արդ, ես՝ նուաստ քահանայ Սահակ անուն, որ ստացայ զաստուածընկալ աւետարանս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ եւ բարէպաշտ ծնողաց իմոց՝ Սարգիս քահանայի, եւ մաւր իմոյ Դալաթին, եւ ամուսնոյ՝ Մարիան, եւ մանկան նորա՝ Յուսկայ, նայ եւ եղբարց իմոց՝ Աբդլմսեհին, եւ Սարկաւագին, եւ Ամենաւագին, Գրիգորոյ, եւ տէր Աւագին, եւ Մուսիսին, Յակոբայ, եւ Սեթին, և քուերաց իմոց՝ Տիրամարն, եւ Տիրոցմարն, եւ Աննա խաթունին, որով ողորմեսցի մեզ եւ նոցա Քրիստոս աստուած, | | | յիշեցէք բարի մտաւք զԳրիգորես, եւ զՈւռուզուքանն, եւ զՍարգիս նկարարն։

Երանի զրիս, որ Թայ կենդանի եւ աւախ ձեռինս, որ հողանա ի գերեզմանի։

Դ

Սիրելի եղբայրն իմ զՊատրիկն, որ բազում կերակրաւք եւ ըմպելեաւք ծառայեաց զմեզ, յիշեցէք ի Քրիստոս։

Ծաղկող՝ Խաչատուր Կեչառեցի

Ե

Բոլորակիս շրջապատի
Դուք յիշեցէք զիս* բաբունի՝
Զխաչատուր Կեչառուեցի,
Թվ. ՉԿԳ. (1314).**

---

տակ եղող ընդօրինակության կատարողը հայտնում է, որ ձեռագրի նկարագրությունը «կատարված ըլլալով շատ անպիտան ձեռագրով, անընթեռնելի է բազում ուրեք», ուստի և սույն հրատարակությունը զերծ չէր կարող լինել թերություններից։ Աշխատել ենք, հնարավորին չափ վերականգնել հիշատակարանների աղճատված մասերը։ Ուղղագիծ փակագծերով ու հատուկ ծանոթություններով ցույց ենք տվել մեր ուղղումներն ու լրացումները։

* Թվում է պետք է եղած լինի՝ «զիմ»։ Այդ դեպքում հիշատակագրության հեղինակը կլինի ոչ թե Խաչատուր Կեչառեցին, այլ նրա աշակերտ Բարդաղը։

** Գրված է մի շրջանաձև զարդանկարի շուրջը, երկաթագիր տառերով։

Ստացող՝ Սահակ

Գ

Աղերս է այս եւ աղաչանք ըստացողի դրոցս Սահակ քահանայի, քանզի յետ մահուան մերոյ յով որ անկանի գանձս աստուածային [պարտական]* են ինձ առաջի աստուծոյ, զի յամենայն ամի երեք պատարագ կատարեսցեն հոգոյ իմոյ։ Կատարիչքն ուրհնին յաստուծոյ, և որ անփոյթ առնէ, պարտական է մեղաց և յանցանաց իմոց։

## 457.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 1565

Գրիչ՝ Մովսես

վայր՝ ի Ձորս Վայոց, ի Վանս Հերմոնի

Ա

212բ Գրեցաւ աստուածային և հոգեբուխ մատեանս ի փառս սուրբ երրորդութեանն և մի աստուածութեանն՝ հաւր և որդւոյ և սուրբ հոգւոյն, ի նահանգիս Սիւնեաց, ի Ձորս Վայոց, ի վանս Հերմոնի, ընդ հովանեաւ սուրբ քաւարանիս Գրիգորի. առ ոտս մեծ վարժապետիս Տիրատուր կոչեցեալ, կամօք և ձեռնտուութեամբ սորին, ձեռամբ Մովսես կրաւնաւորի, անարժան քահանայի, յետին և տկար ի սպասաւորս բանի, ի թուականութեան յաբեթեան տոհմիս տաւմարի մերձ
213ա ‖ կատարման վեշտասան յոբելինին, պակաս երկու ամ՝ ՉՂԸ. (1349)։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ճաշակէք յանմահական սեղանոյս, յիշեսջիք սեռն սիրով ի միտ բարիս և ի պատկանաւոր խընդրուածս զսուրբ վարդապետն իմ և զհայրն ըստ հոգւոյ՝ զվերոյասացեալդ, այլ և զՍամուէլ կուսակրաւն քահանայ և զԹոռոսեն, ընդ որս և զծնողսն իմ և զերախաւորսն ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ։

Այլ և զկրտսեր եղբարս իմ Ներսես, որ սպասաւորէր ինձ պղերգութեամբ և յոչ կամաց, և զիս՝ զբազմամեղ դրիչս, զի ի փափագմանէ սրտի գրեցի ի վայելումն անձին իմոյ։ Եւ նիւթս ոչ պատահեաց որպէս կամէի, բայց բանիցն ի ճշմարտութենէ ոչ ինչ նուազեալ...։

Նուիրատու՝ Մովսես

Բ

Ես Մովսես վարդապետ զիմ ձեռացագիր Նարեկեցիս տվի Նախապետ արեղին յիշատակ ինձ և ծնօղաց իմոց, ով ոք յիմոց կամ յաւատրաց դաւի առնէ, անէծք զՅուդային առնու և ղայլ խաչահանուացն։

* «Պարտական» բառն ավելացնում ենք իմաստը հասկանալի դարձնելու համար։

## 458.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ազգ. Հանդէս, Բ. գիրք, 1897 Թ., էջ՝ 285 (Ջավախք, Վաչիան գիւղի եկեղեցի), տես նաև 1337 Թ.

Գրչի եղբայր՝ Սարգիս
վայր՝ Ցղնա՞յ

Ի յայսմ ամի Թուաբերութեանս Հայոց ՉՂԸ. (1349), ի դառնացեալ և ի վշտացեալ ժամանակիս, յորում դաւրացեալ է ազգն Իսմայէլի, և բազում նախատանաւք և արհամարհանաւք տանջեն և նեղեն զազգս քրիստոնէից, մինչև զոմանց ինչս յափշտակեն, և զոմանս տուգանեն, և զոմանց տունս բուխտանաւք և հերձաւք և զուր բանիւք աւերել ջանան. զոր և սմա իսկ՝ Դանիէլ տանտիրոջս բազում անգամ արարին, որ ի սուտ և ի զուր մատնեցին և հազար դահեկան առին, և սա սրտի մտաւք և յաւժար կամաւք, վասն Քրիստոսի սիրոյն, ետ զայն ամենայն, և ոչ տրտմեցաւ, զի փոխարէնն առցէ հարիւրապատիկ և հազարապատիկ և բիւրապատիկ ատ(°) և ի սուրբ դատաստանին, ամէն։ Բայց գրեալ իսկ է ի սուրբ աւետարանիս, թէ ընդ ամենայն դատարկ բանից զորս խաւսեցին մարդիկ տացեն համար յաւուրն դատաստանի, զոր արժանի է կրել հերձասացն և բուխտանասացն և զուր մատնաւղն զպատիժ պատուհասի յարդար դատաւորէն Քրիստոս, և ընդ խաչահանուացն մատնեցին ի հուրն անշէջ, և որդն անքուն, և ի տարտարոսն ներքին, և Թողութիւն մի լիցի նոցա, ամէն։

Եւ արդ, սա՝ Դանիէլ տանուտէրս, ստացաւ զսուրբ աւետարանս յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնողաց իւրոց Խաղութին և Շնոհվորի, և կենակցին իւրոց Թանին, և զաւակացն՝ Խաղութին և Խեթին և Առիւծուն՝ տարաժամ հանգուցելոյն ի Քրիստոս, և այլ զաւակացն՝ մեծի և փոքու, և ամենայն յարեան մերձաւորաց, և ետ զսա անջինջ յիշատակ ի գեղեցիկ և յաստուածարնտկ տաճարս Ցղնոյ՝ մեծի այն սուրբ Աստուածածնին, սբ հտնապտղ մանկունք սորա հրճուին սովաւ յընթեռնուլն զսուրբ աւետարանս։

## 459.

## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

Երևան 2195

Գրիչ՝ Յովանէս*

ա

Գանձդ անապական և պահապան ամենայն եղելոցս, ազատեայ ի հրոյն յաւիտենից զստացող սորայ զէլխաթունն և զծնողս նորայ։**

* 299ա էջի աջ լուսանցքի լուսանցազարդի մեջ գրված է՝ Յովանէս, հավանաբար գրչի անունն է։

** Գրված է 152բ էջի ձախ լուսանցքում։

Բ

Իբրահոս քահանային մահն, որ ի Քրիստոս փոխեցաւ, ի թվականիս ՉՂԸ. (1349)։ Ախցացն* միջնանցն փոխեցաւ**

Հետ. ստացո՞ղ՝ Ավագ

Գ

219ա Սուրբ հարք Կոհներեաց ըերթի անապատիդ, զանապատս ի բարեաց զԱվագ վայդեպյետ*** յիշեցէք ի ժամ ընթերցման գրքս տօնապատճառ ի տօնս տէրունականս, և միով տէր-ողորմի ասելով օգնական լերուք ինձ՝ մեղուցելոյս, թերևս ողորմեսցի մեղուցելոյս, զի սովոր է ի ձեռն այլոց այլում ողորմել. և որպէս յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոս, ամմէն։

460.

ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Վիեն. 212. Տաշ. Ցուց., էջ 1020

Ցիշատակարան տառիս ի ստացողէ սորին՝
ի նուաստ Յովհաննիսէ Սեբաստացոյ

217ա ...Այլ ես՝ նրւաստըս քո ծառայ
Ցոյժ անպիտանս պաշտօնեայ,
Ջերանելոյս**** գիրն ընթերցայ...
Վասն այնորիկ կարօտացայ
Գըրել ի նիւթ մագաղաթեայ,
Գըրչաւ ճարտար, զոր ես ծանեայ,*****
Գըճնեալ ոսկւով ի գոյն ծաղկեայ.
Քա՛րեա տախտակն, որ ըստացայ,
Ցիս անմոռաց պահել ըզսայ,
Եւ յիշատակ ինձ առյապայ,
Եւ ինձ եւ իմոցըն մըշտակայ։
Նոյնպէս եւ սոյն տառիս գրողին,
Աշխատողին եւ ստուգաւղին,
Գայծառ-ծաղկօք զարդարողին,
Ի շար եւ կապ աւարտողին,
Փափագանաւք ընթերցաւղին,
Ջմիտս ըանից քըննաւղին,
Մաքուր մըտօք աղաւթողին

* Իմա՝ «Աղուհացիէ»։
** Գրված է 106ը էջի ներքին լուսանցքում։
*** Իմա՝ «վարդապետ»։
**** Իմա՝ Ներսիսի Շնորհալւոյ։
***** Գրիչն ու ծաղկողն է Գրիգոր, գրվել է հավանաբար Սուրխաթում։

Եւ ստացողիս յըղձմամբ սըրտին,
Ինձ եւ յիմոցըն ամենայնի,
Որ տարփանօք սիրոյ կրկին,
Ետու գրել ինձ ըղսորին։
Ի ծննդենէ մարմնով քոյին,
Ի թիւ յատուկ մի հազարին,
Երեքհարիւր եւ ի յիսնին,
Եւ ի մի ամ սկսեալ ամին.
Սակայն ի թիւ ասքանաղեան,
Ցեւթնհարիւր տոմարական,
Ի յիննըսուն աւարտական,
Եւ ի յութեակ թիւն յանգական (1349),
Իսկ ի փոքրիկըն մեր շրջան,
Ցերկուհարիւրըն թուական,
Եւ վաթսուն եւ հինգ աւարտական,
Ի վեցերորդ ամին սկըսման։
Քեզ մատուցի նըւերական,
Զտառըս մաքուր աղօթական,
Ես, որ ծառայս եմ անարժան,
Քո՝ Յովհաննէս այր անպիտան,
Զի յաներեկն օր քո ծագման,
Զմեզ ընկալցիս յաջոյն կողման։
Եւ քեզ տացուք փառս անվախճան,
Այժմ եւ յապայն եւ յաւիտեան։

ՋՂԹ 1350

**461.**

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

*Երևան 5597 (տես՝ Նաև 1614 Թ.)*

*Գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Սարի ոբ. Գէորգեայ վանք

ա

254բ *Գրեցաւ աստուածային այս մատեան ի Թուի[ն] Հայոց Ջ Ղ Թ.*
*(1350)-երորդի, յանապատիս* Սարի *սուրբ* Գէորգեայ *վանս առձայ-*
*նելոյ, ընդ հովանեաւ սուրբ մաւրս լուսոյ Աստուածածնի, յառաջնոր-*
*դութիւն տեղոյս* Կիրակոս *կրաւնաւորի, ի վայելումն անձին իմոյ և*
*յիշատակ հոգւոյ իմում և ծնողաց իմոց՝ ի Քրիստոս կատարելոց, և*
*որոց զԹացին ի կեանս մեր, ամէն։*
*Բաղձանք հոգևորական սիրոյ գերազանց զոլով քան զամենայն*
*եսս ցանկալիս մին[չ զ]ի որոց առեալ ունիցին զնա, մոռ[ացո]ւմն*
*ամենայն մարմնականաց իրաց առն[է], որում և ես կցորդեալ ըստ*
255ա *կարի ‖ ամենաԹշուառս հոգւով, տաժանմամբ երկոց ջանացեալ դրե-*
*ցի զլուսազարդ և զգեղեցկայեղց մատեանս արգասաւոր, ասացեալ*
*և յարգարեալ գործակցուԹեամբ հոգւոյն սրբոյ յաստուածայնւոյ առն*
*սրբոյն* Գրիգորիոսէ *Նարեկայ վանաց վանականի, աստուածաշունչ*
*վարժապետի, ի ստոյգ և յընտրելագոյն աւրինակէ. ես՝* Ստեփաննոս
*կրաւնաւորս, ի վայելումն անձին իմոյ հիքականի և աւժանդակ մխի-*
*ԹարուԹեան տրտմեցելոյս մեղաւք...։*
*Արդ որս աղաչանս բազմապիսի, որք հանդիպիք աստուածայինս*
*այս գանձու... զԹողուԹիւն մեղացս յանցանաց հայցել յամենառատ*
*պարգևացն աստուծոյ և ննջեցելոց մերոց՝ ի Քրիստոս հանգուցելոց,*
*և ամենայն երախտաւորաց՝ նախնեաց իմոց՝* Յորդորոյ *և* Յորդանա-
նայ. Սանվիէլի *և* Մնսրուպի, Թումայի, *և* Յոհանիսի, *և* Գորգոյ, *հա-*
*րեղբայրաց իմոց՝* Միրատրոյ *և կենակցի իւրոյ,* Հայրապետի *և կե-*
*նակցի իւրոյ,* Կարապետի, *և այլ առհասարակ ամենեցուն՝ մաւր*
*իմոյ* Մարթայի, *և* Վարդան *քահ[անայի], և եղբարց իւրոց, և ծնողաց*
*նոցին* Մ[երու]նոյ | | |* *հանգիստ և ողորմուԹիւն խնդրել ի Քրիս-*
*տոսէ աստուծոյ փրկչէն մերմէ, զի և ձեզ հասցէ [յոյս]ն փրկուԹեան*
256ա *անճրկեան ցնծուԹեամբ ի ‖ Նմանէ գտանել յաւուրն յետնում և*
*յանսպառ յաւիտեանին։ Ընդ նմին յիշեցէք* զՄովսէս *կր[աւնաւոր], և*
զԿիրակոս *կր[աւնաւոր], և* զՄարտիրոսեանք *կր[աւնաւորք], և* զԱնդ-

* *Պատռված է։*

*բեռռ կր[աւնաւոր], և զհարազատ եղբայրն իմ զՅոհաննէս, զի կայցեն սոքայ ըստ կամացն աստուծոյ, աջն հայրական և բազուկն Քրիստոսի պահեսցէ անարատ, և զաւրհնութիւնն ի բերանոյ աստուծոյ հանդիցէ ի վերայ սոցայ...։ Կրկին աւրհնեսցէ Քրիստոս աստուած զՄովսէս և զԿիրակոս կրաւնաւորք, [որք] յոյժ կամակից եղեն գծագրելոյ սոր[այ]։*

256բ *Աւրհնեսցի Քրիստոս աստուած զՍիմէոն կրաւնաւորն, որ բաղումս հոգայր ի վերայ մեր, ըստ հոգևոր խրատուց. ընդ նոսին յիշեսցի*, որ զպէտս պակասութեան մերոյ տայր հանապազ։ Աւրհնեսցէ աէր աստուած զանտեսս մեր զԱպրիլոս, որ սպասաւորէր մեզ յաւժարութեամբ։ Ցաւղեսցէ Քրիստոս աստուած զցաւզ ողորմութեան իւրոյ ի հողի և յոսկերս ննջեցելոցս, ընկերաց մերոց՝ Վարդանայ, և Դանիլայ, և Յոհանիսի, և Վարդիկ իրիցու, և մաւրն իմոյ, և քւերն, և Սարգիս կրաւնաւորացն, և Սուչանին, որ մլքատէր էր սուրբ ուխտիս, ոյոց ողորմեսցի Քրիստոս աստուած ամենեցուն, և քաղցրութեամբ նայեսցի յամենեսեան՝ յառաջնոցն մինչև ի վերջինսն, և յիս՝ յանպիտան գրիչս, որ չեմ արժանի անուանս կրաւնաւորու[թեան], ով զմեզ յաւժար կամաւք [յիշ]է, հայրն երկնաւոր զնոսայ ընդ առաքելոցն դասեսցէ, ամէն։*

257ա *Ո՜վ եղբայր և հոգւոյ իմում հարազատ, որ աւրինակ ընդունիցիս զսա առ ի յայլս գրելոյ, յոյժ վստահացիր ի բանս սորա, զի ի ստոյգ և ի ճշմարիտ աւրինակէ գրեալ և ուղղեալ եմ զսա, ի նմանէ, որ Մխիթար վարդապետն էր գրել և ուղղել, որ ոչ ինչ պակաս գտանիւր ի ճշմարտութենէ։ Եւ այնպիսի խնամ տարցես սմա, որպէս զքոյին մատանց գրեալ և տաժանեալ ի սայ, որպէս և ես, ոչ ինչ բան և կամ բայ և տառ քերելով ի սմանէ, և կամ յաւելուլ ինչ ի սմայ. այլ և զգուշացիր յամենայն դժրողաց զսայ՝ ի ցեցոյ և ի կերչաց և ի հիւթոց և յամենայն վատնողաց զվայելչութիւն գորա, միանկամայն և վերարկու ծածկութիւ հոգ տարցես դմայ, որպէս և իմաստուն վաճառական պատուական մարգարտաց։ Ո՜վ, ստացող սորայ, յորժամ զրաւեսցես զսայ ընթեռնլ[ով] կամ աւրինակելով, ծունր [աղաչե՜մ] կրկն[ել] վասն իմոյ և քոյոյ փրկութեան...։*

Վաճառող Յոհաննէս

Բ

250ա *Ես՝* Յոհաննէս, Աստուածատուր *իրիցու որդիս,* Ստեփաննոսի *եղբայրս ծախեցի զնորեկտցիս* Մկրտիչ *կրաւնաւորին առաջի աստուծոյ և ամենայն սրբոց | | |***

Գնող՝ Մկրտիչ

Գ

257բ *Ես՝* Մկրտիչ *կրաւնաւորս ստացայ զհոգեշունչ մատեանս՝ զսուրբ Նարեկացիս ի խալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնօղաց իմոց՝*

* *Անունը ջնջված է։*

** *Շարունակությունը՝ 6 տող, քերված է։*

Ներսեսի և Թանխաթունի, և եղբաւրն իմոյ Յովաննիսի, և քըւերն իմոյ Խէր խաթունի։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով յիշեցէք յերկնաթուիչ յաղաւթս ձեր զվերոյգրեալսն՝ զՄկրտիչ կրաւնաւորն, և զհայրն իւր զՆերսէս, և զմայրն իւր զԹանխաթուն, և զամենայն արեան մերձաւորսն։ Կրկին աղաչեմ զձեզ, ո՛վ սուրբ ընթերցողք, յիշման արժանի առնել զհողեւոր մայրն իմ՝ զԹամթայ, զի յոյժ գթայր ի վերայ մեր ծնօղաբար, տէր աստուած զնա՝ իւր ծնօղաւքն, և զյիշողքդ զմեզ զամէննեռեան հանգուցէ յարքայութեան իւրում, եւս առաւել զլի սրտիւ աստուած [ողո]րմի սասցողսն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Հետ ստացող՝ Ստեփանոս Սագարածեաց

Դ

259ա Զվերջին ստացող սուրբ գրոցս՝ զՍտեփանոս աբեղայն, որ մականուն Սագարածեաց կոչի, յիշեցէք ի Քրիստոս, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց՝ յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց։ Արդ, որք հանդիպիք սուրբ գրոցս յիշեցէք ի Քրիստոս զՍտեփանոս կրաւնաւորն և զամենայն մերձաւորքն իւր՝ զԿիրակոս վարդապետն և | | |

259բ Արդ, ես՝ Ստեփանոս կրաւնաւորս՝ ստացող սուրբ գրոցս, եառւ զսուրբ գիրքս Պատըրկի վանից սուրբ Աստուածածնիս և սուրբ Գէորգ զաւրավարին, անջինջ յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղաց իմոց, ամէն։

Արդ, մի ոք իշխեսցէ ծախել, կամ գրաւ դնել, և կամ հեռացուցանել ի դրանէ սուրբ Աստուածածնիս և Գէորգեա զաւրավարիս, եւ եթէ ոք յանդգնի ծախել և կամ հեռացուցանել, նա մասն զՅուդային առնու և զայլ խաչահանացն, և որոշեալ լիցի ի Քրիստոս, ամէն։*

## 462.

## ՄԱՆԿՈՒԹԵԱՆ ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար, Բ. էջ 411 (Տիգրանակերտի սբ. Սարգիս եկեղեցի)*

Վայր՝ Վանայ գաւառ,
գիւղ՝ Աւանց

Գրեալ յիշատակ Գեորգ կրաւնաւոր քահանայի, ի թուա[կանու]թեան] Հայոց ՉՂԹ. (1350), ձեռամբ Յոհ[աննէս] գծագրող քահանայի, ի հայրապետութեան Զաքարէի Հայոց կաթողիկոսի. եւ յառաջնորդութեան գերահռչակ սուրբ ուխտիս Վարագայ՝ համաշունչ եղբարց՝ տէր Սարգսի եւ տէր Պետրոսի, որք հեզութեամբ եւ հանդարտութեամբ հովուեն զբանաւոր հաւտս...։ Գրեցաւ ի գաւառիս Վանայ, ի գեաւղն Աւանց, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Կարապետին եւ սուրբ Գրիգորի Հայոց Լուսաւորչին...։

---

* Ըստ հնագրական տվյալների բ. գ. և դ. հիշատակագրությունները գրված պետք է լինեն կամ ԺԴ. դարի վերջին և կամ ԺԵ. դարի սկզբներին։

## 463.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8772 (տես նաև 1371 և 1391 թ.թ.)

...Ի Թուաժողովոյ Հայկազեան տոմարի ՉՂԹ*. (1350)* գրեցաւ
271ա աւետարանս և | | | կաթողիկեօքն ի ընդիր | | |** այլ և գգլուխ հո[յ]ակապ ուխտի և զարժանաժառանգ յաջորդ սուրբ առաքելոյս Թադէոսի վիճակի զտէր Զաքարիայ՝ զհանգուցեալն ի Քրիստոս։ Եւ զժառանգ նորին զտէր Տիրացուն, որ է այ[ր բար]եխորհ և իմաստուն, յոյժ անուանի և ամենեցուն մեծա<ր> մեծաց սիրելի, վասն որոյ աղաչեմ զձեզ, զի խնդրեսջիք ի տեառնէ կրկին մաղթանօք, ամենայն սրբոց միջնորդութեամբ և աղերսանօք, զի տացէ զսայ մեզ ընդ երկայն աւուրս, և պայծառութիւն սուրբ եկեղեցոյ և Ջահ լուսատու լինել բանիւ և գ[որ]ծով նուաղե[ա]լ ազգիս մերոյ, հանդերձ հարազատ եղբար[ր]ք իւրովք, այլ և նախնեօք հարց և հաւուց, և ամենայն արեան մերձաւորօք՝ կենդանեօք և հանգուցելովք։ Եւ յետ ատէս հրաւիրանաց զասեսցի զասս լուսեղինաց երանաշնորհ սուրբ դիտապետացն և հայրապետացն խմբից կաճառակցեսցէ [իւր]այօքն հանդերձ | | |**

## 464.

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Թորոս Աղբար, Բ. էջ 391—392
(Արղնոյ Բարձրահայեաց սբ. Աստուածածնի վանք)

Վայր՝ Սուրխաթ

...Գրեալ ի Թվ. ՉՂԹ. (1350), ի հայրապետութեան տէր Միխիթարայ ուղղափառ հայրապետի, ի թագաւորութեան Կոստանդիանոսի, յեպիսկոպոսութեան այսմ նահանգի հիւսիսական կողմանցս հեզահոգի եւ գեղեցկատիպ եւ յոյժ ողորմածի տէր Ստեփանոսի, եւ երկրորդի նորին՝ Յոհաննէս աբեղայի Սրաստացւոյ՝ ուղղափառ հռետորի եւ իմաստասիրի, եւ յաշխարհակալութեան Ջանիբեկ ղանի, եւ իշխանի քաղաքի Ռամատնայ՝ իմաստուն դատաւորի։

---

* Ջնջված հնի վրա հետագայում, նոր թանաքով, գրված է ՆՂԲ. (1050) սխալ թվականը, համոզված ենք, որ «Ն»-ի տակ գրված է եղել «Չ», իսկ «Բ»-ի տեղ նշանակում ենք «Թ», որովհետև այն վերափոխվածի տակից կարդացվում է և այսօր։

** Թերթ է ընկել։

## 465.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ ԵՊԻՓԱՆՈՒ

Վիեն. 11. Տաշ. Ցուց. էջ 107

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Սեբաստիա

857 Փառք...շնորհել մանկանց յառագաստի յիշատակ Ասլանին, եւ ի վայելումն Աւետիս* քահանային...զոր ընկալցիս աստուածորդի... զճգնութիւն սուրբ Գրիգորի...Հայոց ազգի Լուսաւորչի, տէր Սիմէոնին հայրապետի, որոյ գաւառս Սեբաստի, աթոռ սորա մենաստանի, եւ սուրբ Նշան եւ Սուրբ Գէորգ զօրավարի...յիշատակ պարոն Ասլանին, եւ կենակցին՝ Թանմէլէքին, եւ ծնողացն Պարոն Ծերին, եւ Քիմիա խաթունին, եւ եղբարցն Տումանին, եւ յաստուած փոխեալ Սինանին, եւ Պաեր խաթունին, եւ գաւակացն՝ Պարոն Լուսին, եւ Ծերին եւ Աստրբէկին, Սանամ խաթունին, եւ գաւակացն՝ Սրապին, եւ կենակցին Տայուս խաթունին, Անպետին եւ Կունաշին...

Գրեցաւ գիրքս աստուածային ի թուականութիւնս Հայոց ՉՂԹ. (1350), ի վայելումն Ասլանին... եւ գրողի սորա Ներսէս կրօնաւորի, հարց եւ մարց եւ եղբարց մերոց, մեր մեղացն եւ յանցանացն թողութիւն խնդրէ...,**

---

* Տպված է «Աւետիս»։

** Սույն հիշատակարանը Եպիփանի ճառերի ժողովածուի հետ մեկտեղ արտագրել է 1853 թվին Սահակ վարդապետ Ամասիացին, իր արտահայտությամբ «յոյնպիսի օրինակէ, որոյ գրիչն գոլով անարհեստ, բազում աշխատեցոյց զմեզ»։





466.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 37, Տ.-Ավետիսյան, Ցուցակ, էջ 170—171
(տես սկիզբը 1348 թ.)

Նուիրատու՝ Բախտիկ
ծաղկող՝ Գրիգոր
ստացող՝ Մաթուէլ

Արդ, ես՝ ծառայ տեառն, աղախին,
Բախտիկ անուն կամ և տանջիմ,
Զօրն կու յիշեմ ես զահագին,
Ցորում գործեալք մեղք մեր յայտնին,
Ցայնժամ վառի հուր գեհենին,
Բազում ոգիք մարդկան այրին,
Գայ թագաւորն այն միածին,
Նստի յաթոռ դատաստանին,
Աջակողմեանքն ուրախ լինին,
Ձախակողմեանքն պապանձին,
Հրեշտակք ի յայն յահէն [սարսին],
| | | արկեալ թագաւորին (՞)։
Ցայնժամ չօքտէ մարդկան տոհմին.
Ազգք և ազինք անյայտ լինին։
Զօքտէ զաւակ և իւր որդին,
Դստերք ծնողաց չբարեխաւսին։
Ցայն ատենէն ես ո՞նց փրկիմ,
Կամ ո՞վ ինձ տա վկայութիւն.
Զաստուածածինն ես յոյս ունիմ,
Եւ բարեխաւս առ իւր որդին,
Ով զիս փրկէ յայնմ ժամին,
Ի յայն յահեղ հրապարակին,
Բայց յիշելով այժմին սարսիմ
Եւ ես ի յայն ահէն հալիմ։
Զմտաւ ածի թէ ինչ լինիմ

*Կամ որ ծիսով ես պրծանիմ**

. . . . . . . . . .

*Կանգնի զիմաց սուրբ սեղանին*
*Մեղսաքաւիչ պատարագին,*
*ԶԱյթախօջեց, որ կէանք էր իմ,*
*Թաէ և պարծանք գլխոյս էր իմ,*
*Նայ և զծնողսն, որ մեր էին*
*Եւ զմերձաւորսն, որք մեր էին։*
*Նուաստ Գրիգորս, որ գրեցի,*
*Ջծաղիկս և գիրքս կազմեցի,*
*Ի Հայկազեան թուականի*
*Ցութհարիւրին (1351) կատարեցի,*
*Ի զառն և ի նեղ ժամանակի,*
*Որ հալածին բազում յերկրի,*
*Ոմանք ծնացի[ն ի] մէջ թփի,*
*Ոմանք կերակուրք եղան գայլի,*
*Սովով անցան շատ մին ոգի*
*Հարք ուրացան զիւրեանց որդի,*
*Ամ իմ կամք չէր, որ ես ծաղկի*
*Ու՛կամ կամաւ ես կազմէի,*
*Ես վատատես յաչիցս** էի,*
*Բայց հարկ արին ու ամաչէի.*
*Ես աղաչեմ զձեզ մէկ բանի՝*
*Զպատճառէք վասն սխալի,*
*Ցիշման արնէք զիս արժանի*
*Սուրբ աղօթից վասն Ցիսուսի։*
*Արգ, ես՝ Մաթուկ, որ յանձն առի,*
*Եւ չորս ամեայ փափաք կացի,*
*Զքանս Ցիսուսի գրել տվի,*
*Մինչև տեսայ ծաղկով ի լի,*
*Ի յիշատակ Այթախօջի*
*Եւ կենակցին իւր Բախտիկին*
*Ցիշեսջիք | | | յամ | | | ն ան. առ | | |*

*. * Մի շարք տողեր, թղթով կարկատված լինելու պատճառով, մասամբ դարձել են անընթեռնելի. այդ տողերից կարդացվում են հետևյալ բառերը.« | | | ող եղայ եռ հրաման | | | յորում գրեալքնըն փ | | | ն, թէ գանձեցէք ձ[ե՞ղ դ]անձ անդին, որց | | | ւաէ զողք հատան | | | այժմ գտեալ եմ գա[նձ ա]նգին, յօժարութ[եամբ | | | ավի դին։ Ով ընթերցողք բանիս փ | | | ն կամ փափաքի | | | ինակին, յիշե[ցէ]ք զիս, որ ես փրրկիմ, | | | է անցանքն իմ քա | | | Զգիրքս [տվի] ես տէր Մաթուէլին | | | յն կուսակրօն օհին. (քահանային), որ զիս յիշէ | | | ժմին | | | որ | | | խորհուրդ նա | | | փրկչին»։*

*Շարունակությունը պահպանվել է առանց տուժելու վերանորոգումից (տես վերը)։*

*** Ընդօրինակության մեջ «աչիչս»։*

## 467.

### ԱՐԵՏԱՐԱՆ

*Երևան 2745 (տես նաև 1557. 1604, 1616, 1619 և 1738 Թ. Թ.)*

*Գրիչ՝* Կիրակոս
*վայր՝* յԵրկիրս Լևոնոյ (Կիլիկիա)

ա

6ա *Զստացողք սուրբ աւետարանիս զՅոհանն քահանայ, և զծնաւղսն ի[ւ]ր՝ զՀարուն և զԽրեղ, և զբարի կենակիցն իւր զՌսկին, զբարի ծաղկեալ զաւակ սորա՝ զՅովաննէս, և զՀարունն, և Սարգիսն, և զՄխիթարն, և զԽազարբէկն, և զհանգուցեալ մայր սոցա՝ զՍիրէն, և զկենակիցք սոցա յիշեցէք, և զհանգուցեալ եղբայրն՝ զՍտեփաննոսն, և զզաւակ սոցա՝ զՅուսէփն և զԱմիրն յիշեցէք ի Քրիստոս, որ ստացան զսա ի խալալ արդեանց իւրոց յիշատակ իւրեանցն, և ծնաւղաց իւրեանց, և ամենայն արեան մերձաւորաց իւրեանցն, և յիշատակ բարի հոգոց իւրեանցն; ի վայելումն բարի ծաղկեալ զաւակաց իւրեանց...։*

*Արդ, գրեցաւ յիշատակարանս այս. Թվ. Գ. (1351), ի չար և ի դառն ժամանակիս, զի փախ[ուցեա]լ էաք յերկրէն* Ախբակս, *ի պատերազմէ այլազգաց | | | իշխանին՝* Աշրաֆին, *և գրեցաք* յԵրկիրս Լևոնոյ, *ի բարձր | | | այս, բացուԹ էաք ի ծաղկազարդ վայելչուԹիւնս և մ[աւտ ի յա]կունս* Տիգրիս *գետոյս, ի պանդուկի միոջ, զի ոչ գոյր | | | հովանոցք մեր, և մեք զաւրն ամենայն անարեկ լինէաք և | | | ըստ այլ (˜) ի տեղիս տեղիս։ Աղաչեմ զձեզ յիշեցէք զիս [զմեղ]ապարտ գրիչս և զնկարող և զկազմող սորա՝ զ*Կիրակոս *[քահ]անա, և զծնողսն իմ ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ. և զմեզ և զձեզ հ[րաւիր]է ի խոստացեալ հանգիստն և զամենայն հաւատացեալսն | | | մէն. և Քրիստոսի աստուծոյ մերս փառք յաւիտեանս, ամէն։*

բ

2ր *Զարուեստ նկարագրուԹեան և ծաղկերանգն զունոց ոչ գիտեմ։ Զհամարաբբառս ընկալ և զստ[աց]աւղ սորայ և զաշխատողս յիշեսջիք ի Քրիստո., և Քրիստոս զձեզ յիշէ ի բարի, ամէն։*

## 468.

### ԱՐԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար. Բ. էջ 356—357 (Ակշան գիւղի եր. Գէորգ եկեղեցի)*

*Գրիչ՝* Ազարիա
*վայր՝* Սկեղեաց գաւառ

*...Սուրբ աւետարանիս ցանկացող եղեալ* Հայրապետ *քահանայն եւ ետ գրել զսա յիշատակ իւր եւ զաւակի իւրոյ* Յակոբայ*...Աւգնա-*

կանութեամբն աստուծոյ առեալ զսա յանձն քահանայ ոմն Սիմէոն անուն, եւ գրեաց զՄաթէոս գլուխն ի լրման եւ զՄարկոսն մինչեւ ի հարիւր եւ ի տասն համար, առ զրան Հայրապետ երիցու եկեղեցւոյն՝ սրբոյն Յակոբայ եւ սուրբ Թորոսու։ Եւ եղեւ, զի վասն չար եւ զառն ժամանակիս, որ վասն ծովացեալ մեղաց մերոց, բազում գեղ աւէր եւ անբնակ եղեն ի մարդոյ եւ յանասնոյ, սա ելեալ յԵկեղեաց գաւառէ գնացեալ հեռաբնակ գաւառսն, եւ մնացեալ սուրբ աւետարանս թերակատար ժամանակս բազումս։ Իսկ նախասացեալս Հայրապետ երէց, եղբայր գոլով մեր ըստ մարմնոյ, յոյժ բռնադատեաց վասն սորա զի զկատարումն առցէ։ Եւ ես ոչ առնուի յանձն յաղագս տկարութեան անձին իմոյ եւ զի չէի հմուտ այսմ գրչութեան արհեստի։ Ապա նա եւս առաւել յորդորեալ զմեզ, զի հանապազ եկեղեցին մեր կացցէ յիշատակ մեզ և ծնողաց մերոց, և ի ժառանգութիւն զաւակի մերոյ Յակոբայ, եւ ես վստահացեալ ի զաւրութիւն աստուծոյ, առեալ ի ձեռն զսա գրեցի եւ զպակասութիւն սորա լցի ըստ կարողութեան անձի իմոյ...։

Գրեցաւ ի գաւառիս Եկեղեաց, ի յանապատիս, որ յանուն սուրբ Կիրակոսի, մերձ առ ի ստորոտս լերինն Բջնոյ, զի է տեղի հանգըստարան մերոյ, ի թուականութեանս Հայոց Պ. (1351)...։ Յիշեցէք... եւ հայցեցէք զթողութիւն մեղաց առաջին աշխատողին եւ գրողին սորա Սիմէոն երիցու... այլ եւ մեղուցեալ անձին իմոյ Ազարիա աբեղայի, որ զյետին գիրս գրեցի...։

## 469.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետ. 00, Սարգս. Ցուց. Ա. էջ 400—410

Հետ. ստացող՝ Յակոբ
վայր՝ Հռոմ

ա

276բ Զվերջին ստացաւղ սորա զՅակոբ կրաւնաւոր, որ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց, ի Հռոմ քաղաքի, ի թվին Հայոց Պ. (1351), ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի Քրիստոս զբարի ծնողսն իմ զԱստուածատուրն և զԱլիմէլիքն, նաև և զեղբարսն իմ, և զքորսն իմ, և զազգայինսն իմ միով տէր ողորմայիւ. նաև և զիս՝ զբազմամեղս՝ Յակոբ աբեղաս, որ անուամբս կոչիմ աբեղա և գործովս լի եմ ամենայն մեղաւք։ Ո՜վ սուրբ ընթերցաւղք. յերես անկեալ աղաչեմ զձեզ, յիշեսջիք զմեղաւոր հողս...։

Բ

83բ Ես՝ Յակոբ աբեղաս, ի կարգէն սրբոյն Բասիլիոսի, ավի զիմ աւետարանն ի սուրբ Աստուածամաւրն Հայոց եկեղեցին, ու առի Գ. (3) սոմ(°) հոռմայ ճամբուն, որ մարդ ան աւետրնին տէր չի լինի քան սուրբ եկեղեցին, ոչ ես |ոչ| իմ եղբա[յ]ր, բայց միայն սուրբ Աստուածածին, ով այլ տէր ելնէ, վախէ աստուծոյ մաւրէն։ Այս իմ ձեռացս գիր է, Յակոբ աբեղայիս վկաութեան բանիս, ինքն Քրիստոսի (°) անդարձ | | |*

470.

ՇԱՐԱԿՆՈՑ

Երևան 8400

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Մերտին, Թվին մենաստան

266բ ...Գրեցաւ սա ի Թվ. Ղ. (1351), ի մայրաքաղաքս Մերտին, ի մենաստան Թվին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յովհաննու Կարապետիս, ձեռամբ յոգնամեղ փցուն և անարհեստ գրչի Վարդանի** սուտանուն քահանայի, ի խնդրոյ մանկագոյն քահանայի Բարսղի, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և ի յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա.ուսմամբ, կամ աւրինակելով և կամ տեսութեամբ, յիշեսջիք ի Քրիստոս զվերոյգրեալն զԲարսեղ քահանայ, և զծնողսն իւր զՅակովբ և զԱղէկտիկին, և զկենակիցն նորին, և զգեղաբոյս որդին զԱռաքելն, և զամենայն մերձաւորս նորին, ընդ նոսին և զմեղապարտ գրիչն, և ծնողս իւր զԱռաքել քահանայ և զՆազեր, և զեղբարսն իւր՝ զՆերսէս, և զՅուսիկ, և զՍարգիս՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, և զքուերսն՝ զԽելաւէն՝ իւր տղայուքն, և զԱղէկն՝ իւր տղայուքն։ Եւ որք զմեզ յիշէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Եւ խոշորութեան և սխալանաց անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր, և զորս սխալ գտանէք եղբայրաբար ուղղեցէք։

Յիշեցէք ի Քրիստոս.և զհոգևոր որդին մեր զտէր Աւագն, որ սպասաւորէր զմեզ, և զպարոն մղտսի Թաթուլն, որ զթուղթն շնորհեաց յաւգնութիւն գրոցս. եւ որ առատն է ի տուրս բարեաց՝ Քրիստոս աստուած[ն] մեր՝ ձեզ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

* Թերի է։
** Բնագրում՝ «Վրդն»։

## 471.

### ԾԱՇՈՑ

*Ե. Հայ. անտխվ. 678. Պատմական Թանգ. (Վանի Արարուց եկեղեցի)*

*Նորոգող՝* Գրիգոր

*Զատացող վարդավիթիթ բուրաստանիս զ*Իբբիանոս *քահանա, և զհայր իւր զ*Տիրատուրն, *և զմայր իւր՝* Մամքան, *և զեղբայրս իւր, և զամուսին իւր յիշեսջիք ի Քրիստոս, ընդ Նոուին և զեղկելի գրիչ... զ*Գրիգոր *սուտանուն քահանայ ի մաքրափայլ յաղաւթս յիշեցէք զիս, և զծնաւղսն՝ զ*Իբբիանոս *քահանայ, և զմայրն իմ՝ զ*Մամիկ, *և ասաս-ջիք միշտ տէր ողորմեայ։*

*Թվ. Գ. (1351), ահեկի. Լ. (30) աւրս Նորոգեցաւ*

## 472.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրդ. 6273, էջ 153 (Մարդուան, սբ. Աստուածածնի եկեղեցի)*

*Գրիչ՝* Յակոբ
*Վայր՝* Եզնկայ

*...Եղև զրաւ գրչութեան սորա ի թուաբերութեան արեթական դրոհի Գ. (1351). Գրեցաւ տառս աստուածայինս և տիեզերաքարոզ աւետարանս ձեռամբ սուտանուն քահանային* Յակոբայ, *մայրաքաղաքս* Եզնկայ՝ *ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչին, ի հայրապետութեան Հայոց տեառն* Մխիթարայ։ *Արդ, աղաչեմ զձեզ՝ դասք քահանայից, որք հանդիպիք այսմ աստուածախօս մատենիս կարդալով կամ տեսանելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զեղկելի գծողս* Յակոբ, *և որ առատն է ի տուրս բարեաց՝ ձեզ և մեզ ողորմեսցի։*

## 473.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Երևան 758*

*Գրիչ՝* Գրիգոր

*Գրեցաւ տէտրս Լ. (30) աւր։*

*Արդ, գրեցօ սա ձեռամբ անիմաստ գրչի և յոյժ մեղապարտի* Գրիգոր *անուամբ միայն աբեղայի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ երգարանի, յիշեցէք յաղաւթս ձեր զիս՝ զանար ‖ ժան*
246ա *գծողս զ*Գրիգոր *<գծողս>, և զծնաւղսն իմ՝ զհոգեորսն և զմարմնաւորսն, ընդ նմին և զստացաւղ տառիս զ*Յօվսէփ *կուսակրաւն քահանայ, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, յիշատակ իւր և ծնո-*

զաց իւրոց։ Արդ, որք աւգտիք ի սմանէ, յիշեցէք յարաժամ զՅովսէփ մանուկ կրաւնաւոր, և զծնաւղսն իւր զԹումա քահանայ, և զմայր իւր զՄարխմքազն, և զեղբայրն իւր զՂազարն, և զքոյրն իւր
240բ զԹուրանմելիքն, և զայլսն ամենայն, զի և դուք լիջիք || ք յիշեալ ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Թվ. Գ. (1351)։

474.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7750

Գրիչ՝ Մկրտիչ

127ա Յամի ութհարիւրերորդի (1351) կատարեցաւ սուրբ կտակս աստուածախաւս, որ է աւետիս փրկութեան հաւատացելոց ի Քրիստոս, ձախիւք և արդեամբ աստուածասէր առն Սահակայ, որ ետ գրել զսա ի յիշատակ հոգւոյ եղբաւր իւրոյ Սիմէոնին, որ մանուկ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս, և ծնողացն իւրոց Մեծկանն և Դրոցին, և հարազատ եղբարց իւրոց՝ Կարապետին և Սահակին, և զաւակաց իւրոց։

Արդ, որք աւգտիք և լուսաւորիք ի հոգենորոգ աստուածաբանութեան սուրբ աւետարանիս, յիշեցէք յաղաւթս զստացաւղքս, որ ի սմա աշխատեցան և յորոյ անուն կատարեցին, և Քրիստոս ողորմեսցի յիշեցէ յիւրում գալստեանն, զյիշաւղքդ և զյիշեցեալքս, ամէն։*

263բ Ես Մկրտիչ երէցս գրեցի զաւետարանս յիշատակ Սիմէոնին։

* Համանման հիշատակարան գտնվում է նաև 264ա էջում։



ՊԱ 1352

475.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7631 (տես նաև 1466 թ.)

Գրիչք և ծաղկողք՝ Աւագ և Սարգիս [Պիծա՞կ]
վայր՝ Կիլիկիա

260բ Ո՛վ, զմեղաւոր հողս զԱւագ վարդապետ զանարժանս, զոսկաւղ և զծաղկող սուրբ աւետա[րանիս], յիշ[ել] աղաչեմ։

Նայ և զանարժանս Սարգիս երէց, որ բազում աշխատութեամբ, ի զառն ժամանակի, որ էր թիւս Հայոց ՊԱ. (1352), կատարեցի զսա իմով անձամբ և ձեռաւք, ի խնդրոյ մեծ և հռետոր րաբունոյն Ավաք կոչեցեալ։ Որ ինքն մեծ րաբունին գրեալ էր զաւետարանս զայս մինչև ի յՂուկաս, ու վանց որ այլ մագաղաթ չկայր, նա մնացել էր կիսկատար. նա, վասն յոյժ սիրոյն Քրիստոսի, կու ջանայր, որ ի գլուխ ելանէր սուրբ աւետարանս այս։ Յորժամ կամ եղև աստուծոյ, որ մեծ րաբունին Ավաքն եռափափաք սիրով կու խնդրէր յաստուծոյ, որ ի գլուխ ելանէր, նա կատարեց աստուած զիւր խնդիրքն ու պատրաստեց զանաւթն գրոցս, որ կատարեցաւ ի փառ[ս] աստուծոյ, ամէն...

476.

ՉԱՓԱԲԵՐԱԿԱՆՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 4311

Գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Աղբակոյ գաւառ, գիւղ Խաշնոց

ա

141ա Զձեզ աղաչեմ, որդիք մարդկան,
Սիրող բանիս տէրունական,
Յորժամ կարդայք զբանս ողբական
Սուրբն Ներսէսի գրաւորական,
Յիշէք ըզսէրն արքայութեանն,
Սիրտ ձեր ողբայ 'ւ աչերդ լան,
ԶԿարապետ սուրբ քահանայն
Յիշէք յաղաւթս ձեր արժան,
Ստացաւ ըզսայ մեծ փափաքման
Անձինն իւրոյ վայելչական
Եւ յիշատակ իւրոյ անուանն,

Զծնօղ սորայ՝ զսուրբ քահանայն
Թումայ անուն, զմայրն աննման,
Առնէք զսոսայ յիշման արժան
Ի յաղօթելն ձեր արժան։
Եւ զԿիրակոս անձն անարժան,
Որ զբանս գրեցի աղօթական,
Առնել զմեզ յիշման արժան
Յաղօթելոյն ժամուն զղջման,
Ով մեզ առնէ յիշման արժան
Իւր շատ յանցանքըն թեթևանան,
Ի միւսանգամ սուրբ գալըստեանն
Բաղմի յերկնից արքայութեանն
Երգել ըզփառս միշտ յաւիտեան։
Գրեցաւ սայ ի յԱղրակոյ գաւառիս,
Ի գիւղ անուն յոյս Խաշնոցիս,
Ընդ հովանեաւ սուրբ Մարիանիս,
Ի յութհարիւր և մի թվականիս (1352),
Ի դառն և չար ժամանակիս։
Ի զօրանալ այլայսեռ ազգիս,
Ի փախըստեան ժամանակիս
Գրեցաւ ձեռամբ մեղապարտիս,
Եւ ի ձմերան ժամանակիս.
Մի մեղադրէք ինձ՝ գրողիս,
Վասըն խոշոր և սխալ գրիս,
Զի զողութեամբ ախն ի սրտիս,
Գրեցի անժուժ զբան Ներսէսիս,
Զի ահն և զողըն պատէր զիս,
Ձեռս դողայր ի վեր[այ] թղթիս։*

Բ

117բ Ով, եղբայր ի յայս մէջս Ե. (5) թուղթ թողի վասն այն, զի արարչական շարականներ յամէն շարակնոց կայ, և թուղթըս սակաւ էր, և ահուփախս ի հետ, որ յամէն պահ մեռանէաք. դու մի մեղադրէր թէ պակաս է, լուր ջանք դիր, որ զայս կարդաս և լուսաւորիս։

## 477.

## ՔԱՐՈԶԳԻՐՔ ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ

Երևան 2233

Գրիչ՝ Մանուէլ
վայր՝ Երուսաղէմ

338բ ... Արդ, ի մանկութենէ նա՝ [քաջ բանի սպասաւոր Մխիթար

* Սույն հիշատակարանին նախորդում է գրչի կողմից հորինված ընդարձակ և պատմական արժեք չունեցող մի ոտանավոր, որի տնատառերը հոգում են՝ «Կիրակոսի է երգս այս» նախադասությունը։

կուսակրօն քահանայս]*, ի տիս տղայութեանն հետևող գոլով քննու-
թեանց գրոց և բանասիրաց իմաստնոց, և զայն՝ սակս օգտի հոգոց և
տենչանաց երկնից արքայութեանն, ջանս և աշխատութիւնս ոչ սա-
կաւ տարեալ եղև ի հաւաքել զրաղում գրեանս, և որ ինչ մարմնա-
ւոր պիտոյից անկանէր ի փառս աստուծոյ՝ ի մատեանս աստուածա-
յինս ծախեալ լինէր. նոյնպէս և զքարոզգիրքս ետ գրել ի վայելս ան-
ձին իւրոյ, և ի մխիթարութիւն հոգոյ, և յետ ատեացս՝ յիշատակ
իւր և ծնողաց իւրոց, հօր իւրոյ Անդրէասի, և մօր իւրոյ Լիքսանտայ
և ամենայն արեան մերձաւորաց իւրոց։ Արդ, որք օգտիք ի սմանէ
կարդալով կամ օրինակելով յիշման արժանի արարէք։
Արդ, գրեցաւ գիրքս այս ի հայրապետութեան տեառն Մխիթա-
րա և ի թագաւորութեանն Հայոց Կոստանդեա։
Եւ որ եմք բնակեալքս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, սուրբ և ար-
հի եպիսկոպոսիս մերոյ վեհագոյն աթոռոյ սուրբ առաքելոյս Յակոբա,
337ա նախ և առաջին սուրբ եպիսկոպոսի ‖ այժմս յաջորդի և մեր վերա-
դիտապետի, հեզի և անարատի, շնորհօք ողորմութեանն աստուծոյ
առաքելական աջոյն արքեպիսկոպոսի սուրբ քաղաքիս Երուսաղէմայ
տէր Բասիլիոսի, որով ծանիցի լսողաց զկնի սուղ ժամանակիս անցելոյ,
զի յաւուրս սորա ոչ երբէք երևիւր ի բնակիչքս սորա ամբարտաւան,
զի ամբարտաւանք ի սորա կարի և անչափ խոնարհութիւնն հայելով,
ամաչեցեալք լինէին, և ոտանաւին զհեզութիւն և զխոնարհութիւն, և յա-
մենայն տեսակս առաքինութեան զարդարեալ էին, քանզի որպէս և վա-
յել էր աստուածակոխ և աստուածաբնակ քաղաքիս այնպիսի տեսուչ
և առաջնորդ, զնոյնն աստուածային անսզութեամբն շնորհեալ, ի վա-
յելս սուրբ, անարատ և անապական սուրբ Գերեզմանիս, սուրբ Գող-
գոթայիս, և սուրբ Համբարձմանն, և սուրբ Ժամադրութեանն տեղի,
նաև գերեզմանի սքբուհոյ Աստուածածնին. զոր թէպէտ և ժամանակս
խիստ էր զառն, սակայն սորին քաղցրութիւնն զամենայն քաղցրու-
թեամբ անցուցանէր։ Եւ ողորմած կամք սորին ոչ միայն յաղքատս,
այլև յայնոսիկ, զորս յարկածից չարին, յորս այս ետղբից(*) գլասա-
կարին սահեալ և անկեալք, նոցա. տիրապէս զութ շարժեալ, զերկս
արձակեալ ի ծոց իւր ժողովէր, և սիրով հանգարտութեան զամենե-
սեան խրատէր. քաղցելոց՝ հաց, ծարաւեացն՝ ջուր, մերկիցն՝ զգեստ,
օտարաց՝ ժողովօղ, հիւանդաց՝ այցելու, բանտարգելոցն՝ խնամա-
ծու, և առհասարակ ամենեցուն տածօղ և վերակացու և ծաղիկ մխի-
թարութեան երևեալ ի հիւծեալ և ի մաշեալ ժամանակիս, զոր տէր
Յիսուս, ըստ վերոյգրելոցս շնորհեսցէ զտէր Բասիլիոս ընդ երկայն
աւուրն ուղիղ վերակացութեամբ, պարարդաց ամօք, երկարեալ ժա-
մանակաւ մեզ ամենեցուն, և ցօղն օրհնութեան սրսկեսցէ ի յոգիս
ննջեցելոց իւրոց, և զտրիտուր փոխարինին հատուսցէ նմա աստ և ի
հանդերձելումն, և օրհնեսցէ զնա հոգով և մարմնով, կրկին կենօք և
երկու աշխարհօք, ամէն։

* Ուղղագիծ փակագծերում բերված է 336ա էջի հիշատակագրության ավյալը։

337բ *Այլ և զպատուէլի եղ[բ]արքս մեր, զերկոքին Թորոս՝ զփակակալ և զխոստովանահայր, որ վասն յոյժ խոնարհութեանն և համեստութեանն, թէպէտ հասակաւ տղա գոլով, սակայն խելօքն՝ կարի ուշիմ և հանճարեղ, զոր ամենեցուն հլու և հպատակ հրամանաց, սիրեցեալ յամենեցունց՝ կացուցեալ եղև ի վերայ երկուց մեծամեծ գործոց, զոր տէր Յիսուս պահեսցէ անմատչելի ի գործս իւր, ամէն։ Եւ զմիւս Թորոս՝ հայրպետ մեծահանդէս մենաստանիս սուրբ Յակոբայ, և զոր ի սորին համբերութիւն և յանբերելի խոսակարգութիւնն նաեցեալ, որ ոչ երբէք բարկացող և ոչ զոք անարգող և դառնացուցանող, այլ ամենայն չարի և բարոյ քաղցրութեամբ տանէր, և ամենեցուն լինէր խնամօղ և գթած առ ամենեսեան, վասն որոյ հայրն երկնաւոր պահեսցէ զնա անվեհեր ի գործս իւր, և անարատ պահեսցէ հոգով և մարմնով ի կամս ողորմութեան իւր։ Այլ և զհամաշիրակ և հրեշտակերամ աստուածարեալ եղբարքս համահաւաքեալ յամենայն Հայաստան ազանց, ի սահմանաց հեռաւորաց և մերձաւորաց, անսասան պահեսցէ ի միաբանութիւն և յարաշարժ յամենայն առաքինութիւն, հանդերձ հովուապետաւս մերով տէր Բասիլիոսի, և զայն ի պարծանս ազգիս բարեհամբաւեալ և ի փառս և ի պատիւ սրբոյ երրորդութեանն, ամէն։*

*Եւ զՄանուէլ քահանայ և զծնողսն իմ, որ զգիրքս գրեցի, [ո՞վ ընթերց]օղ, աղաչեմ յիշել ի տէր։ Եւ զՄոմեր միայնակեաց, երախտաւոր եղբայր մեր յիշել աղաչեմ։ Եւ աստուած առհասարակ յիշողացդ և յիշեցողացս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեան։ Թվ. Պ. և ի մին (1352) գրեցաւ, ի քաղաքիս Մար կոչեցելոյ։*

## 478.

## *ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ*

*Վասպ. 1. Հալ. Ցուց. սյուն. 5—7*

*Գրիչ՝* Ստեփաննոս
*Վայր՝* Սուրխաթ

ա

*...Ես՝ տկար և անարժան հոգս վերջին* Քրիստոսատուր *կոչեցեալ, ցանկացաւղ և փափաքաւղ եղեալ աստուածապատիւ և յոգնառատ փարթամութեան, ի նեղ և ի դառն ժամանակի... ետու գրել զսա ի վայելումն անձին իմոյ և յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց, ի թուականութեան ազքանաղեան և յաբեղական տոմարի ՊԱ. (1352), և ըստ նորում շրջանի ՄԿԹ. (269), և ի գալստենէ կենարարին ՌՅԾԴ. (1354), ի հայրապետութեան Հայոց տեառն* Մխիթարայ, *և յեպիսկոպոսութեան յամենայն հիւսուսական կողմանց տէր* Ստեփաննոսի *աւրհնեալ քահանայապետի, զոր տէր Յիսուս պահեսցէ ի կամս ողորմութեան իւրոյ, ամէն։*

*... Արդ, այսմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառիս*

փափաքաւղ եղէ ես՝ տառապեալ ոգի Քրիստոսատուր կրաւնաւոր, մեծաւ ըղձմամբ և սրտաջան յաւժարութեամբ։ Քաջահաւատ յուսով և Քրիստոսասէր բաղձանաւք ետու գրել զսուրբ տառս, որ կոչի աստուածաշունչ ի վայելումն և ի վարժումն անձին իմոյ և յիշատակ հոգւոյ իմոյ, և հաւր իմոյ Կարապետին, և մաւր իմոյ Սուրաքին, և երկուց հաւուցն իմոց՝ Նոէրին և Առիւծին, և եղբարց իմոց՝ Մովսէսին և Յովհաննիսին և Աստուածատրին, և քերցն իմոց՝ Թագուշէ և Մարթային և Սառային, և հաւրեղբաւրն իմոյ՝ Աւետիս քահանային և Սիմէովնին, և պատ[ուական] Անտոնին, և եղբաւր նորին՝ Տաւնականայ՝ փոխեցելոյն առ Քրիստոս, և հաւրաքեռն իմոյ զԱմէնտիկնայ, և Բ. որդեաց նորա՝ Պատուականայ և Պիտնայ, նաև քեռոյն իմոյ Ամիրշահին՝ փոխեցելոյն առ Քրիստոս, և ամենայն արեան մերձակայից իմոց...։

Բայց գրեցաւ սա յաշխարհիս Հոնաց և ի յերկիրս Խրիմի, ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքիս, որ կոչի Սուրխաթ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սրբոյն Սարգսի զաւրավ[արի], ձեռամբ անիմաստ և յետին գրչի՝ Ստեփաննոսի սուտանուն քահանայի, ի լաւ և յընտիր աւրինակէ։

Արդ, աղաչեմ զսրբազան և զաստուածամերձ դասս քահանայից, որք ընթեռնուք և լուսաւորիք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զյիշատակեալքս ի սմա զՔրիստոսատուր կրաւնաւոր, և զծնաւղս իւր..., և զպաստաւոր մեր Գոհար խաթունն, որ բազ[ու]մ աշխատանաւք ըզթուղթն նշայեաց և կոկեաց, և զհայրն իմ զԳրիգորիս քահանայ, և զմայրն իմ զԱչքազատն, և զքոյրն իմ Սիրմայն, և Հռիփսիմէն, և զեղբայրն իմ զՅովհաննէսն՝ փոխեցեալսն առ Քրիստոս, և սխալանաց և խոշորութեան գրոյս շնոր՛եսցէք մեզ, զի կար մեր այսքան էր և ոչ աւելի։

Յիշեսջիք ի Քրիստոս և զՄելքիսեդեկ միայնակեացն, որ բազում աշխատութեամբ և ջանիւ միջնորդ եղև բանիս և յաւժարեցոյց զՔրիստոսատուրն և զմեզ, տէր աստուած զվարձս բարեաց պարգևեսցէ նմա...։

Բ

... Զպատուելի և զհոգիացեալ այրն և զլցեալն ամենայն գործովք բարութեան՝ զպարոն Ստեփաննոսն, և զհամեստ ամուսինն իւր զՈւստիանէն, և զծնաւղսն իւրեանց, և զորդիս նոցին՝ զՏիրացուն, և զՏիմօթն, և զԱստուածատուրն, որ ի գեռ հասակի փոխեցաւ յաշխարհէ և եմուտ առ Քրիստոս՝ յոյսն ամենեցուն, և զայլ ամենայն արեան մերձակայս իւրեանց՝ զկենդանիս և զհանգուցեալս, և զհարսունս նոցա յիշեսջիք ի Քրիստոս, որ աւգնական եղեն ի նիւթ սորին, և ինքն աստուած, որ առատն է ի տուրս բարեաց աստ յիշելեացս և ձեզ՝ յիշողացդ առհասարակ ողորմեսցի յիւր միւսանգամ գալստեանն...։*

* Գրված է Մնացորդաց գրքի վերջում։

Գ

Զստացօղ սորին զՔրիստոսատուր կրաւնաւորն և զծնօղսն իմ յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին և զմեծ հեղինակն՝ զհայրն աշխարհի զԱւետիք վարդապետ, զոր խոտաճարակ կոչեն, որ բազում աշխատութեամբ և ճշգրտիւ սնոյց զմեզ մինչ հասոյց յարբունս հասակի, և արժանի արար զանարժանութիւնս մեր դասել ի կարգս կրաւնաւորութեան, թէպէտ և վեր է քան զարժանն մեր, և ինք փոխեցաւ ի ներկայէս յաղաւնութեն. տէր աստուած ողորմեսցի նմա վարձս բարեաց յարքայութեան իւրում և աղօթիւք նորա՝ ամենայն աշխարհի, ամէն։*

Դ

Ո՜վ եղբայր, եթէ ես վարժեալ ի ծաղկութն բանից, վասն ստուգաբանութեան աւետարանիս իմացիս, եթէ ընթեռնուս մտաւորաբար, և մի ընդ վայր թուի յաչս քո, վասն զի գաղափար սորին ի հոգևոր ուխտն էր գրած, զոր Դրազարկն անուանեն. իսկ եթէ աւրինակեն ի յայլ՝ զկէտն, զտուընն, զքաշն, զհարն, զգլխագիրն, զհամարքն մի անցանեն, այլ ջանա ջանիւք, զոր ինչ գրած է ի սմա այնպէս գրես և այնպէս ընթեռնուս, և զՍտեփանոս անիմաստ գրիչ յիշեա աղաւթիւք...։**

479.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7598 (տես նաև 1647 թ.)

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Սուրխաթ

262բ ... Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ նուաստ և յետին գրչի
Ստեփանոսի մեղապարտի, ունայնագործ մեղաւորի, ի թվաբերու-
թեանս ասքանազեան և աբեթական տոմարի ՊԱ. (1252) և ըստ նո-
րումս շրջանի· ՄԿԹ. (269)***, և ի գալստենէ կենարարին ՌՅԾԴ·
(1354), ի ստոյգ և յընտիր աւրինակէ, ես առաւել համարայիցն, զի
գաղափար սորին ի հռչակաւոր անապատին էր գրած, զոր Դրազարկ
անուանի, ի յաշխարհիս Հոնաց և ի յերկիրս Խրիմի, ի հոյակապ և ի
հռչակաւոր քաղաքիս, որ կոչի Սուրխաթ, ընդ հովանեաւ || սուրբ Աստ-
263ա ուածածնին, և սրբոյն Սարգսի զաւրավարին, և այլ բազմահաւաք
սրբոց, ի հայրապետութեանն Հայոց տեառն Մխիթարայ, և յեպիսկոպո-

* Ցորայ գրքի վերջում։

** Ցովհաննու ավետարանի վերջում։

*** Նոր թվական ասելով գրիչները միշտ ի նկատի են ունեցել ԺԱ. դարի նշանավոր բանաստեղծ, գիտնական և տոմարագետ Սարկավագի տոմարը, որի առաջին տարին համապատասխանում է 1083 թվականին։

*սութեան ամենայն հիւսիսական կողմանց տէր Ստեփաննոսի, աւրհնեալ քահանայապետի, զոր տէր Քրիստոս պահեսցէ ի կամս ողորմութեան իւրոյ, ամէն։*

263բ *... Արդ, այսմ աստուածապատում և քրիստոսաւանդ տառս ցանկացող եղեալ աստուածարեալ և պատուական կուսակրաւն քահանայն* Յովհաննէս, *ետ գրել զսուրբ աւետարանս ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ։ Արդ, որք հանդիպիք ումս ընթեռնելով կամ զաղափար առնելով, յիշեսջիք ի մաքրափայլ և ի սրբամատոյց յաղաւթս ձեր զպատուելի կրաւնաւորն* զՅովհաննէս՝ *զստացող սորին, և զհայրն իւր* զՎարդան *քահանայ, և զմայրն իւր՝* զՇարեր, *և զեղբայր իւր* զՅովհաննէս *կրօնաւոր, և զքորքն իւր՝* զԲումլօն *և* զՓոքրտիկինն, *և զհաւրեղբայրն իւր* զԳրիգորն, *և զերկու մեծ հաւն իւր՝* զՅովհաննէս *երէց և* զՎարդապետ *երէց, նաև զերկու հանն իւր՝* զԹիմայն *և* զԽելօքն, *և* զԹամարն*։ Որ մեծաւ փափագանօք և սրտաջերմ յօժարութեամբ, և քաջահաւատ յուսով և քրիստոսասէր բաղձանօք ետ գրել զսուրբ աւետարանս ի փրկութիւն կենաց իւրոց և ի լուսաւորութիւն հոգւոյ իւրոյ, յիշատակ իւր և ծնողաց և եղբարց և ամենայն զարմից, զանձ յաւիտենական և անպաճոյճ ճոխութիւն, ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ և յուրախութիւն ուխտի մանկանց նազելի մաւր մերոյ նոր Սիոնի։*

*Արդ, աղաչեմ զսրբազան և զաստուածամերձ դասս քահանայիցդ, որք ընթեռնուք և լուսաւսրիք, յիշեսջիք զվերոգրեալքս ի սմա, և զիս՝* զՍտեփաննոս *մեղապարտ գրիչ, և զծնօղսն իմ, և զեղբարս, և զքորս, և զամենայն արեան մերձակայս իմ, և որ յիշէ սրտի մտօք և ինքն*
264ա *յիշեալ լիցի առաջի ահեղ ատենին Քրիստոսի, ուր բանք սպառին և զործք թագաւորին, առաջի արդար դատաւորին Քրիստոսի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։ Եւ որ հաւատով ամէն ասէ և նմա ողորմեսցի, ամէն։*

## 480.

### *ՃԱՌԸՆՏԻՐ*

***Երևան 7443 (ակս Նաև 1728 Թ.)***

*Վայր՝* Ղրիմ, ի վանքս Քիմնակի

608բ *Յամի ՊԲ. (1352) Թուականիս Հայոց գրեցաւ տառս բազմաժողով և պատմութիւնք ընտիրք և ուղղափառք յուղղափառաց շարագրեալ ձեռամբ երկուց գրչաց՝* Անտոն *իրիցու և* Մելքիսէդ *միայնակեցի, ի խնդրոյ և ի ստանալոյ* Քրիստոսատուր *քահանայի՝ հեղահոգի և մաքրակրաւն աբեղայի, յաշխարհս* Ղրիմի, *վանքս* Քիմնակի։*

* *Լուսանցքում, այլ ձեռագրով գրված է՝ «Քիմճակ, որ այժմ թուրքաց լեզուաւ Թեքէ ասի, զոր յառաջ գիւղ էր եղեալ Քիմճակ անուն, և սուրբ Աստուածածնա [վանք] մի մօտ ի գեղն, և անգր է գրեալ ճառընտիրս ի փառս աստուծոյ»։*

*Արդ, որք հանդիպիք այսմ մատենի, յիշեցէք ի տէր զգրողք սորա, ե զստացող սորա՝* զՔրիստոսատուր *աբեղա, և զծնաւղսն նորա՝* զԿարապետն *և ըզ*Սուքարն, *և զեղբարսն՝* զՄովսէսն, զՅովանէսն, զԱստուածատուրն, *զքուերսն՝* զԹագուհին, զՄարթան *և* զՍառան, *և զպապքն՝* զԱռիւծն *և* Նոքարն, *զքեռին իւր՝* զԱմիրշան, *և զհաւրեղբարքն՝* զԳրիգորն, զԱւետիք *երէցն,* զՍիմէոնն, *զհաւրաքոյրն՝* զԱմենտիկինն, *և զորդիքն նորա՝* զՊիտեանն *և* զՊատուականն *և* զԱնտոնն, *որք կան և որք փոխեալ են, ե զամենայն արեան մերձաւորս, ես և զեբախաաւորսն, որք աւգնեցին ի գիրսս, որ շատ և որ սակաւ՝ ըստ կարի ե ըստ հաւատոց, ե յիշելոցս թողութիւն խնդրեցէք յաստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւտեանս, զի և ձեզ գտցի թողութիւն...։*

*Ցայսմ ամի էր վերադիտող այսմ աշխարհի և ամենայն հիւսիսային կողմանց տէր* Ստեփաննոս *և երկրորդ նորա՝* Յոհանէս *աբեղայ, այր ընտրեալ և գովելի յաւրէնսն աստուծոյ, ուղղափառ կրաւնիւք։*

## 481.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7337*

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Կաֆա

ա

331ա *Շնորհիւն աստուծոյ ամենակալի սկսայ և ողորմութեամբ խնամոց նորա կատարեցի զսուրբ ե ցանկալի աւետարանս յաւրինակէ սրբոյն* Սահակայ *հայոց թարգմանչի և երկրորդ լուսաւորչի հայաստանեայցս ի թուականիս ՊԱ. (1352), յաշխարհս* Ղրիմ, *ի քաղաքս* Կաֆա, *ընդ հովանեաւ սուրբ Երրորդութեանս, ի հայրապետութեան հայոց տեառն* Մխիթարայ, *և ի թագաւորու‖թեան* Կոստանդիանոսի, *և մերոյ առաջնորդութեանս արքեպիսկոպոսի տէր* Ստեփաննոսի։ *Գրեցաւ սուրբ ե ցանկալի աւետարանս ձեռամբ իմով* Կարապետի, *ի խնդրոյ սրբասէր կրաւնաւորի* Յուսիկ *հայրապետի, զի ստացեալ զստացուածս աստուածային կենդանի յարգար ընչից իւրոց, յիշատակ բարեաց ինքեան և ծնաւղաց իւրոց։*

*Արդ, որ ընթեռնոյք և կամ ընդ աւրինակ գնէք, հաստատուն մտաւք հաւատացէք ստուգութեան բանիցդ և ցանկալեացդ, ե զստացաւղ սորա, և անարժան ծնաւղս՝* զԿարապետ, *և զծնաւղսն իմ, և զեղբարս յիշեսջիք ի տէր, ով սուրբ հարք և եղբարք, և Քրիստոս աստուած յիշողացդ և յիշելեացս ողորմեսցի. և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

բ

*Ստացող՝* Յուսիկ

332ա *Ես՝* Յուսիկ *աբեղայ, գնեցի զսուրբ աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց, սուրբ ուխտիս* Աւքսենտի։ *Ով որ ընթեռնու յիշեսցէ և զծնողսն մեր, զհայրն իմ* զՊարոնշահ, *և զմայրն իմ* զԹաջխաթուն, *և*

զեղբարսն իմ՝ զԿիրակոս և Պաւղոս և Շատլուսն, և զքոյրն մեր զԱւաքտիկինն, և զամենայն արեան մերձաւորսն յիշեոջիք ի Քրիստոս, ընդ նմին յիշեսջիք զՄանվէլն, Սանվէլն, և զԴանիէլն, զհայրն մեր զՀեթումն, և զՎարդեսիկինն, զՄինայն, զՎարգանշահն, և զՍառան, զՍարգիսն, և զԿարապետն, և զՎահրամշահն, զՅովանէսն, և զՍիրման, և զՇնոֆորն, զկենդանիսն և զհանգուցեալսն առհասարակ յիշեսջիք և աստուած զձեզ յիշէ ի միւսանգամ գալստեանն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

482.

ՃԱՌՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԱՆԴԱԿՈՒՆԻՈՅ ԵՒ ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

Երևան 2825

Գրիչ՝ Գրիգոր Թորոսանց
վայր՝ Սուրխաթ

252բ Գրեցաւ պատմութիւն սուրբ վկայիցս և խրատքս վարուց ի թվ. հայոց ՊԱ. (1352), յունվար Ժ. (10), ձեռամբ մեղապարտ քահանայի Թորոսանց Գրիգորի*, ի քաղաքս Սուրղաթս, առ դուռն սուրբ Աստուածածնիս։** Արդ, աղաչեմ զձեզ մեղաց թողութիւն խնդրեցէք զստացօղ ծնողացն իմոց՝ մեծ Թորոս քա՞[հանայի], և մաւրն իմոյ, և կենակցին իմոյ, և եղբարցն իմոց, և Քրիստոս զձերն թողցէ, ամէն.
253ա և զսղալու ‖ թիւն գրոցս ուղղեցէք և մի բամբասէք։ Եւս յիշեսջիք զստացող սորա*** և զծնողսն իւր։

483.

ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 591

Գրիչ՝ Գրիգոր Սուքիասանց
վայր՝ Սուրխաթ

... Գրեցաւ տետրակս, որ կոչի մանրուսմունք, յաշխարհս Ղրիմոյ, ի Սուրխաթ քաղաքս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեան տեառն [Մխիթարայ]****, և ի թագաւորութեան Կոստանդիանոսի, և ի մերում նահանգի՝ տէր Ստեփանոսի արհեպիս-
244բ կոպոսի Բ. ի թվականին Հայոց ՊԱ. (1352), յօգոստոս ամսոյ, ձեռամբ Գրիգորի Սուքիասանց, ի վայելումն շնորհազարդ քահանային, որ բազում փափաղանաւք ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ...։

* 252բ էջի աջ եզրը մաշված լինելու պատճառով, գրչի անունը՝ Թորոսանց Գրիգոր, եղծված է։ Վերականգնում ենք համաձայն 235բ էջի հիշատակագրության։
** Վանքի անունը նույնպես եղծված է, հազիվ նկատվում են «Ած» տառերը միայն։
*** Ստացողի անվան համար տեղ է բաց թողնված։
**** Գրված և ապա քերված է «Ստեփաննոս» անունը, ժամանակի կաթողիկոսն է Մխիթարը։

## 484.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6795

Գրիչ՝ Սարգիս [Պիծա՞կ]
վայր՝ Կիլիկիա

Ի Հայոց մեծաց ի թվականի,
Ի յութհարիւր 'վ երկու տարի (1353)
Կատարեցաւ սա ի կարգի
Ձեռամբ Սարգիս քահանայի,*
Աւետարանս Քրիստոսի,
Զոր բժշկեաց տէրն ի յերկրի,
131բ Ցախտէ ցաւոց զարմանալի
Զհիւանդս վաղ ժամանակի՝
Զկաղն և զկոյրն յորովայնի
Լուսաւորեաց ազգի ազգի,
Զանդամալոյծն ըստ հրամանի
Եւ զայսահարսն այլ ի կարգի։
Զննջեցելոցն մէկ հետ մէկի,
Զամէն զլխոյ հետ իր գրեցի
Եւ ծայր ի ծայր զարդարեցի,
Ոսկով, ծաղկիւ, զամէնն ի լի
Եւ պատկերնով նոր է ի գրի,
Գիտելութեամբն իմ տէր Բասլի,
Քրիստոս նմա ողորմեսցի։
Արդ, ես նուաստս յամենայնի
132ա Սարգիս լըցեալ մեղաւք ի լի,
Ի ծերութեան ժամանակի
Աշխատութեամբ յաւարտ ածի,
Զի եփ զոա ես կու գրէի,
Նա իմ պարոն** անուանեցի,
Սուրբ թագուհոյն Մարիամի,
Տէրն այլ համեց, թէ թող լինի,
Զի այլ մարդ այտ ցեղ չանի,

* Ձեռագրում կան բարձրորակ մանրանկարներ, նման Սարգիս Պիծակի նկարներին, ուստի կարծում ենք, որ սույն հիշատակարանի հեղինակը և ձեռագրի ծաղկող Սարգիս քահանան հենց Սարգիս Պիծակն է։

** Ձեռագրում՝ «Պրէն.» (պատռվ)։

Նորա վայ՚լ է, որ է բարի,
Ի վայելումն յիշատակի,
Նաև որդոցն իւր և զարմի
Եւ իւր ծնաւղացն ամենայնի,
Հանգչել ի գոգն Աբրահամի։
Սուրբ Թագաւորն Կոստանդին,
Աջովն ածեալ է անեղին,
Երկար ամաւք վայելողին,
132բ Ըստ հրամանի մերոյ փրկչին,
Զաթոռն իւր՝ ըզհայրենին,
Որդովք իւրովք յամենեսին։
Աստուած առնէ ողորմութիւնն
Իւր, և ծնողացն իւր, և զարմին,
Որ զմեզ յիշէ առ ի բարին
Եւ կամ խնդրէ մեզ թողութիւն,
Քրիստոս, որ առատն է ի բարին,
Թողու զիւր մեղքն, և զիւր ծնողին,
Եւ զՄկրտչին՝ զկազմողին։



ՊԳ. 1354

## 485.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈԲԱՅ ԱՐԱՐԵԱԼ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ Ն. ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

Երևան 5600

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Աղթամար

ա

256ա *Արդ, գրեցաւ երկոքին մեկնիչս՝ Յոբա և աստուածական տեսլեանն Յոհաննու, զոր իմով աշխատութեամբ՝* Գր[իգոր] *սպասաւոր բանի, և զոր՝ այլոց աւգնականութեամբ, ի վայելս մեզ ատէն, և յիշատակ բարի հոգւոց մերոց՝ վարժապետաց, ծնօղաց, և եղբարց, և ամենայն արեանառու մերձաւորաց։ Բայց գրեցաւ ի ծովամէջ կղզիս* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և այլ սրբոց, որ հանգուցեալ են ի սմա, ի թուիս հայոց ՊԳ. (1354)-երորդի, ի դառն, ի նեղ և ի նուրբ ժամանակիս, զոր չէ եղեալ ի սկզբանէ աշխարհի, և մի ևս այլ լիցի։*

*Արդ, որք հանդիպիք օգտութեամբ ինչ ի սմանէ, յիշեսջիք բարի կամօք առ Քրիստոս զվերոյգրեալքս ի սմա, զի և դուք ընգալջիք մասն բարի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

բ

134բ *Գրեցաւ մեկնութիւնս՝ հրահանգ բանիցն Յոբա, իմով ձեռամբ՝ մեղաւոր սպասաւորի բանի* Գր[իգորի], *ի վայելս անձին իմոյ և յիշատակ հոգւոյ իմում, և ծնօղաց, և վարժապետաց՝* Մխիթարա *և* Տիրատըրոյ։ *Արդ, որք հանդիպիք աւգտութեամբ ինչ, յաղօթս յիշեսջիք։*
*Ի թուի ՊԲ. (1353), յամսեանն օգոստոս։*

գ

256բ *Փառք...զի զօրացոյց զտկարս մեղսամակարդ և բազմավէր անձամբ հասանել ի վերջ սկսելոյս։ Ի ժամանակս և յամս յայս, յորում ընդարձակեցան ամենայն թշնամիք եկեղեցեաց և քրիստոնէից, և բարձան կարգք և կրօնք հաւատացելոց և քահանայից, և մնաց միայն անունն, ձևն և որքանութիւնն, և կորեաւ էութիւն բարերջանկութեանն։ Աւաղ, աւաղ, երանի չժամանելոցն ի ժամս յայս, բայց*

փառք, փառք և պատիւ արարչին և նախախնամողին յաղագս ամենայնի, զի արժանի արոց գործեցաքն առնումք գհատուցումն։

Հետ. ստացող՝ Յակոբ Ասպիսբեկցի

Դ

Եւ ընդ յառաջին ստացողացն և զվերջին ստացաւղ սորայ զՅակոբ վարդապետ Ասպիսբեկցի և զԱնդրիաս եղբայր իմ յիշեցէք ի Քրիստոս աստուած, զի գնեցի ԳԾԿ. (360)-ն յիգիտ տրեզաէն, և շատ մունաթով և երախտիւ ետ. և դուք, որ կարդայք կամ օրինակէք, մեզ ձեր աղօթիք աստուծոյ անձին (այսպէս)։

## 486.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Մատենադարան Հայկ. Թարգմ. էջ 145—146

Ստացող՝ Եփրեմ
վայր՝ Սուլտանիա

448 ...Աճապարեալ ստանալ զսա վեհիմաստ քահանայն աստուծոյ Գրիգոր...և բազում աշխատութեամբ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և ի ժառանգութիւն զաւակի իւրոյ պատուական քահանային Եփրեմի, և ի թուականութեանս Հայոց ՉՂ. (1341)*, ի յաշխարհակալութեան փոքր Շեխ Հասանի, և հիւպատոսութեան և սպարապետութեան Հայոց Բիւրբէկին, ի քաղաքն Սուլտանիայ, ի քորեպիսկոպոսութեան Օրտուի տէր Սարգսի, և եպիսկոպոսութեան տէր Գրիգորի։

Արդ, յամի ծննդեան փրկչին մերոյ՝ [ՌՅԾԴ]-ի, և ի թուականութեանս Հայոց ՊԳ. (1354), և յամսեանն սեպտեմբերի ԻԵ. (25) և ի մարերի Է. (7), ի մայրաքաղաքս Բաղտատ, ի յաշխարհակալ բռնաւորութեան մեծ Շեխ Հասանի, և ի հայրապետութեան ամենայն Հայոց տէր Մխիթարի, և ի քորեպիսկոպոսութեան այսմ նահանգի տէր Սարգսի, Եփրեմ քահանայ՝ որդի հարազատ Գրիգոր քահանայի՝ ստացողի գրոցս, պարգեւեաց զգիրքս աստուածաշունչ ինքնայօժար կամօք սուրբ Նշանին Վարագայ ՚ւ նորին եկեղեցւոյն՝ տուրք մշտնջենաւոր և յաւիտենական...։

Արդ՝ ես նուաստ Եփրեմ քահանայ, որ ունէի զգիրք աստուածաշունչ ի հօրէ իմմէ ի Գրիգոր քահանայէ, նուիրեցի և ետու զսա ուխտիս Վարագայ սուրբ Նշանին, և ետու այնու դաշամբ, զի միաբանք սուրբ ուխտին և քահանայք նորա, յորժամ հասցէ գիրքս առ նոսա, զկարգ քահանայթաղմանն կատարեսցեն բովանդակ, և արասցեն զդիշերային պաշտօնն, և օծցեն խաչ սուրբ յանուն հօր իմոյ Գրիգոր քա-

---
* Սխալմամբ տպված է «ՋՂ. (1841)»։

հանայի։ Եւ դեօթն աւուր ընթերցմունքն և զաղօթսն կատարեցեն կարգաւ...։Այսուհետև հաստատեմք՝ զի ոչ ոք եպիսկոպոս, կամ հայրապետ վանաց, կամ քահանայ, կամ սարկաւագ և կամ այլ ոք կարասցէ հանել զգիրքս ի սուրբ եկեղեցւոյն Վարագայ սուրբ Նշանին, ոչ ծախելով, և ոչ ընդ գրաւականս գնելով, և ոչ օժտելով, և ոչ գողանալով...։ Եւ զարձեալ պարտ է զյիշատակարանս զայս ի յամենայն աւագ հինգշաբթի օր, ի յատեանս եկեղեցւոյն, ի լսելիս ամենեցուն ընթեռնուլ։

## 487.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՒԱԳՐԵԱ ՀԱՐԻՒՐԱՒՈՐԱՑ ՎԵՑԵՐՈՐԴԱՑՆ ԿԻՐԱԿՈՍԻ ԵՐԶՆԿԱՑԻՈՅ

Երևան 1960

Հեղինակ՝ Կիւրակոս

160բ ...Արդ, նորին կարող զօրութեամբն և բարերարութեամբն ես՝ նուաստ և յետինս ի վարժապետաց Կիւրակոս, ի յութհարիւր և յերեք թուականիս Հայոց (1354) արարի զվերլուծութիւն հարիւրօրաց սուրբ հօրն Եւագրեա, տկար զոյով հոգւով և մարմնով, և անիմաստ և փոքրատար մտօք, հրամանաւ և ազօթիւք երկուց վարդապետացն հոմանունաբար Յովաննէս առձայնելոց և այլ եղբարցս, եթէ հաճոյ լիցի ումէք՝ աստուծոյ շնորհք և երկրպագութիւն տուողին բանից, և եթէ ոչ՝ և այնպէս շնորհք, որ տա զառօել շնորհս սիրողացն զնա։ Բայց աղաչեմ զամենեսեան չլինել մեղադիր յանդգնութեանս վասն զի ի սիրոյ հարկեալ եկի յայս, զի սէր մոռանալ տա զտկարութիւն, քանզի սիրոյ զօրութիւն գերազանց է քան զբնութիւն, և զանձն ի մահ գնել յօժարեցուցանէ վասն սիրելւոյն, յաղագս որոյ կրկին աղաչեմ անմեղադիր լինել և եղբայրաբար զթերին ուզ[ղ]ել, զի միգապատ և խօարեալ մտօք այդ չափ կարացաք խօսել, և ոչ կարացաք հասանել մեծարոյս և կորաբեր իմաստից մտաց անապատին. վասն որոյ պաղատիմ ազատել զմեզ ի մեղադրանաց, և անմոռաց յիշել յաղօթս հանդերձ ծնօղօք և վարդապետօք, և աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, և որ զամէնն ասէ, ամէն։

## 488.

## ԳԻՐՔ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՊԱՏԱՐԱԳԻՆ

Կայսր. մատեն. Վիեն. 1. Տաշ. Ցուց. էջ 7 և Երևան 4085

Գրիչ՝ Թորոս Ալվրցի
վայր՝ Պիզ[ա]

221 Կատարեցաւ գիրքս այսմիկ գործոյս յամի մարդեղութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՅԾ. եւ Դ. (1354), յամսեան | | | ։

Թարգմանեցաւ գիրքս, որ կոչի մեկնութիւն պատարագին, ձեռամբ Թադէոսին եպիսկոպոսի Կաֆային, ի կարգէ քարոզողացն։

Եւ գրեցաւ ձեռամբ տրուպ եւ փցուն գրչի Թորոսի արեղի Ալվըր-ցոյն։* Ի յամին նոյնում տեառն մերոյ եւ փրկչին ՌՅԾ. եւ Գ. (1354), յամսեանն աւգոստոսի՝ Ժ. եւ Գ. (13) աւարտեցաւ գիրքս ի քաղաքիս, որ կոչի Պիզ, ընդ հովանեաւ սրբոյն Անտոնի Հայտոն, եւ ի հայրապետութեան պապոյն Իննոցենցիոս Զ.-երրորդն...։

## 489.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2843 (տես նաև՝ 1454 Թ.)

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Աղթամար

312բ Ցամին յութհարիւրերորդի և երրորդի թուաբերութեանս Հայոց (1354) գրեցաւ սուրբ աւետարանս յորդորառատ բղխմամբ յաստուածային հոգոյն՝ յարբումն պասքելոց անձանց, և ի զարդ պայծառութեան նորոյ Սիոնի, և ի լուսաւորութիւն մանկանց առագաստի, ձեռամբ անարժան Կարապետի սուտանուն կրաւն[աւ]որի, զոր գրեցի զսա յաստուածարնակ կղզիս Աղթա[մա]ր կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, և սուրբ Նշանիս անապատի, և աստուածամուխ սուրբ Գեղարդեանս, ի հայրապետութեան տէր Դաւթի Հայոց վերադիտողի, ի դառն և ի վշտալից ժամանակիս։

313ա Արդ, այսմ աստուածային և աստուածախաւս || սուրբ աւետարանիս ցանկացող եղեալ աստուածասէր և հարկեոր տանուտէրն Անան և սրբասնունդ սարկաւագն Թադէոս՝ ծաղ[կ]եալ զաւակն իւր, և յոժ փափագմամբ և եռանդմամբ սրտիւ ետուն գրել զսա ի հալալ և ի յարդար վաստակոց իւրեանց, ի վայելումն անձանց և յիշատակ հոգոց իւրեանց, և ծնաւղացն՝ Մովսէսի և Գեզեց տիկնայ, և կենակցին իւրոյ Կալինիկոյ, և նորին ծնաւղացն, և զաւակացն՝ Թովմայի և Սարգսի, և եղբարցն՝ Անանիայի, Իսրաէլի և Զաքարիայի քահանայի՝ հանգուցելոցն ի Քրիստոս, և Յովսէփայ սարկաւագի՝ ուսումնակցի Թադէոսի, և որդոցն Իսրայէլի՝ Հայրապետայ, և Կարապետի, և Մովսէսի, և Մարգարոյ՝ որդոյ Զաքարիայի, և այլ ամենայն արեան մերձաւորաց, և ետուն զսա անջինջ յիշատակ ի սուրբ եկեղեցի, որք
213բ ընթե || ռնուն հաւատով և հոգով և աստուած-ողորմի ասեն ստացողաց սորա՝ Անանիայի, և կենակցին՝ Կալինիկէի, և այլ ամենայն վերոյիշողացն, ամէն։

Եւ արդ, ես՝ ունայ[ն]ս ի գործոց բարեաց, փցունս ի գրչաց, սուտանուն Կարապետ, աղաչեմ զամենեսեան զհանդիպեալսդ յիշեցէք

* Հ. Տաշյանը ծանոթագրում է՝ «Ալվար է հին գիւղ Բասենոյ գաւառին (հմմտ. Ղազար Փարպ. տպ. Վենետ. 1873, էջ 470)»։

յաղաւթս ձեր զԱնանիայ տանուտէրն, և զԹադէոս սարկաւագ, և զԹումա, և զՍարգիս՝ զվերոյ յիշեցեալսն և զաղղն ամենայն՝ զկենդանիք և զհա[ն]գուցեալսն, ամէն։

Ընդ նոսին և զմեր անարժանութիւնս յիշելոյ արժանի արարէք՝ զԿարապետ, և զմեր ծնողսն, և զԶաքարիայ՝ ծաղկող սորա, և զնորին ծնողքն. և Քրիստոս աստուած զձեզ յիշեսցէ յիւր արքայութիւնն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 490.

## ՏՕՄԱՐԱԳԻՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1090

Հետ. ստացող՝ Առաքել

210ա Ի թվ. ՊԳ.(1354), ես՝ Առաքելս, գնացի յԵրուսաղէմ, տանուտէր կոյսն էր, վերայգիրն Ե. (5) էր. եւնթներակն՝ Բ. (2)։

Ցայսմ ամի եղև ի վերայ երկրի սով, զոր եղև մոթն մինչև ՃԺ. (110)*, զոր տէր Ցիսուս խափանեսցէ յերկրէս մերմէ։**

## 491.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ ԿԻՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

Մատենադարան հայկ. թարգմ., էջ 507—508

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Սուրխաթ

ա

Գրեցաւ գիրքս այս և աստուածային տառս, և հոգւոյ և մարմնոյ փրկութիւնս, հաւատացելոց պարծանքս, ի թուականութեանս Հայոց ՊԳ. (1354), յաշխարհս Հոնաց և ի յերկիրս Խրիմի, ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքս, որ կոչի Սուրխաթ, ի խնդրոյ աստուածընկալ և կուսակրաւն քահանային Մինասի՝**, լցեալ շնորհիւ իմաստութեամբ, և առաւելեալ ամենայն գործովք առաքինութեամբք։

Արդ, աղաչեմ զամենեսեան...յորժամ ընթեռնուք կամ աւրինակէք, զպատուական քահանայս զՄինասն, և զծնաւղսն իւր, և զեղբարս և զամենայն ազգայինն յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր։ Ընդ նմին և զնուաստ զմեղաւորս սաւնս յիմաստութեան և զպակասեալս ի զոր-

* Հավանորեն՝ 110 դրամ։

** Ձեռագրի սկզբի մասը գրված է ԺԲ. դարում, իսկ այն մասը, ուր գտնվում է սույն հիշատակագրությունը՝ ԺԴ. դարում, Կարապետ գրչի կողմից։ 210ա էջում թողած հիշատակագրության մեջ գրիչը գրում է. «Զանարժանս բարեաց յիշատակի զսուտանուն գրիչս Կարապետ և զծնողսն իմ աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ»։

*** Տպված է «Մնաւի»։

*ծոց բարեաց, պատրակուսեալս՝* Ստեփանոս *քերաւղ դրոյս…իսկ շնոր-հատուն աստուած տացէ հոգի և իմաստութիւն ստացողի սորա* Մինաս *կրաւնաւորի…։*

*Ստացող՝* Մինաս Դերջանեցի

Բ

*…Վճար 'ւ աւարտ եղև սըմին,*
*Առ ի կողմանս հիւսիսային,*
*Ցաշխարհս* Հռոմաց *և դաշտային,*
*Եւ ի* Սուլխաթ *քաղաքի սորին,*
*Ցիշխանութեան* Ճանիպեկին,
*Որդւոյ մեծի* Օզպէկ *խանին.*
*Իսկ ի մերոյ մեծ արքային,*
*Որ* Կոստանդին *անուն ասին.*
*Եւ ի հանուրց* Հայաստանին՝
*Տէր* Մխիթար *հայրապետին,*
*Իսկ ի կողմանցս Հւսւսային՝*
*Տէր* Ստեփանոս *վերադիտին,*
*Եւ իմաստուն մեծ հռետորին՝*
*Տէր* Յովանէս *կուսակրաւնին,*
*Որ է գիտուն աստուածային*
*Եւ վկայեալն է ի բարին,*
*Զոր տէր Ցիսուս ըստ արժանին*
*Զնա պահեսցէ կենաւք կրկին։*

492.

## ԳԱՆՁԱՐԱՆ—ՏԱՂԱՐԱՆ

*Հալէպ, Սր. Մնկ. 119, Սիւրմ. Ցուց. Ա. էջ 199*

*Գրիչ՝* Յովանէս
*վայր՝* Երուսաղէմ

870 *Փառք…որ ետ կարողութիւն տկար անձին և մեղաւք լցեալ և աղ-տեղեալ գծողիս* Յով[անէ]ս *լոկ անուն աբեղայի հասանել յաւարտ գրոյս, յամի* Պ. *և* Գ. *(1354) թուականիս մերում, ի սուրբ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սուրբ Յակոբա և այլ սուրբ տնաւրինա-կանացս Քրիստոսի աստուծոյ մերոյ…։*



ՊԴ 1355

## 493.

### ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

**Երևան 3276**

*Նախագաղափարի գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* Եզնկայ

190ա *Կատարեցաւ կանոնական գիրքս ի դառն և ի գժնեա ժամանակիս, յորում ոչ գոյր թագաւոր յազգէն Նետողաց, այլ անբարեսէր մարզիկ բռնացեալ ունէին զաշխարհս ամենայն, և ամրանայրն ի զ[զ]եակս, ի քաղաքս՝ մի զմիմեամբք եղանելով։ Ի սոյն աւուր եղև գրաւ սորա ի քաղաքս* Եզնկայ, *ի ձեռն սուտանուն երիցու* Ստեփաննոսի, *ընդ հովանեաւ սուրբ տաճարիս, որ Ծառով սուրբ Յակոբ կոչի, յորժամ* Յախիայնա *ոչէկն ի քաղաքիս էր, և խօճայ* Յալի *ոմն բազում զօրօք ի վերայ էր եկեալ, զոր տէր աստուած զբարին աջողէ մեզ։ Բայց գրեցաւ սա ՊԴ. (1355) թվին, յամսեան օգոստոսի Դ. (4), ի վայելումն և յիշատակ* Գրիգոր *աբեղայրին՝ դրոց աշակերտի և բանի սպասաւորի, որ ետ գրել զսա յիշատակ իւր, և ծնօղաց իւրոց, և ամենայն արեանառուաց, և համօրէն իւր երախտաւորացն. և սուրբ րաբունապետացն իւրոց՝* Կիրակոսի *և* Յովանիսի, *որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի,*
190բ *և բանք նոցա առաւել պտղաբերեսցի, և կենդանի || աղօթք նոցա յամենայնի մեզ պարիսպ եղիցի. և նմա փառք յամենայնի յայժմ և յաւիտեանս։*

## 494.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4972 (տես նաև 1575 թ.)**

*Գրիչ՝* Յոհան

ա

228ա *...Ես՝* Յոհան *գրողս, անբաժինս յուրախութեան ժամանակէս եւ զառնակեցս բնութեամբ, որ ժամանեցի զպատիժ եւ զզառնութիւն, ազգաց իմոց թափուր ղտեալ եւ տրտմութեամբ հետամտեալ, զտա աշխատութեամբ զկարգ արուեստիս քերթող վերոգրեալ, որ ողորմութեամբ աստուծոյ եւ կարողութեամբ նորա սկսայ եւ կատարեցի զգրխումն քառավտակ գետոյս զբանս փրկչին Յիսուսի՝ սուրբ աւետարանս։*

*Արդ, գրեցաւ ի դառն ժամանակիս, որ վասն մեղաց մերոց ամենայն պէտք մարմնաւոր կերակրոցս մեր երկրիս ունայն գտաւ, զոր*

ուրինակ հոգի ոչ կարէ զաւրանալ եւ հանգչել եթէ ոչ բանիւ ճշմարտաց քննութեամբ, նոյնպէս եւ մարմին՝ առանց ազգի-ազգի պտղոց կերակրոյ. Նաև անարգս եւ անընդունելիս, ես՝ Յոհ[ան] գրիչ, որ զտա յաւուրս յոյս հարեալ եւ վիրաւորեալ սգով անփարատ, վասն զի Թռաւ աղաւնեկն յաչաց իմոց եւ կորուսի զշառաւեղիկն իմ, տղաեկն զՄարգ[ար]:

Աղաչեմ զամենայն սուրբ մանկունս եկեղեցւոյ, ողայանաց մի
228բ մեղադրել, զի սգաւոր գրեցաք եւ լալով։ Այլ ‖ յիշեցէք ի մեղսաքաւիչ յաղաւթս ձեր զիս՝ զանարժան գրողս զՅոհ[ան], եւ զհայրն իմ զՄարգ[ար] քահանայ, եւ զմայրն իմ զՏիրանցն, եւ զիմ մարմնոյ աչաց լոյսն՝ զկտրեալն սրով հրեշտակին, որպէս զծաղիկ նոան՝ հարեալ ի կարկտէ։

Այլ գրեցաւ ի Թուիս Հայոց ի ՊԴ. (1355), ի յետին եւ ի դառն ժամանակս, որ արդարութիւն ցամաքեալ է եւ մեղք ծովացեալ, որ ոչ հոգի գիտութեամբ պարծի ոք։ Դարձեալ, ես՝ անարժան գրիչ Յոհ[ան], աղաչեմ զսուրբ ընթերցողսդ յիշեցէք յաղաւթս զպանծալի և զմարգարտայեռ ընդելուզեալ ակն պատուական, առաքելաշնորհ եպիսկոպոսն մեր զտէր Աբրահամ, զի նորին ողորմութեամբ ապրիմք...։

Բ

178ա Սիրտս լալով է պաշարած
Եւ իմ աչաց լոյսն տարած,
Իմ մեղքն ահեղ կա բազմացած,
Որ չյաջողաւ ըստ իմ կամաց։
Ի յաղգմանէ կամաց մեղաց
Կամ տատանած, տարէկուսած,
Իմ սիրեցեալ տղեկն փտած
Եւ ես Թիւրեալ, սրտաբեկած,
Արագամտիկն յինէ առած
Եւ իւր քաղցր աչունքն խաւարած,
Ցականջ սրտիս ձայնն բերած,
Կա առաջիս ինքն կանգնած,
Որպէս ի կենդան էր, անմեռած,
Երկայնահաս անձամբ ստեղծած,
Թող աստուած չլինի ինձ բարկացած,
Որ յամառեալ եմ և Թիւրած։

Ծաղկող՝ Թորոս

Գ

178բ Զծաղկող սուրբ աւետարանիս՝ զԹորոս, որ եմ անուամբ եպիսկոպոս և ոչ գործով, աղաչեմ զձեզ՝ զընթերցաւղ սուրբ աւետարանիս, յիշեսջիք ի Քրիստոս ողորմայիւ, և աստուած յիշողացդ ողորմի, ամէն, ամէն, և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս, ամէն, ամէն։

## 495.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆՔ

*Երևան 6938*

*Գրիչ՝* Աւետիս որդի Նատերի
*վայր՝* Սուրխա՞թ

ա

36բ *Արդ, ես՝ Նուաստ և աղկաղկ հողս Աւետ[իս], յերեսս անկեալ
աղաչեմ ղրաբի պատահաւղքդ սրբոյ տառիս յիշել դմեղ սրտի մտաւք
առաջ ամենագէտ արարչին ի թողութիւն և ի գթութիւն մեղաւք
մեռելոյս, որպէս զի աւժանդակութեամբ ամենազօր ձեռինն ելցուք ի
վեր ի միջոյ բաղմաթոյն և սրատաճ ժանեաց սպանողին, որպէս եր-
բեմն երանելին Դանիէլ, և չարախօս իշխանն ի խորխարատ գբին
իջեալ բնակեսցէ, և անձամբ իւրով լցուսցէ զտունն խաւարչտին, և
տէրն ամենակեցոյց կեցուսցէ զձեզ, և ինքն աւրհնեալ է յաւիտեանս.
ՊԴ. (1355), հոկտեմբ[եր]։**

բ

*Զղատապար[ա] ծառայս ծառայեցդ Քրիստոսի զԱւետիս, որ ի
տեսանել զգիրս ցանկացայ փափագեալ սրտիւ, և ղրեցաք զսա Նոտար
գրչաւ վասն օրինակին փութոյն, զի երեր զսա եպիսկոպոսն* Բառեճոյ
120բ *Վարդան, և էր ի վերայ գնալոյ յ*Երուսաղեմ, *և ‖ այլ ոչ գտանէր օրինակ
սուրբ տառիս, վասն այսր պատճառի սկսայ, ես՝ անպիտանս, ի սկիզբն,
և գրեցի սակաւ ինչ, և զայլն ետու ի հայրն իմ ծերացեալ՝ որոյ*
Նատեր *կոչի, գրեցի և ի միջոցին սակաւ մի այլ, և զբովանդակն Նա
զլխաւորեաց, և լցաք զտենչումն մեր, թէև փցնագիր էր գիրս. և ղուք, որ
հանդիպիք գտեալ զանձուս մեկնութեանս, յիշեցէք ի տէր սրտի մ[ա]աւք
զտէր* Վարդ[ան]՝ *զօրինակիս շնորհօղն, և ղիս՝ զփափագօղս սուրբ տա-
ռիս՝ զ*Աւետ[իս], *և զայնորեալ ալեաւք ծերունին՝* Նատեր *գրիչ, զի
թերևս ապրեսցուք ի սաստելի արհաւրացս, որ աստ կան գրեալ, և
հասցուք երանե՛ա՛լ և ցանկալի կենացն՝ զոր սրբոցն է պահեալ, սրոյ
պատմութիւն ոչպիսութեանն աստ գտանի՝ փառաց և ժառանգութեանն,
որ ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում փառք յաւ[իտեանս Ի թուին]
ՊԴ. (1355), յօղոստոսի Թ (9)-ն գր[եցաւ]։*

## 496.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4915 (տես նաև 1433 թ.)*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Աղթամար

286ա *...Արդ, զմտաւ ածելով զայս ամենայն՝ եթէ սնոտի է անցաւոր
և երկրաւոր մեծութիւնս, այրն բարեպաշտաւն* Մուրատ *և կենակիցն
իւր* Խուանդ *խաթուն, զաւակն իւրեանց* Ամիր-Սարգիս, *ետուն գրել
զսա ծախիւք իւրեանց, յարդար վաստակոց և յաստուածատուր մեծու-*

* *Ներքին լուսանցքում գրված է «*Սաթին *փոխեցաւ»։*

*թեանց, իմով ձեռամբ՝ մեղսամակարթս Գրիգորի՝ սպասաւորի բանի։ Որով աղաչեմ զամենեսեան զհանդիպողքդ պատահմամբ ի դէպ ժամանակի այսմ ստուածախաւս և նորոգող քաղցրահամ կենաց կտակիս յիշել բարի կամաւք և սեռն սիրով՝ երկնաբացիկ և հաճոյական աղաւթս ձեր... զստացող սորա զՄուրատն, բարեպաշտաւն և զհամեստ կենակից իւր զԽուանդ խաթուն, և զզաւակքն իւրեանց՝ զԱմիր-Սարգիս, զԱմիր-Մուլք և զՄիրզա պարոն, որպէս և զՍադդուր...*

286բ *...Արդ, գրեցաւ սա ի Թուականիս Հայոց յութհարիւրերորդի չորրորդի (1355), ձեռամբ Գրիգորի վերջին սպասաւորի բանի, ցանկացելոցն ի միտս ուղղակի, ի կղզիս Աղթամարայ, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, յաւուրս անիշխանութեան, յորում բարձեալ էր տէրութիւն հոգևոր և մարմնաւոր ազգիս հայկազեան, զի բռնացեալ կալան*

287ա *զմիջերկրեայս ամենայն ազգատոհմ կարապետի Նեռինն ‖ ասացեալ։ Եւ նեղեն յոյժ զազգս քրիստոնէից մինչև յելս ոգւոց։ Արդ, յայսպիսի զառն, ի նեղ և ի նուրբ ժամանակիս, յանձն առեալ աշխատութեամբ գրեցի զսա, վասն որոյ, աղաչեմ զամենեսեան սիրով սրբոյն աստուծոյ, յիշել առ Քրիստոս ի պատկանաւոր խնդրուածս ձեր զիս՝ զմեղապարտս, և զձեռնասուն պատանեակս զՏաւՑադետ, զի և սա բազում աշխատեցաւ ի կոկելն և ի սպասաւորելն, նաև զհայրն իմ Աւդրէառ և զմայրն իմ Փառաց, իբրու թէ ներումն յանցանաց և թողութիւն մեղաց գտանել յահեղ ատենին և յանաչառ դատաստանին Քրիստոսի, որով ընդ աջեայցն է դասել, զի և դուք գրեսջիք ի դպրութիւն կենացն վերին....։*

*Նաև զբազմամեղս՝ զԹումա քահանայ, յիշման արժանի արարէք։ Նաև զՊետրոս կրաւնաւոր՝ զհամախոհ եղբայրակիցս իմ յիշեսջիք առ Քրիստոս բարի մտաւք։*

## 497.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

**Երևան 2283**

Գրիչ՝ Ցակոբակ

128ա *Ի թվ. ՊԴ. (1355) գրեցաւ, յունիս ամսոյ ի Թ. (9)-ն։***

*Ցակոբակս ողորմելի,*
*Որ եմ մեղաւք զարշ աղտեղի,*
*Անուամբս զգաւն և պանծալի,*
*Բայց եմ ունակ հակառակի,*
*Զձեզ աղաչեմ մանկունք վեհի*
*Եւ ծնունդք լուսոյ աւազանի,*
*Ցիշման արէք զիս արժանի*
*Առաջի հաւրն երկնաւորի,*
*Որ ինձ շնորհէ զպարտ քանքարի,*
*Զոր ի խորիս թաքուցի...*

---

* *Թուման ձեռագրի ծաղկողն է։*

** *Սույն հիշատակարանը նախագաղափար օրինակինն է. Երևանի № 2283 ձեռագիրն ընդօրինակված է ԺԷ. դարում։*

## 498.

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետ. 8 Ցուց. Ա. էջ 95 (տես նաև 1341 Թ.)

Գրիչ՝ Մովսէս
վայր՝ Վարագ

ա

538բ Աստուած ողորմի Մովսէս վարդապետին* Մեծոփայ վանաց և իւր ծնողացն, որ ի ԳԴ. (1355) Թվականին զգիրս Առակաց գրեաց ի սուրբ ուխտն Վարագ։

բ

Ես Մարգարէս գնեցի զգիրքս ի հալալ արդեանց իմոց, և վերըստին ընծայեցի Վարագա, յիշատակ ինձ, և ծնողաց իմոց՝ հօրն իմոյ Մկրտչի, և մօր իմոյ Մարթայի, և կենակցին [իմոյ]։

* Մովսես վարդապետն արտագրել է միայն Սողոմոնի չորս գրքերը։



ԳԾ 1356

## 499.

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Վենետ. 26 Ցուց. Ա. էջ 186—187

Գրիչ՝ Վարդ
վայր՝ Մերտին Թւֆին մենաստան

267բ ...Իսկ եղև կատարումն սորա ի թուականութեանս Հայոց ԳԾ. (1256) ձեռամբ իմով՝ անարժան, փցուն և անարհեստ գրչի Վարդի, ի մայրաքաղաքս Մերտին, և ի մենաստանս Թւֆին, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Յովաննիսի։ Արդ, աղաչեմ զման-կունսդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ աւրինակ գնելով, յիշեսջիք զերախտաւոր սորա զտէր Աբրահամ, որ աւգնական եղև ի թղթի գինն և կազմաւորեցաւ զգրելն, և զամենայն եղբայրութիւնս, և զիս՝ ղանպիտան գրիչս և զծնողսն մեր...։ Յիշե-ցէք ի Քրիստոս և զԴաւիթ զպիր, որ ղթուղթս կոկեց։

Դարձեալ ծանուցանեմ որոց հանդիպիք հոգևոր երգոյս՝ Դաւթեան Սաղմոսիս։ Սովորութիւն էր մեր եկեղեցւոյս, որ հանապազ ծայրա-քաղ ասէին սաղմոս, վասն որոյ արքեպիսկոպոսի մեր տէր Աբրահամ, վառեալ աստուածային նախանձու և սիրոյ սաղմոսիս՝ եբարձ զայն զսովորութիւն և սահմանեաց բոլոր, և ի վերայ գրոցս երգել զսաղ-մոսս՝ ըստ առաջին սրբոցն աւանդութեան։ Արդ, աղաչեմ զման-կունսդ եկեղեցւոյ յիշել ի Քրիստոս զտէր Աբրահամ և զծնողսն իւր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Դարձեալ յերես անկեալ աղաչեմ, որ չտայք զսաղմոսարանս ի տղայի ձեռք, որ տախտակ գրեն յիւրմէս, այլ ուղղորդեն...։ Եւ է սա սեփական տուրք սուրբ Աստուածածնիս և սուրբ Յովհաննու Մկրտչիս. և մի ոք իշխեսցէ հանել զսա ի վանացս, ոչ եպիսկոպոս, ոչ քահա-նայ, ոչ սարկ[աւագ], ոչ միակեց, ոչ ծախելով, ոչ գրաւ գնելով...։

Զաստուածասէր և զհաւատարիմ հայր վանացս զՄովսես կրաւ-նաւոր, որ կազմել և կապել ետ զսաղմոսարանս, յիշեցէք ի Քրիստոս. և աստուած զձեզ յիշէ, ամէն։

## 500.

## ԴԻՐՔ ԿԱՑՄԱԿԱՆՑ ԲԷԴԱ ՔԱՑԱՆԱՑԻ

Երևան 2037 (տես նաև 1421 և 1677 թ. թ.)

Յիշատակարան թարգմանչի գրոցս կայծակաՆց

187ա Զթարգմանօղ սոյն գրոցս ի լատին լեզուէ ի հայս՝ զֆրայ Թու-մայն Ծանկեցի ի կարգէ միաբանողացն, որ մինչդեռ ծաղկէրն երի-

տասարգական աւօք՝ լի ամենայն իմաստութեամբ և շնորհօք, Թարգմանեաց զգիրքս զոյս ի քաղաքն Կաֆայ: Եւ ապա, ընդ երիցագոյն հարազատ եղբօր իւրո՝ Աւաճտերամբ, շարժեալ նախանձով բարեաց, զիմեցին յաԹոռն Հոոմայ, առ... պապն Զ.-երրորդ ԻննօցենՅիոս, վասն հաստատութեան սուրբ կարգին միաբանօղաց։ Զոր իբրև ետես վերոյասացեալ սուրբ պապն զՋերմեռանդուԹիւն նոցա և զխնդիր, որ էր փրկ[ուԹիւն] հոգոց, հաւանեցաւ առնել զհայցու[ածս] նոցա։ Եւ շնորհեաց նոցա բրվէլէճ,* վասն նախաս[ացեալ] կարգին՝ կենցաղավարիլ և կեալ ըստ կ[ան]ոնաց երանելոյն Օգոստինոսի և ըստ կացուցմանց կարգին քարոզողաց։ Նայ և զասացեալ ֆրայ Աւագտերն հաստատեաց դուքէոնտԹօր, այսինքն՝ վերախնամօղ, ասացեալ կարգին, եւ զեղբայր իւր, զվերոյասացեալ զԹօմասն, եպիսկոպոս ձեռնադրեաց Նախիջևանայ:

Եւ սոքա յուղղի անկեալք անցին ընդ ծովն Մեծ և հասին ի Կոստանդինուպօլիս, և անտի նաւեալք կամեցան չուել ի Կաֆայն, և ալեկոծեալ ծովահեղձ եղեն ընդ յայլոց բազմաց յամի տեառն ՌՅԾԶ. (1356), յապրիլ Ա. (1)։ Այլ ըստ ասացելոյն յառակսն, եԹէ՝ արդարն իւ իւիք և մեռցի՝ փրկեսցի։ Վասն որոյ աղաչեմ զձեզ, զի որք կարդայք զգիրքս զայս յիշեսցիք ի տէր Յիսուս զվերոյասացեալ եղբարսն, և աստուած զձեզ յիշէ։

## 501.

### ՃԱՇՈՑ

Երևան 7408 (տես՝ 1361 և 1002 Թ.Թ.)

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ղրիմ

...Որոյ ականատես լեալ յետինս ի գրիչս և փանակիս ի քարտուղայս,** [Թ]շուառս և աղկաղկս ամենայնի, և մոռացեալ զիս և զբնիկ տկարուԹիւնս ցանկացող եղեալ սմա, ԹԷպէտ և յոյժ անըմ-
524ա բոն, ‖ ապաւինեալ յայն, [որ] տայ<ն> ամենայնի առատապէս և ոչ նախատէ, ձեռնարկեցի ի սմա ես՝ Կարապետ երէցս՝ Թարմատար մելանաւոր, հասի ի զրաւ գրչուԹեան սորա ոչ Թէ ըստ արհեստիցս և զաւրուԹեան անձինս, այլ ի կատարումն ուխտեալ հրամանի մարգարէին, Թէ՝ ամենայն, որ խնդրէ՝ առնու։

Արդ, աղաչեմ զհանդիպողսդ այսմ տառի յիշման արժանի վարկջիք զանարժան գրիչս՝ զԿարապետս և զիմսն ամենայն՝ զհայրն իմ զԱ[ռ]ուծն, և զմայրն իմ զՌսկիանէ, և զեղբայրսն իմ, և զամենայն արեան մերձակայս՝ զկենդանիս և զհանգուցեալս յիշման առնել արժանի առաջի անմահ գենլոյն Քրիստոսի, զի որ առատն է ի տուրս բարեաց և նախախնամող ամենայնի, անպարագրելի ողորմած զԹու-

* Իմա՝ «Պրիվելեգիա»։

** Ձեռագրի վերջին՝ 521—525 ԹերԹերը մաշված բնագրից ակնրախ տառասխալներով արտագրել է 1602 Թվին ձեռագրի նորոգող Գրիգորը։



113—27

*Թեամրն իւրով զԹասցի ի մեղ և ողորմեսցի ի միւսանգամ գալստեանն իւրում։*

*Կատարեցաւ սա յաշխարհիս Ղրիմ կոչեցեալ, ի հոյակապ և ի հաչակաւոր քաղաքիս Ղրիմ յորջորջեալ, ընդ հովանեաւ սուրբ Ցարութեանս, ի վեհագոյն տիրական իշխանութիւնն տեառն* Մխիթարայ, *յարհիական եպիսկոպոսութիւնն տէր* Ստեփաննոսի, *և առաջնորդ եկեղեցւոյ Յարութեանն՝* Սիմեոն *աւագերէցն, որ զօրինակն շնորհեց և* զԱռաքել *ծաղկողս,* որ զայս գիրքս ծաղկեց, որ կամակից եղև, և այլ միեղէն եղբարցս, որ ոպասաւորեն սուրբ եկեղեցւոյս, և զլուսարարն* զԹագվորն, *և* զԳրիգորն, *և այլ եղբարցն, որք սպասաւորեցին զմեզ՝ յիշեսջիք, Քրիստոս աստուած յորժամ գայցէ ի միւսանգամ գալըստեանն ողորմեսցի ամենայն հաւատացելոցն և մեզ՝ զԹարմատարքս, և նմա փառք։*

*Ի Թուականութեանս Հայոց ՊԵ. (1356) և սեպտեմբերի ԺԵ. (15)-ին աւարտեցա**, չորեքշաբդին, զ'ի սմա յիշատակեա[լ]քս և ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

## 502.

### ՃԱՇՈՑ

*Փիրզ. 6273, էջ 153—154*
*(Կ. Պոլիս, Ղալաթիոյ, սբ. Լուսաւորչի եկեղեցի)*

*Գրիչ՝* Խոսրով
*Վայր՝* Սուրղաթ

*... Եւ ես՝ յետնեալ հողս, մեղապարտ* Խոսրով *քահանայ, ձեռնարկեցի ի սա։*

*Արդ, խնամօք խնամակալ էին եղև զրաւ սորա Թէպէտ և անագան ի բազում զբօսանաց աշխարհի, ի ժամանակս յոյժ անբարի, զի վասն ծովացեալ մեղաց իմոց կողմս հիւսիսական, խռատուք չարին, ի գումարի գոլով մի ամօք, կամք Թնալով ան[յ]իշաչարին այց աանել համայն իւրայնոցս, զի մի գեբեալքս և վարատեալքս ի վայրս նժղեհութեան կրկին կողոպտեսցուք մեղօք մերովք։ Նաև [յիշեսջիք] զմեր միաբանեալ եղբարքս, զժողովեալքս առ ոտս սուրբ Աստուածածնին, և սուրբ Սիմէօնին, և սուրբ Աւքսենտիոսի,* զՂազար *կրօնաւոր, և* զՍտեփաննոս *կրօնաւոր, և զմիւս* Քրիստոսատուր *կրօնաւոր, և զայլ պաղի*** գործաւորսն, զտնտեսն, և զմանձկալքն, զհովիւն...։ Կատարեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊԵ. (1356), յունվար [ԻԲ.] (22), ի հայրապետութեան տեառն* Մխիթարայ, *յեպիսկոպոսութեան արհիականին տէր* Ստեփաննոսի, *ի Թագաւորութեան* Կոստանդիանոսի, *յաշխարհա-*

* *Մեծ արվեստի տեր մանրանկարիչ է։*

** *Բնագրում՝ «արարաեցա»։*

*** *Իմա՝ «բաղի»—այգու։*

կալութիւն Ծանիպէկ ղանին, ի հռչակաւոր քաղաքս Սուրղաթ, ի գաւառիս Ղրիմ, առ սաս սուրբ Ստեփաննոսի, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Լուսաւորչին, և սուրբ Գէորգեայ, և սուրբ Սարգսի, յորում ի հասեալ ժամանակիս պաշտիւր տաճարս երկնահանգէտ, և ի սրբամաքուր քահանայից արժանաւոր պաշտամամբք եօթն և տասն կարգաւորօք խորհրդական Թուովք։ Ցիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զփափագմամբ ստացողն սորա զՔրիստոսատուր կուսակրօն կրօնաւոր, և զհայրն իմ զՅովհաննէս՝ զաբեամբ նահատակեալն, և զմայրն իմ զՆռնախատն։

## 503.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 2943

Վայր՝ Ղրիմ

ա

553ա ...Արդ, ամենեքեան, որք ընթեռնուք կամ ընդաւրինակէք, գոհութիւն և աւրհնութիւն տուք մարդասիրին աստուծոյ, և յընթեռնուլն ձեր յիշեսջիք աղաւթիւք ի տէր զստացաւղ սորա զսրբասնեալ և զպատուական քահանայն՝ զտէր կնքաւորն իմ զԿարապետ, և զկենակիցն իւր զԳաւհար տիկինն, և զնորաբողբոջ աստուածապարգև փոխանորդ շնոհեալ քըւերն իւր Հիլալին, նորին անուամբն Հիլալ, և Աստուածատուրն, և ծնողսն նոցա՝ զքաղցրիկ հայրն զԱստուածատուրն, և զգորովագութ մայրն զԱղութն, և զմայրենի ազգայինսն նոցա՝ զմեծ պապ Աւետշահն, և զմեծ մամ Մինասին, և ծնունդսն նոցա, և զթոռունսն՝ զպարոն Խոսրովն, և զպարոն Միրչերն, զՅովհաննէսն, և զՍերովբէն, և զՅովսէփն, զԱռիստակէսն, և Յովհաննէս դպիրն, զՄելքիսեդէկն, և զԹալա խաթունն, և զկրսեբ պապ սոցա և զմամ՝ զՍարգիսն և զՇնորհաւորն, և զնոցա ծնունդքն՝ զՍեբերն, և զՄովսէսն, և զԱւգերն, զԱղութն, և զԼալ մաւրքուրն, որ զցայգ և զցերեկ աշխատին ի պէտս հոգւոյ և մարմնոյ սոցա, այլ և զքուերս սորա՝ զՄամատիկին, և զՄամախաթունն, զՄինասին, և զՀիլալն, և զեղբայրքս սորա՝ զհանգուցեալքն առ Քրիստոս յոյսն մեր, այլև զաստուածապարգև զաւակքն մաւրեղբաւր սորա՝ զԽաչատուրն, և զԷլխաթունն, և զծնաւղս նոցա՝ զՄովսէսն և զՍուրաթն, և զմիւս կողման ծնաւղ սոցա՝ զՎարդգէզոյն, և զկենակիցն իւր՝ զՄեծխաթունն, և զՔուրխաթունն, և զզաւակսն նոցա՝ զՎարդերեսն, և զՅովհաննէսն, և զայլսն ամենայն, քահանայք՝ զԱմիրն,
553բ և զՍտեփանն. այլ և առհասարակ զամենայն ‖ ուղղափառ հաւատացեալս...։

Այլ և զհոգևոր ծնաւղսն մեր և զարդիւնարան ուսուցիչսն, զարբ դժիր քահանայքն, զկամեցաւղ բարեաց ամենայն մարդկան զուսուցիչսն մեր երկիւղիւն աստուծոյ՝ զՎարդան քահանայն, և զընտրեալ զաւակսն, զախոյանն հաւատոց՝ զՄելքիսեդեկ քահանայ, և զՅովհաննէս քահանայ, և զՍլիմելիք, և զբարի ծնաւղն սոցա զՋոհար մայրն, և զկուսակրաւն անձն զՌուստամեն, և զհաւրքոյրն զՔուրխաթունն, և

զհարսունսն իւրեանց. և զաստուածատուր զաւակսն, և զՍարգիս կրաւնաւորն և զՀայրապետն, որք բազում աշխատեցան ի խնդրել աւրինակիս։

Յիշեսջիք ի տէր զպատուեալ քահանայն զՏիրացուն, և զհամեստ կենակիցն իւր, և զզաւակսն, և զծնաւղսն նոցա, զԿարապետն, և զամուսինն իւր զՄուլքայն, և զեղբայրսն իւր զՄկրտիչն, զՏէրն, և զզուղակիցս նոցա։

ԶՅովաննեսն, և զՅոհաննեսն, զԽաղաղութիւնն, և զփոքրիկն Վարդան, և զամենայն ազգայինս նոցա՝ զկենդանիս և զմեռեալսն, որք զաւրինակն շնորհեցին, որով լցաւ զփափագումն մեր, տացէ նոցա տէր աստուած փոխարէն զգրիլն անուանց ի դպրութիւն կենաց, և երկու կենաւք վարձահատուց լիցի նոցա ողորմութեամբն իւրով։

Նաև, թէ արժանի համարիք զտկար և զապիկար գրաւղ սորա, և զծնաւղս, և զեղբարս, և զքորքն մեր, և որպէս զմեզ յիշէք նոյնպէս և դուք յիշեալ լիջիք ի նոյն ողորմածն աստուած, որում փառք
554ա և գոհութիւն || յաւիտեանս յաւիտենից։

Այլ աղաչեմ չլինել մեղադիր վատութեան և սխալանաց գրիս, զի միտք իմ ակար էր և տեղիս՝ երթեւեկ բազմաց, այլ զպակասն ուղղեցէք սիրելաբար, և զիս առանց պարսաւանաց թողէք, այլ ոչ է ամենեցուն իշխել գիր յաւելուլ կամ պակասեցուցանել, այլ իմաստուն գիտնականաց, որք հմուտ են հին և նոր կտակարանաց և յորդեալ ուսմամբ արհեստիս։

Եւ մի ոք անաւագ շաւշափեսցէ զսա և կամ ի գետնի դնէ, այլ պարկեշտութեամբ և երկիւղիւ մերձենալ. և եթէ ոք յանդգնի և թուղթ կտրէ ի սմանէ, կտրեսցի ընդ մէջ և մասն նորա ընդ անհաւատսն գիցի։

Այլ թագաւորին անմահի և մշտնջենաւորի գոհութիւն և փառք տացուք առլեալ ձայնիւ, որ կոչեաց զմեզ ի կոչումն սուրբ և կարգեաց յաստիճան քահանայութեան, որոշեաց յաշխարհէ և երկնայինս արար, ասելով՝ չէք դուք յաշխարհէ։

Արդ, առ ձեզ են բանքս, ո՛վ քահանայք, որ ընթեռնուք, զգոյշ լինել յամենայնի և առանց նախանձու և հակառակութեան. և զհետ երթալ սիրոյ և խաղաղութեան, զանել և հնարս ընդ ամենայն մարդկան զխաղաղութիւն ունել, զի ամաւթ է ի հետոց առաջնոցն յետս անկանել, և այն է, որ ատոյ բազմաց զուլսն արածել ի վրանս հովուացն, յորմէ փրկեսցէ զմեզ տէր և յաջեայսն առաջնորդեսցէ ընդ հովուին քաջի հովուել բազկաւք, քաղցր ճաշակաց ճաշակողացդ ի հոգևոր սեղանոյ մասն յիշման և զաստուծոյ խնամոցն շնորհէ անփորձ կենօք յաջողումն, ամէն։

Բ

555ա ...Արդ, ցանկացաւղ եղեալ այսմ աստուածային գանձիս... կուսակրաւն Վրթանես հերպետն... ստացաւ զսա յիշատակ հոգւոյ իւր և նախնեաց իւրոց, ի վայելումն և ի վարժումն մանկանց սրբոյ եկե-

դեցուս։ Բայց գրեցաւ սա ի քաղաքս Ղրիմ, ընդ հովանեաւ սուրբՍտեփաննոսի նախավկային, ի թուաբերութեանս Հայոց ՊԵ. (1356), ի հայրապետութեան տեառն Մեսրովպայ*, և ի թագաւորութեանն Կոստանդեայ, և յեպիսկոպոսութեանն տէր Ստեփաննոսի, և յաթոռակալութեան տէր Յովհաննիսի:

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք կամ ընդաւրինակէք յիշեցէք ի մաքրափայլ աղաւթս ձեր զստացող սորա զվերոգրեալ զտէր հարպետն Վրթանէս, և զհոգևոր որդեակն, զշառաւիղն աւրհնութեան՝ զտէր Իգնատկեսն, և զՅակոբ աբեղան և զընտրեալ կրաւնաւորն, զկամեցաւղն բարեաց ամենայն մարդոյ՝ զԳրիգոր աբեղան, և զքաղցրիկ եղբայրն՝ զՎահան աբեղան, և զՄկրտիչ աբեղան, և զԱբրահամ աբեղան, և զպատուեալ ալևօք ծերունին և ծաղկեալն հոգւով որպէս հնրով՝ զԳէորգ աբեղան, և զհեզահոգի կրօնաւորն զՅովաննէս աբեղան, և զբարեմիտն բնութեամբ զՍարգիս աբեղան, և զընտիր կրօնաւորն զՅակովբ աբեղան, և զգթական և զարդիւնաձեռն տնտեսն՝ զհայր Ծերունն, և զաշխատասէր երկրագործն զՅովհաննէս միայնակեացն, և զԱստուածատուր աշխատաւորն, և զորդեակն իւր՝ զՍարգիս, և զծնողսն նոցա՝ զԱրևշան, և զՄարեմտիկինն, և զքոյրն իւր զԱստար տիկինն, և զայլ ամենայն ազգայինսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն յաստուած ողորմիսն յիշել, և զայլ ամենայն սպասօր սուրբ և երկնայնման տաճարիս, որ յանուն քաջ զօրավարին սրբոյն Գէորգեայ, զսուրբ կուսութեամբ քահանայքն, և զճգնազգեցիկ միանձունսն, և զաւղղափառ սարկօագունսն, և զաշխատասէր երկրագործսն, և զընդ հովանեաւ սուրբ եկեղեցոյս ննջեցեալսն, ընդ նմին և զընակիչք գեղիս, զհաւատարիմ եղբարքն՝ զՄխիթար երէցն, և զԱռաքել երէցն, զԳրիգոր ռայիսն, զՋարուխն, և զՄկրտիչն, զՔրիստոսատուրն, զԳրիգորն, զՋարուլխն, զՏօնականն, և զեղբայրն՝ զՄանուկն, զՍամուէլն, զՄկրտիչ ժամհարն, զՅովհաննէսն, զԱսիլն, զասիլ (*) պարոն Յովհաննէսն, և զկենակիցն՝ զԱւագ տիկինն, և զայլ ամենայն ժողովուրդ գեղիս, զարս և զկանայս, զծերսն և զտղայսն, զմեծ և զփոքր, զմերսն, և զօտարսն, զկենդանիսն և զհանգուցեալսն, զբարերարսն և զչարաբարսն, զուրախացուցիչսն և զվշտացուցիչսն, զորս յիշեցաք և զորս անմոռաց զիտողին յայտնի է։ Եւ որպէս զմեզ յիշէք և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս, աւրհնելոյն յաւիտեանս, ամէն։

Վաճառող՝ Կարապետ

Գ

356ա Ես՝ Կարապետ երէցս՝ ունէի զսուրբ գիրքս առ իս յիմ ընչից չինեալ, և Վրթանէս հարպետն ընչիւք խնդրեաց և ետու նմա։

Յայսմ հետէ կենայ սուրբ գիրքս յիշատակ ի սուրբ Գէորգ վանքս, անջինջ յիշատակ վերոգրեալ յիշելոցս ի սմա, և մի ոք իշխեսցէ հանել

---

* Մեսրովբ Ա. Արտազեցին աթոռակալել է 1359—1372 թ.թ. (տես՝ «Ազգապատում», էջ 1920). ուստի և ՊԵ. (1356) թվականին նրա կաթողիկոս լինելը, չնայած թվականը ձեռագրում գրված է պարզ ու որոշակի, կասկածներ է հարուցում։

զսա ի սուրբ եկեղեցւոյս, ի յիմ՝ ի Վրքանիս հարպեախս ազգէ, և ոչ ի Կարապետ երիցուս խամութեան աղագաւ, ոչ յազգէ և ոչ յայլ մօտաւորէ, ոչ յիմ և ոչ ի տէր Կարապետին, ոչ մեծ և ոչ փոքր, ոչ ծանաւթ և ոչ անծանաւթ, ոչ իմ և ոչ աւտար, ամենևին չունենայ մարդ խաւսք ի հետ գրոցս, զի յարգար ընչից իւրոց ստացաւ զսա յինէն՝ ի Կարապետէս, յիշատակ հոգւոյ և մարմնոյ իւրոյ և ամենայն զարմից իւրոց։ Եւ արդ, եթէ ոք առանց մեր կամաց յանդգնի ընդդէմ գրոցս՝ հանելոյ վասն ի սուրբ եկեղեցւոյս, չունի իշխանութիւն յաստուծոյ, և ի սուրբ եկեղեցոյս, և ի հարպետ Վրքանիսէս, և ի Կարապետ երեցոյս, բաւ է։

## 504.

### ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ԵՒ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ

Վիեն. 113, Ցուց. Ցուց. էջ 394 (տես նաև 1601 և 1737 թ. թ.)

Գրիչ՝ Գրիգոր

102բ Կատարեցաւ ցանկ առաքելական մատենիս ի փառս Քրիստոսի ձեռամբ յոգնամեղ գրչի Գրիգորի, յօրինեալ և կազմեալ Ներաղի։ Եւ ստացող զսա շնորհալի եւ ուսումնասէր զեռաբուսիկ ծաղիկն Տիրատուր պատանեակ, ի վայելումն անձին իւրոյ եւ յիշատակ ծնողացն իւրոց՝ Յովանեսի եւ մօրն իւրո Մամախաթունի։ Որք օգտիք ի սմանէ ընթերցմամբ եւ կամ գաղափարաւ՝ յիշեսջիք ի Քրիստոս զստացողն Գրիգոր քահանայս,* ընդ նմին զհաւատարիմ զբարեպաշտ եւ զիմաստուն այրն զպարոն Փախանն եւ զծնօղսն իւր... որ զօրինակն շնորհեաց եւ զծոյլս յորդորեաց եւ ժրացոյց, հատուցէ նմա տէր, ամէն։ Թվ. ՊԵ. (1356), յապրիլ ԻԲ. (22), եւ որք յիշէք՝ յիշեալ լիջիք։

## 505.

### ԳԻՐՔ ԱՆԴՐԻԱՆՅԱՑ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երեւան 4793 (տես նաև 1314 և 1396 թ. թ.)

Գրիչ՝ Յոհ[աննես]

356ա Թվ. ՊԵ. (1365), փետրուար Ա. (1), զվերջին կարեաւք ստացաւղ գրոցս զՍառոյ, և զգուսար իւր զՏիկնաց, զՄարգիս կաւշկար, և զտէր Մարտիրոս, և զԱնդրէաս արեղայ, և զմեղուցեալ գրիչս զՅոհ[աննես] կարաւտ բանի, [աղաչեմ յիշել...]։**

---

* Հապավված է այսպես՝ «Գր.քհ»։

** Նոր ժամանակներում լուսանցքները կտրել-փոքրացրել են, որի պատճառով վերջին տողից պահպանվել են միայն տառերի վերին եզրերը։

## 506.

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ ԱԹԱՆԱՍԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

Երևան 3046

Գրիչ՝ Գրիգոր Սուքիասեանց
Վայր՝ Ղրիմ

ա

1ա Տիրացու քահանային ի վայելումն է սա, ի թվ. ՊԵ. (1356), յօգոստոսի Ի. (20), գրեալ ձեռամբ Գրիգորի Սուքիասեանց:

Հետ. ստացող

բ

1բ ...Ես տասւել զեպիսկոպոսապետն մեր զտէր Գրիգոր և մերոյ սրբասն[ե]ալ արքեպիսկոպոս տէր Անտոնին շնորհեսցէ մեզ ընդ երկայն աւուրս ուղիղս վա[րուք]:





507.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, Ս. Նշան, № 23, ՀՄ., 1925 թ., էջ 125—127

Գրիչ՝ Գաւազան
վայր՝ Երնջակ գաւառ, գիւղ՝ Նորակերտ

504 ...Որոց եւ ես՝ յետինս ի բնաւից, մեղսամակարթ ծառայս պարտական բիւր քանքարոյ Ջէոար, բաղում բաղձանօք ցանկացայ հետեւիլ հետոց նոցին, եւ զի տկար եւ անժոյժ ունէին զկատարումն բարոյն, եւ հանապազ զարտուղեալ զտանէի զիս ի շաւղաց նոցին եւ բնաւին յետնոցն, ի շնորհս ոչ կարէի ուղղակցիլ, վասն այն՝ յուսով եւ հաւատով ստացայ զսուրբ աւետարանս, լսելով ձայնի տեառն, եթէ՝ որ ընդունի զբանս իմ եւ պահէ զնոսա, նա է, որ սիրէ զիս։ Արդ, ապաւինելով ի նա, առի զհրաման նորա զրով եւ անզիր ի յօժանդակութիւն ինձ ի հոգևորս, եւ ի պահպանութիւն հոգւոյ եւ մարմնոյ, պարիսպ ամրութեան յամենայն չար պատահարաց, նայ եւ յետ աստի կենացս յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողաց իմոց, հօր իմո՝ Աւթաշէրին եւ մօր իմո Շարուեռ։

Արդ, աղաչեմ զամենեան, որք հանդիպիք այսմ աստուածային աւետեաց երգարանիս յօրինակել, կամ յընթեռնուլ, կամ ի լսել, յիշեսջիք բարի կամօք զմեզ և զվերասացեալ մեր ծնողս ի մաքուր աղօթս ձեր, եւ աստուած յիշողացդ եւ յիշեցելոցդ առհասարակ ողորմեսցի, ամէն։

Ժտիմ եւ ես՝ մեղապարտ անձն Գաւազան, պիտակ անուամբ քահանայ, փանաքի եւ փցուն գրիչս, զպատահեալսդ սուրբ աւետարանի յիշել զուարթ սրտիւ ի մեղսաքաւիչ աղօթս ձեր զմեզ, եւ զծնողսն մեր, եւ զուսուցիչս, եւ զերախտաւորս, եւ տէր եղիցի ընդ ձեզ եւ ընդ մեզ, ամէն. եւ սխալման եւ խոշորութեանն անմեղադիր լերուք, զի այսչափ էր կար մեր, եւ նուազ եւ խիտ գրեցաւ վասն այն, որ մագաղաթ չկայր։

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՊԶ. (1357), ի գաւառիս Երնջակա, ի գեօղս Նորակերտ, ընդ հովանեաւ սուրբ Գրիգորիս, ի խնդրոյ քրիստոսասէր եւ ուղղադաւան պարոն Ջեսարին, որ ստացաւ զսա հալալ արդեանց ի բարեխօս դերկար եւ խաղաղ կենաց իւրոց, և ի յիշատակ վերոգրեալ ննջեցելոց իւրոց, զորս ի ստոյգն եւ ընտիր օրինակէ շարագրեցաք, զոր տէր աստուած վայելել տացէ կրկին կենօք...։

## 508.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5332 և Փիրղ. 6273, էջ 155*

Գրիչ՝ Կարապետ

*...Եւ արդ, ի յայսմ Թուաբերութեանս Հայեական տումարիս՝*
*յութհարիւրերորդի վեցերորդի (1357), երևեալ աստուածասէր և բա-*
*րիանուն մահդասի, որոյ* Խնդրու *յորջորջի... սա ստացաւ զսուրբ*
*աւետարանս ի հալալ արդեանց իւրոց աշխատութեանց, յիշատակ հո-*
273բ *գոյ իւրոյ և ծնաւղաց՝* Գրիգորի *և* Մերչա խոթունի, *եղբարցն՝* Աւագի
*և* Յովանիսի, *և ազգայնոցն ամենեցուն՝ կենդանեաց և հանգուցելոց,*
*եւ ետ զսա ի սուրբ ուխտն և յանուանի հռչակաւոր տեղին, ի դուռն*
*սրբոյն Գէորգեայ զաւրավարին, որ հանապազ հրճուին սովաւ ման-*
*կունք սուրբ եկեղեցոյ՝* [Յովանէս, Ստեփանոս, Ատոմ, Աստուածատուր,
Յոհանէս, Յովանէս, Մխիթար]*, *և հանապազ յիշեն յաղաւթս իւրեանց,*
*ես առաւել ի ժամ սուրբ և սոսկալի պատարագին, զստացող սորա՝*
*զ*Խնդու *մահդասին, և զծնաւղսն՝ զ*Գրիգոր *և զ*Մերչախաթուն, *և զեղ-*
*բարսն՝ զ*Աւագ *և զ*Յովանէս, *և զազգսն ողջոյն, ամէն։*

*Եւ արդ, ես՝ ունայնացեալս ի գործառնութեան կանոնիս ժամա-*
*նելոցն. յոգնամեղս և փցունո ի գրչաց, սուտանուն* Կարապետ, *յերես*
*անկեալ աղաչեմ զհայրական և զեղբայրական գութ սիրոյ ձերոյ,*
*յիշեցէք և զիմ անարժանութիւնս, և աստուած-ողորմի ասացէք մեզ*
274ա *և մեր ծնաւղացն՝* Թովմայի *և* Մամասի, *և եղ*‖*բարցն՝* Մկրտիչ *քա-*
*հանայի և* Նախապի՝ *տարաժամ հանգուցելոյն։*

*Յիշեցէք և զծաղկող սորա զ*Ջաւհարիայ *կրաւնաւոր և զ*Արդըլմսեխ
*սարկաւագ, որ աշխատեցաւ ի կոկել թղթիս. և Քրիստոս աստուած.*
*որ առատն է ի տուրս, ձեզ և մեզ ողորմեսցի, և նմա փառք յաւի-*
*տեանս, ամէն։*

*Ո՞վ եղբարք, յայսմ ամի, յորժամ զսուրբ աւետարանս գրէի, եղև*
*գալուստ ղանին յարևելից և ըմբռնումն* Աշրաֆին, *ապա յետոյ չգի-*
*տենք թէ ինչ պիտի լինի, զինչ որ աստուած կամի։*

212ա *Եւ արդ, ես՝* Խնդու *մահդասիս, որ ըստ աստուածային յաջողու-*
*թեանն եղէ առաջնորդ սուրբ ուխտիս* Գէորգայ, *և շինեցի զվանքս, և*
*գնեցի զաւետարանս, և զտարեգիրքս, և զգործ առաքելոյն, և զճա-*
*ռընտիրն, և երկու մաշթոց, և շարականոցն, և զխազտետրն, և զամե-*
*նայն զարդիւք զարդարեցի զանապատս ըստ իմում կարողութեանս։*
*Այլ և բերի զեղբաւրորդին իմ, որ է ըստ ա*ւ*րինաց և կանոնաց իմ*
*որդի, և ձոնոն արարի ինձ հոգևոր որդի և յիշատակ հոգոյ իմոյ, որ*
*և իմ արդար վաստակով ստացած գրեանքս ի վայելումն անձին Նորա*
*լիցի՝* Յոհանիսին, *որ և տէր աստուած արժանի արասցէ ստիճանի*
*քահանայութեան և յաւելու ի շնորհսն, որպէս* Սամուէլին, *և եղիցի*
*մշակ անամաւթ ընդունելի տեառն և բարի յիշատակ ամենայն հաւա-*
*տացելոց, ես առաւել ազգատոհմին իւրոյ, ամէն։*

* *Այս անունները գրված են այլ ձեռագրով դատարկ թողնված 4 տողերի վրա։*

## 509.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 8388 (տես նաև 1030 թ.)**

Գրիչ՝ Գրիգոր որդի Նատերի
վայր՝ Ղրի՞մ

Ի թվ. ԳԶ. (1357), մայիս ի ԺԱ. (11)։

103ա Զատացաւդ այսմ աստուածախաւս մատենիս՝ զՄարգարէոս կուսակրաւն կրաւնաւոր և զեղբայր իւր զՍարգիս միայնակեացն՝ զբազում առաքինութեամբ զարդարեալքն, յիշեցէք ի տէր։

Ընդ նմին և զիս՝ զանարժան և զմեղսասէր գրիչս զԳրիգոր սուտանուն սարկաւագ, և աստուած յիշողացդ և յիշելոցս առհասարակ ողորմեսցի։

Զհայրն իմ զՆատեր, զպատուական ծերունին, զբազմաց գովելին, յիշեցէք ի տէր։*

ԳԶ. (1357), Մեծ խանն ի Թաւրէզ դիմեալ գնաց։

## 510.

### ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

**Երևան 2371**

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Սուրխաթ

...Աստանօր յանգ ելեալ կատարեցաւ տառս այս իմաստապատում, որ կոչի քերական, արարեալ և մեկնեալ զսա մեծ վարդապետին Հայոց Վարդանայ Կիլիկեցւոյ, ի խնդրոյ բարեպաշտ Թագաւորին Հեթմոյ, նաև խրատք Գէորգեայ վարդապետի, և անհաս գրչին Առիստակիսի՝ մեծ հռետորի, ի թուիս Հայոց ԳԶ. (1357), ձեռամբ Ստեփանոսի մեղապարտ և յետին գրչի, ի խնդրոյ սրբամաքուր և ըն-
202ա թերցասէր քահանային Կարապետին, ի վայ|| ելուչ անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ իւրոյ, վասն զի սա է քանոն և գաղափար ամենայն արհեստից, եւ առաւել որք փութան ձեռնարկել յարհեստս գրչութեան։ Զի որպէս անհնար է թռչնոց ի լուծ լծել և ակաւս պատառել, և կամ եզանց յաւդս վերանալ, նոյնպէս առանց աշխատելոյ ի սմա ոչ ոք կարէ հասու լինել արուեստին մեծի գրչութեան. և որ յանդըգնի համարձակել՝ ոչ կարէ գրել զճշմարիտն, այլ եղծանէ զարուեստն և աղաւաղէ զգրելին, բստ անիմաստ խոհակերի, այսինքն մսագործի, որ ոչ գիտէ զորոշումն յաւդուածին, այլ անհմտաբար հանէ զանդա-

* Այս նախադասությունը գրված է այլ ձեռագրով։

*մայն միոն ի միւս անդամն և զմիւռոյն՝ ի միւս այլն։ Բայց են ոմանք, որ ծաղր առնեն զդիրս զայս, որպէս և է մեր ազգիս հպարտութիւն և բռնավորութիւն։ Զի որպէս մարգարիտ ի քիթս խոզի և մանեակ ոսկի ի պարանոց իշոյ, այնպէս է սա ի ձեռն անիմաստ և*
209բ *անմիտ առնն, այլ ‖ որ արբի սիրոյ սորին, նա միայն գիտէ զճաշակ քաղցրութեան դորա։*

*Բայց գրեցաւ սա յաշխարհիս* Հռոմոց *և ի յերկիր* Խրիմի, *ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքիս, որ կոչի* Սուրխաթ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, ի հայրապետութեանն Հայոց տեառն* Մխիթարայ *և յեպիսկոպոսութեանն տէր* Ստեփաննոսի՝ *աւրհնեալ քահանայապետի ամենայն հիւսիսական կողմանց։*

*Արդ, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ աւրինակաւ յիշեսջիք ի մաքրափայլ աղօթս ձեր* զԳարապետ *սրբամաքուր քահանայ, և զծնաւղս իւր՝ զհայր իւր զպարոն* Աստուածատուրն, *և զմայր իւր* զԱղութն, *և զքոյր իւր* զՀրիպայ̃ *զփոխեցեալն առ Քրիստոս, և զհամեստ ամուսին իւր* զԳոհար *տիկինն, և զնորաբողբոջ զաւակն իւր* զՀիյալն, *և* զՎարդենին: *Ընդ նմին և զիս՝ զեղկելի գրիչս* զՍտեփանոս, *և զծնաւղս իմ, և զամենայն արեան մերձաւորս իմ, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշելեացս առհասարակ ողորմեսցի, ամէն։*

511.

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

***Երևան 7740 (տես նաև 1429)***

*Գրիչ՝* Մխիթար Անեցի
*Վայր՝* Սուլթանիա՞յ

ա

300բ *Եւ աստ եւ և յամենայն տեղիս յիշել աղաչեմ զանարժան գծողս և զկաղմողս՝* զՄխիթար Անեցի. *եղև աւարտումն սորա թվիս ՉԶ. (1357)։*

բ

*...Եւ արդ, քանզի ցանկացող եղև այսմ կենսաբեր և տիեզերահրաշեր սուրբ աւետարանիս արդարամիտ և յամենայնի երկեղած բարեպաշտ առնս այս՝* Մոմեղէն *սարկաւագս... յիշատակ իւր և ծնողաց*
388բ *իւրոց, հօրն իւր* Շահ[ե՞]նին, *և մօրն ի[ւր]* ‖ Շուշանայ.* *և եղբայրց իւր՝* Շահին, *նաև ի Քրիստոս աստուած հանգուցեալ պարկեշտ հաւատարիմ ամուսնոյն իւր* Սուլթան-Մելիքին, *և մատաղատունկ երկուց որդեացն իւր, որ աղա ի Քրիստոս գնացին և թողին սուգ անմխիթար հօրն իւրեանց և այլ ամենայն արեան մերձաւորացն...։*

*Դարձեալ աղաչեմ աղերսալի մաղթանօք յիշել ի Քրիստոս Զա-*

* *Այլ գրչով ուղղված է անունը և գրված՝ «Շուշիկայ»։*

*ճարի[ա] քահանային, և զանհրն իմ զուսթայ Վրանն, և զոքանչն իմ զՄարիամ խաթունն, և զքեռնեկալն իմ Նաւրադին զասայն, և զքենին իմ զԽելզա Մելիքն...։*

390ա *...Նաև զիս զրաղմամեղ և զանիմաստ գծող սուրբ աւետարանիս զՄխիթար Անեցի, [որ] ծեր ալևուք և տկար անձամբ գրեցի զսայ։ Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան առհասարակ, անմեղադիր լինել սխալանաց և խոշորութեան գրիս, վասն զի կարի յոյժ իմն ծեր անձամբ աշխատեցայ ի գրելն սորայ։*

390բ *...Զրաղմաւէր ողի դմանկաաւաղ Ներսէսս՝ զսակաւ աշխատողս ի սմայ, աղաչեմ միով տէր-ողորմեայիւ օգնական լինել, զի և դուք ողորմութիւն գտանէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Գրեցաւ ի ՌԶ. հարիւրերորդի հինկերորդի (1356), ի փառս Քրիստոսի աստուծոյն մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն։*

Գ

391ա *...Եւ զբաղմամեղ Զաքարէս՝ զղինեծախս, ի ձեր սուրբ աղաւթս յիշեցէք...։**

512.

### ՏՈՆԱԳԱՏՃԱՌ

*Երևան 2039 (տես նաև 1624 թ.)*

*Գրիչ՝* Անտոն
*վայր՝* Կաֆայ

319բ *...Այլ և. զայս գրեմք վասն աստուածա || պատում տառիս, որ գրեցաւ ի թուականութենէ յայտնութեան կենարարին մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՅԾԹ. (1359) և ի Հայ թուականութեանս ՊԶ. (1357)։ Կատարեցաւ ձեռամբ ամենամեղ և անիմաստ գրչի ապիկարի՝* Անտոն *անուն անարժան քահանայի, յաշխարհս* Հոնաց, *որ այժմս* Ղրիմ *կոչի, ի քաղաքիս աստուածապահ, որ* Կաֆայ *անուանի, ի վանս կուսանաց, առ ոտս և հովանիս մաւր տեառն մերոյ մաւրն սուրբ Աննայի, ի հայրապետութեան Հայոց տէր* Մխիթարա, *և ի թագաւորութեանն* Կոստանդիանոսի *Հայոց. և յառաջնորդութիւն այսմ նահանգի վերատեսուչ և արհիական եպիսկոպոսի տէր* Ստեփանոսի, *և երեսփոխանի Նորին տէր* Յոհաննէս *աբեղայի՝ կորովամիտ և ուղղափառ հռետորի* Սեբաստացոյ։

*Արդ, գրեցաւ սա յիշատակ հոգւոց, և ծնողաց, և զաւակաց, և կենաց կցորդի, և ամենայն արեան մերձաւորաց* Անտոն *քահանայի, որ բազում աշխատեցաւ ի տես և ի փափագ վայելս սորա, և ձեռամբ իւրով գծագրեաց յոյժ աշխատանաւք, և փորձանս և հակառակութիւն*

** Ավետարանը գրված է հավանորեն Սուլթանիայում, մոնղոլական արվեստի զգալի ազդեցությունը կրած եղակի հուշարձաններից մեկն է։*

ոչ սակաւ կրեաց ի հերձուածողացն, և պատերազմ, որ կայր ի ժամանակին յայնմիկ, և այլ յոլով վիշտս ի բանսարկուին արկածիցն, որ ի մի աւրն երիցս անգամ կաղմրին մարանն վաթեցաւ, և էր ձմեռն ժամանակ, և ի հուրն եփելով էր թանաքն, և այլ շատ ձանձրութիւն ի քնոյ րերէր բանսարկուն յամարային ժամանակին, և խափանուՊ ջանայր աստուածազարդ տառիս…։ Այլ և կայ լուծմունք և մեկնութիւն տառիս ի սուրբ հայրապետա՛ցն՝ ի Պետրոսէ Աղեկսանդրու հայրապետին, և ի Գրիգորէ Աստուածաբանէն, և Յովհաննու Ոսկիբերանէն, և յԱնանիայէ վարդապետէ, յԵպիփանու, յԵփրեմէ և ի Բարսղէ և յայլ սուրբ աստուածազգեաց արանց, որ վասն ծննդեանն և յայտնութեանն և ամենայն տէրունական տաւնից տան վկայութիւն և կարկեն զբերանս հերձուածողացն, որք ասեն զծնունդն ի դեկտեմբեր ԻԵ. (25) և զաւետուՊ՝ մարտ ԻԵ. (25)…։

Արդ, ստացաւ զսա յիշատակ իւր Անտոնն և ամենայն զարմից, յարդար վաստակոց, այն է՝ որ ձեռամբ իւրով գրեաց, և որք աւգնական եղեն ի գիրս մարՊաւոր ընչիւք, անուանք նոցա, որ յիշին աստ այս է՝ Ումեկ ժամկոչն, և Նորշահն, և Առաքելն, որ ի սղութեան ժամանակս աւգնեցին մեզ հացիւ և արդեամրքն՝ որով կարացին։

Արդ, որք կարդայք զգիրս զայս կամ աւրինակէք, սուրբ հարք և եղբարք, թողութիւն խնդրեցէք յաստուծոյ այժմ յիշեցելոցս, որ աստ կան՝ Անտոնին, և կենակցին իւրոյ Թագուհոյն, և զաւակացն

320ա Մաղաքի‖այի սարկաւագին, և Սահակի՝ եղբաւր նորին, և Յակոբ պատանեկին. և ծնողաց սոցա՝ Դաւթին և Մարիանէին, և Աստուածատրին և Շնոփոր տիկնա, Նորշահին, և հաւր նորա՝ Հաւրաւտին, և մաւր իւրոյ, և կենակցին՝ Աւագ տիկնա, և կանուխ փոխեցելոյն առ Քրիստոս Մարտիրոսին, որով ըստ անուանն և զկեանս ժառանգեացէ, և քուրոյս սորին՝ Շնոփոր տիկնայ, Առաքելին, և ծնողաց իւրոց, և Ումեկ ժամկոչին, որ աւելի աշխատեցաւ քան զկար իւր, և ծնողաց նորին, և եղբաւրն՝ Տղայպարոնին, և աւրինակիս շնորհողին՝ Կարապետ քահանային, և ծնողաց նորին։ Աղաչեմ, սուրբ ընթերցողք, ի յաւժար կամաց ձերոց հայցեցէք և խնդրեցէք ի Քրիստոսէ, զի զանուանս սոցա գրեացէ ի դպրութիւն կենաց իւրոց…։

## 513.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետ. 141 Ցուց. Ա. էջ 622-614 (տես նաև 1365 թ.)

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Հռոմկլայի գաւառ, գիւղ՝ Ծակաղբիւր

222բ …Շնորհիւ տեառն սկսայ և աւգնա՛կանութեամբ և ողորմութեամբ բարերարին ածի ի գլուխ և ի կատար զսուրբ աւետարանս ի թուականութեան Հայոց ի ՊԶ. (1357), ի կաթողիկոսութեան տեառն Յակոբայ. և ի թագաւորութեան Կոստանդեա, և ի հայրապետութեանս

մերում տէր Փիլիպոսի, ի գաւառիս Հաւմկլայի, և ի գեաւղս, որ Տակ-ադբիւք կոչի, ձեռամբ իմով՝ անարժան և մեղսաթաւալ, փանաքի և անարհեստ գրչի, որոյ անուն Յովաննէս կոչի, և սուտանուն դպրի, իշխանութեամբ և հրամանաւ սրբասնեալ և առաքինասէր եպիսկոպոսին մերս տէր Փիլիպոսի, զոր տացէ տէր աստուած մեզ զնա ընդ երկայն աւուրս, ի յիշատակ Հեթում քահանայի, և ծնաւղաց իւրոց, և զաւակաց, և որդւոյ նոցա՝ պատուական քահանայի Աբրահամու, սա մեծաւ փափագանաւք՝ յիշատակ նոցին անջնջելի։ Արդ, թէպէտ և անարհեստ էի ի գրչութեանս՝ փանաքի և անյարմար, այլ հոգևոր հայրն մեր Հեթում, որ լի է և պատալուն յարհեստ գրչութեան, և ընդ բնաւս հռչակեալ, նաև բանիւ կատարեալ և հոգով լցեալ, որպէս և անոյ յայտնի է իմաստնոց և ստոյգ գիտողաց, զի լի և կատարեալ է արուեստիւ, ի բանս, ի բառս, ի լծորդս, և ի բացատս, և ի տրոհմունս առոգանութեանց ծանոյց ինձ խրատով, և ես՝ մեղաւոր հոգս, յոյժ բաղձանաւք և յոքնապատիկ տենչանաւք, մեծաւ աշխատութեամբ, ըստ կարի գծագրեցի զսուրբ աւետարանս ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցոյ։

Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, մանաւանդ զդասս քահանայից... յիշեսջիք զՀեթում քահանայ և զծնաւղսն նորա, և զորդի նորա Աբրահամ քահանայ, և զկենակիցն նորա զՋուհարն, և զբարեբոյս աստուածատուր զաւակն իւրեանց Զաքարէ, զոր պահեսցէ տէր աստուած ամբողջ ի փորձողէն՝ հոգով և մարմնով, մինչև ի խորին ծերութիւն. և զամենայն ազգայինսն իւրեանց՝ զմեծ հայրն զՎասիլ, և զկենակից նորայ՝ զփոխեցեալն առ Քրիստոս՝ զզԱմէն, և զբարեպաշտ զաւակսն նոցայ՝ զՅովաննէս, և զհոգեսէր կենակիցն նորա՝ զԱղեկտիկինն, և զանդրանիկ որդիս նոցայ՝ զԴանիէլն և զՑաւէնն, [զԻշխանն, և զմայր նորա զԼուսնայն],* և զՄիրունն, և զիւր կենակից նորա զՄինախաթունն, նորաբոյս զաւակաւք իւրեանց՝ զԹորոս և զՀեթում, որ կամակից եղեն և աւգնական սուրբ աւետարանիս աւարտման, ի յայդմ կենցաղս պահել անսասան և ողորմութիւն գտանել յահեղ աւուրն համատարածի, ընդ կամարարս իւր ի տեառնէ մերմէ Յիսուսէ, և որ յիշեսցէ զվերոգրեալքս, Քրիստոս աստուած զինքն յիշէ ողորմութեամբ իւրով։ Ո՞հ, և զիս՝ զխաւարեալս մեղաւք զՅովհաննէս, և զհայրն իմ Սէթ քահանայ՝ զհանգուցեալն ի Քրիստոս, և հոգևոր եղբարքն մեր զԻսահակ և զՂազար, երկրամերձ դիմաւք յերես անկեալ աղաչեմ զձեզ, ով լուսերամ դասք քահանայից և սարկաւագաց, որք հանդիպիք և զմ[այ]լիք ի կենսաբուխ սուրբ աւետարանէս, յիշեսջիք...։

* Փակագծի մեջ բերվածը մանր տառերով գրված է տողավերևում։

514.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4216 (անս նաև 1554 և 1730-ական թ.թ.)

Գրիչ՝ Մկրտիչ
վայր՝ ի Թաղս Դուդուչի

298ա Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ աւետարանս ձեռամբ յոգնամեղ և փցուն գրչի Մկրտիչ քահանայի, ի Թաղս Դուդուչի կոչեցեալ, ընդ հովանեաւ սրբոյ տաճարիս սուրբ Գէորգ կոչեցեալ, հրամանաւ և արդեամբք հաւատարիմ Քրիստոնէին՝ պարոն Հայրապետին, յիշատակ իւր և ծնողաց և եղբարց և զաւակացն, հաւրն իւր պարոն
298բ Մամուկին, և մաւր իւր Սափիրայ խաթունին, և Բ եղբաւր իւրոյ պարոն Կարապետին, և զաւակաց իւրոց՝ պարոն Մկրտչին, և պարոն Զաքարիային, և պարոն Աստվին, և այլ ամենայն ազգատոհմին իւրոյ, և զարմից, և ամենայն արեան մերձաւորաց և երախտաւորաց։

Արդ, որք, հանդիպիք այս լուսազարդ սուրբ աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք յաղաւթս ձեր զվերոգրեալսն, զՄկրտիչ քահանայն, և զպարոն Կարապետն, և զպարոն Հայրապետն, և զամենայն զարմ իւրեանց, և որք յիշէք զմեղ յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի յիւր սուրբ միւսանգամ գալուստն, և մեք և չուք ի մի բերան աւրհնեսցուք զաստուած հանապազ։

Բայց գրեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊԶ. (1357), ի Նոյեմբեր ի Ժ. (1՞) աւարտեցաւ։

515.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրգ. 6273, էջ 155-156 (Վան, սբ. Վարդան եկեղեցի)

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Երուսաղէմ

...Ցամի ՊԶ. Թուականութեանս մերոյ, (1357), ի հայրապետութեան տեառն Յակոբայ և ի թագաւորութեան Կոստանդիանոսի գրեցաւ սուրբ աւետարանս, ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի դրունս սուրբ և փառաւոր տաճարիս Քրիստոսի սուրբ Հրեշտակապետաց, ձեռամբ փանաքի Կարապետ գրչի։

516.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ԻԳՆԱՏԻՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Երևան 3405 (անս նաև 1363 և 1668 թ. թ.)

Ստացող՝ Կարապետ

372բ Շնորհիւ տեառն սկսաւ և ողորմութեամբ նորին կատարեցաւ աւետարանս բստ Ղուկա, մեկնեալ Իգնատիոսի հայրապետի, ձեռամբ

Ստեփանոսի աշխատասէր գրչի, ի բարեխաւսութիւն ինձ՝ մեղաւորիս Կարապետի, և կենակցի իմոյ Գոհար տիկնա, և զաւակաց մերոց Հէլալին, և ծնաւղաց մերոց՝ Եւսեբերին, և Մովսիսին, և Աւգերին, և ամենայն զարմից, որք աւգտիք մեղաց քաւութիւն հայցեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։

Ի թվ. ՊԶ. (1357) գրեցաւ, և ի մարտի Ի. (20) աւարտեցաւ, ի փառս աստուծոյ։

517.

ՃԱՇՈՑ

Երևան 7435

457բ Աւրհնեալ ես աստուած... որ ետուր զաւրութիւն հասանել ի նաւահանգիստ ծովանման գրչաւորութեանս, որ ի սկսանելն յուսով մտաք ե զեզերս աչաւք տեսաք, եղև խնդութիւն, ըստ աւրինակի նաւելոցն՝ ելանել ի նաւէն, և տեսանել զնաւահանգիստն, ե գոհանալ զարարողէն, աւրհնութեամբ, զովութեամբ, և երկրպագութեամբ, յաւիտեանս ամէն։

Ի թվ. ՊԶ. (1357), հոկտեմբեր ամսու Է. (7)։*

518.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5394

Գրիչ՝ Յուսէփ
վայր՝ Թացու գիւղ

244ա ...Տանուտէրն Դաւիթ, որ ցանկացող եղեալ աստուածաբան սուրբ աւետարանիս և ետ գրել զսա ի հալալ ե յարդար վաստակոց իւրոց, յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց...։

244բ ...Գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ սուտանուն զՅուսէփիս, ի գեւղն, որ կոչի Թացու, ընդ հովանեաւ սուրբ Գէորգա զօրավարին ե սուրբ Ատոմա զօրավարին։ Ի թուականիս Հայոց ԸՃԶ. (1357°),** ի հայրապետութիւն Ախթամարա աթոռոյն տէր Ստեփանոս կաթողիկոսին և պարոնութիւն Աղալ բէկին, ի դառն և նեղ ժամանակիս գրեցաւ. անմեղադիր կալէք խոշորութեան և սխալանաց մերոց, զի կայր մեր այս է, առաջին գիրն է այս։

* Մատենադարանի ցուցքամատյանում նշում կա այն մասին, որ ձեռագիրն ընդօրինակված է Պալըխլու կզզում։ Ի՞նչ տվյալի հիման վրա է արված այդ նշումը, մեզ համար մնում է մութ։

** Սույն տարեթիվը կասկածներ է հարուցում։ Ձեռագրում տարեթվի «Ճ.» (100) թվանշանը գրված է այնպես, որ կարող է կարդացվել նաև «Ձ» (80). այդ դեպքում թերևս հնարավոր լիներ տարեթիվը սրբագրել այսպես՝ Ը[Ճ]ՁԶ. (886=1437), հնագրական տվյալները չէին հակասի այս սրբագրությանը։ ԺԴ—ԺԵ դարերում Աղթամարի կաթողիկոսներից Ստեփանոս անունն են կրել երկուսը՝ Ստեփանոս Դ. (1336—1346), և Ստեփանոս Դ. (1464—1489)։ Սակայն նրանց աթոռակալման թվականները չեն օգնում որոշելու, թե վերոհիշյալ թվականներից որն է ընդունելի։ Չկարողանալով ճշտել հիշատակարանի կասկածելի տարեթիվը, այն թողնում ենք 1357-ի թվաշարքում։



*ՊԷ* *1358*

## 519.

### *ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ*

*Երևան 2087*

*Գրիչ՝* Յովանէս

247ա *Արդ, ի վերջին ժամանակիս և յերեկոյացեալ աւուրս եղև աւարտումն տառուածախաւս գրոցս ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի* Յովանիսի, *ի փառս Քրիստոսի աստուծոյ մերոյ, ամէն։ Ո՛վ գերամաքուր միտք և սրբասէր հոգիք և ամենայն առաքինութեամբ զարդարեալք՝ հարազատ եղ[բարք] և կուսակրաւն քահ[անայք], յիշեցէք զտառապեալ հոգիս* զՅով[անէս] *յերկնաթռիչս յաղ[աւ]թս, և թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ բազում յանցանաց իմոց, և աստուած մեզ և ձեզ ողորմեսցի ամենայն սրբոց աղաւթիւք, ամէն։*

*Արդ, գրեցաւ աղաւթական գիրքս այս ի յայսմ ամի, յորում էր թիւն Հայոց ՊԷ. (1358), յորժամ զչար իշխանն և ղաւերումն աշխարհաց, զարբանեակն սատանայի, որոյ անունն* Աշրաւ *կոչիւր, ի խնամոցն աստուծոյ եկն թագաւորն հիւսսային, որոյ անուն* Ջանիբէկ *կոչիւր, և եբարձ զկարապետ Նեռինն ի կենաց, և եղև ղագարումն չարեաց նորա։*

## 520.

### *ՍԱՆԴՈՒՂՔ ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԵԼԻՑ, ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԼԻՄԱՔՍԻ*

*Երևան 5202*

*Գրիչ՝* Գրիգոր
*վայր՝* Ալընդանց գիւղ

284բ *...Ի թուաբերութեանս յոբելեն հայկազեան տումարի ՊԷ. (1368) կատարեալ յանդեցաւ գիրքս այս սանդուխտ կոչեցեալ, շնորհաւք* և կարողութեամբ աստուծոյ, ձեռամբ նուաստ և անարհեստ մեղսամակարդ* Գրիգորի *քահանայի, որ չեմ արժանի, թէ կոչեցել քահանա, ի գեաւղս, որ կոչի* Ալընդանց, *ընդ հովանեաւ սբբուհոյ Աստուածածնիս և սուրբ Գէորգա զաւրա[վարի, ի խնդրո՛յ] կրաւնաւոր սուրբ և մաքուր ամենայնի* Սարգսին, *որ ստացաւ զսա ի* խալալ *արդեանց իւրոց յիշատակ իւրն և ծնողաց իւրոց, և որ կարդայք կամ աւրինակէք, յիշեցէք զհայր* Սահակ, *և զ*Ստեփանոս *աշակերտն նորա, և զ*Կարապետն

** Այստեղից սկսած հիշատակարանը մաշված է ու խունացած, այն աստիճանի, որ մի շարք բառեր հնարավոր է լինում կարդալ միայն ենթադրաբար։*

*նրբամիտ կրաւնաւորն, որ բազում աշխատեցան և աստուած զձեզ յիշէ, զ[Ադամ] սրբամիտ քահանայ, և զԴաւիթ քահանա, և զՈվաննէս, և զԹադէոս, և զփցուն գրիչս, և զհայրն իմ, և զեղբայրսն իմ։ Անմեղադիր լերուք, այս ի հարկէ եղև առաջին գիր, և այլ չեմ արարել։ Ժամանակս այս է, որ Ղ.ուչին տարաւ զմե[զ՞...] զՎան(՞), խիստ դառնութիւն էր ժամս։*

## 521.

### ԱՒԵՏԱՐԱՆ

**Վենետ. 112 Ցուց. Ա. էջ 500**

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Ղրիմ, Կոֆաու Նորաշէն քաղաք

295ա *...Արդ, աստանաւր յանդ ելեալ կատարեցաւ սուրբ աւետարանս ի լաւ և յընտիր աւրինակէ, հոգեկիր և գերիմաստ վարդապետին և քաջ բաբունոյն* Գէորգեա [Սկեռացւո՞յ], *ի Թվ. Հայոց Պէ. (1358), նոյեմբեր[երի] ԻԸ. (28), ձեռամբ իմով՝ նուաստ և ոգէտ, [յ]ոգնամեղ և անիմաստ, Թարմատար և փցուն գրչի* Յովանէս *կր[աւնաւոր]ի...։ Եղև գրաւ սուրբ գրոյս ի յաշխարհիս* Հոնաց, *ի Նորաշէն քաղաքս, որ կոչի* Կոֆաու, *ընդ հովանեաւ Նորաշէն եկեղեցւոյս սուրբ Գրիգորի Լուսաւորչին։ Արդ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշեսջիք ի Քրիստոս նոյն զգրող գրոյս, զնկարողս և զկազմող սուրբ աւետարանիս, զբազմամեղ, սուտանուն* զՅով[անէս] *կր[աւնաւոր]...։*

## 522.

### ԺԱՄՈՑ

**Երևան 7435**

Գրիչ՝ Նատեր
վայր՝ Սուրխա՞թ

ա

*...Արդ, յամի թուաբերութեան կենարարին մերոյ, որդւոյն աստուծոյ Յիսուսի Քրիստոսի յայտնութեանն ՌՅԿ. (1360) և ի Հայկազնեայ տումարի՝ Պէ. (1358) եղև գրաւ գրչութեանս այսմ հոգիանորոգ և պայծառափառ և աստուածապատում մատենիս...։ Զայս փա-*
459ա *ռաւոր մատեանս տեսեալ աստուածահաճոյ ընտ || րեալ կրաւնաւորքն* Յովաննէս *և* Յոհաննէս*՝ եղբարք հարազատք և որդիք ճշմարիտ քահանայի* Վարդանայ*՝ փոխեցելոյ յաստեացս...։*

*Արդ, որք հանդիպիք այսմ մատենի կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ և ի մաքրափայլ յաղաւթս ձեր* զՎարդան *քահանայ, և զամուսինն իւր* զՇորեր*՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, և զքոյրքն իւր՝* զԳրոցն, *և* զՄագիկն, զՄանիարն, զԽաօխաթունն, զԽերխաթունն, զԲաւճրաւսն, զՓոֆրտիկին, զԹամարն, զՅովաննէս *երէցն,*

զԹիմայն, զՎարդապետ երէցն, զԽեյաւէն, զՍերովբէն, զԳրիգորն, զՅոհանն, զՍտեփաննոս արեղան, զՅովանէս երէցն, զՄուլքան, զՀռիփսիմէն և զայլ ամենայն աղգայինսն՝ զկենդանիս և զննջեցեալսն զկրաւնաւորացս Յովաննիսին և Յոհաննիսին, և թողութիւն մեղաց և սխալանաց հայցեցէք յաստուծոյ։

Ընդ յիշեցելոցս և ստացողաց մատենիս յիշեցէք զանիմաստ գրիչս զՆատեր, զառածեալս մեղաւք և զծերացեալս անիրաւութեամբ, և զամենայն աղգայինսն իմ՝ ծնողաւք, և եղբարբք, և քուերբք, և տղայաւք, և թողութիւն խնդրեցէք յաստուծոյ վասն մեր, զի և ձեզ ողորմեսցի, և ինքն աւրհնեալ եղիցի յաւիտ[եան]։

Բ

276բ Նւաստ գրիչս և անպիտան,
  զձեզ աղաչեմ որդիք մարդկան,
Այս հրաշալի տաւնիս պաշտման,
  որք ընթեռնուք զայս ներբողեան,
Տուք աւրհնութիւն աղերսական
  աստուածային հոգւոյն բղխման,
Եմ ես կարաւտ ծարաւական
  ձերոյ խնդրոյ ինձ թողութեան
Րամեալ բոլոր և կատարման
  զձեզ յիշել արէք արժան։*

523.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Վրաց. թանգարան, № 34

Գրիչ՝ Աւետիս որդի Նատերի
վայր՝ Սուլխաթ

152ա ...Սովին կերպիւ և ձևով եղեալ շնորհընկալ ի հոգւոյն այսս աստուածակոչ Վարդան միայնացեալ, առեալ յանձն զնախատինսն Քրիստոսի զփարթամաբեր աղկաղկութիւն, կորզեցաւ ի բնաւին ընչից կենցաղոյս հիւթականի, զատեալ հեռացեալ և ւտարացեալ ի բուն բնակութենէ, ի սիրելի բարեկամաց, ի յարազատ եղբարց, համախորհուրդ սննդակցաց, ի գահոյից բարձակցաց իջեալ, խոնարհեալ, որպէս մանուկ սարտուցեալ ի ստենէ ոչ գնալ ընդ մեծամեծս և ի սքանչելիսս, ոչինչ բերելով Թոշակ ինչ ապրանաց մարմնոյ, բայց միայն զխաչն պարծելի տեառն Յիսուսի, ըստ Պաւղոսի, գիմեալ հասանէր ի բուն բնակութենէ իւրոյն կայանի՝ ի քաղաքէ Համիան կոչեցելոյ, բազում գաւառաւք, բարձրաբերձ լերամբք, ահագնատեսիլ ծովօք զանց արարեալ, հասանէր անշունչ կառաւք ընդ երեսս երկնագոյն

* Տողասկզբի տառերով հոդվում է գրչի անունը՝ «Նատեր»։

դաշտին չու արարեալ, դայ ի կողմնս հիւսոյ՝ յաշխարհս Հռնաց, ի մեծահռչակ և հոյակապ քաղաքս Սուլխաթ կոչեցեալ։ Եւ ըստ բնական սիրոյն կրաւնիցս մերոյ, զոր ունէր յոգւոյ, որ էր ուսեալ ի հարց
152բ իւրոց, անէնչայր ծանաւթանալ գրոց ընթեռնլոյ, ‖ և զի մերոյս լեզուի անընդել էր, և հարկ ուսմանն անցեալ, հոգայր միշտ, թէ որպէս հասցէ խնդրոյն. ապա խորհուրդ րարի ի միտ բերեալ ի տեառն թեւ լադրութենէ, որ ասէ թէ ոչ դարձջիք և եղիջիք որպէս զմանուկ՝ ոչ մտանէք յարքայութիւն երկնից, նախ ի մեղաց դարձեալ ի տղայական անմեղութիւն, և ապա, իբրև մանուկ տհաս խոնարհեալ ի բարձրութենէ մեծանձնութեան իւրոյ, գրէ տախտակ սիղոբայից և ուսանի բազում ջանիւ և. փութով։ Իսկ որ զկամս երկիւղածաց իւրոց առնէ՝ տէր, շնորհս ետ գիւրաւ ուսանիլ ընդ գրոյն և զլեզուս մեր, և ուսեալ զսաղմոսսն Դաւթի և զկարդեալ ազաւթսն քարոզանովքն, և ուրախութեամբ երգէր զուարթանման աննիհր աչաւք և անհանգիստ իրանամբք, և. խնդրէր գտանել զյարկս աստուծոյ Ցակոբայ, գըտեալ զճաշակ բանից աստուծոյ, որ ի գիրս սուրբս, լաւ համարեցաւ քան զմեղր բերանոյ։ Ստացաւ և զտառս հոգենորոգ սրբոյ հաւրն մերոյ Գրիգորի զուարթանուն հսկողի և ճշմարտաբան վարժապետի Նարեկայ մեծափառ բարձրապատիւ ուխտի վանապետի, ի դաստիարակութիւն անձին իւրոյ, և. յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնողաց և եղբարց և երախտաւորաց, հոգւոյ բարերարաց և մարմնոյ տածողաց։

Արդ, որք հանդիպիք պատուական և սուրբ տառիս տեսանելով, ընթեռնլով և աւրինակելով յիշեսջիք ի տէր զստացող սորա զՎարդան սրբասէր, որ այժմ ըստ մականուանութեան Հանի վերակոչի, և զծնողս իւր՝ զպարոն Վարդեր և զԱզգետիկինն, զեղբարսն իւր՝ զՄելիտոնն և զՇնոփորն, և. զընաւ ազգայինսն և զերախտաւորսն, և. թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ յանցանաց սոցա, և դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Նաև զծնող սորա զԱւետիս, և զհայրն իմ ուսուցիչ՝ զՆատեր, և զմայրն, և զտէր Գրիգոր նորընծայ եպիսկոպոս՝ զեղբայրն իմ, որ այժմ են ի Բարերդ,* և զՍտեփ[աննոս] քահանայ, և զքուերսն, և զսպասաւոր կենաց մեր յիշեսջիք ի տէր։

Ի թվ. ՊԷ. (1358) գրեցաւ, ի Ղրիմ քաղաքի, ի Հոգետներս վերի, ընդ հովանեաւ սուրբ Խորանացս, սրբոյն Սարգսի և այլ սրբոցս, խան Պերտիբն էր։

* Այս նախադասությունից կարելի է եզրակացնել, որ երբ Նատեր գրիչը, իր կնոջ հետ միասին, 1358 թվականին գտնվելիս է եղել Բաբերդում, իր որդի Գրիգոր եպիսկոպոսի մոտ, սակայն հազիվ թե այդպես լինի։ 1359 թվին ընդօրինակած Տոնապատճառի հիշատակարանում (տես № 533 հիշատակարան) Նատերը հայտնում է, որ ինքը գտնվում է Ղրիմ (Սուրխաթ) քաղաքում։ Հազիվ թե ծերունի գրիչը իր կյանքի մայրամուտին հանձն առներ այդքան երկար ու դժվարին ծովային ճամբորդություն, Ղրիմից գնալով Բաբերդ, և կրկին այնտեղից վերադառնալով իր բնակավայրը՝ Սուրխաթ։

## 524.

### ԱՒԵՏԱՐԱՆ ԵՒ ՃԱՇՈՑ

*Հալէպ, սբ. Մնկ. 54. Սիւրմ. Ցուց. հտ. Ա. էջ 118*

*Գրիչ՝* Աւագ
*վայր՝* Երուսաղէմ

443 *...Ցամի ութհարիւրերորդի եւթներորդի մեծ թուականի[ի]ն մերոյ (1358) գրեցաւ լուսաւորիչ և կենսակիր աստուածաւանդ, աստուածախաւս սուրբ աւետարանս ի սուրբ քաղաքս* Երուսաղէմ, *ի դրունս սուրբ և փառաւոր տաճարիս Քրիստոսի սուրբ Հրեշտակապետաց, ձեռամբ անարժան և մեղսաթաւալ փանաքի և անարհեստ գրչի, սուտանուն աէր* Աւագ *իրիցու, ի խնդրոյ աստուածարեալ և սրբասէր կրաւնաւորացն* Գրիգորի *և* Սիմէոնի, *որ և ետուն գրել զսա մեծաւ փափաքանաւք յիշատակ* Գրիգորի, *ծնաւղաց իւրոց՝ հաւր իւրոց՝* Գանձէ *և մաւր իւրոյ՝* Ծոհարի, *և եղբարց իւրոց՝* Կարապետի, Կարպիտաի, *և քերցն իւրոց՝* Տիկնացի, Գոհարի, Մարխաթունի *և* Մինայի, Սիմէոնի, *և ծնողաց իւրոց, հաւր իւրո՝* Սարգսի *և մաւր իւրո՝* Քնքուշի, *և եղբաւր իւրո՝* Մարտիրոսի, *և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրեանց...։*

*Արդ, թէպէտ որ անարհեստ էի գրչութեանս՝ փանաքի և անյարմար, այլ հանդիպեալ լաւ և յընտիր աւրինակի, որ դրած էր* Ստեփանոս Գոյներ-Երիցանց, *այն որ լի էր և պատարուն յարուեստ գրչութեան և ընդ ընաւս հռչակեալ, նաեւ բանիւ կատարեալ և հոգւով լցեալ, որպէս և ահա յայտնի է իմաստնոց և ստոյգ գիտողաց, զի լի և կատարեալ է արուեստիւ, ի բանս, ի բառս, ի լծորդս, և ի բացատս, և ի տրոհմունս առոգանութեանց...։*

## 525.

### ԿՈԶՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ

*Երևան 4391 ե Թաւրիզ, Բերդաթաղ, 34, Աճառյան, Ցուցակ, էջ 28—29*

*Գրիչ՝* Յակոբ

ա

65ր *Զունայնս ի բարեաց և զթափուրս ի գործոց՝ զ*Յակոբ *սարկաւագ գրող սորայ, և զծնաւղսն իմ, և զամենայն ազգայինսն յիշեսցիք ի Քրիստոս, ով բարեմիտ ընթերցողք, ընդ նմին և զհանգուցեալքն առ Քրիստոս, զքեռիքն իմ՝ զ*Առիւծն, *և զ*Ամիրն, *և զ*Ֆարմաշան, *և զ*Խասպէկն *յիշեսցիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ։ Թվ. ՊԷ. (1358)՝ ի ապրիլ ամսոյ փոխեցաւ ի Քրիստոս* Ֆարմաշան*. *ևս առաւել ստա-*

** Ձեռագրի գրչությունն ավարտված պետք է լինի նույն՝ 1358 թվականի ընթացքում, որովհետև Ֆարմաշա[ն]ի մահվան մասին գրիչը խոսում է որպես ականատես, և վշտալի դեպքի թարմ ազդեցության ներքո։*

ցաւք սուրբ մատենիս զՄինաս կրաւնաւորն իւր զարմաւքն յիշեսցիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր։

Բ

19բ Զեղկելի և զթշուառական անձս՝ Յակոբ սարկաւագ, և զծնաւղսն իմ, և զամենայն ազգայինսն իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս յիշեսցիք ի տէր որտի մտաւք, ընդ նմին և զամուսինն իմ զԹարխանն, որ տղայ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն մեր և մեզ խիստ և անբաւ մաղձանք հասուց, յիշեսցիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ և զստացաւղ սուրբ մատենիս զՄինաս կուսակրաւն կրաւնաւորն...։

Գ

5բ Զկարաւտ ողորմութեան և զմեղաւոր գրիչ Յակոբ սարկաւագ, և զծնաւղսն իմ, և զամենայն ազգայինսն իմ յիշեսցիք առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ։ Ընդ նմին և զքեռիքն իմ՝ զՅովհաննէս և զՅակոբն և զՅոհանն, իւրեանց զաւակաւքն յիշեսցիք ի տէր, և զստացաւղ սուրբ մատենիս զՄինաս կրաւնաւորն յիշեսցիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր։

Դ

15ա Զմեղաւոր խաւարեալ ոգիս և զբազմասխալ գրիչս Յակոբ սարկաւագ...ընդ նմին և զեղբայրն իմ զԽաչերեսն, և զքոյրն իմ զՓաշայ խաթունն, և զփեսան իմ զԱբբահամն...։

Ե

31ա ...Ընդ նմին և զհաւրաքոյրն իմ զՄարթայ խաթունն, զիւրեանց զարմաւք...

Զ

35ա ...Ընդ նմին և զմաւրաքոյրն իմ զԱոլիմելիքն և զիւր տանուտէրն՝ զԽութլուպէկն, իւրենց զարմաւքն, և զմիւս մաւրքոյրն իմ զԽաոմելիքն՝ իւր զարմաւքն...։

Է

37ա ...Ընդ նմին և զհամեստ հարսներն իմ, որ են ինձ քեռեկինք՝ զԽութլումելիքն և զՈւսլումելիքն՝ իւրեանց զարմաւքն...։

Ը

42ա ...Ընդ նմին և զհանգուցեալ պապն իմ զտէր Յակոբ, և զմամն իմ զՏովլաթ խաթունն, և զհաւրքուրն իմ զՄամուշ, որ կուսութեամբ գնաց առ Քրիստոս։

Բ

54բ …Ընդ նմին և զհանգուցեալն առ Քրիստոս զպապն իմ զԱվրամն, և զմամն իմ զՍարայխաթունն, և զիւր եղբարքն՝ Ջաքարէ աղան և զԱլէքսանդրն, և զիւր քուրն Մամայխաթուն, և զԽաթխաթունն…:

Ժ

87ա …Ընդ նմին յիշեսջիք ի Քրիստոս զհանգուցեալ կնքահայրն իմ զՅակոբ ոսկերիչն, որ էր ինձ աւագանին հայր, և զկնքամայրն իմ զԽէրխաթունն, իւրեանց զարմաւքն…:

ԺԱ

97ա …Ընդ նմին յիշեսջիք ի տէր զամուսինն իմ զԹարքան, որ տղայ հասակաւ փոխեցաւ առ Քրիստոս յոյսն մեր և ինձ անմխիթար սուգ էթող. ո՜հ, ո՜հ վշտոյս, որոյ փրկիչն յողորմութիւն շնորհեսցէ իւր միւսանգամ գալըստեանն, և նմա փառք…:

ԺԲ

107ա …Եւ զհայրն իմ զՍիմէոն և զմայրն իմ զՆազմելիք…:

ԺԳ

129բ …Կատարեցաւ գիրքս ընձայնութեան, որ ի սըրոյն Կիւրղոյ է ասացեալ, ի փառս Քրիստոսի աստուծոյ տեառն մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն:*

526.

ՃԱՇՈՑ

Երևան 7471 (տես նաև 1498 թ.)

Գրիչ՝ Ստեփաննոս

499բ … Արդ, յամի թվաբերութեան կենարարին մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՅԿ. (1360) և ի Հայոց ազգիս մերոյ տումարի ՊԷ. (1358) եղև զրաւ գրչութեան այսմ փառաւոր մատենիս, ձեռամբ նուաստ իրիցու Ստեփաննոսի, ի խնդրոյ աստուածասէր և բարեմիտ մանկանն Շահնշին, յիշատակ իւր, և ծնողացն իւրոց, և եղբարցն, և քուերցն և ամենայն արեան մերձաւորացն՝ պապոյն իւրոյ Հոռոմշին, և Պետկանն, Եղիզբայ, Մանկտաւգին, Նորտնկին, հաւր Շահնշին՝ Խնկանն, Կաւստնդնայ, եղբարց սորա՝ Նորշահին, Վահրամշին, Ամի[ր]շին, և դեառբոյս եղբաւրորդւոյն իւրոյ Մկրտիչ դպրի, և քուերց իւրոց՝ Թանկտիկնայ, Մինատիկնայ, Զարդեկին, Նարխաթունին, և կողակցին իւր Վարդտիկնայ…:

* Գլխավոր հիշատակարանը չի պահպանվել. բերվածները մանր հիշատակագրություններ են, որ թողել է գրիչը աշխատության գլուխների վերջում:

## 527.

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Մաքսուդ. Ցուց. Աքուլիսի, 18, Արարատ, 1911, էջ 563*
*(տես նաև 1593 թ.)*

Գրիչ՝ Կարապետ

270բ *...Եւ խմով տկարացեալ ընութեամբս՝ բազմամեղ և անարժան սուտանուն* Կարապետ *կրաւնաւորի գրեցի զսա Թուաբերութեանս Հայոց յութհարիւրերորդի եւթներորդի (1358)։ Զոր աստուածասէր և հաւատարիմ կին ոմն անուն* Թանկխաթուն*, յոյժ փափագմամբ սրտիւ ստացաւ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իւրոց...։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք և աւգաւիք ի սմանէ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սորա* զԹանգխաթունն*, և զծնաւղսն, և զայրն նորա* զՅովաննէս. *ընդ նոսին և զանյիշելի գրիչս՝* զԿար[ապետ]*, և զմեր ծնողսն, և զեղբարսն, և* զԶաքարիայ *ծաղկող, և Քրիստոս աստուած, որ տուողն է, ի տուրս ձեզ ե մեզ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*



ԳՊ **1359**

## 528.

### *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՑ*

***Երևան 8430***

*Գրիչ՝* Մարտիրո՞ս
*վայր՝* Մուշ

*... Արդ, գրեցաւ աստուածայինս այս մատեան ի փառս Քրիս-*
207ր *տոսի աստուծոյ մերոյ ի թուի Հայոց ՊԸ. (1359) ‖ ի քաղաքիս* Մուշ,
*ընդ հովանեաւ սրբոյն Մարիանէի, ձեռամբ մեղապարտ գրչի* Մարտ.
(Մարտիրո՞սի)*, ի ստացումն և ի վայելումն սրբայողան և կուսական
քահանայի* Ներսիսի, *այլ ծախիւք և թղթով աւգնական լինելով* Խութ-
լուպէկին՝ *հաւատարիմ և իմաստուն վաճառականի։ Արդ, որք հան-
դիպիք այս աստուածայինս գանձու և մեծայգինս Մարգարէի առ ի
պէտս ինչ աւգտութեան ի սմանէ եղելոյ, առ որս աղաչանս բազմայ-
պիսիս՝ յիշման աղաւթից առ Քրիստոս արժանի առնել* զՆերսէս *քա-
հանայ և* զԽութլուպէկն, *հանդերձ իւրովք ննջեցելովք արժանի լինել
սրբոցն դասուց, ընդ նմին և մեղապարտ գրչիս և ծնաւղաց իմոց։
Այլ և աղաչեմ անմեղադիր լինել խոշորութիւն գրոյս, քանզի յոյժ
ծեր էի և ոչ էր ժամանակ դրելոյ, կրկին աղաչեմ թողութիւն յան-
ցանաց հայցել յամենառատ պարգևացն աստուծոյ, զի և ձեզ լիցի
մասն երանութեան ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ․է աւրհնեալ
յաւիտեանս, ամէն։*

*Զծնաւղս* Խութլուպէկին՝ *զպարոն* Աշրաֆն *և* զՏիկնացն *յիշեսջիք,
աղաչեմ։*

## 529.

### *ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՑ*

***Օքսֆորդ,*** Marsh. ***467. Տիրայր վրդ. 25. թղթ. 110, էջ 371***

365ր *... Յետ մահուան* Ղեւոնի, *վասն ոչ գոլոյ նմա որդի, առնու զթա-
գաւորութիւն* Կոստանդին, *որ յազգէ նորին, որ և...վասն անպարկեշտ
վարուց սպանեալ եղև ի զաւրաց իւրոց։... Եւ թագաւորէ միւս* Կոս-
տանդին *յայլմէ ազգէ, որ այժմ ունի զթագաւորութիւն մինչև ցայս
վայր։ Եւ է թիւս Հայոց ՊԸ. (1359)։**

** Այս հատվածը, որից պարզվում է ձեռագրի գրության տարեթիվը, հայ թագավորների ժամանակագրական ցուցակի վերջին պարբերությունն է։*

## 530.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 156 (Վան, սբ. Յակոբ եկեղեցի)*

*Գրիչ՝* Յոհաննէս

*... Արդ, ես՝ մեղապարտ և անարհեստ գրիչս* Յոհաննէս *սուտանուն քահանայ, յանձն առի գրել զսա հրամանաւ սուրբ և երջանիկ, իմաստասէր և ժրաջան յամենայն գործս բարութեան* Յովհաննէս *վարդապետի, որ ետ գրել զսա յիշատակ իւր և ծնողաց իւրոց...։ Յիշեցէք ի մաքուր և յարժանաւոր յաղօթս ձեր՝ զարժանաւոր և զամենամաքուր և զծաղկեալս իմաստութեամբ, զզովելի և զառաքինասէր վարդապետս մեր* զՅովհաննէս *ծնողօք իւրովք հանդերձ։ Այլ և զհեզ և զխոնարհ եղբարքս մեր* զՍեթ *և* զԿիրակոս, *որ օգնական եղեն մեզ ի կոկել թղթիս և յամենայն պէտս սպասաւորութեան, և* զՄկրտիչ *տնտեսն մեր, որ կերակրիկն պատրաստէր մեզ, նաև* զՊետրոս *քահանայն և զեղբայրն իւր* զՍտեփաննոս, *որ զօրինակն շնորհեցին...։ Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի թուականութեանս Հայոց ՊԸ. (1359), ի նուրբ և ի նեղ ժամանակիս, որ կատարեցաւ ամենայն դրեալքն ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Գրեցաւ սա ընդ հովանեաւ Գամաղիէլի* առ ոտս բարեբարոյ և բարեհամբաւ սուրբ վարդապետիս* Յովհաննիսի:

## 531.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԵԱՆ ԱՂՕԹԻՑ

*Երեւան 4137*

*Գրիչ՝* Յովսէփ

*վայր՝* առ ստորոտով Խրիմ մայրաքաղաքիս

343բ *...Գրեցաւ սուրբ գիրս առ ստորոտով* Խրիմ *մայրաքաղաքիս, ընդ հովանեաւ սուրբ անապատիս, որ կոչի սուրբ Գրիգոր, յառաջնորդութեան սուրբ մենարանիս տեառն* Յովհաննիսի, *որ րաբունական գաւազանաւ և բարձրագահ իշխանութեամբ տիրէ մերումս ժողովրդեան, ախոյեան յաղթաւղ ընդդէմ արիոսականացն և հերեսիոտաց, պահեսցէ տէր աստուած և զաւրացուսցէ |զնա| ի կամս իւր, ամէն։*

334ա *Արդ, եղև գրաւ սուրբ գանձարանիս, յամի ‖ շրջագայութեան արամազեանս տոհմի, հայկականս սեռի՝ ի վեշտասան յոբելինի յաւելեալ ութեակ թուոյ, որ է ՊԸ. (1359) թվակ[ան]...։*

*...Որոյ, այսպիսի ըղձալի փարթամութեանց համահետևեալ, ամենաթշուառս և բազմամեղս, փցուն գրչակս* Յովսէփ *և լերդակից*
344բ *եղբայրս մեր ‖* Գրիգոր *սուտանուն կրաւնաւոր, քահանայք միակրաւնք և համակամք, նշդեհք յաւտարութեան, աւտարք և պանդուխտք, որոյ եռափափագ սիրով գծագրեցի զսա ի վայելումն անձանց մերոց և յիշատակ ելիցն յաշխարհէս...։*

---

* *Փիրղալամյանի ծանոթագրությամբ «Է ուխտս ի հիւսն գաւառի մերձ ի Ցէկու գիւղն»։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան մոխրամած երեսաւք, որք լուսաւորիք յայմ լուսարանէ, յիշեսջիք սրտի մտաւք զեղկելի դծաւղս՝* զՅովսէփ *և* զԳրիգոր, *ծնողաւք, կենդանեաւք և հանգուցելովք, և ամենայն արեան մերձաւորաւք, և դաւժընդակիչ և գյորդորիչ եղբարքս մեր՝* զԱստուածատուր *և* զՄարկոս, զԹորոս *և* զՆերսէս *և զամենայն եղբայրութիւնս։ Եւ խոշորութեան և փցուն և. անմար և անարհեստ դրոյս աղաչեմ չլինել մեղադիր, զի այսչափ էր կար մեր, և որ առատն է ի տալն քան ի ճշդելն, տացէ ձեզ յիշողացդ և յիշելոցս զիւր արքայութիւնն, և ամենայն հաւատացելոց, և նմա փառք, պատիւ և աւրհնութիւն յանլսելի ձայնից և յամենայն եղանութեանց, այժմ և յաւիտեանս, ամէն, ամէն, ամէն։*

## 532.

## *ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ ՖՐԱՆՑԻՍԿՈՍԻ, ՍԱՀՄԱՆԵԱԼ Ի ԲՈՆԱՎԵՆԳՈՒՐԷ ՄԵԾ ՎԱՐԴԱՊԵՏԷ**

*Երևան 1736*

*Գրիչ՝* Առլան Արզրումցի
*վայր՝* Սուրխաթ

140բ *Կատարեցաւ լէճէնթա սրբոյն* Ֆրանցիսկոսի *ձեռամբ* Առլանիս Արզրումցոյ, *ի մա[յ]րաքաղաքս* Սուրխաթ, *որ կոչի* Ղրիմ, *թվ. հայոց ՊԸ. (1359), դեկտեմբերի Ժ. (10) կատարեցաւ։*

## 533.

## *ՏՕՆԱՊԱՏՃԱՌ*

*Երևան 2040 (տես նաև 1366 թ.)*

*Գրիչ՝* Նատեր
*վայր՝* Ղրիմ

456բ *Փառք... որ զաւրացոյց զտկարս և զապիկար, անիմաստ գրիչս* Նատեր, *զառածեալս մեղաւք, հասանել ի գլուխ տառիս աստուածապատում մատենիս, որ ծերացեալ կենօք ծրեցի ի խնդրոյ սրբազան և կուսական աբեղայի* Մարգարէի, *ի թվիս Հայոց ՊԸ. (1359), յունիս ամիս Ի. (20), ի [մայրաքաղաքս* Ղ]րիմ, *ի հոյակապ, հռչակաւոր և բազմամարդի | | |***

*Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր զճշմարիտ կրաւնաւորն, զատացաւղ սորա* զՄարգարէ *աբեղա և զծնաւղսն իւր՝* զՋաւրվարն *և* զՍիրայն, զԱռաքելն, զՀռիփսիմէն, զՅոհան *երէցն,* զԱւտարշահն, զՏիրանցն, զՏիկնանցն, զՄալէքըն՝ *փոխեցեալքն առ Քրիստոս, զպատուեալ ծերունին* զՅակոբն *և* զՍիմէոն՝ *որդի նորին, և զերկուս եղբարսն՝* զՅակոբշահն *և* զԹո-

* *Բոնավենտուրի այս աշխատության թարգմանությունը, համաձայն 141ա էջում պահպանված հիշատակարանի, կատարվել է «Թվ. ՉԶԸ. (1330)... ձեռամբ Ապօնցի Ֆրա Մուրի»* (Fra Minor-*կրտսեր եղբայր)։*

** *Մի քանի տող քերված է։*

բոսն, զԲենինկն և զայլ երախտաւորսն, որ վասն սիրոյն աստուծոյ և երկնից արքայութեանն աւղնեցին և յիշատակ ստացան ի վերինն Սիոն զաւակ և ընտանի յՆրուսաղէմ...։

## 534.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 783

Գրիչ՝ Անտոն
Վայր՝ Կաֆայ

325ա ...Գրեցաւ կտակս Ընդհանրական Կանոնացս և Թխթոց դրոցս և Ցորնադի հարցմանցս և Ամենայն չար տանջելին ե էակաց գիրգս ի միասին ի թուականութեանս Հայոց ի ՊԸ. (1359), ձեռամբ անարժան քահանայի Անտոնի, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի, ի յամուր դղեակս Կաֆայ։ Գտանես ի սմա բազում լուծմունք տարակուսանաց, ո՜վ սուրբ ընթերցողք։ Ցորժամ կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զԱնտոն սուտանուն քահանայ ե զծնողս իւր, զհայր սորին՝ Աստուածատուր, և զմայր սորին՝ զՍնոփոր տիկին, և զվերստին սնուցանողս՝ զԴաւիթ և Մարիանէ, և զղաւակս սորա՝ զՄադաքիա, և զՍահակ, զՅակովբ, և զՄելքիսեդեկ, և զմայր սոցին՝ Թագուհի, և թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ, և աստուած յիշողացդ և յիշելոցն ողորմեսցի, ամէն։

Ոչ գնով ստացաւ զսա, այլ ձեռամբ իւրով գծագրեաց։

## 535.

## ՃԱՇՈՑ

Օքսֆորդ. MS. Arm. D. 2. Տիրայր վրդ. 50, թղթ. 120, էջ 871—872

Գրիչ՝ Մար[գա]րայ

ա

258բ ...Ի նստել քո յատենի յիշեա տէր զՄար[գա]րայ քահանայ ու զուր ծնաւղսն, ամէն։ Ով որ մեզ յիշեայ նայ տէրն ամենեցուն՝ զմեզ ու զձեզ յիշեայ յատինին. թվ. ՉԸ. (1359)։

բ

291բ Աստուած ւարհնէ զԳինդրանից* տանուտէրք՝ զԱտոմն, զՄլեամ, զԿարապետն, զՄկրտիչն, զԱսադ աղէն, զԱզուպ, զԹումէն, որ զԳաւ-շերաց արտերն տւին ի դուռն սուրբ Աստուածածնին և սուրբ Պօղոսին ե սուրբ աւետարանին լուսոյ գին, յիշեցէք և աստուած ողորմի ասացէք. ով որ զաւէ, կամ գրաւէ, կամ մատնէ յանաւրէ[նաց], թէ մելիք կամ ըռէս, կամ աշխարհական, յա[ն]էծք և զ[Ց]ուդային առնու, ամէն։

---

* Տիրայրի ընդօրինակութեամբ «գգին գրամից»։

## 536.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԱՂՕԹԻՑ

Երևան 3933

Գրիչ՝ Կոստանդին

ա

89ա Զերգող հոգելից ճառիս զտէր Ներսէս, որդի Աւշնի Սեւաստիացի
ի մտաց և յաղաւթից անմոռաց պահեցէ ի ձերո սրբոյ սեննէլի, համ-
դէպ սեղանոյ արարչընկալի աստուածաբնակի, ընդ նմին և ստացաւղ
բանիս պատուական քահանայի Սիմէոնի խնդրեցէք թողութիւն մեղաց
և ծնաւղաց սորայ ի Քրիստոս Յիսուս։
89բ Գրեցաւ տեսութեան գիրքս ի թվ. ԳԸ. (1359), ձեռամբ Կոստան-
դին քարտուղարին։*

բ

125բ Զստացող նորբողինիս զՍիմէոն և զվերջին գծողս զԿոստանդին
յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմ։

* Թվականի և գրչի մասին 89բ էջի հիշատակագրությունն արտագրված է ԺԹ. դա-
րի ձեռագրով, հավանաբար, այն ժամանակ դեռևս գոյություն ունեցող գլխավոր հիշա-
տակարանից։

## 537.

### ՃԱՇՈՑ

Երևան 7437

Գրիչ՝ Պետրոս

ա

262ա ...Գրեցաւ ի Թվ. Հայոց ՊԹ. (1360), ի դառն և յանբարի ժամանակիս, զոր ոչ կարեմք [ընդ] գրով արկանել, բայց միայն լռել։ Աղաչեմ զձեզ, սուրբ ընթերցողք, թողութիւն մեղաց խնդրեցէք ինձ և իմոցն, ամէն։

բ

281ա Արդ, ո՜վ պատուեալ սուրբ հարք և մանգունք սուրբ եկեղեցւոյ, յորժամ ընթեռնուք կամ աւրինակէք զսա զհայրն իմ զՅով[հաննէս] քահանայ, և զմայրն իմ զԹամամ, և զամենայն ազգատոհմս մեր, ընդ նմին զիս, զանարհեստ և զանպիտան գրիչս՝ զՊետրոս սուտանուն սարկաւագ, և զեղբարքս իմ՝ զԱմդիխոս քահանայ և զԹադէոս յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր, և բուն բարին զձեզ յիշեայ յիւր յանտրտ[ու]մութիւնսն։

## 538.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԵՐԱԿԱՆԻՆ ԵՍԱՅԵԱՅ ՆՉԵՑՒՈՅ

Վիեն. 336. Տաշ. Ցուց. էջ 782

Գրիչ՝ Աստուածատուր
վայր՝ Կոստանդինուպօլիս

96ա ...Արդ, եղեւ գրաւ գրութեան սորա ի յաշխարհս Յունաց, ի քաղաքս Կոստանդինուպօլիս, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի, ձեռամբ Աստուածատուր աբեղայի, ի թվականիս ՊԹ. (1360)։ Եւ այս են տնօրինականացս անուանք զոր տեսաք, առաջին՝ Քրիստոսի անկար պատմուճան, Բ. սպունկ, Գ. բեւեռ, Դ. Աստուածածնին պատկերն, Ե. Յովաննու աջն. Զ. Վլաշէռնասն, որ է ջունարն Աստուածածնին, ի սպիտակ ի մարմարէ սնդուկի խորանին վեր, եւ այլ շատ սրբոց նշխարք, զոր ոչ կարեմ ընդ գրով արկանել. սոցին բարեխօսութեամբ ողորմիս Քրիստոս աստուած գրողաց եւ կարդացողաց եւ ամէն ասացողաց։

## 539.

### ԱԻԵՏԱՐԱՆ

Թորոս Աղբար, Բ. էջ 437—438 (Տիգրանակերտ)

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Երուսաղեմ

ա

Գրեալ ի Թվ. Հայոց ՊԹ. (1360)...յԵրուսաղեմ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս աթոռակալ Առաքելոցս Յակոբեանց, ի թագաւորութեան Հայոց Կոստանդինի, եւ ի հայրապետութեան տեառն Մեսրոպայ, յառաջնորդութեան տէր Գրիգորոյ եպիսկոպոսի Երուսաղէմի, ձեռամբ... Ստեփաննոս կրաւնաւորի, կամակցութեամբ եւ աւգնականութեամբ եւ խրատ տալով վերծանողի, սպասաւորի բանի, սրբասնեալ Գրիգորի քահանայի՝ փակակալի մեծ եւ հռչակաւոր սուրբ եկեղեցւոյս Յակոբայ եւ ամենայն աստուածընկալ նշանացս, եւ մանաւանդ կազմողի սորին...:

բ

Ցիշեսջիք...զստացող սորին զԹագւորշահ դպիր...եւ զծնողս Ստեփաննոս Արեւելցի՝ աշակերտ Սէթ վարդապետի...համանման մեծի եւ առաջին վարդապետաց. եւ խոշորութեան գրիս եւ սխալանացս անմեղադիր լերուք եւ զթերին սիրով ուղղեցէք, քանզի յոյժ անհմուտ էի արուեստի գրչութեան, մանաւանդ ի շեշտ, ի ստոր, ի բոյթ, ի վանկ եւ ի փաղառութիւն, եւ ի Ժ. (10) առոգանութեան...:

## 540.

### ՃԱՇՈՑ

Երևան 7741 (տես նաև 1367 թ.)

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Կաֆայ

479բ ...Որոյ ականատես լեալ յետինս ի գրիչս և փանաքիսի քարտուղայս, չուառս և աղկաղկս յամենայնի, և մոռացեալ զիս ի զրնիկ տկարութիւնս, ցանկացող եղեալ սմա, թէպէտ և յոյժ անըմբոն, ապաւինեալ յայն, որ տայն ամենայն առատապէս և ոչ նախատէ։ Ձեռնարկեցի ի սմա ես՝ Կարապետ երէցս թարմատար մելանաւսր, հասի ի զրաւ գրչութեան սորա ոչ թէ ըստ արհեստից և զաւրութեան անձինս, այլ ի կատարումն ուխտեալ հրամանի մարդասիրին, թէ ամենայն որ խնդրէ՝ առնու։

Արդ, աղաչեմ զհանգիպողսդ այսմ տառի յիշման արժանի վարկջիք զանարժան գրիչս զԿարապետս և զիմսն ամենայն, զհայրն իմ

զԱռուծն, և զմայրն իմ զՈսկիանն, և զիգբարսն իմ, և զամենայն արեան մերձակայս՝ զկենդանիս և զհանգուցեալս յիշման առնել արժանի առաջի անմահ զենլոյն Քրիստոսի...։

Կատարեցաւ սա յաշխարհիս Դրիմ կոչեցեալ, ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքիս Կաֆայ, ընդ հովանեաւ սուրբ երրորդութեանս, ի վեհագոյն տիրական իշխանութիւնն տեառն Ստեփաննոսի, և յարհիական եպիսկոպոսութիւնն տէր Ստեփաննոսի, ի թուականութեանս Հայոց ՊԹ. (1360), նոյեմբերի Լ. (30)։ Եւ որ ցաւակցաբար յիշեսցէ զ'ի սմա յիշատակեալքս և ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 541.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. էջ 83 (Լոանմիչ քաղաքի ընթերցարան)

Հետ. ստացող՝ Ստեփաննոս

...Ստացա զլուսազարդ եւ զգեղեցկայեղձ մատեանս ես՝ ապիկարս ոգով Ստեփաննոս, ի վայելումն ուսումնասէր արանց կատարելոց, եւ յիշատակ հոգոյ իմոյ, եւ ծնաւղաց իմոց, եւ ամենայն արեան մերձաւորաց ազգաց իմոց։ Արդ, որք աւգտիք ի սմանէ կարդալով եւ կամ տարազու իւիք ինչ առնելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զհայրն իմ զՍահակ քահանայ, եւ զմայրն իմ զՏիրանց, և զհաւրեղբայրն իմ զԳրիգոր կուսակրաւն քահանայ, եւ զԾածուր կրաւնաւորն, նաեւ զՅոհաննէս, եւ զկուսակրաւն քահանայսն, եւ զիս՝ զանպիտանս Ստեփաննոս, եւ դուք յիշաւղքդ յիշեալ լիջիք ամենասուրբ բարերարէն աստուծոյ։ Յիշեսջիք եւ զհարազատ եղբայրն իմ զՎարդան կուսակրաւն քահանայ, նայ եւ հոգեւոր եղբարքն իմ՝ զՄարգարէ եւ զՍիմէոն՝ զխաչընդկյուս կրաւնաւորքս, որ ընդ ինեւ պանդըխտանան, այլ աղաչեմ զընթերցողդ, զի խնամ տարջիք սմա, որպէս եւ զձեր մատեան գրեալ։ Գրեցաւ յիշատակարանս վերջինս ի թվին ՊԹ.(1360)։*

## 542.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Թորոս Ազբար, Բ. էջ 381. (Արդնի վարի թաղի սբ. Սարգսի եկեղեցի)

Վայր՝ Մերտին

Գրեալ ի Մերտին. ի թվ. ՊԹ. (1360), ի թագաւորութեան Կոստանդիանոսի, ի հայրապետութեան տեառն Մխարբի եւ յեպիսկոպոսութեան տէր Յոհաննիսի...։**

* Ձեռագիրն ընդօրինակված է ՉԽԷ (1298) թվականին, Արճեշում, գրիչ Յուսեփի կողմից։

** Հրատարակիչ Գ. Սրվանձյանի կողմից հիշատակարանը համառոտված է։

## 543.

### ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ, ԱԼԲԵՐՏԻ ՄԵԾԻ

**Երևան 9068**

Գրիչ՝ Դոմինիկոս Սալիթաղեցի

174ա *Զտառապեալ ողի ֆրա* Դոմինիկոս* *մականուն կոչեցեալ* Սալիթաղեցի *յիշեցէք ի յաղօթս ձեր, որ աշխատեցայ ի գիրքս այս, և սխալանացն անմեղադիր լերուք, զի կար մեր այս չափ էր, նաև զմայրն իմ* Փոէրմէրն, *որ ի Քրիստոս հանգեաւ, յիշեցէք յաղօթս ձեր, Քրիստոսի փառք։*

---

* Հավանաբար նույն Ֆրա Դոմինիկոսն է, որ 1360-ական թ.թ. ընդօրինակել է «Համառոտ հավաքումն յաղագս հոգւոյ» ձեռագիրը (Ձեռ. Բոդլեյնի, էջ 38), ուստի սույն անթվական հիշատակարանը տեղադրում ենք 1360-ի թվաշարքում։

## 544.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԻ

Երևան 8256 (տես նաև 1619 թ.)

Գրիչ՝ Զաքարէ
վայր՝ Ի Ձորս Հայքարայ, գիւղ՝ Անապատիկ

ա

113ա Փառք...որ ետ կարողութիւն ինձ տկարիս հասանել ի վերջ գծիս ի նեղ և ի թշուառ ժամանակիս։

Գրեցաւ պատարագի մեկնիչս և սակաւ զաւանութիւն ձեռամբ անպիտան և մեղապարտ գրիչ Զաքարա կրաւնաւորի, որ զանունս ունիմ և ոչ զգործ։ Ու զԵրեմիա կրաւնաւոր, և զհարազատ եղբայրս իմ զՈվանէս, և զծնողսն իմ զԹադուորն և զէլխաթունն, և զԱկոբ քահանայ՝ զհօրեղբայր իմ, որ վերայ ինձ շատ աշխատեալ է [յիշեցէք]։

113բ Արդ, գրեցաւ պատարագի մեկնիչս ձեռամբ Զաքարէ աբեղի, ի Ձորս Հայքարայ, ի գեաւղս, որ կոչի Անապատիկ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեանն տէր Սահփանոսի, ի ղանութեանն Ցռիսի, ի զառնութեան ժամանակիս, որ հալածումն էր քրիստոնէից, աղօթք արարէք առ աստուած։ Թվ. ՊԺ (1361) գրեցաւ։ Աղաչեմ զձեզ, ո՛վ եղբարք, որք կարդայք կամ աւրինակէք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զԵրեմիա, որ ստացաւ զպատարագի մեկնիչս յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, որպէս դուք դիս յիշէք նոյնպէս և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ցիշեցէք յաղօթս ձեր զՎարապետ քահանայն և զորդին իւր զԴաւիթ քահանայն և զԱլեքսան, որ շատ երախտիք ունին ի վերայ մեզ և կամակից եղան գրոցս։

բ

77բ Գրեցաւ պատարագի մեկնիչս ձեռամբ ախմար և անիմաստ Զաքարէ սուտ կրաւնաւորի, որ զանունս ունիմ և զգործ ոչ։ Ո՛վ եղբարք, աղաչեմ զձեզ, անմեղադիր լերուք խոշորութեան և սխալանաց սորայ, զի ժամանակս դառն ու փախուստ էր, Ի. (20)ամ էր, որ գրիչ ի ձեռս չի առել, միտքս էլ էր մոլորել ու ձեռս էլ հովացել։ Բայց հոգևոր եղբայրն իմ Երեմիա կրաւնաւոր յոյժ փափաքէր, և այլ մարդ չկայր որ գրէր, ինձ բռնութեամբ գրել ետետ։ Աղաչեմ զձեզ, որք հանդիպիք կամ կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։

Ո՛հ, ո՛հ, զզառնութեան աւուրքս, թվ. ՊԺ. (1361)։

## 545.

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 73

Ոմն ընթերցող

133բ Ի թուիս Հայոց ՊԺ. (1360). գերեց անաւրէն դատաւորն տաճիկ Պաքիլն* զերկիրն** Շիֆարոյ և խարզբերդոյ. և վաճառեցին նման ոչխարի, ըստ մարգար[էին Դաւթի, որ ասէ՝] վաճառեցին դժողով[ուրդըս քո]։***

## 546.

### ՄԵԾԻՆ ՆԵՐՍԻՍԻ ՎԱՐՈՒՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Փիրզ. 6273, էջ 156—157

Գրիչ՝ Թորոս Ըռուբինեաց
վայր՝ Սիս

Շնորհիւ բարեշնորհ կամացն աստուծոյ աւարտեցաւ վայելուչ պատմութիւնս և քաղաքավարութիւն սուրբ քահանայապետին մեծին Ներսէսի ի թուականութեանս Հայոց ՊԺ. (1361), ի թագաւորութեանս Հայոց Կոստանդեա. և ի հայրապետութեան տեառն Մեսրոպայ, ի մայրաքաղաքս Սիս:

Արդ, գրեցաւ սա ձեռամբ մեղաւոր և անարժան քահանայի Թորոսի, որ մականուն Ըռուբինեաց կոչի, ի խնդրոյ սրբասէր, հեզ, քաղցըր և խոնարհ իշխանացն՝ պարոն Լիպարտի և պարոն Վասլի, որդւոցն պարոն Թորոսի Կապնցոյն՝ սպարապետին Հայոց, ի վայելումն անձանց իւրոց...։

Հայցեցէք յաստուծոյ զկեանս խաղաղական շնորհել պարոն Լիպարտին և պարոն Վասլին և պարոն Լիկոսին զեռա | |։ |

Ի թուին ՊԹ. (1360), ի յամսեան ի մայիսի երեկ Հալպայ ամիրայն Պայտամուրն Մարայ զօրօքն ի Հայք, նայ առին զԱտանայ և զՏարսոն ու զԲարի-Քարուկն ու զաղայ Լեւոնին։ Ո՞վ քաղցր և բարի պարոն իմ Լիպարիտ, ընկալ զսա և զմեղաւոր հողս Թորոս յիշեա։

* Կարելի է կարդալ նաև «Պաքիշն»։

** Գրված ու ջնջված է ինչ որ գավառի անուն, թերևս «Մանծկերտայն»։

*** Հիշատակագրությունը գրված է ներքին լուսանցքի վրա, վերջին տողն ամբողջովին, իսկ նախավերջինը՝ մասամբ, զոհ են գնացել կազմողի դանակին։

## 547.

### ՃԱՇՈՑ

**Երևան 7408 (տես 1258 և 1602 թ.թ.)***

*Գրիչ՝* Կարապետ
*վայր՝* Կաֆա

ա

824բ *...Գրեցաւ տառս անպատում սրբոցն ի լոյս յարմարեալ իմաստնոց, ի մի հաւաքելով զամենայն տաւնս տէրունականս և դյիշատակութիւնս սրբոց զրոլոր տարոյն ի յաշխարհ* Հռնաց, *ի կողմանս հիւսիւսոյ, ի քաղաքս, որ կոչի* Կաֆա, *ընդ հովանեաւ սրբոյ երրորդութեանն, ի հայրապետութեան Հայոց տեառն* Մեսրոպայ *և մերոյ նահանգիս տէր* Սախփաննոսի *արհիեպիսկոպոսի ամենայն հիւսիւսական կողմանց, ձեռամբ* Կարապետ *իրիցու, ի թվին ՊԺ. (1361)։ Զոր տեսեալ զմիմեանս աստուածային հեղահողի միայնակեացն հայր* Զաքարէ, *որ էր բնական յաշխարհէն* Արճիշոյ, *որդի* Յովհաննէսին, *և այժմ բնակէր ի ծովեզր քրիստոնէութեան*** *առ ոտս սրբոյն Սարգսի զօրավարին, և ծառայելով երթևեկաց բազում և առատ կերակրաւք, նմանութեամբ առաջին արդիւնաւոր հարց, զամենայն ինչս իւր վաճառեալ ի պէտ[ս] ազքատաց և եկեղեցւոյ, և ընտացաւ զանձս աստուածային յիշատակ հայր* Զաքարէ *իւր, և ծնաւղաց իւրոց* Յովանէսի, *և մաւր իւրոյ* Թանխաթունին, *և ամենայն արեան զարմից, ի վայելումն եկեղեցւոյ սրբոյն Սարգսի։ Արդ, որ կարդայք կամ աւրինակէք յիշեսջիք ի Քրիստոս զյառաջասացեալ հայ[ր]ն* Զաքարէ *և զծնաւղսն...։*

*Ստացող՝* Զաքարէ

բ

*Ես՝* Զաքարէ *միայնակեացս, գնեցի զտարեգիրքս*** *ՀՃ. (800) զրամ, ի թվականիս ՊԺ. (1361), յետև իմ անցմանս**** մարդ իլախայ կամ զրուց չունի հետ գրոցս՝ ծախելոյ կամ գրաւելոյ, այլ ինձ յիշատակ է և իմ ծնօղացն, ամէն։*

---

* Հիշատակարանի բնագիրը 1602 թվին, նորոգության ժամանակ, եղծված ու մաշված է եղել։ Նորոգող Գրիգորն արտագրել է այն որոշ սխալներով ու բացթողումներով։
** Մեկ բառի տեղ բաց է թողնված։
*** Իմա՝ «զճաշոցս»։
**** Ձեռագրում՝ «անձմանս»։

## 548.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 7153

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Տշող գիւղ

170ա *Արդ, որ աւգտիք ի սմանէ, մեղաց թողութիւն խնդրեցէք յաս-*
*տուծոյ* Աբել *քահանային և իւրոցն ամենայնի, և ինձ՝ բազմամեղ և*
*փծուն գրչի՝ սուտանուն* Ստեփանոս *քահանայի և մերոցն ամենայնի,*
*և որ զմեղ յիշէ և ինքն յիշել լիցի յանյիշաչար բարեբարէն Յիսուսէ*
*Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*
*Արդ, գրեցաւ աստուածաին այս մատեան ի թուի Հայոց ՊԺ.*
170բ *(1361), ի դեաւղս, որ կոչի* Տշող, *ընդ հովանեաւ սուրբ || մաւր լու-*
*սոյ Աստուածածնի։*
*Բայց խոշորութեան և սխալանաց գրիս անմեղադիր լերուք,*
*քանզի ծերացեալ էի և աչս նուազեալ ի տեսանելոյ, և ձեռնս դողայր*
*ի գրելն, և տեղի չկայր առանձին, և ոչ այլ ինչ սահման կամ յա-*
*ջողութիւն գրագրի ունեաք, այլ զոր գրեցաք՝ զգեղեցիկ և զպիտա-*
*նիսն ընտրեցաք. և որք աւգտիք կարդալով, կամ լսելով, կամ աւրի-*
*նակելով, մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ* Աբել *քահ[անային]՝*
*ստացողի գրոցս և մեղուցեալ դրողիս, և որ զմեղ յիշէ ինքն յիշեալ*
*լիցի ի Քրիստոսէ աստուծոյ, ամէն։*

## 549.

## ՃԱՇՈՑ

Երևան 4519 (տես նաև՝ 1456 թ.)

Գրիչ՝ Սարգիս

99բ *...Յամի աւարտման սուրբ մատենիս ի յութհարիւր և ի Ժ.*
*(1361), և ի գալըստենէ կենարարին մերոյ ՌՅԾԲ. (1352), իսկ յելա-*
*նելոյն նախնի մարդոյն յանուշակ վայրէն ՑՉՀԴ. (6774), բարեպաշտ*
*ոմն, ի նախնեաց բարեաց շառաւիղ, երկիր արգաւանդ և դեմետրի*
*ուռթի, ունաւղ լսելոյ ունկանն կենսեղուտ հրամայաւղին, թէ աստ*
*ստկաւ ինչ պիտոյ է, և թէ՝ ա՛ւն, արիք գնասցուք, նայ աւանիկ*
*բացեալ զըշտեմարանս սրտին, և բեղմնաւորեալ զբոյս բազմաւորս և*
*ի տիս տհաս, ծանուցեալ զոչընչութիւն խաբեբայ նիւթականիս պա-*
*տիբագործ իբառնութիւնս, նումենանակ և հաբստամիտ այրն*
*կրաւնաւոր, որ Ղազարոս յորջորջիւր մասամբ և ըստ յունակ || ան*
100ա *ձայնի ձիւնացուցեալ զներքին մարդն ի նսեմ մրգոյդ ամայս, որ ազգս*
*ամենայն իբր ի յաննշոյլ գիշերի շաւշափեն զխաւար և իբր զճճիս ի*
*տղմուտ վայրի կայտռելով անզայարար քապկապէս (°)։*

*Սա ի նմին յանլուս ժամու հայեցեալ ի լոյս պատուիրանի տեառն ըստ երգողի հոգւոյն, և ստացաւ զսա զաւակ որդի ի վերինն Սիոնն, որ է մայր պետրոսեանցն, և գործովք որդւոց Նոյեն ի գանձարանն անվրէպ, զոր տեառն շինեալ ըստ իմաստուն ըմ[բ]շամարտի, զի ժամու տարագրութեան փութայ զտուն ն զկարասի յանառիկ ամրոցս ամփոփել, և զամենայն ըստ կնոջ խեբեեշիցն տեառն ընձայեալ։ Ցամենայն ժամ բոյս զալար հաճոյ է մարդկան, մանաւանդ յեղանակս ձմերայնոյ, զի ի զուն և ի սուզ տեղիս գտանի նոյնգունակ գործ սորա ի յանբարի ժամուս։*

*Արդ, որ ոք ականատեսի այսմ բազմախումբ քաղաքի յոգնեբանկ և երփներփն լուսաշաւիղ պողոտայի, յիշեսջիք ցաւակցաբար ի մաքրափայլ և ի հոգեկեցոյց յաղաւթս զյառաջասացեալ կրաւնաւորն* զՂազար, *և ծնաւղս նորա, զփոխեցեալսն առ Քրիստոս՝ զհայրն սորայ* զՍարգիս, *և զմայրն՝* զՍամիայ, *և զհարեղբարն սորայ՝* զԽաչերեսն, *և զայլ ամենայն ազգայինս՝ զկենդանիս և զհանգուցեալսն, և զամենայն ոք, որ բարեմտութեամբ կամաւ աւգնական եղեն ի նիւթ և ի ծաղք աստուածային գանձուցս, Քրիստոս աստուած յիւր միւսանգամ գալըստեանն հատուսցէ զվարձս նոցա, ընդ միոյն հարիւրապատիկ և հազարապատիկ։ Նա թէ և զվերջինս ի քահանայս և զփըցունս ի գրիչս, զեղերնագործ անձս, զթարմատարս* զՍարգիս, *որդովքըս՝* Մելքիսեդեկի *և* Յակոբաւ *և այլ ամենայն ժառանկաւորաւ. յիշեսջիք և զամուսին իմ* զՄարեմ *տիկին, և զդուստր իմ* զՇամշան, *և զեղբարսն իմ՝* զՄարտիրոսն *և* զՎարդերեսն, *և զքուրն իմ* զՄարթայ, *և զծնաւղսն իմ՝ զփոխեցեալսն առ Քրիստոս՝* զՅակոբ *ծերունի քահանայ, և զմայրն իմ՝* զԹանաիկին, *և զեղբայրն իմ* զՎահրամ, *և զքուրսն իմ՝* զՀռեփսիմին *և* զՄեծաիկին, *և զհաւատուոր մաՃն՝* զԹամխաթուն, *և զանեբն իմ* զՅովանէսն, *և զոքանչս իմ* զՇամշայն, *և* զՇամիրն, *և* զՊիլկան, *և* զԹանմելիքն...։





## 550.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4986

Գրիչ՝ Անդրէաս
Վայր՝ ի դաշտս Գաւառաց

278ա Թվ. ՊԺԱ. (1362) գրեցաւ, ի պարոնութեան Ամիր Դիատըին, ի ղանութեան [Ոյիսին]։*

Փառք ամենասուրբ երրորդութեան, որ արժանի արար հասանել յաւարտումն սուրբ աւետարանիս. կատարեցաւ սա | | | դաշտս Գա[ւառ]աց, ի գեա[ւղս, որ] կոչի ան[ուն] | | | անձոր։

278բ Ձեռա[մբ | | | մեղա]պարտ | | | Անդր[էասի] | | || եւ զաւետարանս, այլ անարժանութեամբ մերձ[եց]ա և գրեցի, վա է ինձ յաւուրն յատնութեան։ Արդ, անկեալ աղաչեմք զաստուածահաճո քահան[այք]դ և զպատ[ուել]ի եղբայրքդ, [որք հ]անդիպիք [սուրբ ա]ւետար[անիս, թ]ողութիւն [խնդրեց]էք ի տեառնէ | | |** զմեզ յիշէքդ յիշեալ լիջիք և ի տեառնէ աստուծոյ մերոյ։ Այլ խոշորութեան գրիս և սղալանացն անմեղադիր լերուք, քանզի խիստ պինտ ձմեռն էր, ու ի տղեկներո մէջ ի, վասն աստուծոյ մի մեղադրէք, ղարիպ էաք ու խիստ նեղացած։

279ա Այլ ում կամաւորութեամբ կատարեցաւ սուրբ աւետարանս։ Այլ կատարեցաւ սուրբ և պատուելի և աստուածահաճոյ քահանայի Մարտիրոսի, և իւր թագուհոյն, և իւր որդեացն Թումաի, որ է նոր աւրհնեալ քահանա, և իւր թագուհոյն և զեռաբոյս մանկանն, որ է անունն։*** Եւ յիշատակ իւրեանց և ծնողաց իւրոց և ամենայն ննջեցելոց իւրեանց, զոր՚և իւրեանց կամքն լինի ի վախճանութեան անձանց իւրոց, Քրիստոս աստուած բազում ժամանակաւ և քաղցրութեամբ և անշարժ վա[ել]եալ տացէ և | | | անց սոցա | | | ութիւն հոգ[ւոց իւր]եանց։

* Ձեռագրի վերջին թերթերի աջ եզրերը այժմ պատռված են և որոշ բառեր չեն վերծանվում։ Փիրղալեմյանի մոտ (տես՝ Երև. №6273, էջ 157) պահպանվել է հիշատակարանի համառոտությունը այս ձևով՝ «...կատարեցաւ սա ի դաշտս Գաւառաց, ի գիւղս, որ կոչի անուն Սորանց Որցեանց, ձեռամբ Անդրէասի, թուին ՊԺԱ, ի [պարոնութեան] Ամիր Գիատին, ի ղանութեան Ոյիսին»։ Սրա օգնությամբ վերականգնում ենք ժամանակի տիրակալի, գրչության վայրի և գրչի անունները։

** 5—6 տող ամբողջովին պատռված է։

*** Անվան գրության համար տեղ է բաց թողնված։

## 551.

## ԴԻՈՆԻՍԻՈՍԻ ԱՐԻՈՊԱԳԱՑԻՈՑ ՑԱՂԱԳՍ ԵՐԿՆԱՑԻՆ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹԵԱՆՑ

*Երևան 24**

Գրիչ՝ Աւետիս Նոտարանց
վայր՝ Սուլխաթ

271բ *Փառք աստուծոյ ամենակալին և անսկզբան և անժամանակին՝ հաւր և որդոյ և հոգւոյն սրբոյ, որ զաւրացոյց զտկարութիւնս իմ ժամանել ի լրումն գրաւորական քաղցր և փափագելի և գերահրաչակ տառիս,** յամի ութհարիւրերորդի տասներորդի առաջներորդի Թուաբերութեան ժամանակի Հայոց (1362)։ Գրեցաւ տառս աստուածային երկնապատում սրբոյս Դիոնէսիոսի Արիսպագացւոյ՝ հետևողի սրբոյն Պաւղոսի առաքելոյն, հրամանաւ և արդեամբք ոճջախոհ և իմաստուն կրաւնաւորի տէր* Յովհաննիսի Սեբաստացւոյ, *աթոռակալի տէր* Ստեփաննոսի, *որ և ստացաւ մեծափափագ տենչանաւք դգիրքս աստուածարեալ ի սփոփանս մխիթարութեան անձին իւրոյ սրբասիրի։*

*Արդ, որք հանդիպիք սրբոյ տառիս լուսարաշխի, յիշեսջիք զվերոյգրեալ տէր* Յոհաննես, *և զծնաւղսն ըստ մարմնոյ՝ զպարոն* Պարոնշահն *և* զՏիկին*՝ զփոխեալսն առ Քրիստոս, և զպատուելի եղբարսն իւր՝ զիմաստուն վաճառականն զպարոն* Յակոբն *և* զՂազարոս *զրամարտիկ, և զպարոն* Աւագն*՝ փեսայացեալն*** նոցին, նաև զքոյրն և զամենայն արեան մերձաւորսն, որպէս զի տացէ նոցա տէր կեանս կրկինս յայս ուրախութեամբ վայելել՝ անվնորձ ի չարեաց, և զապագան՝ համարձակութեամբ ընդգրկել կեանս, ըստ ազնիւ և բազմաշահ ծառայիցն տեառն...։*

272ա *Այլ և զորուպս ամենայն գրողաց* զԱւետիս Նոտարանց *յիշեցէք ի տէր, և աստուած զձեզ յիշէ։ Ո՛վ տէր* Յոհ[աննես], *զտաժանեալս ի սմա յիշեա և զքեզ տէր յիշեսցէ։*

*Եղև սկիզբն և կատարումն սորա ի մեծահռչակ, բազմամարդ, յոլովաժողով գանձունակ բարելի քաղաքս* Սուլխաթ *կոչեցեալ* Ղրիմ, *ի վերնաբնակ հայաժողով Թաղս հոգայարկեաւ, ընդ հովանեաւ սրբոյ խորանացս սրբոյն Սարգսի և այլ սրբոց, ի Թագաւորութեանն Հայոց* Կոստանդեայ, *և ի կաթուղիկոսութեանն տեառն* Մեսրոպայ *առաքինոյ, և այժմ նահանգի առաջնորդի՝ տէր* Ստեփաննոսի*։*

*Արդ, քանզի ոչ գտանէր աւրինակս այս ի քաղաքս և ոչ ի վանորայսն, և փափագ տենչանաց նեղեր զիս, թէ վասն է՞ր ոչ գաանի*

---

* Ձեռագիրն ընդօրինակված է 1615 թվին՝ Լվովում, «ձեռամբ անարժան Գրիգորի Վարդի որդւոյ»։ 1362 թվականի սույն հիշատակարանը պատկանում է նախագաղափար օրինակի գրչին։

** Բնագրում այստեղ, և երեք անգամ շարունակության մեջ, գրված է «տաշխս» փխ. «տառիս»։

*** Բնագրում՝ «իեսայացեալն»։

այս գիր պատուական. մինչև եհաս ինձ* գնալ յերկիրն Հայոց, ի թագաւորական քաղաքն Սիս, ոչ թէ վասն տարիս միայն, այլ և վասն կրսերագունի եղբաւր իմոյ Գրիգորի, առնել եպիսկոպոս Նահա[ն]գին խաղտեաց։ Եւ գտեալ գաւրինակ սորա գրեցի մեծաւ փափագմամբ, և բերեալ փոխարկեցի և տեառն իմոյ տէր Յոհանէսի,
272բ որոյ յոյժ ուրախացաւ ի գալ աւրինակի սորայ և բա[զ]ում սէր եցոյց մեզ։

Յիշեցէք և զծնողսն մեր զՆատեր բազմամեայ ծեր գրիչ Ժրաջան, և զմայրն իմ, և զնոր աւծեալ վերատեսուչ Խաղտեաց զաւառին** զտէր Գրիգոր, որ է իմ հայր ըստ հոգւոյ և եղբայր ըստ մարմնոյ և որդի հոգևոր ըստ ուսման, ըստ Պօղոսի, որ ասէ՝ ես ծնա զձեզ աւետարանաւն ի Քրիստոս Յիսուս, և զմիւս եղբայրն Ստեփանոս քահանայ, և զքոյրն միաւոր, և զայլս, որ ընդ մեզ են պչուցեալ վասն աւգտի և կենաց հոգոյ. և ինքն՝ համակ բարին, որդի բարերարին, հովիւ բարին, ի բարին իւր կոչեսցէ զձեզ լինել միշտ ի բարին, ի յինքն Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

552.

ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 170, Տ.-Ավետիսյան, էջ 1419

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Մերտին, Թվին մենաստան

385ա ...Արդ, գրեցաւ սա ի թուականիս Հայոց ՊԺԱ. (1362), ի մենաստանս Թվին կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ Յովաննու Մկրտչի, ի հայրապետութեան Հայոց տեառն Մեսրովպա, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յակովբայ, և ի թագաւորութեան Հայոց Կոստանդեայ, գրեցաւ հանդէպ մայրաքաղաքիս Մերտնայ։ Արդ, աղաչեմ զամենեսեան զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք այսմ հոգևոր մատենիս և ծաղկաւէտ բուրաստանիս, յիշեսջիք ի Քրիստոս զաշխատողս սորա զանարժան [Վարդան] քահանայ, և զծնողսն իմ զԱռաքել քահանայ, և զմայրն իմ զՆազիր, և զեղբարսն իմ՝ զՆերսէս և զՅուսիկ և զՍարգիս, և զքուերսն իմ զՄղտսին և զԱղեկտիկին, և զամենայն արեան մերձաւորսն մեր։ Յիշեսջիք և զհոգևոր որդիս մեր զՍտեփանոս կուսան կրաւնաւոր, որոյ անուն և զգիրս գրեցի։ Եւ ինքն Քրիստոս, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Նաև Մատթէոսին, որ ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց, յիշատակ իւր և ծնողաց, նա ամենակարողն աստուած ողորմեսցի Մաթէոսին և տա իւր փոխարէն զկեանսն յաւիտենականս։

* Բնագրում՝ «ինչ»։
** Բնագրում՝ «Գաւարին»։



ՊԺԲ 1363

## 553.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Փիրղ. 6273, էջ 160 (Վան, Բերդակ գիւղի սբ. Յովհաննէս եկեղեցի)

Գրիչ՝ Պետրոս
վայր՝ յԵրկիրս Հայքարայ

...Արդ, գրեցաւ սա ի Թուականիս մերում ՊԺԲ. (1363), ի յաւուրս նեղողաց ազգին | | |, որ բռնացեալ ունէր զամենայն աշխարհս Հայոց և զայլս բազումս, որում չեմ բաւական պատմել զդառնութիւն և զաւէրութիւն աշխարհիս, որ իբրև զծով խռովեալ մրրկածին օդով զերեքալեան բերելով զնմանութիւն, ուր ոչ երկիր, և ոչ քաղաք, և ոչ գեաւղ, և ոչ աւանք, և ոչ հրաշազան վանօրեայք զխաղ[աղ]ութիւն գտեալ, այլ ամենայն առհասարակ աւերեալ և քանդեալ ըստ մարգարէին...յորում եղկելիս յայսմ ցասմանէ հալածեալ ի սուրբ ուխտէն Բարդուղիմէոսի Առաքելոյն, զերծեալ անկայ ի յերկիրս Հայքարայ*, [զոր այժմ տիրէ Մարաց իշխանութիւն և ամիրապետութիւն Ամատունի և որդւոց իւրոց]**։ Եկեալ բնակեցայ աստ նշդեհութեամբ և բազում տառապանօք ի մէջ սակաւ քրիստոնէիցս, որ կան աստ բնակեալ յահէ նեղչաց, իբրև ցորեան ի մէջ փշոց պատեալ։ Ցայսմ ժամանակի ես՝ եղկելիս Պետրոս, վերջինս կրօնաւորաց, յաւուր ծերութեան իմոյ դրեցի...։ Բայց գրեցաւ սա ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի Նախավկային։

## 554.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՄԱՏԹԷՈՍԻ

Երևան 2610

Գրիչ՝ Յով[հանն]էս
վայր՝ առընթեր Խիզան քաղաքիս

259ա Փառք...որ արժանաւորեաց զանարժանս հասանել յաւարտումն տեառնախօս մեկնութեան սուրբ աւետարանիս Մաթէոսի, ձեռամբ անարհեստ և փցուն գրչի՝ պիտակ անուն Յով[հանն]էս կրօնաւորի, ի ստացումն և ի վայելս գերապանծ և մեծ րաբունապետին Յովհաննիսի, յիշատակ հոգւոյ իւրոյ, և ծնաւղաց, և վարժապետաց, եղբարց, և ամենայն արեան մերձաւորաց, և առաջնորդ վերին գնացմանն։

* Ըստ Փիրղալեմյանի ծանոթագրության գտնվում է Ջուլամերիկից արևելք։
** Փակագծերի մեջ առնված հատվածը հավանորեն ավելացրել է Փիրղալեմյանը։

Արդ, որք հանդիպիք ի շահս աւգտութեան աստուածախօս մեկնութեանս, զվարդապետն Յովհաննէս, և զիւրսն, և զանհարմար տառատիպ* սորին, և զիմսն ամենայն յիշեսջիք ի մաքրափայլ և յարժանաւոր յաղաւթս ձեր, զի և դուք յիշեսջիք առ բուն բարին Քրիստոս, որում փառք յաւիտեանս, ամէն։

Նաև զՊետրոս սրբասնեալ կրօնաւոր յիշման արժանի առնէք, որ յառաջոյ և յետոյ գրեաց և աւգնական եղև մեզ վասն անկարգութեանն, զի յոյժ ա?տացայ ի բազում ձանձրութենէ։
259բ || Այլ և զՍտեփաննոս՝ կազմող սորայ, որ և զթուղթս այլ կոկեաց, և զմիաբան եղբարքս մեր՝ զՍէթ, զԹորոս և զԴաւիթ, որք աւգնական եղեն մեզ ձեռընտուութեամբ և ամենայն գործովք, և զհոգևոր տնտեսն մեր, որ սպասաւորեաց մեզ լրջմտութեամբ, զամենայն զգրեալքս ի սմա, յիշեցէք ի Քրիստոս և մեզաց թողութիւն խնդրեցէք, և աստուած զձերն և զմերն առհասարակ թողցէ։

Արդ, գրեցաւ սայ ի նուրբ և ի նեղ ժամանակի, յորում դերին և աւար լինին ամենայն ազգք քրիստոնէից վասն ծովացեալ մեղաց իմոց, և ի տառապանս և ի տարակուսանս կայեաք ամենեքեան։

Գրեցաւ սա ընդ հովանեաւ սուրբ առաքելոյս Գամաղիէլի, որ կայ առընթեր Խիզան քաղաքիս, ի խնդրոյ սուրբ և առաքինաջան վարդապետի Յոհանէսի, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն արեան մերձաւորաց, և փոխելոցն առ Քրիստոս, ամէն։

Գարձեալ կրկին յերես անկեալ աղաչեմ խոշորութեանն և սխալանացն անմեղադիր լինել, զի յոյժ վշտալից էր տեղս ի մժեխից և ի ճանճից և յայլոց, որ սոցին նման է։

Թվ. ՊԺԲ (1363)-երորդի։

555.

## ԲԱՆ ԴԻՄԱԴՐԱԿԱՆ ԸՆԴԴԷՄ ՀԵՐՁՈՒԱԾՈՂԱՑՆ ՍՏԵՓԱՆՆՈՍԻ ՕՐԲԵԼԵԱՆՑ

Երևան 6886

Գրիչ՝ Նատեր
վայր՝ Գոզուս գիւղ

71ա Գրեցաւ ի Թվ. ՊԺԲ. (1363), յունիսի ԻԸ. (28), ձեռամբ անիմաստ գրչի Նատերի, ի գեղս Գոզուս,** ի դուռն սուրբ Աստուածածնիս։

* Բնագրում՝ «տառապիտ»։

** «Գոզու» գյուղը գտնվում է Բարերդ գաւառում (տես՝ Նատերի որդի Ավետիսի 1368 թվականի հիշատակարանը), ուստի Նատեր գրիչը 1363-ին գտնվում էր Բարերդում, իր Գրիգոր որդու մոտ։

## 556.

### Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ

*Բրիտ. թանգ. 100 (Add. 19, 732), Կոնիբ. ցուց. էջ 248*

Գրիչ՝ Ստեփաննոս որդի Նատերի
վայր՝ Սուլխար

*Ըստ թուաբերութեան ամաց տումարի Հայոց ՊԺԲ. (1363)-ն եղև աւարտումն աստիս պատուականի...հրամանաւ տէր* Յոհաննիսի Սերաստացւոյ՝ *ժրաջան կրաւնաւորի և ուղղաբան ճարտասանի...։ Ցիշեսջիք զստացաւղ սորա տէր* Յոհաննէս, *և զծնաւղս նորին զպարոն* Պարոնշահն *և* զՏիկին...*, *և զեղբայրսն՝ զպարոն* Յակոբն, *և* զՂազար *զբամարտիկն* | | ¦ *և զքորսն և զամենայն մերձաւորսն..,։ Հուսկ յետոյ և վասն ինձ լիցի յիշումն ի ձէնջ սիրելի[ք], անարժան քահանայի* Ստեփաննոսի*...այլ և վասն ծնողի իմոյ մարմնոյ, և ուսուցանողի այսմ՝* Նատեր *գրչի, և եղբարց, և քուերց...։*

*Արդ, գրեալ եղև յաշխարհս Հոնաց, ի հռչակաւոր քաղաքս* Սուլխար, *ընդ հովանեաւ տաճարիս սրբոյ Սարգսի, ի Հողետներս վերի։*

*Ի սոյն ամանակի շփոթումն դոյ վրդովման յաղագս մարմնական աշխարհակալաց, զի գլուխ թագաւոր ոչ գոյ, որ առնէ խաղաղութիւն, ըստ տեառն բանի՝ բաժանեալ թագաւորութիւն ոչ հաստատի, սակս որոյ պետ քաղաքիս փոս հատանէ, խորխորատ փորէ շուրջ քաղաքաւս, և բազում տունք հիմն ի վեր առնէ, և աւերմունք անթիւ, և ամենայն ոք յերկիւղի է...։*

ԶԱւետիք *գրիչ...յիշեա, ով տէր* Յոհ[աննէս], *զի փոքր մի ես աւգնեցի դրոյս յառաջս կանոնին և ծաղկեցի...։*

## 557.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

*Փիրղ. 6273, էջ 159 (Սեբաստիա, սբ. Նշանի վանք)*

Գրիչ՝ Սամուէլ
վայր՝ Կամախ

*Գրեցաւ աստուածայինս այս մատեան ի թուին Հայոց ՊԺԲ. (1363), ի դամբարանի սրբոյ Լուսաւորչիս* Զորեհանգիստ *կոչեցելոյ, ընդ հովանեաւ սուրբ մօրս լուսոյ Աստուածածնիս, ձեռամբ մեղուցեալ ոգւոյ* Սամուէլի *սուտանուն կրօնաւորի...ի յստոյգ և յընդրելագոյն օրինակէ...ի յառաջնորդութեան հայր* Աստուածատրոյ...։ *Ո՜հ, որ փախաք ի վանիցն ի* յԵզնկացւոց, *և եկաք ի* Կամախս՝ *ի դուռն սրբոյն Գէորգեայ զօրավարին, և օգնականութեամբ սորա կատարեցաւ տառս, և տէր* Դաւիթ *սիրով ընկալաւ զմեզ և հոգւով սպասաւորեաց։*

---

** Տեղ է բաց թողնված մոր անվան լրացման համար, բայց իզուր, Հովհ. Սեբաստացու մոր անունը «Տիկին» է։*

## 558.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ, ՆԱՆԱՅԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

*Երևան 2611 (տես նաև՝ 1603 թ.)*

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ղրիմ քաղաք

132բ *...Արդ, գրեցաւ լուսաշաւիղ և աստուածաշունչ գիրքս աստուծոյ ի թուականիս Հայկազեան տումարիս ՊԺԲ. (1363), և յամսեանն աւգոստոսի աւարտեցաւ ի փառս աստուծոյ, ի հայրապետութեան տեառն* Մեսրովբայ, *ի թագաւորութեանն* Կոստանդիանոսի *բարեպաշտի, և յառաջնորդութեան մայրաքաղաքիս* Ղրիմի *տէր* Ստեփանոսի *արքեպիսկոպոսի, և յաթոռակալութիւն տէր* Յովհաննիսի՝ *կորովամիտ վարդապետի և հոգևոր իմաստասիրի, հերձուածողաց հալածողի և ցոփագնացից ահ արկանողի, զոր այժմ փայլէ ի մէջ եկեղեցւոյ իբրև զսիւն լուսոյ և իբրև զպարիսպ բարձրապատուար շուրջանակի, և մեք խնդրեմք աղաչանաւք ի տեառնէ, զի ընդ երկայն աւուրս շնորհեսցէ զսա աւրինակ բարեաց մանկանց նոր Սիովնի։*

*Բայց գրեցաւ սա առ ոտս սուրբ Ստեփանոսի արեամբ նահատակեալ ծառային Քրիստոսի և նախավկայի և այլ ևս հաւաքեալ աստ սրբոցս, ձեռամբ անպիտան և անարհեստ գրչի* Կարապետի, *միայն անուամբ կոչեցեալ քահանայ և գործովք հեռի...։*

*...Որք աւգտիք ի սմանէ յիշեսջիք ի տէր* զԿարապետ *գրիչս, և զկենակիցն իմ* զԳոհար *տիկինն, և զաստուածապարգև զաւակսն մեր՝* զՀիլալն *և* զԱստուածատուրն՝ *զհանգուցեալսն առ Քրիստոս, և զոր դարձեալ պարգևեաց մեզ տէր զաւակք մխիթարութեան նովին անուամբն՝* զՀիլալն *և* զՎարդենին, *և զծնողսն իմ՝* զԱստուածատուրն *և* զԱզիզ *խաթունն, և զմաւրքուրն իմ՝* զԼալ *խաթունն, և զեղբարսն նոցա՝* զՍերոբն, *և* զՄովսէսն, *և* զԱւգերոսն, *և* զՍարաթն, *և* զՉիլխաթունն, *և* զԽաչատուրն, *և* զՇուշանն, *և* զԱստուածատուրն, *և զեղբարսն և զքորյրսն իմ, յիշեսջիք աղաւթիւք ձերովք, և դուք յիշեալ լիջիք առ տէր, ամէն, ամէն։*

## 559.

## ՃԱՇՈՑ

*Երևան 7430 (տես նաև՝ 1559 թ.)*

Գրիչ՝ Յովհաննէս
վայր՝ Ղրիմ քաղաք

ա

466ա *...Նաև թէ արժանի համարիք զանարժանս՝* զՅովաննէսս՝ *ապիկար և անիմաստ գրիչս, և զհայրն իմ* զԱւետիս *քահանայ, և զմայրն իմ* զԹագուհին, *և քոյրն իմ* զՀռիփսիմէն՝ *զփոխեցեալն ի Քրիստոս աստուած, ցաւակցաբար յիշման ի փառաւոր և ի սոսկալի աւեննս։*

Կատարեցաւ սա ի Թուականիս Հայոց ՊԺԲ. (1363), մայիսի Գ. (4), ի հռչակաւոր քաղաքս Ղրիմ, առ ոտս սուրբ Ստեփանոսի և այլ միաբան սրբոցն, որ աստ են հաւաքեալ*

Բ

260բ …Ցիշեա զիս՝ զՅովանէս ծառայս, ի քո արքայութիւնն…նաև զիս սաացաւղս՝ զՍրխմիտ քահանայս։

560.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 5608 (տես նաև 1304 թ.)

Գրիչ՝ Կիրակոս
վայր՝ Երուսաղէմ

ա

148ա Գրեցաւ դիրքս ի մայրաքաղաքս յԵրուսաղէմ, ընդ հովանեաւ սուրբ Փրկչիս և այլ բազմահաւաք սուրբ անաւրինականացս, ձեռամբ մեղապարտ և փցուն դրչի Կիրակոսի, ի վայելումն և յիշատակ հոգւոյ սուրբ հաւրս մերոյ Ներսեսի և առաջնորդի սուրբ ուխտիս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով, յիշեսջիք ի տէր զվերոգրեալ ստացաւղ սորա զՆերսես հայրն** և զծընաւղսն իւր՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, զհայրն իւր զԳրիգոր քահանայն, և զմայրն իւր զՇնոփոր, և զհարազատ եղբարսն իւր՝ զՍստուէս երէց, և զՄեծ երէց. ընդ նմին և զԿարապետ քահանայն, զՎարդանն և զՅովան, և զբարեպաշտ շահնայն՝ զՍարգիսն, ընդ նոսին յիշեսջիք ի տէր և զեղբայրն իւր զպարոն Ջրքին, և աստուած մեզ՝ յիշելեացս և ձեզ՝ յիշողացդ առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ ի Թվականին Հայոց ՊԺԲ. (1363), մարտ ամսոյ ի Դ. (4), և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

561.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ, ՑԻԳՆԱՏԻՈՍԷ

Երևան 3405 (տես նաև 1357 և 1698 թ.թ.)

Հետ. ստացող՝ Գէորգէոս
վայր՝ Ղրիմ Քաղաք

373ա Ցամի ութհարիւրերորդի տասներորդի երկրորդի (1363) ըստ Թուաբերութեան Ցաբեդական տոհմիս տումարի, ստացաւ զմեկնութիւն սուրբ աւետարանիս, որ ըստ Ղուկայ, արարեալ մեծ վարդա-

* Սույն հիշատակարանն արտագրել է այժմ գոյություն չունեցող ընագրից ձեռագրերի նորոգող Գալուստ սարկավագը, 1632 թվին։

** «Հայրն» բառի վրա գրված է պատվի նշան, գուցե այն պետք է կարդալ «հայրապետն»։

պետին Հայոց Իգնատիոսի, պատուեալ կրա[ւ]նաւորն Գէորգէոս՝ յոյժ փափագմամբ և յորդորամիտ սիրով, ի դաստիարակութիւն կենաց ի հոգևորն զարդանալ հասակի, լուսաւորելով ի պատուիրանաց տեառն ըստ ներքին մարդոյն, և յետ ատենացս մնացէ յիշատակ անջէջ յեկեղեցիս և յորդիս իւր։ Արդ, որք հանդիպիք փառաւոր և հրաշաբան մեկնութեան սրբոյ աւետարանիս, ուրախ լինելով ի ճաշակ սորա քաղցրութեան, յիշեսջիք ի տէր սրտի մտաւք զպատուելի || կուսակրաւն
373բ կրաւնաւորն Գէորգէոս՝ զստացաւղ սորա և զծնաւղսն իւր՝ զպարոն Ոսկեբերն և զՄամախաթուն՝ զփոխեալսն առ Քրիստոս, և զեղբայր սորա՝ զՏատուրն, զԽաչատուրն, զՔրիստոսատուրն, զՄարտիրոս, և զքուերսն, և զամենայն ազգայինսն՝ զկենդանիս և զվախճանեալսն, որպէս զի տացէ սոցա խաղաղական կենաւք վարել զկենցաղս ի կամս աստուծոյ և հասանել հանդերձելոյն, և նոցա հանդիստ ընդ հաճոյացեալ սուրբս ի վերինն Երուսաղէմ, ի մայրն որդւոց Սիովնի նորոյ։

Եւ որք սրտի մտաւք և սեռն գիրով յիշեսցէ ի միտս բարիս, յիշեսցի և ինքն ի Քրիստոսէ Յիսուսէ յԵկայքն, ասել, աւրհնեալք հաւր իմոյ ժառանգել զկեանս յաւիտենա[կանս]։

Եւ քանզի գրեալ էր գիրս ձեռամբ ումեմն Ստեփանոսի, ի խնդրոյ Կարապետ քահանայի, իսկ այժմ խանդաղատական սիրով խնդրեալ ի նմին Կարապետ քահանայէ կրաւնաւորս Գէորգ, որոյ հարկեալ ի սիրոյ սորա և ի պատուիրանաց տեառն, թէ ամենայն որ խնդրէ՝ տուր, ետ զսա Գէորգ կրաւնաւորին սեպհական յիշատակ։ Յիշեսջիք և զառաջին ստացաւղ զԿար[ապետ], և զԱւետիս՝ միջնորդաւղ, և աստուած զձեզ յիշէ, և նմա փառք։

Գրեցաւ ի Ղրիմ քաղ[աքի]։

## 562.

### ՃԱՇՈՑ

423բ ...Սուրբ տառս կատարեցաւ ի թվ. ՊԺԲ. (1363), յամսեան յունիս ԺԳ. (13)։*

---

* Գրչի հիշատակարանից պահպանվել է միայն մեկ էջ՝ քայքայված ու անընթեռնելի վիճակում, միակ հետաքրքիր բանը պահպանվածի մեջ բերված երկտողն է՝ թվականի հիշատակությամբ։ Ձեռագրում կան հետագա ստացողների և նորոգողների հիշատակագրություններ, դրանք են՝

ա) ՋԸ. (1459) թվականից, Տաւլ[աթ] խաթունի կողմից ճաշոցը «ի դրունս սուրբ Ահարոնի» նվիրաբերվելու մասին (էջ 425 ա)։

բ) ՌԼԲ. (1583) թ. ձեռագիրը կազմելու մասին։

գ) ՌՃԽԲ. (1693) թ. նորոգության, և մահտեսի Յովհաննեսի կողմից սուրբ Ահարոնի եկեղեցուն նվիրաբերվելու մասին։

*ԳԺԳ* — *1364*

## 563.

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Ն. Ջուգա, Ամենափրկիչ, 48, Տ.-Ավետիսյան, էջ 174—175*

*Վայր՝* Խորձիւն գաւառ, Բողնչիք անապատ

ա

*Ի բամս Հայկազեան Թուաքերութեան տումարին, յորում էր Թիւ համար Թուականին Թորգոմեան տոհմին ԳԺԳ. (1364), աւարտագործեալ եղև սուրբ և կենսատու աւետարանս...։*

231բ *...Զոր իմ՝ անարժանի և անպիտան ծառայի ծառայից տեառն, տեսի ղաւրինակս գովելի և անսղալ վկայեալ ի բազմաց, և ցանկացող եղէ, որպէս պատուական մարգարտի, և գրեցի զսա իմ անիմաստ մտաւքս ի գաւառիս* Խորձիւն*, յանապատիս, որ կոչի* Բողնչիք*, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնին։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ աւետարանիս, զմեղապարտ գրիչս, և զծնողսն իմ, և զեղբարսն, ամենայն արեան զարմիւք յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր։ Նաև զսրբասէր և հեզահոգի կրաւնաւորսն՝* զԿարապետն, զԱրգարիոսն *և* զԿիրակոսն, *որ ցանկացան սուրբ աւետարանիս, և բազում փափագանօք խնդրեցին ի յիշատակ ինքեանց և ննջեցելոց իւրեանց, Նաև* զԱստուածատուր *կուսակրաւն քահանայ, որ է հայր հոգոց մերոց, և զայլ եղբարս միաբան սուրբ ուխտիս, և* զԱռաքել *քահանայն՝ զփոխեցեալն ի մէնջ առ Քրիստոս, յիշեսջիք առհասարակ ի սուրբ յաղօթս ձեր, և* զՄարգարէ *աբեղայն, որ զԲ. գլուխն ինքն գրեաց յիշեցէք առ Քրիստոս, և որ ձեռնտու և աւգնական եղեն սմա, առհասարակ յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս աստուած | | |**

*Ծաղկող՝* Ալինախ

բ

6ա *Ծծաղկաւղ[ի]կս* զԱլինա[խ] *եպիսկոպոս յիշեցէք յառ Քրիստոս։*

---

* *Շարունակությունը չի պահպանվել*

## 564.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Հայսր. Մատեն. Վիեննա, 10, Տաշ. Ցուց. էջ 17*

*Գրիչ՝* Անանիա

*վայր՝* Եկեղեաց գաւառ, սբ. Կիրակոսի անապատ

318բ *Ո՜վ քրիստոսազդեաց մանկունք, որք ի լուսաւոր եւ յաստուածային հոգեշահ պատուիրանացս աւգտիկք ընթերցմամբ եւ կամ աւրինակելով, զստացաւղ սորա զանարժան քահանայ զ*Նորոգիս *հողս, եւ զ*Անանիա *դրիչս, եւ զծնաւղսն մեր, եւ զամենայն երախաաւորսն մեր յամենայն պէտս մեր յիշեսջիք մեղաց թողութեամբ ի տէր. ընդ նմին եւ զհեզահոգի եղբայրն մեր ըստ հոգւոյ զ*Թումաս *կրաւնաւորն, աղաչեմ սրտի մտաւք...։*

*Յամի ՊԺԳ. (1364), յամսեանն յունիս Իէ. (27) եղեւ գրաւ գըրչութեան աղաւթական բանիցս սրբոյն* Ներսեսի Կլայեցոյն *եւ* Գրիգորի Սկեւռացոյն *եւ* Եփրեմի *խորին* Ասորոյ *ի գաւառս* Եկեղեաց, *յանապատս, որ կոչի սուրբ Կիւրակոս, ընդ հովանեաւ սորին տաճարի, եւ կենսակիր եւ աստուածընկալ սուրբ Նշանիս, եւ այլ բազում նըշխարաց, որ աստ կան եւ են բարեխօս վասն մեր ի Քրիստոս աստուած ի տէր մեր, որ է աւրհնեալ։*

## 565.

### ՄԱՇՏՈՑ

*Թաւրիզ, Մասնաւորաց, 71, Աճառեան, Ցուց. էջ 135—136*

*Գրիչ՝* Ստեփանոս

*վայր՝* Ամիթ

153բ *...Գրեցաւ մաշտոցս ձեռամբ յոգնամեղ եւ անարհեստ գրչի* Ստեփանոս *սուտանուն քահանայի, ի թվիս. ՊԺԳ. (1364), ի քաղաքիս* Ամիթ, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, ի խնդրոյ սրբասնեալ քահանային*, յիշատակ հոգւոյ իւրոյ։ Որք աւկտիք ի սմանէ յիշեսջիք յաղաւթս, եւ ձեզ յիշողացդ եւ մեզ յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս որդին...։*

## 566.

### ՏՕՆԱԿԱՆ

*Երևան 5228*

*Գրիչ՝* Ալեքսան

11բ *Զմեղապարտ գրիչ* Ալեքսան *յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ [յիշէ]. ՊԺԳ. (1364) թվ.։***

---

* *Ստացողի անվան լրացման համար տեղ է բաց թողնված։*

** *Գլխավոր հիշատակարանը չի պահպանվել, բերվածի նման հիշատակագրություններ կան նաև այլ էջերում։*





## 567.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երևան 1529 (տես նաև 1543 և 1667 Թ. Թ.)*

Գրիչ՝ Նատեր

ա

424ա *...Յիշեցէք ի տէր, ով սուրբ և սիրելիք աստուծոյ, զմիեղեն եղբայրութիւն, զհեզահոգի կրաւնաւորքն, սպասաւորքն, հանդերձ զրնակիչ սուրբ ուխտին Աճլոց վանից, որք եռափափագ սիրով ետուն գրել զլուսաւոր վարդապետութիւնս։ Ընդ նոսին և զեղկելիս յիշեցէք՝ զծրողս։*

բ

189բ *Նէր իմաստիւք հոգւով լցեալ սուրբ բանական,*
*Արեգական քատակ գտեալ ճահողական,*
*Տրոհել զլաւն ի վատթարէն ստոյգ ցուցական,*
*Երանութեան աւուրն արժան այցելութեան,*
*Րամել խրատ տառիւս ողջմամբ որդւոց մարդկան,*
*Գոչէ բողոք գէտ բարձրական, գորովական,*
*Րապաղ թէի և գարշական, որք չեն արժան,*
*Ի յիմաստնոյն ցուցմունքն կան վկայական,*
*Զար երևի յաչս պղծոց վարք սրբական։*
*Եւ* առ գծողս ուժգին ողբամ վասն յարութեան,*
*Եւ աղաչեմ զսուրբ ընթերցողքդ վասն յիշման։***

---

* *Ձեռագրում գրված է «Զւ», ուղղում ենք՝ «Եւ»։*

** *1—9 տողերի սկզբնատառերով հոդվում է բազմաշխատ գրչի անունը՝ «Նատեր գրիչ»։ Նատերի արտագրած ձեռագրերը բազմաթիվ են և գրված են 1339—1363 թ.թ. ընթացքում։ Նա դեռևս կենդանի է, և հիշվում է իբր որդի Ավետիսի կողմից 1365 թվականին (տես՝ հաջորդ հիշատակարանը), ուստի սույն անթվական հիշատակարանը գրված կարող է լինել 1339-ից ոչ շուտ և 1365-ից ոչ ուշ։ Տեղադրում ենք 1365-ի թվաշարքում։*

## 568.

### ՃԱՇՈՑ

*Երևան 4656 (տես նաև 1383 և 1560 Թ.Թ.)*

Գրիչ՝ Աւետիս որդի Նատերի
Վայր՝ Ղրիմ քաղաք

ա

306ա *Արդ, որք հանդիպիք մատենիս այսմիկ յիշեցէք աղաւթիւք առ Քրիստոս սեռն սիրով ի միտս բարիս զՍարգիս քահանայ երէց, զստացող սորա, և զծնաւղ հայրն իւր զՇազարշահն, և զմայրն, որ երկնեաց զնա՝ զԽնլաւքն, և զհօրեղբայրն իւր, նաև զամուսին սորին՝ Սարգիս քահանայի՝ զԳարիանէ՝ զբարեմիտն և զհամեստ բամբիշն, և զհայրն իւր | | | զառնն, զմայրն՝ զՄարիանեն, և զաստուածապարգև զաւակսըն իւրեանց՝ Սարգիս քահանայի՝ զԽաչատուրն և զՅովանէսն, որք են պայազատ և ժառանգ սոցա և վայելաւղ տառիս սրբոյ, որպէսզի յիշմամբ ձերով գտցեն յամենապարգև տեառնէն զթողութիւն մեղաց և զկոչումն կենաց, թէ՝ եկայք աւրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւնն. և դուք զնոյն լուէք ի Քրիստոսէ աւրհնելոյն յաւիտեանս, ամմէն։*

բ

*Զբազմամեղ գրիչս զԱւետիս թէպէտ և անարժան գոլով, սակայն եղբայրական սիրով յիշեցէք առ տէր Յիսուս և զբազմերախտի ծնօղսն մեր ըստ մարմնոյ՝ զՆատեր գրիչ և զիմաստուն, որ կայ դեռևս, և զմայրն՝ զՄլեաւան՝ զգովեալն ի բազմաց, որ հանգեաւ ի Քրիստոս ի գաւառն Բարերդոյ, ի Վերի Գըօզուն, յոյժ արտասուաւք և կարօտիւ ի մէնջ, կէս ամաւ յառաջ քան զաւարտումն գրոցս, յիշեցէք և զՍտեփաննոս քահանա, և զտէր Գրիգոր եպիսկոպոս Խաղտեաց գաւառի՝ զհարազատ եղբայրս իմ և զքաջագրիչսն։*

*Արդ, գրեցաւ սա ի Ղրիմ քաղաքի, ի Հողետներս վերի, ի թվ. ՊԺԴ. (1365), յամսեանն օգոստոսի ԻԳ. (23), ի մէջ բազմամբոխ վրդովմանց, քանզի բոլոր երկիրս ի Կեչէն մինչ ի Սարուքարմանն՝ աստ ժողովեցան՝ մարդ և անասուն. և է Մամայն ի Ղարասուն՝ անթիւ խաթարաւք, և է քաղաքս ի դողման և յերերման, և զառաջական ինքն գիտէ, որ ամենեցուն է տէրն և խնամաւղ, որ է աւրհնեալ յաւիտեանս։**

գ

*Պատերազմաւ սուղ կալաւ զբոլոր սահմանս Ղրիմ քաղաքիւս, զի պետ իշխան սորա ոչ կարացեալ ընդդիմանալ՝ նկուն եղեալ փախեաւ,*

* Հիշատակարանը քայքայված բնագրից արտագրել է 1560 թվին ձեռագրի կազմող Ծոլպեյ Նազաշ սարկավագը։

և հարին ի զաւրուն իբրև Ռ. (2000) այր, և զկարասին զինուք հանդերձ առեալ տարան Մօլ։*

Դ

ԶՍարգիս քահանայ՝ ստացող գրոյս, և զԱւետիս զրիչ յիշեա ի տէր, ով, պատուելի ընթերցող։ Եւ թէ սխալ գտցի ինչ ի սմա՝ զանց արա, զի ի զաւրաշարժ և ի սուղ ժամանակի գրեցաւ։**

Ե

303ր Ձեռափափագ սիրով ստացող գրոց ժամակարգութեանս՝ զՍարգիս քահանայ, հանդերձ տամբ և զաւակաւք իւրովք յիշեցէք ի տէր, ով եղբարք մեր ի Քրիստոս, և զամենամեղ ոգիս զԱւետիս մի մոռանայք, և աստուած զձեզ յիշէ ի սէրն իւր սուրբ. ի թվ. ԳԺԴ. (1365) գրեցաւ, ի Ղրիմ քաղաքիս։

569.

ՃԱՇՈՑ

Երևան 7458 (առ նաև 1682 թ.)

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Կաֆա

462ր ...Ցիշեսջիք ի մաքրափայլ ա[ղաւթս] զփափագմամբ ստացողն սորա՝ զՄկրտիչ աբե[ղայն, որ ստ]ացաւ զսա յ հալալ արդեանցն յիշատակ իւր և ծնողաց իւրոցն, մաւր իւրոյ, և հաւրն իւրոյ, և եղբաւր իւրոյ Առաքելին, և ամենայն զարմիցն, նաև զՀայրապետն, զՑուսիկ, և զՆահապետ աբեղայն, և զԳրիգոր միայնակեցն և զծնողսն իւր, որ կամակից եղեն խաւսաւք, և զամենայն եղբարսն, նաև, թէ արժանի համարիք, զանարժանս և զուստանուն քահանայ զԿարապետ՝ գծողս սորա, եւս առաւել զեղբայրն մեր հոգևոր՝ զպատուելի քահանայ զՍտեփանոսն, որ զաւրինակն շնորհեց, պահեսցէ տէր աստուած պարագայց ամաւք՝ տամբ և զաւակաւք։

Կատարեցաւ սա ի թուականիս Հայոց ԳԺԴ. (1365), աւգոստոս ԺԵ. (15), ի հայրապետութեան տեառն Մեսրոպայ, յեպիսկոպոսութեան արհիականին տէր Ստեփանոսի, ի թագաւորութիւն Կոստանդիանոսի, ի հռչակաւոր քաղաքս ի Կաֆա, առ ոտս սուրբ Երրորդութեան, որ է սկիզբն ամենայն արարածոց, ի դառն և ի նեղ ժամանակիս, որ երևեցաւ յայսմ ամի Իսմայէլեան ազգէն նեռն և ապականիչն՝ զազգս քրիստոնէից սրախողխող արարեալ, որ և կոչի անուն Զալիբէգ, որ և զամենայն աշխարհ, որ մերձակայ էր, ահիւ և դողութեամբ պահեր զցայգ և զցերեկ, որ և աստուածային նախախնամութեամբն հռոմայական և արիական ազգէն, ըստ հրամանի տեառն

* Գրված է 260ր էջի ներքին լուսանցքում։
** Գրված է 288ր—289ա էջերի ներքին լուսանցքներում։

Ներսէսի, յայսմ ամի հրամանակատար եկեալ ի քաղաք գանձաւլաւս, ըստ հրամանին Հռոմայեցոց, ըստ աստուածային աջողութեանցն զՍուդղա քաղաքն առեալ, և զամենայն ինչ, որ ի նմա գտեալ՝ ձեր-բակալեալ, և զինչ Իսմայէլեան և Եբրայեցիք, որ են թշնամի խաչին Քրիստոսի և քրիստոնէից, զամենեսեան սպառսպուռ* կոտորեալ և զինչս դաւաճանեալ։

Եւ յայսմ ամի խռովեցաւ ժողովուրդ քաղաքիս քահանայիւքն դասիւք, սուգ և տրտմութիւն մտեալ ամենեքեան առհասարակ, որ չարն և բանսարկուն, թշնամին սատանայ մտեալ բանսարկ ի միտս մեծունաց և ի հերետիկոսաց, որ դեկեղեցիս ուղղափառաց, ըստ յոր-ջորջման Աստուածածնին, խլեցին, և հերետիկոսք բնակեցան, և մեծ տրտմութիւն տիրեց ուղղափառաց եկեղեցեացն, զոր տէր աստուած խաղաղութեամբ պահեսցէ զայս եկեղեցիքս անփորձ ուղղափառաց** և զթշնամին, որ մարտեաւ, յամաւթ | | | լիցի, յայսմ աշխարհիս և ի հանդերձելումն։

163ա Ցիշեցէք ի Քրիստոս զանարժանս՝ զԿարապետ...։

Քրիստոս աստուած յարութիւն պարգեէ տէր Ստեփանոս հայրա-պետին | | | հոգւոյն և իւր եղբարցն, որ զճաշոցս, կապիւ, և կազմիւ, և արծաթ կոճակով, և լաթիւ, և շարքուրիւ զարդարեաց։ Աստուած դիւր ծնաւղացն հոգին զարդարէ յերկնից արքայութիւնն, ամէն։

Ընդ նմին և յիշեցէք զտէր Մաղաքիա հեզահոգի կրաւնաւորն, որ զճաշոցս կապեաց և կազմեաց, յիշեցէք ի Քրիստոս և մեղաց թո-ղութիւն հայցեցէք։

570.

ԱԻԵՏԱՐԱՆ

Վենետ. 141 Ցուց. Ա. էջ 614 (տես նաև 1357 թ.)

Կազմող՝ Առաքել
վայր՝ Ուռհայ

ա

1ա Աբրահամ երէց Տակադբիւրցի՝
Ցառաջ եղել ես Դումշեցի,
Ցետ այսոր ես զու Ուռհայեցի.
Զաւետարանս կազմեցի,
Զքո սրտի կամքդ կատարեցի,
Զքեզ ի յաստուծոյ սէրն վառեցի,
Ես Առաքել եպիսկոպոս զայս գրեցի,
Զքո մտաց աչքդ բացի,
Զքեզ աւետարանս յանձնեցի։

* Լավ չի կարդացվում։
** Մի բառի չափ տեղ պատռված է։

Ի թվին ԳԺԴ. (1365) կազմեցաւ։ Առիւծն էր տանուտէր, և էր ուժով երաշտ, որ տասն ամիս անձրև չեկաւ։

Բ

223բ Ես՝ Նուաստ ի քահանայից կարգէ Աբրահամ չարժան երէց, ստացայ զայս սուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց՝ Հեթում քահանային՝ փոխեցելոյն ի Քրիստոս, և գեղարդոյս զաւակին իմոյ Խաչատրուն, որ դեռ Է. (7) ամաց էր, յորժամ կազմեցաւ աւետարանս ձեռամբ Կարապետ աբեղայի ի յՈւռհայ քաղաքի, ի թվին ԳԺԴ. (1365)։ Ես Առաքելս գրեցի վասն յիշելոյ և աստուած ողորմի ասելոյ, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

571.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 235 (տես նաև 1632 թ.)

Գրիչ՝ Դաւիթ
Վայր՝ Բաբերդ

ա

256ա …Արդ, ես՝ Դաւիթ երէց, որ անուամբ կոչիմ քահանայ և գործովք ոչ, որ գրեցի զսուրբ աւետարանս, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն, կամեցող բարերարքին աստուծոյ, որ հանապազ զբարիս կամի կամարարաց իւրոց, բազում բզձիւ ցանկացող [եղ]է և փափա[գա]նօք գրեցի զսուրբ աւետարանս ի յանառիկ ամրոցիս դղեկապատ քաղաքիս Բաբերդ կոչեցեալ, ի հայրապետութեան տէր Մեսրովբայ և ի եպիսկոպոսութեան տէր Գրիգորի [գեռ]արդոյս պատանեկի, յիշատակ ինձ [և] ծնողաց իմոց։ Արդ, մեծաւ յ[ուսով և] բազում աղերսանօք
256բ խնդրեմ…, ‖ որ լուսաւորիք ի կենսաբեր սուրբ աւետարանիս քարոզութենէն, զի յիշեսջիք ցաւակցաբար զիս՝ զբազմամեղս՝ զԴաւիթ երէց և զծնաւղսն իմ, ընդ նմին և զՕղիսաբեթ հաւատովորն, որ զթանաքն կու եփէր, յիշեսջիք ի ձեր սուրբ աղօթք։ Եւ որ տէրն է ամենայնի յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի ի յիւր միւսանգամ գալստեանն, ամէն և ամէն, ի թվ. ԳԺԴ. (1365)։

Ընդ նմին յիշեցէք և զԽոցադեղ ոսկերիչն, որ աւգնական եղև սմայ ոսկոյն. յաղագս պայծառութեան սորա | | |*

բ

106ա Քրիստոս աստուած, քո սուրբ և ընտրեալ աւետարանչացս բարեխօսութեամբ ողորմեա ստաց[ող]ի սորա՝ Դաւիթ քահանայի, և ծնօղաց իւրոց Աբրահամա՝ փոխեցելոյն ի Քրիստոս, և ամենայն ազգազանաց մերոց, ընդ նմին և զՕղիսաբեթ հաւատովորն յիշեցէք, որ աւգնական եղև սմայ թանաքին եփելովն։

* Երեք տող մաշված ու անընթեռնելի։

## 572.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

*Երևան 1244*

*Հետ ստացող՝* Իշխանն

ա

303բ *Զտկոր ոգի* Իշխանս՝ *զստացողս սուրբ գրոցս, որ զաստուածաշունչ գիրքս [գնեաց] ի բարի և փառաւոր վարդապետ* Սիմոնէն *խ. (40) դ[ահե]կ[ան]...։ Եղբարք, որք կարդէք կամ աւրինակէք զստացողս սուրբ գրոց՝ զսուտանուն* Իշխանս, *և զհայրն իմ* Յովան, *և զմայրն իմ* Միթոյտիկին, *և զերկու քուրքն իմ, և զհայշազատ հայրեղբարք իմ, զաւակաւք իւրեանց, և զնախնիքն իմ, և զմեղուցե[ա]լ* Իշխանս *յիշեցէք ի Քրիստոս...։*

*Գրեցաւ ի թվիս ՊԺԴ. (1365), ի դիւանութիւն* Ցուլխանոսի, *որ նեղէր զհաւատացեալս բազում չարութեամբ։ Ո՜խ, ո՜խ, զայն | | | ուս թէ ինչ չար էր։*

*Վերջին մասի գրիչ՝* Մկրտիչ

բ

311ա *Տէր աստուած վայելել տացէ զսակաւ տետրակս սուրբ վարդապետին* Կարապետի, *զի զփծուն գրիչս զ*Մկրտիչ *| | | յիշեսցէ ի սրբափայլ յաղաւթս իւր, վասն | | | անմեղադիր լերուք, զի գրիչս ախմար եմ և թա[փ]ծուր | | |**

## 573.

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

*Երևան 341*

*Գրիչ՝* Սիմէոն

105ա *...Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զբազմավէր ոգի լցեալ մեղաւք՝ զ*Սիմէոն *պիտականուն սպասաւոր բանի, և որ առատն է ի տուրս պարգևացն, տացէ յիշաւղացդ զանդրաւն ուրախութիւնն յանկէտն յաւիտեանն, և յիշելոցս առհասարակ։ Անմեղադիր աղաչեմ լինել խոշորութեան գրիս, զի գրադիր չկայր և բանքս էր պիտանացու, հարկեցա գրել։ Գրեցաւ ի թվ. ՊԺԴ. (1365)։*

*Յիշեսջիք առ բուն բարին զհարազատ հոգոյ և զլերզակից եղբարքս իմ զ*Ստեփաննոս *և զ*Յոհաննէս, *որ զաւրինակս ետուն անյաչաղ կամաւք։*

* Վերանորոգման ժամանակ, թերթի եզրերը կտրել են, որոշ բառեր մնում են մասամբ կամ ամբողջովին անընթեռնելի։

## 574.

### ՃԱՇՈՑ

Ե. Հալ. Անտիլ. 674. Պատմ. Թանգ. (Վանի Արարուց եկեղեցի)

Նորոգող՝ Ամիրքաս

Վերստին նորոգեցաւ ընթերցւածս ձեռամբ մեղապարտ Ամիրքասի, յիշատակ Յովասափ քահանայի, որ է ճշմարիտ հրաւնաւոր և ժիր մշակ եկեղեցոյ, Քրիստոս աստուած վայելել տացէ զսա ի յանցինս սոցա և առաջնորդեսցէ սոցա ի կեանս յաւիտենականս։ Արդ, աղաչեմ զսրբասնեալ քահանայքդ, որք հանդիպիք կարդալ կամ աւրինակէք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՅովասափ քահանայ և զաւակք սորա՝ զԱւետիս քահանայ, ըստ սորին* զՄխիթար, և զծնօղքն սորա զԱւետիս քահանայ, և զմայր սորա զԹամամ տիկին, և զկենակից սորա զԻնայ (*)։ Եւ աստուած յիշողացդ ողորմեսցի, ամէն։ Թվ. ՊԺԴ. (1365)։

## 575.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 6869 (տես նաև 1684 թ.)

Գրիչ՝ Մարտ[իրոս]

155բ ...Արդ, գրեցաւ աստուածայխաւս և իմաստայսիրաց գիրքս այս ի թվ. ՊԺԴ. (1365), ի խնդրոյ սրբայսէր և առաքինի | | ¦,** զոր ստացաւ զսայ յարդար վաստակոց իւրոց, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ Բարսեղ քահանայի և Մալայ խաթունին, և հարազատ եղբարց իւրոց՝ Սիմէոնի և Սախփանոսի, և քերց իւրոց՝ Ասան խաթունին և Ռուզ խաթունին։

Արդ, աղաչեմք զամենեսեան, որ հանդիպիք սմայ, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զ| | |և զծնաւղսն իւր, ընդ նմին և զմեղապարտ գրիչս՝ զՄարտ[իրոս], զի յոյժ ծեր էի և ոչ | | |***

## 576.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 8307

Գրիչ՝ Թադէ

310ա ...Գրեցաւ տետրս յրնտիր աւրինակէ ի թվ. ՊԺԴ. (1365), ձեռամբ Թադէ քահանայի, ի վայելումն շնորհազարդ քահանայի Յովանիսի, զոր տէր աստուած վայելել տացէ։

* Շատ անփույթ է արտագրված, թվում է պետք է եղած լինի՝ «ընդ նոցին»։

** Ստացողի անունը քերված է։

*** Շարունակությունը չի պահպանվել։ 264բ էջում գրիչն ունի «Զծերունս յիշեա յաղաւթս» հիշատակագրությունը։





## 577.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

**Երևան 7091**

Գրիչ՝ Վարդան Ղրիմցի
վայր՝ Երուսաղէմ

ա

*Փառք... որոյ շնորհիւ աւարտեցաւ ողբերգական այս մատեան,*
*զոր ի հոգւոյն սրբոյ շարժեալ [դր]եաց սուրբն ի հարս* Գրիգոր Նա-
րեկացի: *Որում ցանկացող եղէ ես՝ յետինս [ի] կրաւնաւորաց* Թո-
257ա րոսն | | |* *տեառն Ցակոբայ յ*Երուսաղէմ *սուրբ քաղաքս, ղի տեսի*
*զանհամար տղղս մեղաց և ախտից զորս սա թուէ, և ստացա զսա*
*սիրով ինձ հրապարակիչ և զսրովիչ և կառափիչ, ի կենդանութեանս,*
*և զկնի մահուանն, որչափ մնասցէ սա կամաւք տեառն ի ձեռս այլոց*
*պարսաւելով զիս՝ զանառակ որդիս, որ առի զրաժին իմ և յանաւդուտ*
*պէտս ծախեցի և չքաւորեցայ, և եմ լալի և ողորմելի, թէ զի՞նչ տամ*
*պատասխանի ի յահեղ ատենին՝ ոչ գիտեմ, այլ թողի ինձ յոյս զաս-*
*տուծոյ եեթ մարդասիրութիւնն: Եւ դուք, ո՛վ լուսերամ գ[աս]ք, որ*
*հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակ գնելով, յիշեսջիք ի Քրիս-*
*տոս քրտնաջան, ճգնազգեաց, հեղահոգի սարկաւագն* Թորոս, *և զծնաւղսն*
*իւր՝ զհայրն* Սուքիաս *և զմայրն իւր* զՄինայն, *և զեղբարս, և զքոյրս,*
*և զամենայն արեան մերձաւորս՝ զկենդանիս և զննջեցեալսն յիշես-*
*ջիք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ ի բարի:*
*Արդ, գրեցաւ ի թվ. Հայոց ՊԺԵ. (1366): Ի յայս տարի գերեց*
257բ *փռանկն* զԱղեքսանդր. *և || յայս աշխարհս զինչ քրիստոնեայ կայր զա-*
*մէնն կալան և ի գիր հանին, և զինչ եպիսկոպոս և աբեղայ և երէց*
*կայր՝ զամէնն զնտանեցին, և զինչ եկեղեցի կայր՝ զամէնն փակե-*
*ցին: Սպանին զմեր ըռայիսն, և այլ բազում երէց և կարգաւոր սպանին,*
*և բազումք վասն դառն տանջանացն դարձան թուրք, և մեք յ*Երու-
սաղէմս *զտարոյս շատն ի զնտան ենք կացել, և բազում վիշտ և նե-*
*ղութիւն վասն Քրիստոսի տեսաք, զոր ոչ կարեմ ընդ գրով պատմել:*
*Աղաչեմ զձեզ ես՝* Վարդան *աբեղայ* Ղրիմցի, *որ անանգեցա (*) և*
*գրեցի զսա բազում նեղութեամբ և ահիւ, յամէն աւր կու մնայաք թէ*
*երբ չարչարեն կամ սպանեն. սխալանաց սորին անմեղադիր լերուք և*
*յիշման արժանի արարէք զմեզ և զմերսն ամենայն, և աստուած, որ*
*առատն է ի տուրս, յիշեսցէ զձեզ և զձերս ամենայն:*

* *Ստացողի անունը և էլի մի երկու բառ քերված է. «Թորոսն» անունը գրված է այլ ձեռագրով:*

Բ

*Ի սուրբ քաղաքս յԵրուսաղէմ է գրած, ի թվ. ՊԺԵ. (1366), ի յայս դժար տարիս։*

*Սեպտե[մբեր] Ե. (5) է գրած այս գիր. և այսաւր է փոխել միտս, ընդ որ տէր յաջողեսցէ։*

*ԶՎարդան դրողս յիշեա, ով եղբայր իմ։*

*ԶՎարդան մեղաւոր ողի յիշէ ի տէր, ով եղբայր բարի, և դուք յիշեալ լինջիք ի Քրիստոս։*

*Եւ աւարտեցաւ հոկտ[եմբերի] ԺԳ. (13)։**

## 578.

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Վենետ. 264 Ցուց. Բ. էջ 846

Գրիչ՝ Ատոմ

112բ *Փառք... որ ետ կարողութիւն տկարութեանս իմոյ հասանել ի զրաւ տառիս, որ է* Վարդան *վարդապետի արարեալ բանս ԿԶ. (66), աւգտակար և հոգեշահ մանկանց Նոր Սիոնի։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով, կամ աւրինակելով, կամ ընդ ձեր իսկ բաժին լինելով [յիշեսջիք] ի մաքրափայլ և երկնաբացիկ յաղօթս ձեր* զՍտեփաննոս *և զհարազատ եղբայր նմին* զՈհաննէս *կրօնաւոր, ընտրեալք երկոքինն, սնեալք սրբութեամբ և արգարութեամբ ի միասին, որպէս զձագս աղաւնեաց, ընդ նմին և* զԳեորգ *կրօնաւոր, որ առաջնորդ եղև սուրբ ուխտիս, և* զՈհան *կրօնաւոր, և* զՄովսես *կրօնաւոր, որ բազում ջանիւ աշխատէր յաղագս շինութեան սուրբ ուխտիս, որ բազում կամակցութեամբ աւգնեաց մեզ, և զհոգևոր եղբարսն մեր՝* զԹադէոս *կրօնաւոր և* Ստեփաննոս *կրօնաւոր, և աստուած զձեզ յիշէ։ Դարձեալ կրկին աղաչեմ զամենեսեան՝ յիշեսջիք ի զենման գառինն աստուծոյ՝ զուսուցիչն մեր* զՍտեփաննոս *դերջանիկ կրօնաւոր, որ զօրինակն սիրով շնորհեաց, ընդ նմին և զուսումնակիցն մեր* զՍտեփաննոս *կրօնաւոր ի սուրբ խաչէն* Աղթամարայ...։

*Գրեցաւ ի թվ. ՊԺԵ. (1366), և* զԱտոմ *կրօնաւոր անուամբ և ոչ գործով յիշեսջիք, որ գրեցի զսակաւ լուծմունքս, և զհայրն իմ* զՎարդան *քահանայ, և զմայրն իմ* զԵղիսաբեդ, *և զամենայն արեան մերձաւորսն. և որ զմեզ սրտի մտօք յիշէ, յիշեալ եղիցի յարքայութեան աստուծոյ, ամէն։*

*Ձեռիկս կու մրսէր ի գրե[լն]...։*

* *Ի. համարի տակ բերվող այս հինգ հիշատակագրությունները գրված են 45ա, 68ա, 81ա, 87ա և 257բ էջերի ներքին լուսանցքներում։*

## 579.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

*Երևան 2088*

*Գրիչ՝* Ստեփաննոս Տիրիկեցի
*Վայր՝* Դարանաղեաց գաւառ, Աւագ վանք

*...ՊԺԵ. (1366) Թուաբերութեան Հայկազեան տումարիս աւարտեցաւ աստուածախաւս մատեանս...։*

240ա *...Արդ, ես եղկելի ե ստորասուզեալս* Ստեփաննոս Տիրիկեցի *սուտանուն կրաւնաւոր՝ ստացայ զգրոցս, աստուծով սկսա ե շնորհիւ նորին աւարտեցի ի վայելումն անձին իմոյ և հարազատ եղբաւր իմոյ* Ներսէսի, *ե ի յիշատակ ծնաւղաց մերոց՝* Ստեփաննոս *քահանայի՝ փոխեցելոյն առ Քրիստոս, նաև ամենայն զարմից՝ կենդանեաց և ննջեցելոց...։*

240բ *...Յիշեսջիք և զՆորոգէս կուսակրաւն քահանայ, որ զաւրինակն շնորհ[ե]աց, ի սուրբ աղաւթս ձեր։*

*Գրեցաւ սա ի սուրբ և ի հռչակաւոր անապատիս, որ կոչի* Աւագ վանք, *ընդ հովան[ե]աւ սուրբ Աստուածածնին, և կենսակիր սուրբ Նշանացս, և սրբոց Առաքելոցն, և սրբոյն Ստեփաննոսի, և Կարապետին Յովհաննու, և այլ սրբոց Նշխարացս, որ աստ կան. և է առաջնորդ սուրբ ուխտիս հայր* Կիւրակոսն:

*Արդ, որք դմեդ արժանի առնեն յիշել ի մեղաց թողութիւն և ինքեանք յիշեալ լիցին առաջի անբաւ ողորմութեան գթութեանցն աստուծոյ, ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։*

## 580.

### ԳԱՆՁԱՐԱՆ ԵՒ ՔԱՐՈԶԳԻՐՔ

*Երևան 7853 (տես նաև՝ 1082 թ.)*

*Գրիչ՝* Գրիգորիս
*Վայր՝* Եզնկա

396բ *Շնորհիւ տեառն սկսա և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ մատեանս զայս, որ է բուրաստան և դրախտ աստուածային, դարդարեալ ղանաղան ծաղկաւք։ Գրեցի զսայ ես՝ նուաստս ի քահանայս* Գրիգորիս՝ *անարժան և բազմամեղ և յոյժ մեղաւոր հողս։ Եւ արդ, դրեցաւ սայ ի Հայոց մեծ թուականիս ՊԺԵ. (1366), յամսեանն ապրիլի Ի. (20)։ Բայց գրեցաւ սա յաստուածապահ մայրաքաղաքս* Եզնկա, *ընդ հովանեաւ սուրբ և երկնանման տաճարիս Կաթողիկէի, և սուրբ աջոյս տեառն Ներսեսի,. և այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան։*
397ա *Գրեցի և կազմեցի ը‖ստ իմում կարի, ի խնդրոյ հեզահոգի և սրբամաքուր քահանայի* Ներս[եսի], *որ յոյժ սիրով և մեծաւ յուսով ետ գրել զսայ ի յարդար ընչից իւրոց, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն զարմից՝ կենդանեաց և ննջեցելոց։*

*Այլ և յերես անկեալ ամենեցուն, ես՝ նուաստս* Գրիգորիս, *խնդրեմ յամենեցունց, որ հանդիպիք սմայ, որք էք ի մերում ժամանակի և որք գայք զկնի մեր, յիշել ի տէր զյառաջասացեալ ստացաւղս զ*Ներսէս *քահանայ, ծնողաւք և այլ զարմաւք։ Նայ և զնուաստս ի քահանայս զ*Գրիգորիս *զանպիտան քահանայ և զծնաւղսն իմ և զամենայն ազգայինսն, յիշել ի աէր միով տէր ողորմայիւ, և անմեղադիր լինել խոշորութեան և անյարմար գրոցս, զի այս չափ էր կար մեր. այլ և յիշել զգանձևրուն զրողն զ*Մարկոս *կուսակրաւն քահանայ,* և դուք յիշիք ի տեառնէ, ամէն։***

## 581.

### *ՏՕՆԱԳԱՏԺԱՌ*

*Երևան 2040 (տես նաև՝ 1359 Թ.)*

*Հետ ստացող՝* Յուսիկ

457ա *... Արդ, աղաչեմ զդասս [լուս]երամից մանկունք եկեղեցւոյ կրկին, ո ոք հանդիպեսցի այսմ գրոյ, յիշեցէք զստացող սորին՝ զ*Յուսիկ *աբեղայ, և զծնողսն իւր՝ զ*Պարոնշահն *և զ*Թանխաթունն, *և զեղբայրսն իւր՝ զ*Կիրակոսն *և զ*Շատլոյսն, *և զքուրն իւր զ*Աւագաիկին, *և զհաւրեղբարն՝ զ*Յովհաննէս *կրաւնաւորն, և զ*Վասակն, *և զ*Վահրամշահն, *և զայլ ամենայն արեան մերձաւորսն իւր՝ զփոխեցեալսն ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ՝ զյիշողքդ, յիւր միւսանգամ գալուստն, ամէն։*

*Ստացաւ զսա զ*Յուսիկ *հայրապետն ի Թվ. ՊԺԵ. (1366)։*

---

** Մարկոսը ձեռագրի միայն երկրորդ մասի՝ Քարոզգրքի գրիչն է։*

*** Հիշատակարանը շարունակվում է նաև մյուս՝ 397բ էջում, սակայն բացի ստացող Ներսես քահանայի ազգականների թվարկումից, այնտեղ ուշագրավ այլ բան չկա։*



ՊԺԶ 1367

## 582.

## ՀԱՄԱՌԱՒՏ ԺՈՂՈՎՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ՍՈՒՐԲ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵՍԱՅԵԱՅ, ԳէՈՐԳԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ*

*Երևան 1295*

Հետ. ստացող

197ա *Ի թփաբերութեանս Հայոց ՊԺԶ. (1367)-ն, ի յամսեանն մայիսի Զ. (6) աւրն, ի յաօգմանէ սատանայի արար զաւրաժողովք ամիրայն* Տարսոյ Մինչաք *անուն, ժողովեաց ի Շամբուն հիծելէն քանի որ կարաց, և զուրակիր Թուրքմանն զամէնն, և այլ բազում խարամցիք, և եբեկ ի վերայ աթոռանիս[տ] բերդին* Սըսոյ, *ի հայրապետութեանն տեառն* Մեսրոպա *և ի թագաւորութեանն հայոց երկրորդի* Կոստանդեա, *որդի ի Քրիստոս հանգուցելոյն ամենագովութեանց արժանաւորին, մեծ և հզաւրին և ամենամեծ ջամբլին Հա[յ]ոց պարոն* Հեթմոյ, *և ի գունտուստապլութեանն Հայոց պարոն* Բազունի՝ *պարոն* Լևոնի *պարոն* Բազունենց *որդոյն, և ի յավաք մարաջախտութեանն Հայոց* Լիպարիտ *պարոն* Թորոս *ավաք մարջախտուն որդոյն։*

*Նա ի նոյն թիւս, որ ի վերոյ է (1367), ի Զ. (6)-ն ի մայիսն, ի* յԱնցմնցկին *գիհն բազում հիծման հիծելով և այլ շատ հիտիվաքաւք, որ* ‖ *էին իբրև ԺԲՌ. (12000) մարդ, և այլ ավելի։ Նա յաջողութեամբն Յիսուսի Քրիստոսի ելավ թագաւորն ընդդէմ նորայ՝ հայոց* Կոստանդին. *և դրին կռիվ՝ հողմն կռիվ։ Եւ ի յահէն սուլտանին ոչ եղև հրաման թագաւորին կռվել ընդ նոսայ, և այլ ամենայն բազմութիւնն քաղաքին հեծմանք և հետիվակք ի կիրէին ի բերդն զինչս իւրեանց։ Եւ ի միւս աւրն յղրկեաց դեսպան առ թագաւորն ուզելով հրաման տալոյ, եթէ դամ առաջի քաղաքին ի փուճ, վասն տեսանելոյ զքաղաքն։ Եւ երբ գայր, նայ խափանաւք մտանէր ի քաղաքն ու այրէր. և այսպիսի խաբէութեամբ ուզէր դավաճանել զքաղաքն. և ի միւս աւրն, որ էր ի յամսոյս Ը. (8) աւրն, ի յավուրն կերպ ի շաբաթ, իւր իջվանքն էր ի վերա գետին* Մախքլշա, *նայ ի թող ի տեղն զվրանին քշտած և զիւր մաժառոստունն և զայլ՝ ծանդրոցքն և իառզզաւրքն իւր և եբեկ դէպ* Շապլխերոյն 'քարն, *ու* իբեկ *դէպ ի* Կրտաւնակին քարկիթն *ու ի* Պոլենցածվաքն*(*) | | |***

---

* *Ձեռագրի գրության թվականն անհայտ է, սակայն գրված պետք է լինի ԺԴ. դարի սկզբներին. գրչից պահպանվել է երկու հիշատակագրություն, դրանք են՝ «Զնուաստ գրիչ զՍարգիս աբեղայ աղաչեմ յիշել» (էջ 65 ա), և «Զապաաւոր բանիս Գրիգոր քահանայ աղաչեմ յիշել ի տէր. ևւ ընդ նմին զնուաստ գրիչ զՍարգիս աղաչեմ յիշել ի տէր». (էջ 98բ)*

** *Ձեռագրից թերթ է ընկել. հիշատակարանը մնում է թերի։*

## 583.

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 8308**

*Գրիչ*՝ Գրիգոր Ակներցի
*վայր*՝ Երուսաղէ՞մ

...Արդ, գրեցաւ սայ ի թիւս չափոյ քանակութեան համարոյ յե-
ղանակական շրջանակի հոլովման արուեկի, որ ըստ ընթացման
ամանակի այսմիկ նկատի ՊԺԶ. (1367) ամի յաբեթական տոհմիս
331բ տումարի, ի հայրապետութեան տեառն Մեսրոբայ, ‖ և ի թագաւո-
րութեանն Հայոց Կոստընդնա՝ որդւոյ պարոն Հեթմոյ Ախտուց տէր
կոչեցելոյ, և ի հայրապետութեան տեառն հեզահոգի և ամենայն բա-
րեձևութեամբ զարդարեալ հեղինակիս արհիեպիսկոպոսի, որ այժմ
յաջորդեալ ունի զաթոռ տիեզերալոյս առաքելոյս Յակոբ Ջերեթեան
կոչեցելոյս՝ տէր Գրիգոր Մարգոյս, ձեռամբ մեղսամակուրթ և անար-
ժան յորդիս եկեղեցւոյ Գրիգոր Ակներցոյս, որ զի թէպէտ և ես չէի
լի և պատարուն ի յարուեստ գրչիս, ապա աւրինակս էր լի և ան-
թերի, տի նա և յարուեստ բանի ոչ յաննշան գրչէ, այլ լի և կատա-
րեալ արուեստիւ՝ ի բանս, ի բառս, ի լծորդս, և ի բացատս, և ի տրոհ-
332ա մունս առոգանութեանց։ Եւ յոյժ բա ‖ ղձանաւք, յոքնատոչոր տեն-
չանաւք, ալէտանջ երկաւք, մեծաւ աշխատութեամբ ըստ կարի գծա-
գրեցի զսա ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ։
...Որպէս և բազմերջանիկ և ամենայն առաքինութեամբ զար-
դարեալ, հեզահոգի և խոնարհամիտ կուսակրաւն և պարկեշտ վարիւք
կացեալ քահանայս այս, փակակալ սուրբ տաճարիս, յորում զառա-
332բ ջին պատարագն տեառն եղբաւրն է սստ մատուցեալ ‖ ...Մեծաւ յու-
սով կամեցաւ ստանալ ըղձալիս զայս ի վայելս անձին իւրոյ և յետ
յաստեացս ելանելոյ՝ յիշատակ հոգւոյ իւրոյ և ամենայն զարմից։ Եւ
ի բազում ամաց թախանձէր զիմս անարժանութիւն գրել զաստուա-
ծախաւս տառս զայս ի մխիթարութիւն հոգւոյ և մարմնոյ իւրոյ։
333ա Եւ իմ, զի թէպէտ և անկար գոլով մարմնով և հոգով, ‖ և բազ-
մայդիմի վշտաւք պաշարեալ էաք, ի բանտ և ի կապանս և ամենայն
աւուր առաջի դատաւորաց քարշեալք, այսմ աղագաւ թէ ըզՍկտն-
դըրի* ֆըրանկն էառ, և բազում և անթիւ տաճիկ եսպան, և ըզայրս
և ըզկանայս գերի վարեաց ի Կիպրոս կղզին։ Իսկ վերոգրեալ Աւգրիաս
փակակալս ոչ կասէր ի յուսոյն և առ ոչինչ համարէր զնեղութիւնս
զայս, այլ միշտ ստիպէր ըզմեզ լնուլ ըղփափաք տենչանաց սրտի
նորայ։ Ե[ւ] իմ հարկեալ ի պատկառեցուցիչ հրամանէ փրկչին, որ
ասէ՝ զամենայն ինչ, զոր խնդրէք ոք ի քէն՝ տուր նմայ, ի բաց եդի
զանկարութիւ[ն]ս իմ, գրեցի ըստ կարի իմում զաստուածախաւս և
333բ ըզկենսաւնակ տառս զայս առ դրան տաճարիս և առաքելական ա ‖ թո-

---

* Իմա՝ «զԱղեքսանդրեա»։

ռոյս Յակոբ Ջերեղեան կոչեցելոյս, առ ի յիշատակ հոգւոյ վերո-գըրեալ փակակալիս Անդրիաս կոչեցելոյս և ծնաւղաց իւրոց, հաւրն իւրոյ՝ Աղերսի և մաւրն՝ Տիկնաց տիկնի, որոց տէր ողորմեսցի, նայ և հոգևոր եղբաւրն իւրոյ տէր Սարգսի, այլ և ուսուցչին իւրոյ Աւետիս արեգին, և միւս այլ՝ Սարգիս արեղի, որոց յիշատակք սոցա աւրհնեալ եղիցի, նայ և Յովհաննէս կրաւնաւորի, որ բազում ջանիւ և աշխատութեամբ հանգոյց ըզմեզ, մարմնական պիտոյիւք աւժընդա-կեաց ծերութեանս մերում, զոր տէր հատուսցէ նմա վարձս բարեաց։

Արդ, որք տեսողք և վայելողք լինիք տյսմ աստուածախաւս աւե-տարանիս, յիշեսջիք սրտի մտաւք ըզվերոյգրեալքս, որ կան ի սմին.
334ա և որք յիշէքդ ըզմեզ ի ‖ բարիս և դուք յիշեալ լիջիք յողորմու-թիւնն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 584.

## ԳՐԻԳՈՐԻ ՆԻԽՍԱՑԻՈՑ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑ ԵՐԳՈՑՆ

Երևան 1152

Գրիչ՝ Գրիգոր
վայր՝ Խ[ի]զան քաղաք

136բ Եւ արդ, գրեցաւ աստուածաշունչ տառս ի քաղաքիս, որ կոչի Խզան, ընդ հովանեաւ սուրբ Սարդսի զօրավարին, առ ոտն սուրբ առա-քելոյս Գամաղիէլի։

Ո՜վ առաքելականաշնորհ վարդապետք սուրբ եկեղեցոյ, յորժամ հանդիպիք աստուածաշունչ տառիս կարդալով կամ օրինակելով, յի-շեցէք ի սուրբ և յերկնաթռիչ յաղաւթս ձեր զստացող դրոց՝ զաշխար-հալոյս վարդապետս մեր զՈհաննէս անուն կոչեցեալ, և զծնողսն իւր ըստ մարմնոյ՝ զՓոխանն, և զմայրն՝ զՄեծտիկին՝ զփոխեալսն ի Քրիս-
137ա տոս՝ և ‖ զամենայն արեան մերձաւորս իւր, և աստուած զձեզ յիշէ յիւր առատ ողորմութիւնն, ամէն։ Քանզի ցանկայր ի վաղուց հետէ այսմ աստուածաշուն[չ] տառիս և ետ գրել մեզ, և մեք տկար ան-ձամբ յանձն առաք գիրքս։

Ո՜վ պատուական և աստուածահաճո կրաւնաւորք, աշակերտեալք սուրբ դրոց ընդ աշխարհալոյս վարդապետին մերո, զմեղուցեալ Գրի-գոր սուտանուն քահանայ, և զսոքա՝ զերկու որդիքս իմ՝ զՍտեփան-նոս քահանայ և զՄկրտիչ քահանայ, յիշման արժանի արնել աղաչեմ, և խոշորութեանն գրիս և սղալանաց մի մեղադրել, զի կար մեր այս էր, մեք գրագիր չէաք, լուր վարդապետի սիրտն չկարացաք թողուլ գրեցաք, ապա մեր բան չէր, մարդ զիւր գործն պիտի որ առնէ, որ ամաւթով չլինի։ Գրեցաւ ի թվ. ՊԺԶ. (1367), կարդացողքն և լսողքն և կատարողքն աւրհնին յաստուծոյ և ամենայն սրբոց, ամէն։

585.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

**Փիրղ. 6273, էջ 169 (Վան, Բելու գիւղ)**

Գրիչ՝ Յոհաննէս
վայր՝ Մոկաց աշխարհ, Սարի սուրբ Գէորգայ վանք

*Գրեցաւ աստուածային այս մատեան ի թուին Հայոց ՊԺԶ. (1367), յանապատիս Սարի սուրբ Գէորգայ վանս առձայնելոյ*, ընդ հովանեաւ մօրս լուսոյ սուրբ Աստուածածնին, ի յառաջնորդութեան* Յոհաննէս *և* Գէորգ *կրօնաւորացս, ձեռամբ մեղուցեալ գրչի՝* Յովհաննէս *պիտականուն կրօնաւորի...։ Յիշել [աղաչեմ]* զՅոհաննէս *գրիչ, և* զՍտեփաննոս՝ *զեղբայրն զանդրանիկ, և զհայր՝ տէր* Աստուածատուր *քահանայն, և զեղբայրն նորին* զՄովսէս *կրօնաւորն, և զվարդապետն մեր* Սիմէոն, *և զամենայն կրօնաւորքս սուրբ ուխտիս՝* զՀայրապետն, զՍէթն, զՅոհաննէսն, զԳէորգն, զՆերսէսն, զԹադէոսն, զՍարգիսն, *և* զՍտեփաննոսն, զՎարդան, *և* զԿարապետն, զՅոհաննէսն, *և* զՄարտիրոսն, *և* զՍիմէոն, *և զհանգուցեալսն ի Քրիստոս՝* զԿիրակոս, *և* զԴանիէլ, զԱնդրէաս, *և* զԱկներ։

586.

## Ա ՏՕՆԱԾԱՌՈՒՆՔ

**Երեւան 352**

Գրիչ՝ Գրիգոր Թորոսանց
վայր՝ Սուղտա—Սուրդաք

ա

348ա *Քրիստոս աստուած, քո սուրբ մաւրդ բարեխօսութեամբ ողորմեա* Գրիգորի *անարժան քահանայի, և հօրն իմ* Թորոս *քահանայի, և մօրն իմ, և կենակցին իմոյ։ Եւ զզաւակսն իմ պահեա ընդ հովանեաւ սուրբ աջոյդ՝ պատուիրանապահ լինել քո սուրբ բանիդ աւետարանի, խնդրուածօք սուրբ առաքելոցն քոց, ես սիրեցեալ աշակերտիդ, ամէն։*
*Ի թվ. ՊԺԶ. (1367), ի* Սուղտա *քաղաքի։*

բ

397ա *...Արդ, սմին՝ այս աստուածաշունչ գրոցս, փափագող եղէ եռանդնոտ սիրով, ես՝ անարժան քահանայ* Գրիգոր, *որ և* Թորոսանց, *և իմով ձեռամբ գրեցի զսա ի յիշատակ ինձ, և ծնողացն իմոց՝* Թորոս *քահանայի, և մաւր իմոյ, և զուգակցին իմոյ՝* Շաքար Մելիքին, *և ամե-*

---

* *Փիրղալամյանի ծանոթագրության համաձայն Սարի սուրբ Գեորգի վանքը գտնվում է «ի Մոկաց աշխարհի, մերձ ի Մոկս և Մոկաց Թաղ, առընթեր հսկայ լերին Եղերովայ»։*

նայն արհամարհ մերձաւորաց իմոց։ Արդ, գրեցաւ սա ի Սուրղաթ քաղաքիս, յաշխարհիս Հոնաց, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, ի մարգարէութենէ կենարարին ՌՅՀԴ. (1373) և ի Հայոց մեծի թուականիս ՊԻ. (1371) ամի*, ի վայելումն զաւակին իմոյ Թորոսին։ Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և աւրինակէք, մեղաց թողութիւն խնդրեցէք յանցանաց իմոց և մերոցն ամենայն, և այն, որ առատն է ի տուրս պարգեաց, պարգևեսցէ մեզ և ձեզ զիւր անճառ բարիսն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

587.

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3393 (տես նաև 1309, 1383, 1553 և 1657 թ. թ.)

Հետ. ստացող՝ Տիրացու
վայր՝ Ապահունեաց վանք

ա

119բ Վերըստին ստացայ զաստուածախաւս սուրբ աւետարանս ես՝ նուաստ ծառայս աստուծոյ Տիրացուս՝ որդի Ներսիսին, և կենակից իմ Եղիսաբէթ, դուստր Թադէոս իրիցու։ Գնեցաք ի հալալ արդեանց մերոց և եղաք մեզ յիշատակ և տղային մեր Նասապին՝ գնացելոյն առ Քրիստոս, և եղաք ի սուրբ ուխտն ի վանքն Ապահունեաց՝ ի սուրբն Նիկողայոս, առ գերեզմանին սուրբ վարդապետին Գրիգորի, զոր աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք այսմ հոգելից և աստուածային
120ա մատենիս, զի դուք, || որք էք այժմ ի մերում ժամանակիս և որք գայք զկնի մեր, յիշելոյ արժանի առնէք զմեզ ծնողաւք մերաւք։ Նայ և կրկին աղաչեմ զձեզ դասք քահանայից և եկեղեցականաց, զի յիշէք զպատուելի և զհեզահոգի հայրապետն սուրբ վանացս՝ զհայր Անտոն, զի նորայ յորդորելովն և կամակցութեամբն եղև այս սուրբ աւետարանս վանացս. և որք յիշէ զմեզ միով տէր ողորմայիւ աստուած զինքըն յիշէ ի միւսանգամ գալստեանն իւրոյ, ամէն։

Գրեցաւ գիրս ի Հայոց թվական[ին] ՊԺԶ. (1367), մարտին ԻԲ. (22), զի յայսմ ամի գնեցաք։

Հետ. ստացող՝ Յոհաննէս

բ

258բ Ես՝ Յոհաննէս երէցս, որ գնեցի զսուրբ աւետարանս ի Պետրոս արեղէն և վերըստին դարձուցի ի սուրբ ուխտն՝ ի վանսն, որ կոչի Ապահունեաց, առ դրան սուրբ Աստուածածնիս և սրբոյ Նիկողայոս հայրապետին, և եդի ինձ յիշատակ, և կենակցին իմոյ Աելիմելիքին, և հաւրն իմոյ Տաւնաշին, և մաւրն իմոյ Աւգոցին, և եղբարցն իմոց Առլիպարոնին և Անանին, Նորշին և Շահպարոնին, և զաւակաց նոցին՝ Մուրատին և Իւանէ և Աբիսողոմէ, վկայութեամբ Փքառնու գեղին տանու[տէրացն | | |

* Այդպիսով, ձեռագրի ընդօրինակությունը տևել է չորս տարի (1367-1371 թ. թ.)։

## 588.

### ՃԱՇՈՑ

Երևան 7741 (տես նաև 1360 և 1445 Թ.Թ.)

481ա ...Ըստ բերման յառաջշարժութեան ընթացից լուսոյն մեծի դղալոյ, որ ըստ լրապատարն և լուսակիրն էութեան մղտափարատն նշուլից ակնապարարն ականն արևու ստեղծականն տրուսեկի համբարէ, կուտէ ամաց բազմաց յոլովութիւն շրնչասպառ կենդանանորդ առ ուղղեկան յաւիտենիս՝ վեշտասան յոբելինի և միակ վեշտասանի ամաց շըրջադայութեան յարեգական տումարի (16×50+16+551=1367), ոՑն սատուածասէր և երկիւղած յաստուծոյ Տիրացու անուն, հանդերձ կապակցաւ իւրով, խորհուրդ բարի եղեալ ի մտի ստանալ զանձ պատուական... ընտրեցին մտաւք իւրեանց զայս գեղեցկայարմար գիրս ստանալ...։

Արդ, որք հանդիպիք այսմ բղձալի տառիս, կամ կարդալով, կամ աւրինակ գնելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր բղխերոգըրեալ պարոն Տիրացուն, և իւր որդին պարոն Վարդանեսն, և Մելքիսեթն, Կիրակեն, և Յոհաննեսն, Խուանտ-Մելիքն, Յովաննեսն, Էմին-Մելիքն, Յազիզն, Խաթուն-Մելիքն, Ուլուպեկն, Մարայ-Մելիքն, յՈ[ւ]ստիանեն, զՏիմուրն, զԱմիր-Սարգիսն, զՄաթեոս քահանայն, զՀռիփսիմեն, զՎարդան քահանայն, զԽաս-Մելիքն, զԱստուածատուրն, Դիմաքն, զԽաչատուրն և զամենայն արեան մերձակայս՝ զկենդանիս և զհանգուցեալսն, նաև զվերողըեալ հայրն զպարոն Տիրացուն՝ զողորմածն ասեմ և զաղաւթասէրն, զայցելուն որբոց և տնանկաց, և զաշխատաւորն, որոց ողորմեսցի Քրիստոս և ջնջեսցէ զձեռագիր յանցանաց նորա, և որք յիշէք և թողութիւն մեղաց հայցէք, և ձերն թողցէ Քրիստոս աստուած, ամէն։*

## 589·

### ՔԱՐՈԶԳԻՐՔ ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍԻ

Վիեն. 312. Տաշ. Ցուց. էջ 744

Գրիչ՝ Վասիլ
վայր՝ Ամասիա քաղաք

413ա Աւարտեցաւ քարոզգիրքս յԱմասիա քաղաք, ի դուռն սուրբ Նիկողայոս եկեղեցւոյն, ձեռամբ սուտանուն Վասիլ եպիսկոպոսին, ի վայելումն անձին իմո, յիշատակ ինձ, եւ ծնողաց իմոց՝ Մարտիրոս քահանային եւ Պըապին (*), եւ եղբարցն իմոց, եւ դեռաբոյս հոգեւոր որդոյն իմոյ՝ Սահակ սարկաւագին, զոր տէր աստուած բարով վայելել տացէ ժառանգաւորաց. ի թվին Հայոց Գ· եւ ԺԶ. (1367), ի սեպտեմբեր ամսոյ, ԻԴ. (24), աւրն հինգշաբաթի։

* 481ր էջում գտնվում է նվիրաբերական բովանդակությամբ մի հետաքրքիր ցուցակ, կազմված ՋՂԴ. (1445) թվականին։





## 590.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 162 (Ի վանս Գլակայ սուրբ Կարապետին)*

Գրիչ՝ Դաւիթ Մշեցի
վայր՝ Մուշ

*...Եւ ես՝ նուաստ Մշեցի Դաւիթ երէցս, ի դառն ժամանակիս, որ այլազգիք նեղէին զազգս քրիստոնէից՝ ես առաւել զհռչակաւոր ուխտն՝ սուրբ Կարապետն Տարօնոյ, և նոքա ի չքաւորութենէ բերեալ զրաւ գնէին այլազգեաց. ես յիշեցի թէ, որ ունիցի զաւակ ի Սիոն և յընդանեակ յԵրուսաղէմ, և իմ հալալ արդեանց տուի երկուհարիւր դեկան, և թափեցի զսուրբ աւետարանս, և վերստին դարձուցի ի սուրբ Կարապետ յիշատակ ինձ և նախնեաց իմոց...։*

*Ի թուին Հայոց ՊԺԷ. (1368) էր, որ թափեցի։*

## 591.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. 6273, էջ 163 (Վան, Տիրամայր եկեղեցի)*
*տես նաև 1330 թ.*

*Ի թուականիս Հայոց ՊԺԷ. (1368) ամենայն իրաց առատութիւն էր. բայց Ջարըրն զօրքն չին* ի թողուլ, որ հանգչէաք, սատուած զօրացուցանէ զիւրեանքն ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի։*

## 592.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Բրիտ. թնգ. 14 (Add. 15,411), Կոնիբ. Ցուց. 34 և Փիրղ. 6273, էջ 163 (տես նաև 1321)*

Հետ. ստացող՝ Աչեր և Նազրադին
վայր՝ Աղթամար

91ա *Որք միանգամ յաստուածայնոցն բաղձան, զիղձ սրտիցն հանապազ ի վեր աճեցուցանեն, վասն զի սուրբ լոյս այս բերեալ եղև*

---

* *Իմա՝ «չէին»։*

*ի* Սիւնեաց *գաւառէն յերկիրս* Ըռըշտունեաց, *և անկաւ ի ձեռս աթոռակալին* Աղթամարայ։ *Իսկ աստուածասէր տանուտէրքն* Աչերն *և* Նասրադին *ի խնդիր ելեալ գնեցին սա ի Մ. և Ծ. (250) դ[ահե]կ[ան], զապականացուն տալով ղանանցն ստացան։ Ո՛վ, սրբամիտ հանդիպող սմա, յիշեա ի տէր զպարոն* Ումեկն՝ *զԱչերու հայրն, և զ*Մուրատն՝ *զՆասրադնի* հայրն, զ*Աչերն, *զ*Նարին *(իմա՝ զՆասրադինն), զ*Ամիր Սարգիսն, *զ*Խութլուշէն, *զ*Նաւդուզն, *զ*Այմելիքն, *զ*Խուանդն *և զամենայն արեան մերձաւորք նոցին...։Ի թուին ՊԺԷ. (1368)։***

## 593.

### *ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ*

*Վիեն. 55, Տաշ. Ցուցակ, էջ 259*

*(տես նաև 1631, 1637 և 1666 թ. թ.)*

*Գրիչ՝* Յովհաննէս

*վայր՝* Անի՞

ա

51բ *Զստացաւղ սուրբ գրոցս զարհի եւ զերջանիկ զիտապետն* Բջնոյ *մեծ նահանգին՝ զտէր* Մանուէլ *աղաչեմ յիշել ի տէր։ Ընդ նմին եւ զանպէտ գրիչս զ*Յովհաննէս *եպիսկոպոս* Անոյ *վիճակիս, եւ աստուած զձեզ յիշեսցէ։*

բ

365ա *...Արքեպիսկոպոսն զտէր* Մանուէլ*...հանգերձ հարազատովքն իւրովք՝* Զաքարիայիւ *եւ* Սարգսիւ, *աղաչեմ [յիշել]...։*

գ

465ա *Զեղկելի ծրողս զ*Յով[հաննէս] *եպիսկոպոս* Անոյ *աղաչեմ յիշել ի տէր։*

*Ծաղկող՝* Մելքիսեթեկ

դ

471բ *Որք զմտաց տեսանելիս մաքրեալ ունիք յայսմ աշխարհիս, աչօք նայիք յերեւելիս եւ իմաստիւք յիմանալիս, աստուածաշունչ սուրբ կտակիս եւ հոգելից սորայ բանիս։ Յիշեցէք ի մաքրափայլ եւ յերագրնթաց յաղօթս ձեր զստացօղ գրոցս զտէր* Մանուէլ, *որ ստացաւ զսայ հալալ յարդեանց յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, եւ ի կատարել գրոցս գրելով ինքն փոխեցաւ առ Քրիստոս, եւ մնաց աստուա-*

---

* *Բնագրում՝ «զՆրսխ»։*

** *Թվականը Կոնիբերի Ցուցակից բացակայում է, լրացնում ենք Ղ. Փիրղալեմյանի ժողովածուից (Երևան, № 6273, էջ 163)։*

ծաշունչս ծաղկելի, | | | ի ձեռս անիր | | | *ընտրութեամբն աստուծոյ տէր Յովաննէս, մանուկ գոլով հասակաւ եւ լի ամենայն առաքինութեամբ իբրեւ ջահ անշիջանելի քայլէր ի մէջ եկեղեցոյ։ Սա բաղում աշխատանօք եւ ընչիւք ազատեաց զգիրքս ի ձեռաց անօրինաց եւ ետ ծաղկել զսա։ Որոյ տէր աստուած վայելել տացէ նմա բաղում ժամանակս, եւ զիւր ծնողաց հոգին ի ձեռաց սատանաի ազատէ աստուած, եւ որք յիշէք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ, ամէն։

Նայ եւ զանարժան ծաղկողս Մելքիսեթեկ յիշեցէք աղաչեմ։

Ե

486բ Շարժաւղն էիցս ամենայնի
Նոր պատուիրան ետ հրամանի...
Շարժեալ ի սէր անճառելի,
Տէր Մանուէլ յոյժ նազելի...
Եւ ետ գրել զաստուածաշունչս գովելի,
Եւ ստացաւ իւրն յիշատակ անջնջելի։
Ով, վեհագոյն եղբայրք բարի...
Լերուք եւ ինձ քաղցունք բարի,
Առնել յիշման գիս արժանի,
Զմեղսամակարթս յոյժ եղկելի,
ԶՄելքիսեթեկ վա[տ]թարս, մեղօք ի լի,
Որ եմ ծաղկող այսմ տառի։
Նայ եւս էր թիւն տումարին
Ութհարիւր** Հայկեան ազգին,
Տինայ է տասն*** յաւելուածին,
Այլ եւս եաւթն շաբամանին (1368)։****

## 594.

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 2705 (տես նաև 1600 և 1780 թ.թ.)

Գրիչ՝ Ստեփանոս որդի Նատերի
վայր՝ Ի քաղաքս Կազարիա, որ և Խրիմ առձայնի

486բ ...Արդ, յամենառատ շնորհացն աստուծոյ լցեալ արժանապէս այրն աստուծոյ, սրբազան և առաքինի, վեհիմաստ և հանճարեղ, կորովամիտ և խոհեմիմաց, սրբասէր կրաւնաւոր քահանայն տէր Յովհաննէս, աթոռակալ այցելութեան հիւսիսական աշխարհի, ստացաւ

* Քերված է մի տող։
** Բնագրում՝ «ՊՃ.» (800)։
*** Բնագրում՝ «Ժ.» (10)։
**** Եթե «տասն»-ից առաջ եղող «է»-ն թիւ համարենք, որ քիչ հավանական է, ապա կստանանք ոչ թե 1368, այլ 1375 (800+17+7+551=1375) թվականը։

զգիրքս աստուածաբան մարգարէիցն, և զտասս նորոց կտակարանաց, զքրիստոսախաւս աւետարանութիւնս, և զառաքելոցն սրբոց զգործսն և զքարոզութիւնսն, և զյայտնութիւն ահագին տեսլեան սրբոյ աւետարանչին Յովհաննու ի մի տուփ, շատ ե յոլով ծախիւք, զարդարելով խորհր[դա]կան նկարակերպութեամբ՝ ոսկետզարդ և երանգաներկ
487ա գունովք, ի սփոփանս ‖ և ի զուարճութիւն անձին իւրոյ և յիշատակ ողւոյն առ յապա յաւիտեանս։ Եւ այնչափ ունէր փոյթ յանձն իւր և սէր, և սիրէր յոյժ զբանն աստուծոյ, մինչ զի ոչ տալ քուն աչաց կամ նինջ արտևանաց յընթեռնլոյ զգիրս սուրբս և քննելոյ զխորս խորհրդոցն, որ ծածկեալ են ի նմա։ Որ և շնորհաւքն աստուծոյ հասու եղեալ ամենայն մտաց դրելոց սրբոց անտարակոյս լեզուաւ տայր զլոյս բանին աստուծոյ ի սիրտ և յոգի ունկնդրաց, որ քաղցր թուի ի քիմս իմանալոյն, քան զմեղր բերանոյ, որ և ժողովեալ գրեանս բազում մեկնչաց ի սրբոց հարանց բացայայտեալ զբոլոր աստուածաշունչ գրոց մեկնութիւնս, և զի գրասէր գոլով ստացաւ զամենայն դրեալսն և անյագ փափագմամբ ընթեռնոյր, ուսանէր և ուսուցանէր, ոչ միայն բանիւ, այլ և արդեամբք ի գործ բերեալ արձանացուցանէր զուսեալսն ի գրելոց սրբոց։ Յորում և ընդ բազում աղքինաբարութիւնսն զոր առնէր, արմատացուցեալ կանգնեաց ի վանս իւր և տաճար երկնանման գեղապաճոյճ, կամարաձև, զըմբեթայարկ, սրբագործ վիմաւք, ոսկեզաւծ գեղազանութեամբ, տեղի անտանելոյն և ի հանգիստ անախտ կամացն աստուծոյ և զենարան գառինն անմահի, անուանելով զնա սուրբ Նշան, հինգ խորանաւք, ինն աստիճանաւք յաւրինակ վերնոյն Սիոնի, կարգեալ ի նմա սպասաւորս սրբէանմանս, կուսակրաւնս և սրբամաքուրս, հրեշտակագեղս զուարթապատկեր, անդադար բերանով և անհանգիստ բարբառով սպասաւորելով մշտամռունչ փառաբանութեամբ արարչին ամենայն արարածոց՝ աստուծոյ հաւր և Յիսուսի Քրիստոսի և հոգւոյն ճշմարտի, որում փառք։

Արդ, աղաչեմք զկնի եկեալ մեր եղբարսդ սիրոյն Քրիստոսի, որք պատահիք հոգիաձիր տառիս և հանդիպիք աւգտութեան ինչ իւիք, յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր և յաստուած զարժանին յիշատակի, զերջանիկ կրաւնաւորն զտէր Յովհաննէս՝ ստացաւղ դրոցըս, զի յոյժ աշխատութեամբ և բազում հոգածութեամբ ջանաց յաւարտումն դրոցս, հանելով ինչս բազումս, մինչ յանդ հանեալ աւարտեաց, զոր տէր աստուած վայելել տացէ, ամէն։

Յիշեսջիք և զծնաւղսն նորին, զփոխեալսն առ Քրիստոս՝ զպարոն Պարոնշահն և զՏիկին*, մանաւանդ զհարազատ եղբայր տէր Յովհաննիսի՝ զսիրելին և զհամակ արի զՂազար յիշեսջիք ի Քրիստոս, որ յամս յայս փոխեցաւ առ տէր, թողեալ սուգ մեծ սիրելեաց ազգականաց իւրոց, ևս առաւել եթող տրտմութիւն անմխիթար տէր Յովհաննիսին, զի եղբայր կամարար էր նմա, և յամենայն գործս բարութեան կամակից, իբրև զաւազան յենլի և որպէս ցուպ ի ձեռին, իբր

* Երեք տողի չափ դատարկ է թողնված։

զքաղաք ամուր և որպէս հաստատեալ թագաւորութիւն, և ըստ Դաւթայ՝ վայելուչ էր բնակելն նոցա ի միասին, քանզի և ինքն Ղազար, այր դոլով կատարեալ հաւատով, սիրեաց զմիայնութիւն՝ հետևելով կոչմանն Քրիստոսի, բառնալով յուսն զխաչն տեառն, հոգացեալ զտեառնն միշտ և ոչ զաշխարհի, եղեալ մի ողի միացեալ ի տէր, լիեալ ամաց յիսնից, բարւոք վարուք կեցեալ յաշխարհի, վերափոխեցաւ յանզրանկաց խորանսն երջանիկն ընդ երանելիսն, և թաղեցաւ պատուական մարմին նորա ընդ հովանեաւ նորաշէն սրբոյ տաճարին սուրբ Նշանին, որում և բաղում էր աշխատեալ նոյն ինքն Ղազարն, ի կանգնումն նորին տաճարի։

Հուսկ յետոյ, եթէ ախորժէք, յիշեսջիք ի Քրիստոս և զանպիտան գրիչս զՍտեփանոս քահանայ, որ և ես աշխատեցայ ի սմա, մասն ինչ գրեցի՝ զնսր կտակարանս բովանդակ և զսաղմոսն, բայց ի յայտնութենէն, հրամանաւ տէր Յոհ[անիսի], և կատարեցաւ ձեռամբ բաղ-մամեղիս։

Գրեալ էր հին կտակարանս յաշխարհն Փռանկաց, ձեռամբ աբեղայի միոջ Առաքեալ կոչեցելոյ, ի քաղաքն Պալաւնիա, և կատարեցաւ ձեռամբ Ստեփանոս քահանայի, որդւոյ Նատերի, ի քաղաքս Կազարիա, որ և Խրիմ առձայնի, ի թուականութեանս մերում ՊԺԷ. (1368), յետ երից ամաց անցելոյ առման քաղաքիս, յորում և զկնի եկն սով սաստիկ և սատակեաց անհամար և անթիւ ոգիս, որ և գրելոյ անկար է։*

## 595.

### ԳԻՐՔ ԵԻԹՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏՐՈՍԻ ԱՐԱԳՈՆԱՑԻՈՅ

Երևան 3944

Գրիչ՝ Զաքարիա
վայր՝ Քռնայ

91ր Արդ, գրեցաւ գիրքս այս ձեռամբ Զաքարի ‖ [ի վերի]ն վանքս Քռնա, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածն[ի, ի] վայելումն անձին իմո և մանկանց եկեղեցո, [որ] են ի կարգէս միաբանողաց, ի թվ. մարդեղութեանն Քրիստոսի ՌԳԾ. և ԿԸ. և ի հաոց՝ ՊԺԷ. (1368)։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որ հանդիպիք սմա, յիշման արժանի առնել զանարժանս յամենայնի զֆրա Զաքարիա քարողողս, որ զսակաւ յետի տետրերս գրեցի, և զծնողսն իմ, նախ զհոգևորն՝ զհօրեղբայրն զԱռաքել վարդապետն, որ սնոյցն զիս և ուսոյց, և ապա զմարմնաւորն՝ զհայրն իմ՝ զՏէրտէր, և զմայրն իմ՝ զԱզատ խաթունն, և զամենայն արեան մերձաւորսն։ Այլ և կրկին աղաչեմ, զի յիշեցէք առաջի տեառն զամենայն գովութեանց արժանաւորսն զԳոռնն և զՄարգար

* Ձեռագրում կան բարձրարժեք մանրանկարներ 194ր և այլ էջերում։

էփրաթնիս* սուրբ ուխտիս, որ յոյժ սիրով զմեզ հանգուցին, և յի-շողքդ որով մտօք զմեզ (*), զորոց զտրիտուրն և զաշխատանաց հատու-ցումն Քրիստոս հատուսցէ, ամէն։ Այլ և որք յիշեն [զմե]զ բարի մտօք ինքեանք յիշեալ լիցին ի Քրիստոսէ, ամէն։

596.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5347

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Հ[ի]զան քաղաք

295բ ...Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ անիմաստ և ախ-մար գրչի Ստեփանոսի, յիշատակ կենակցի իմոյ Հերմելէքին, և հաւրն իւրոյ Քուրթամիրին, և մաւրն՝ Տիկին-Մելէքին, և եղբաւրն իւրոյ Պետրոսին։

Եւ արդ, ի յաւարտ սուրբ աւետարանիս, ի հայրապետութեանն Հայոց տեառն Դաւթի, որ ի յայս ամիս փոխեցաւ ի Քրիստոս և սուգ անմխիթար եթող մեզ, զերկնից արքայութիւն տացէ նմա տէր աս-տուած, ամէն։

Դարձեալ, գրեցաւ սուրբ աւետարանս ի քաղաքս, որ կոչի Հզան, առ դրան սուրբ Սարգսի և առ ոտս Գամաղիէլի և սորին սպասաւորի՝ աշխարհալոյս վարդապետիս մերո Յոհաննէսի, և հաստատ պահեսցէ զսա մինչև ի խորին ծերութիւն, ամէն։

Ո՜վ, սուրբ մանկունք եկեղեցւոյ յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր՝ զՏիրուհիին, զհայրն իւր զՔուրթամիրն, և զմայրն իւր զՏիկին-Մելիքն, և զեղբայրն իւր զՊետրոսն, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

Իսկ էր թվականիսն** ի ՊԺԷ. (1368) յորժամ աւարտեցաւ սուրբ աւետարանս։

Ջծովացեալս մեղաւք զՍտեփանոս գծողս յիշեցէք ի տէր։

597.

ԿԱՆՈՆԱԳԻՐՔ

Երևան 659

Գրիչ՝ Մաղաքիա
վայր՝ Կաֆայ

320բ Ի թուիս ՊԺԷ. (1368) յանգ ել[ե]ալ կատարեցաւ քանոնս հաւա-տոյ քրիստոնէից ձեռամբ Մաղաքիա դպրի, յիշատակ իւր և ծնողաց իւրոց՝ Անտոնի, և մաւր իւրոյ Թագուհոյ, և եղբարց իւրոց՝ Սա-հակին և Յակոբին և Մելքիսեդեկի, որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք յաղաւթս ձեր զսոսա և աստուած զձեզ յիշէ, ամէն.

Ի Կաֆայ գրեցաւ զգիրս։

* Իմա «եղբարքս», Լատիներէն Frater—եղբայր բառից։
** Ձեռագրում հապավված է այսպէս՝ «թվկին»։





598.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՑ

Երևան 5883

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Արտամէտ գիւղ

Ա

... Արդ, [ցանկացեալ] այս աւրհնութեանաբեր և հոգեհրաւէր յուսալիր և իմաստապաճոյճ տառիս, ես՝ եղկելի և յոգնամեղս սուտանուն չկրաւնաւոր Ստեփաննոս, սիրայորդոր և ջերմ սրտիւ գրեցի
168ա զսա յիշատակ || ինձ, և ծնաւղաց իմոց՝ հաւրն իմ Կիրակոսի, և մաւրն իմ Մելէքի, և քեռն իմ Գինէի, և ամենայն արեան մերձաւորաց, և այնոցիկ որոյ երախտիք կայ ի վերայ մեր։

Արդ, աղաչեմ զամենեսին, որք հանդիպիք սմայ կարդալով և ուսանելով, յիշեցէք ի տէր աստուած զմեզ և զմերսն ամենայն, և բոլոր սրտիւ աստուած-ողորմի ասացէք, և ողորմածն աստուած ողորմի ձեզ և մեզ և ամենայն հաւատացելոց, ամէն։

Արդ, գրեցաւ հոգելից և աստուածային տառս ընդ հովանեաւ Գէորքա զաւրավարիս, ի գեղջս, որ կոչի Արտամէտ, ի հայրապետութեանն տէր Ներսէսի, ի թվականութեանն հայոց ՊԺԸ. (1369), յունիս ի տասն սկսեալ և ի սեպտեմբեր Լ. (30) աւարտեալ։* Զգիրգս յառաջն ի Վարազ սկսաք ի գրել. իժն անիծեալ և չար թշնամին, որ ի սկզբանէ հակառակ է աստուծոյ, յարուցմունք արար ի վերայ մեր, և յանաւրինաց բռնութենէ խիստ ի նեղութիւն կայեաք, և զամս ողջ ի փախուստ, և հալածական շրջէաք, և հեծելոց շարժմունք ի վերայ երկրի։

Մեք եւաք | | |**

Բ

Գիրգս Ս[խ[իթ]ար վարդապետի աւրինակէն է ընդրգած, աւելին քերած և ստոյգն ի գրած։***

* Ձեռագիրը բաղկացած է 468 թերթից, յուրաքանչյուր թերթի վրա կա շուրջ 750 տառանիշ։ Այսպիսով, 8,8 տպագրական մամուլ ծավալ ունեցող ձեռագրի ընդօրինակությունն ի կատար է ածվել 110 օրում, այլ խոսքով՝ գրիչն ամեն օր, միջին հաշվով, արտագրել է 4,5 թերթ։

** Հիշատակարանից թերթ է ընկել։

*** Գրված է 468բ էջի ստորին լուսանցքում։

## 599.

### Մ Ա Շ Տ Ո Ց

*Փիրղ. 6273, էջ 163—164 (Արապկիր, ի սբ. Աստուածածին եկեղեցի)*

*Վայր՝* Սեբաստիա, խուռուխօն գիւղ

*Օրհնեալ է սուրբ երրորդութիւն, որ հասոյց զնուաստս ի գլուխ գրչութեանս ի թուականութեանս Հայոց ՊԺԸ. (1369), ի հայրապետութեան տեառն* Մեսրոպայ, *և ի թագաւորութեան Հայոց* Կոստանդիանոսի, *և մերոյ առաջնորդիս մայրաքաղաքիս* Սեբաստիոյ՝ *աստուածարեալ ծերունւոյս տէր* Սիմէոնի, *հովուի տրոյ և քաջամարտի և առաքելասարաս, լուսանշոյլ, նաև զսուրբ կրօնաւորքն սրբոյ Նշանին՝* զՅովաննէս *հայրապետն, և* զՆերսէս, *և* զՄարտիրոս, *և* զՎարդան *կրօնաւորքն։ Արդ, աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, որք օրինակէք կամ կարդայք, յիշեսջիք զմեղուցեալքս, և տէր զմեզ յիշէ յիւր արքայութիւն։*

*Գրեցաւ սա ի գեղս, որ կոչի անուն* խուռուխօն, *ընդ հովանեաւ սուրբ Հրեշտակապետ եկեղեցւոյ։*

## 600.

### Մ Ա Շ Տ Ո Ց

*Թորոս Աղբար, Բ. էջ 427 (Տիգրանակերտ)*

*Գրիչ՝* Ստեփաննոս
*վայր՝* յերկիրն Մոկաց, ի վանքն Ծպատ

*Գրեալ յերկիրն* Մոկաց, *ի վանքն* Ծպատ, *ընդ հովանեաւ սուրբ Փրկչին, ձեռամբ* Ստեփանոսի, *ի թվ. ՊԺԸ. (1369)։ Յիշեցէք* զՍարկաւագ *քահանայն...* զՆոր տիկինն... զՏէրանձն... *եւ զմեծարգին եւ զմեծահարկն՝* զՅակոբոս *տիսալարն...* զՄամայ տիկինն, զԱստուածատուր *տիսալարն... եւ զփառաւք ի փառս բարձրացեալ* զԳրիգոր *տիսալար, եւ* զԹագուսկին...։





## 601.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետ. 187 Ցուցակ. Ա. էջ 779—780

Գրիչ՝ Յովաննէս-Ալինախ
վայր՝ Եկեղեաց գաւառ, Թլակ աւան

266բ Ի թուականիս Հայոց ՌԺԹ. (1370), նոյեմբերի ԺԷ. (17) աւարտեալ եղև։ Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ձեռամբ տխմար և անմար գրչի, սուտանուն եպիսկոպոսի Յովաննիսի, որ հոմանուն Ալինախի, Տարաւնոյ սուրբ Կարապետի, ի դառն և չ.հ նեղ ժամանակի, որ նեղեալ է ազգ քրիստոնէի ի յազգէն Իսմայէլի, աւարտ եղեալ այսմ տառի ի դաւառիս Եկեղե[ա]ցի, ի մեծ աւանս, որ Թլակ կոչի։ Ես տարագիր յայս վայր եկի, և էի տգէտ յամենայնի, և ոչ հմուտ այսմ գործի, վասն կարեաց իմ յանձն առի, զի էի աղքատ յամենայնի, վասն այնորիկ զսայ գրեցի, ծաղկով զարդարեցի, և սկսեցի, և կազմեցի։* Դարձեալ յերես անկեալ աղաչեմ զամենեսեան չլինել մեղադիր սխալանացս և խոշորութեանս, զի այս էր կար մեր, զի որք հանդիպիք սմա տեսութեան, կամ աւրինակելով, կամ կարդալով, յիշեսջիք միոյ աստուած-ողորմայիւ զանարժան և զմեղուցեալ զծագրաւղակս զՅովհաննէս եպիսկոպոս Սուրբ Կարապետցիս, ընդ մեզ և զհայրն իմ՝ զպարոն Ներսէս, և զմայրն իմ Մալախաթուն..., դարձեալ կրկին զիս՝ զանպիտան գրիչս զԱլինախ եպիսկոպոս, և զմեր ազգականս՝ զԿարապետս, ընդ նմին զաւժընդակս զսպասաւորս մեր՝ զԻշխանս, զտան սպասաւորս մեր՝ զմզտեսի Յակոբս, և զԿիրակոսս, որ զՅովան գլխոյ Թուխտն ինք կոկեաց՝ կրկին յիշեսջիք...։ Դարձեալ յիշեսջիք զԹադէոս քահանայն, և զորդիքն՝ զսարկաւագներն՝ զԵրեմիայն և զՅոհաննէս, որ հացով և ամէն բարաւք աւգնական եղեն մեզ։ Դարձեալ յիշեսջիք զՅովսէփ աւագերէցն և զորդին՝ զՀայրապետ սարկաւագն։ Դարձեալ յիշեսջիք զպարոն-տէր Աւագն, և զդուստրն զԳոհարխաթունն՝ զմեր ազգականն, որ առաջի տարին ընկալան զմեզ և բազում բարութիւն արարին։ Դարձեալ կրկին յիշեսջիք զհայրն իմ՝ զպարոն Ներսէս և զազգականն իւր զՄեծխաթուն ծերուկն, որ մխիթարէր զմեզ հանապազ։

---

* Մինչև այստեղ հիշատակարանը չափածո է։

** Այս մասը ապված է այսպես՝ «զսպասաւորս մեր, զիշխանս զտան սպասաւորս մեր...» Իհարկե, սպասավորների շարքում գրիչը չէր կարող հիշատակել տեղի իշխանին, անկասկած է, որ նախադասության մեջ «Իշխան»-ը՝ անձնանուն է։

## 602.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԱՄԻԿՈՆԵՆԻ

Երևան 1886

Գրիչ՝ Անտ[ոն]

ա

95ա Ո՛վ գասք լուսերամից, որք աւգտիք կամ աւրինակէք և կամ ըն-
թերցմամբ հանդիպիք, աղաչեմ, աղաչեմ մեղաց թողութիւն խնդրեցէք
Յովանէս սարկ[աւագի] և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, որ
յոգնատենչ փափաքմամբ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց ի յի-
շատակ իւր և ծնողաց իւրոց, նայ և զմեղաւք թաղծեալ և ղանարհեստ
գրչակս զԱնտ[ոն],* և զծնաւղսն իմ, և զամենայն արեան մերձաւորսն,
և զդստրիկն իմ զԵրինան, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս. և որ
զմեզ լի սրտիւ յիշէ և մեղաց թողութիւն խնդրէ՝ ինքն յիշեալ եղիցի
յարքայութիւնն Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ծաղկող՝ Ալինախ

բ

124բ ՋԱլինախ եպիսկոպոս ծաղկաւղակս յիշեցէք ի տէր մի ողորմա-
յիւ, և աստուած զձեզ յիշէ։**

## 603.

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ՃԱՌԻՑ ԳՐԻԳՈՐԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ԱՍԱՑԵԱԼ ԴԱՒԹԻ ՄԵԿՆՉԻ

Վիեն. 336, Տաշ. Ցուց. էջ 757

Գրիչ՝ Սիմէոն

ա

278բ- Փառք... որ ետ կարողութիւն անարժանիս հասանել զրաւ կտա-
-279ա կիս։ Արդ, ես՝... Սիմէոն սպասաւոր բանի, առաջինս ի մեղաւորաց եւ
վերջինս ի կարգ վարժապետաց... գրեցի ի գառն եւ յանանդորր ժա-
մանակիս, որ ոչ գոյր հանգիստ ի տեղի գրելոյ։ Ի թվականի ՊԺԲ.
(1363) սկսայ ի գրել եւ աւարտումն եղեւ ՊԺԹ. (1370)։ Որք ճաշակէք
ի քաղցրահամ պտղոյս աստուածաբանութեանս, որ կա ամբարեալ ի
սմա, յիշեցեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զտառատիպ գծիս՝
զՍիմէոն սպասաւոր բանի, եւ զհարազատ հոգեւոր եղբարքս իմ՝ զՍտե-
փաննոս, զՅոհաննէս եւ զայլս, որ ի գրելն աւգնական եղեն, զՍարգիս,

---

* Գրչի անունը՝ «Անտ[ոն]», լրացնում ենք 121ա էջի հիշատակագրությունից։

** Հիշատակագրության հեղինակ Ալինախ եպիսկոպոսը 1370 թ. ընդօրինակել է Վե-
նետիկի № 187 ավետարանը (տես՝ նախորդ հիշատակարանը)։ Ուստի և սույն անթվական
հիշատակարանը տեղագրում ենք նրան առընթեր։

զԱմիրն, նայ եւ զսրբասնեալ հոգևոր որդեակն մեր զՅովանէս ք[ա]հ[անայն], եւ զՎարդան, եւ զՅոհանննէս, որք բազումս զթացին ի մեզ...։

Բ

53ա ...Ո՜հ, ո՜հ, զղառնութիւնս, որ կրեցաք սուտակասպասաց սուտ եւ սուկ կրաւն[աւ]որաց։

Հետ. ստացող՝ Յովհաննէս

Գ

1ա Ո՜վ սուրբ ընթերցողք, Յովհաննէս կրօնաւորն զիւր փիլոնն ինձ երետ յիշատակ, որ ժամաւք եւ պատարագաւք զինքն յիշատակէաք։ Զղիրքս բերին ի ծախ, ես այլ ոչինչ չունէի, զՅովաննէս կրաւնաւորի փիլոնն տուի գրոցս ի գինն. ով որ ընթեռնու՝ զՅովհաննէս աբեղայն յիշեցէք միշտ եւ հանապազ յաղաւթս ձեր, եւ աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, զիւր անուն գրէ ի կենաց գիրն, ամէն...։ Եւ զՅովհաննէս կրօնաւորն իւր զծնողաւքն հանդերձ, զհայրն իւր Սիոն եւ զմայրն իւր Սիրմայ, որ զգիրքս երեր թեթեւ գնով ինձ երետ. Քրիստոս աստուած զիւր անունն եւ զիւր ծնողացն՝ զՍիոնին եւ զՍիրմին, ի կենաց գիրն գրէ, ամենայն սրբոց բարեխաւսութեամբ...։

Ընդ [սոցա] եւ զիս, զՅովհաննէս վարդապետս, որ ղգիրքս գնեցի, եւ ղիս յիշեցէք յաղաւթս ձեր՝ միշտ եւ հանապազ, եւ աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն, եղիցի, եղիցի։

## 604.

## ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1748

Գրիչ՝ Պաւղոս

Ա

289ա Ի թվ. ՇԺԹ. (1370), Սարգիս երէց, եղբայր Յովանէս վար[դ]ապետի, նեղե[ա]լ յանաւրինաց և յաղքատութիւնն անկեալ, հեռանայր ատար երկիր, և յանկարծ հասանի վախճան մահուան նորա և որդոյն նորա Յովանիսի, որ էր ծաղկեալ երիտասարդական հասակաւն, և ունէր Ա. (1) զաւակ արու՝ երկուամենից։ Արդ, աղաչեմ զամենեսեն, որք հա[ն]դիպիք այսմ տառի, մեղաց թողութիւն խնդրեցէք Սար[գ]իս քահանային և Յովանիսին, որ մինչ առաւա[ւ]տ էր կենացն՝ երեկոյ եղև ամացն։ Եւ զՊաւղոս անպիտանս յիշեցէք, աղաչեմ, և որ յիշէք՝ յիշե[ալ] լիջիք յամենառատ պարգևօքն Յիսուսէ Քրիստոսէ, տեառնէ մերոյ, որում փառք յաւիտեանս, ամէն։

Բ

121բ Տնկիկ Պաւղոս՝ սուտ կրաւնաւոր,
ԶԱրիստոտելի գիրք ծանր ու խոր.
Տառս այս՝ ծաղիկ բազում գունոյ,
Վարդայպետաց է սայ պիտոյ,

Դու փափակիս կաթիլ ջրոյ,
Սա է վտակ հոսան դետոյ,
Եւ դու տկար, որպէս մեղու,
Աստի չկայ ճար ըմպելոյ,
Ես եմ լալի բաղում դիմաւք
Ի բանսարկուէն խոցեալ նետաւք։
Յիշեցէք ի Քրիստոս, աղաչեմ, աղաչեմ։

605.

## ՄԱՍՆ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 150

Գրիչ՝ Մարկոս
վայր՝ Կաֆայ

Աստանաւր կատարեցաւ մատեան[ս], որ կոչի գիրք Պաւղոս առաքեալ, որ ունի անթերի չորեքտասան գլուխ լիակատար՝ ցանկովն
168բ իւրեանց միահամուռ, ի թվաբերութեանս Հայոց ութ հարիւրերոր || դի տասներորդի իններորդի (1370), ի կաթողիկոսութեանն տեառն մերոյ Մեսրովպայ, և այսմ նահանկի դիտաւորութեանն աթոռակալի Յոհաննէս աբեղայի կորովամտի, յոյժ հմուտ աստուածաշունչ մատենից, բնական Սեբաստացի, ձեռամբ նուաստ Մարկոսի փցուն գրչի, ի մայրաքաղաքի, որ Կաֆայ անուն յորջորջի, ընդ հովանեաւ ի յոտս սրբոյն Յակոբի, ամէն։

606.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 3937

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Վան

118ա Սորա օրինակս այս էր կարծեաւք, բայց դու զգուշացիր այլ[ի] լաւ դաանես | | |,* և զմեղապարտս Ստեփանոս վար[դապետ յիշել] աղաչեմ, թվ. ՊԺԹ. (1370),** ի Վան։***

* Մի բառ չի ընթերցվում։
** Թվականը գրված է փակագրով։
*** «Ի Վան» բառը գրված է Մ. Սմբատյանցի կողմից, ինչ տվյալի հիման վրա, չգիտենք։



**ՊԻ** **1371**

## 607.

### ՃԱՇՈՑ

*Երևան 4687 (տես նաև՝ 1317, 1488 և 1514 Թ. Թ.)*

Գրիչ՝ Զաքարայ
վայր՝ Աղթամար

*590բ Եւ արդ, ես՝ ունայնացեալս ի գործառնութենէ կանուխ ժամա-
նելոցն, յոգնամեղս և փցունս ի գրչաց, ծառայ ծառայիցն աստուծոյ,
սուտանուն կր[ւնաւոր] Զաքարայ, յետին և վերջին քան զամենե-
սեան ի յարուեստ գրչութեան, և անիմաստ զոլով... հրամանաւ և քա-
ջալերութեամբ հոգևոր եղբարց մերոց սրբազան կրաւնաւորացս ձեռ-
նարկեցի ի մեծ գործս յայս, և զպակասութիւն և զթերութիւն սուրբ
գրոցս ի կատար և ի յաւարտումն հասուցի ի վայելումն մանկանց
591ա Սիոնի, ի նոյն աստուած ‖ արնակ կղզոջս Աղթամար, ընդ հովանեաւ
սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի դառն և ի վշտաբեր ժամանակիս,
և ի Թուաբերութեանս Հայոց ՊԻ. (1371)։ Եւ արդ, աղաչեմ զձեզ տէ-
րամբ և սիրովն աստուծոյ... յիշման արժանի առնել զմեզ՝ զիս զա-
նարժան գրողս զԶաքարայ, և զծնողսն մեր..., նաև զուսուցիչ մեր և
զսնուցողն՝ զսրբահոգի և զպատուական կրաւնաւորն զԿարապետ՝
զհանգուցեալն ի Քրիստոս...։*

*Ցիշեա Քրիստոս աստուած ողորմութեամբ քով զսրբասնունդ և
զընտրեալ և զերիցս երանեալ կրաւնաւորքս, որ կան այժմ ի դուռն
սուրբ Խաչիս և բազում աշխատութեամբ և տառապանաւք և պան-
դխտութեամբ սպասաւորեն սուրբ եկեղեցոյս, որ ի բազմացն սա-
կաւք են մնացեալ, և են Թուով իբրև ԺԵ. (15), որոց անուանքն են
591բ այսոքիկ՝ առաջին, ‖ տէր Ներսէս կաթողիկոս՝ հեզահոգի և աննենգ
սրտիւ և հոգով, և ազգական նորին տէր Զաքարայ՝ սրբահոգի և առա-
քինի և ժիր քան զամենայն, և պատուական և ծերունի և ալեւք
ծաղկեալ հարքս մեր՝ զԿարապետ կր[ւնաւոր], զՍարգիս, և զՄերուճ,
որ են մեզ խրատատուք և պահապան և քաջալերիչ ի գործս բարիս և
ի վարս առաքինութեան, ընդ նոսին և զմեր ընկերակիցքս՝ զԳրիգոր
և զՍտեփանոս, զԹումայ և զԱստուածատուր, զԿոստանդ և զԽաչիկ,
զԱւետիս և զՏիրացու, և զեղբայրս մեր՝ զԿարապետ քահանայ, որ
աւգնական եղև մեզ և քաջալերիչ։*

*Արդ, սոքա զոր յիշեցաք, որ կան ի դուռն սուրբ Խաչիս, են
անմխիթար և անաւգնական յամենայն կողմանց, ոչ ժողովրդենէ
առնուն և ոչ յայլոց, այլ զեռևս զիւրեանցն այլոց տան, և բազում
աշխատանաւք և չարչարանաւք զհարկաւոր կերակրիկն պատրաստեն,*

և են հնազանդեալ Քրիստոսի քաղցր լծոյն և փոքր բեռան, ընդ որոց
փոխարէն տացես սոցա՝ Քրիստոս աստուած, զքո ողորմութիւնդ և
զանբաւ բարութիւնդ...։
Յիշեցէք զաստուածասէր և զհաւատարիմ տանուտէրքն՝ զՇնո-
ճուոր, զԲաբսեղ և զՏէրպապ ի սուրբ յաղաւթս ձեր, որ անխափան և
592ա անձանձրանալի զան ի դուռն սուրբ եկեղեցոյս և աղաւթք առնեն.
տացէ նոցա տէր վարձս ըստ վաստակոց իւրեանց։ Արդ, ով որ կա-
մակից լինի, որ զայս յիշատակարանս յամէն տարի հետ այլ դրխա-
նուցն կարդան, Քրիստոս աստուած իւր ամէն մեղաց և սխալանաց
թողութիւն շնորհէ, և ով որ հակառակէ՝ ինքն գիտէ ու Քրիստոսի
դատաստանն, բաւ է իմաստուն լսողացդ։

608.

ՃԱՇՈՑ

Երևան 7474

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Սուրխաթ

490բ ...Եւ ես՝ յետնեալ հողս մեղապարտ Ստեփանոս կոչեցեալ, անուամբ
և ոչ գործով երիցութեան, անպարապ անձամբ ձեռնարկեցի սա, հրա-
մանաւ և ծախիւք եղբաւր մերոյ Մարտիրոս քահանայի՝ վեհականի
և ճշմարտի, որ ի կանուխ ժամանակաց հետամուտ եղեալ փափագելի
տենչմամբ իւրով սիրոյ սորայ ետ դրել զսա անպիտան ձեռինս,
ամենայն հոգատարութեամբ, անհանգիստ հողովք երկնեալ ի քառեակ
եղանակս՝ զտիւ և զգիշեր, ամենայն աւգնականութեամբ, ես առաւել
աղաւթիւք և խնդրուածովք վասն առաւել և ջերմն սիրոյն իւրոյ,
մանաւանդ վասն պատուելի երիտասարդական հասակին, զի թերեւս
տեսցէ զկատարումն սորա, ի յիշատակ իւր առ տէր և ի պայծառու-
թիւն սրբոյ եկեղեցւոյ։
Արդ, խնամաւք խնամակալ էին եղև դրաւ սորա ի ժամանակս
յոյժ անբարի, զի վասն ծովացեալ մեղաց իմոց կողմս հիւսւսական
խրատուք չարին ի գումարի գոլով, իշխանք և հազարապետք զմիմ-
եանս սատակեն, կամք մնալով անյիշաչարին և անոխակալին այց առ-
նել համայն իւրայոցս, զի մի գերեալքս և վայրատեալքս ի վայրս
նժդեհութեան կրկին կոգոպ[տ]եսցուք մեղաւք մերովք...։
491ա ...Կատարեցաւ ի թուաբերութեանս Աղքանազեան և Ցաբեգական
տաւմարի ՉԻ. (1371), և ըստ նորում շրջանի ՄՁէ. (287), և ի գա-
լըստենէ կենարարին ՌՅՀԳ. (1373), և յելիցն Ադամայ ի դրախտէն
ՑՁՂՁ. (6796), ի հայրապետութեանն տեառն Մեսրովբայ, և յաթոռա-
կալութեանն տէր Յովհաննիսի իմաստնոյ և խոհեմականի, ի թագա-
ւորութեանն Կոստանդեայ, և յաշխարհակալութիւնն տաճկաց Մամայի,
յաշխարհիս Հոնաց, և ի յերկիր Խրիմի, ի հոյակապ և ի հռչակաւոր
քաղաքիս, որ կոչի Սուրխաթ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և

սրբոյն Սարգսի զաւրավարի, զոր յայսմ ամի վերստին նորոգեցաւ՝ տաճար պայծառ և վայելուչ։

Եւ որ սրտի մտաւք և յաւժարական սիրով յիշեսցէ զյիշատակեալքս ի սմա, յիշեալ լիցի և նա ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։ Եւ որ հաւատով զամէնն ասասցէ, և նմա ողորմեսցի Քրիստոս ի միւսանգամ գալստեան իւրոյ։

Եւ մի ոք անաւաղ շաւշափեսցէ զսա կամ ի գետնի զնիցէ, այլ զգուշութեամբ սպասաւորեսցէ սմա, երկու կամ երիւք գաստառակաւ, զի զգեցուսցէ զնա զգեցուցանաւղն Ադամայ, որում փառք յաւիտեանս, ամէն։

## 609.

### ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ՆԻՒԹԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 7151

Գրիչ՝ Գրիգոր-Խութլուշա [Տաթևացի]

ա

95բ Որ չմոռանաս աղաչեմ զբազմամեղ ծրողս՝ զԳրիգոր սարկաւագ, մականուամբ Խութլուշա կոչեցեալ, աղաչեմ և զբազմերախտ հոգեշահ պարոն՝ զմեծ վարդապետն Յոհաննէս, որդի քաջի Իւանէի՝ Որոտան իշխեցողի, որոյ տէր ողորմեսցի, ամէն։ Խոշորութեան անմեղադիր լերուք, զի կար մեր այդ չափ էր։

բ

93ա Աղաչեմ զձեզ վասն սիրոյն Քրիստոսի,
Զքաջ և զկորովի յիմաստ բանի՝
Զվարդապետն զՅոհաննէս Որոտնեցի՝
Ըզստացող այսմ կրտակի,
Ընդ նմին և զիւրսն ամենայնի,
Յիշատակել աստ յանուանի,
Առաջի զենման գառինն։
Եւ զմեղապարտս յամենայնի,
Զփանաք գրիչ մեղօք ի լի
Յիշման առնէք ասա արժանի,
Զի մեր մեղաց զիրն ջնջի,
Եւ ձեզ ի տեառնէ տացի բարի,
Որչափ մեզ ի ձէնջ շնորհեսցի,
Եւ զՅակոբոս սպասաւոր բանի,
Աշխատողիս՝ Թղթոյս կոկողի,
Յիշել ի տէր առնէք արժանի։

Եւ զուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերմէ, որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 610.

### ԳԻՐՔ ՎԵՑՕՐԵԱՑ ԳՈՐԾՈՑ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆՆ ՑՐԱ ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ

*Երևան 1659*

Գրիչ՝ Գրիգոր-Խութլուշա [Տարևացի]

*Արդ, ո՛վ սուրբ ընթերձողք և ղաղափարողք, որք օգտիք ի սմանէ
բարիական մտօք, զստայսդ գրոցս զժրաջան և զտիեզերալոյս վար-
ժապետն մեծ՝* զՅովհաննէս Որոտնեցի, *յաղաւթս յիշեցէք տոաջի զեն-
350բ մանն || զառինն. և թողութիւն յանցանաց հայցեցէք հանգերձ իւրա-
յոցն...։*

*Աղաչեմ և զայլ ամենայն նրախտաւորքս, որք հանդիպեցան ի
սմայ, առաջին զծագրին՝* Եփրեմ *վարդապետի, որ աշխատեալ եղև ի
սմա հրամանաւ և արդեամբ վեհափառ տեառն իմ վարդապետին* Յո-
հաննէս Որոտնեցոյ, *որոյ յիշատակ սոցին անջնջելի մնասցէ այժմ և
առ[յ]ապայն, և զիս զտրուպ և ղանարհեստ գրիչս՝ զսպասաւոր Նմին,
որոյ հրամանաւ աշխատ եղէ սակաւ մի զառ ի նորոգումն եղծելոցն
ի սմա՝* զԳրիգոր *ս[ար]կ[աւագ] մականուն* Խութլուշա, *և զկազմող սմին,
և զայլ երախտաւորքս յիշել անխարդախ մտօք ի բարի, զոր մ՛եզ ընդ
ձեզ [առ]հասարակ տացէ խնդրողացս և բանայցէ բախողացս զանճառն
իւր խոստումն ստացիչն մեր կրկնակի ի գալստեանն իւրում, որ
ամենակամն է և աննախանձ, և կարող [է] տալ ոչ երկմտելոց զցան-
կալին ի նմանէ, ընդ որում հօր իւրում և հոգոյն սրբոյ վայել է
փառք, իշխանութիւն, պատիւ, այժմ և ի միշտն յաւիտենիս, ամէն։*

*Թվ. ՊԻ. (1371) նորոգեցաւ։*

## 611.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 6036*

Գրիչ՝ Մկրտիչ

232ա *...Յիշեցէք ի մաքրափայլ և յերկնաթռիչ յաղաւթս ձեր* զՄկրտիչ
*քահանայ զփծուն գրիչս, և զորքա՝ Բ. զաւակս իմ՝* զՈվաննէսն *և* Զա-
քարէն, *և զհայրն իմ՝* զԳրիգոր *քահանայ, և զեղբայրն իմ՝* զՍտեփա-
նոս *քահանայ, և աստուած, որ առատ է ի տուրս բարեաց, ձեզ ողոր-
մեսցի յաւուրն դատաստանի, ամէն։*

*Յիշեցէք զհայրն իմ ըստ մարմնոյ* Զաքարէն, *և զմայրն իմ* զԷլ-
խաթունն, *և զոյլ արեան մերձաւորս մեր, և որ զմեզ յիշէ աստուած
զինքն յիշէ, ամէն։ Արդ, գրեցաւ ի թվ. Հայոց ՊԻ. (1371), ի զանու-
թիւն* Ոխսին։

## 612.

## ԱՐԵՏԱՐԱՆ

**Երևան 8772 (տես նաև 1350 և 1391 թ.թ.)**

Հետ. ստացող՝ Սիմէոն

1ր Թվականիս Հայոց յՇ. հարիւր և Ի. չորից (820=1371) ազգն
Պարսից եկեալ զՇերկրի գերեցուցին, զՇանռումանի թալանեցին, զսուրբ
Կարմիր աւետարան գերեցու[ց]ին. թըռաւ ի գերողի զըկէն և անկաւ
ի գետն, մինչև Դ. (4) տարի մարդ չիմացաւ. յետոյ յայտեցաւ երա-
զօք լոյսարարին իւրոյ, և եկաւ լոյսարարն ինձ՝ մեղաւոր տէր Սի-
մէոնիս* ասաց։ Եւ ես ելեալ գնացի յուխտն տէր Ցուսկան որդին,
առայ ը[ղ] Ստեփան[ո]ս** վարդապետ, զՄարտիրոս վարդապետ, զտէր
Թումայն, զտէր Յօվսէփ, զտէր Խաչայտուրն, զըռայէս Գրիգորն, զըռա-
յէս Փանոս, ըռայէս Կարայպետ, և զմեծ ու փոքր ամենեքեան։ Մտանք
յեկեղեցին, աղօթեցաքն մինչև յառաւօտն, պատարագէն ելանք միայ-
րան գնացինք ի յեզր գետոյն, տեսաք նոր հրաշք, որ [ջուրն] ի
մի կողմն քաշեցաւ, գնաց սուրբ աւետարան ի ծերպս վիմին երեւե-
ցաւ., հանինք զսուրբ աւետա[րա]ն. որչափ որ ի մէջ ժողովին հի-
2ա ւանդ [կ]ա կոյր և գիւայհար կայր՝ զամէն ըժըշկեաց. յետոյ երեք տա-
րօվ յետ վերուցի զտունս, և զսուրբ Կարմիր աւետար[ա]ն, փախը-
[տա]կան գնացի դէպ Քաջբերունեաց աշխար[հ]ն։ Քուրդ Իպրահիմ աղայի
աղան, որ ի ծնէ կուր էր՝ լուսաւորեաց, եկեալ հասաք ի գիւղ Մա-
ջար, Մարտիրոս անուն քրիստոնեայ մի կայր, որ նորայ տղայն հինգ
տարու էր՝ կոճղ էր, ծկներ ի փոր էր կպեր, ձեռներ ի սիրտն էր
կպած, երեր առ ոտս սուրբ Կարմիր աւետարանին՝ բժշկեցաւ և ար-
ձակեցաւ ի կապանաց իւրոց, ելիեալ եկաք ի դէպ Արծնու[ն]եաց աշ-
խար[հ]ն, ի գիւղ, որ կոչի Առէն, երկու թուրքի տղայ, մէկ կուր էր՝
լուսաւորեաց, մէկ գիւայհար էր՝ ըըժշկեաց, որ չափ որ յերկիր կոյր
և դիւայհար և ցաւագար կայր, ամէն եկին առ ոտս սուրբ Կարմիր
աւետարանին և ըըժըշկեցան։***

## 613.

## ՃԱՇՈՑ

**Երևան 7449**

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Ղրի՞մ

...Ի թվ. ՊԻ (1371), յապրիլ ԻԱ. (21),

496ր ...Արդ, որք հանդիպիք ի զգալիսս յայս կեանս պիտանի տառիս
ի պատիւ տաւնից տէրունեաց, և կամ հաճոյացեալ արանց կատարել

---

* էջ 17-ում նկարված են «Ստացաւղն Սիմէոն քահանա եւ որդին իւր՝ Աստուածատուր քահանայ» նստած դեմ դիմաց, հետաքրքիր գլխակապերով ու հագուստներով։

** Կարելի է կարդալ նաև «ըղՓեփանոս»։

*** Անշուշտ, ձեռագրի տեր Սիմեոնը, օգտվելով տիրող խավարամտությունից, իր Կարմիր ավետարանով «հրաշքներ» գործելով, նյութական շահ է ունեցել, և նրա շրջագայությունը գավառից-գավառ, ամենայն հավանականությամբ, կատարվել է հենց Կարմիր ավետարանի նյութական «հրաշքներից» շահվելու և ժողովրդին կողոպտելու նպատակով։

զյիշատակ նոցա, յիշեսջիք առ տէր զվերոյգրեալ Եբրաճոսճ, և զա-
մուսինն իւր զԳոճարտիկիճճ, և զերկուսին ծնաւղսն, զփոխեալքն առ
Քրիստոս, զԳրիգորճ և Հաւաճտիկիճ՝ կենակից իւր, և զհարեղբայրքն
Երրանոսին զՍիմէոճ քահանայն, և զՅովճաճճ, զՍտեփաճոս քահանայն,
զԹաղէոսճ, և Մարտիրոսճ, զորզիք Երրանոսին, զփոխեալքն առ Քրիս-
տոս՝ զԽաչատուրճ, զԵղիսաբէթճ, զՀոփսիմէճ, զՄարթաճ, զՀերիքայճ,
և որ են այժմ կենդանի՝ զԾերուճճ և զԳրիգորճ, և զհանգուցեալն ի
Քրիստոս՝ զԽաթուճճ՝ զմայր զաւակացն, և զծնաւղ նորին՝ զՍիմէոճճ,
497ա զԱճպէտճ և զ՚ԲճՃոյշճ՝ ծնաւղք Գոճարտիկճոյ. ‖ Զի յոյժ փափագմամբ
և սիրով ստացաւ. զսա յիշատակ մշտնջենաւոր ի վերինն Երուսաղէմ
և սպանջական ի մայրն ամենից...։

Արդ, որք հանդիպիք սմա ընթերցմամբ կամ ղաղափար դնելով
յիշեսջիք առ Քրիստոս սեռն սիրով ի միտս բարիս ղաշխատեալն ի
սմա՝ զծազկաւղ և շնորհազարդաւղ այսմ աստուածապատում մա-
տենիս զԱւետիս դպիրն՝ զերեւկյի և ականաւոր գրիչն՝ զորդին Նա-
տերի քաջ իմաստասիրին։ Վասն որոյ աղաչեմք զընթերցաւղսդ յի-
շեսջիք և դիս, զոչ արժանիս յիշելոյ ի բարի, զանարժան ծառայս
ծառայիցդ աստուծոյ, զյետնեալս ի յուղիդ և ի ճշմարիտ գրչաց՝
զՅովաճճէս գրիչս, և զծնաւղսն իմ՝ զԱւեախս քահանայն՝ զփոխեալն
առ Քրիստոս. և զԹագուճի՝ մայրն իմ, որ է այժմ կենդանի, և զեր-
497բ կոսեան ‖ կրտսերագոյն դպիրսն՝ զՄկրտիչճ և զԽաչատուրճ, որ աւգնա-
կան եղեն ինձ թուղթ կոկելով։ Եւ որք յիշէք և աղաւթիւք խնդրէք
ի Քրիստոսէ թողութիւն մեղաց զի սմա յիշատակելոցս՝ թողցին և
ձեզ յանցանք ձեր անուամբ նորա, որում փառք յաւիտեանս, ամէն։

614.

ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ

Երևան 62

Գրիչ՝ Ստեփ[աճոս]

վայր՝ Դարաճաղեաց գաւառ, Աւագ աճապատ

323բ ԶՍտեփաճոս գրիչ, անարժանս ի քահանայս, և զծնօղսն իմ յիշես-
ջիք ի Քրիստոս։

...Ի թուաբերութեանն Հայոց ՊԻ. (1371) աւարտեցաւ աստուա-
ծարեալ և հողեպատում սուրբ կտակս ի հռչակօոր Աւագ անապատս,
ձեռամբ Ստեփ[աճոսի] անիմաստ և փցուն գրչի, ի յառաջնորդութեանն
հայր Կիւրակոսի: Արդ, որք հանդիպիք սմա, յիշեսջիք զմեզ յա-
ղօթս ձեր։

## 615.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 5295*

Գրիչ՝ Մաղաքիա
Վայր՝ Կաֆա

199ա ... *Գրեցաւ իմաստութեան մայրս՝ Սաղմանքս Դաւթի փիլիսոփայի և Խորհրդոց գիրքս, ի Թուին ՊԻ. (1371), ի* Կաֆա *քաղաքս, ձեռամբ* Մաղաքիա *դպրի, յիշատակ իւր և ծնողաց իւրոց և եղբարց իւրոց, և որք կարդայք յիշեցէք յաղաւթս ձեր, ամէն։*

## 616.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

*Օքսֆորդ,* Ms. Arm. G. *1, Տիրայր վրդ. 22. Թղթ. 119, էջ 336*

*Ստացող՝* Թադէոս

ա

138բ *Ցամի ՊԻ. Թուականութեանս Հայոց տումարի (1371), ես՝* Թադէոս *քահանայ, և* Արեշաի *միայնակեաց ստացայ զսուրբ գիրքս յիշատակ հոգոց մերոց։ Արդ, աղաչեմք զամենեսեան, որք հանդիպիք սմայ, յիշեսջիք զմեզ՝ զբազմամեղքս՝ զ*Թադէոս *քահանայ, և զծնողսն մեր, և զեղբարս՝ զ*Զաքարիայ, *և զ*Բարսեղ *սարկաւագ, զ*Մելքէսէթ, *և զ*Յովաննէս, *զ*Արեշահ, *զ*Սիրմայ, *և զծնողսն մեր, և զամենայն արեան մերձաւորս և զերախտաւորսն մեր։ Ցիշողքն յիշեալ լիցին առ բարին Քրիստոս։*

Գրիչ՝ Ստեփաննոս

բ

137բ *Զ*Թադէոս *քահանայ՝ զստացող գրոցս, և զծնողս, և զեղբարս, և զամենայն արեան մերձաւորս նորա յիշել ի տէր աղաչեմք։ Եւ զմեղուցեալ գրիչս* Ստեփաննոս: *Գրեցաւ ի Թվ. ՊԻ. (1371), ի փա[ռս] աստուծոյ։*

## 617.

### ԼՈՒԾՄՈՒՆՔ ԳՐՈՑ ԴԻՈՆԻՍԻԱՑ ԱՐԻՈՊԱԳԱՑԻՈՑ

*Երևան 168*

Գրիչ՝ Նախապետ

152բ *...Զցանկացող սորին խրթնահայեաց զննութեանց՝* [Յովհ]աննէս, Վարդան *և* Կիրակոս(*) *աշակերտ, այլ և զաստուածարեալ րաբունապետն զ*Յոհաննէս *յիշման արժանի առնէք, որք հանդիպիք սմա, որ զաւրինակն շնորհեաց, և զհամակրաւն եղբարքս մեր, ընդ որս և զմակաղրաւղս՝* Նախապետ, *և զ*Ակոբ, *[որ] զԹուղթս կոկեաց...։*

*Գրեցաւ ի Թվ. Հայոց ՊԻ. (1371), ձեռամբ մեղապարտ գրչիս, որք հանդիպիք սմա արժանի արարէք զգրող սորա զ*Նախապետ *սարկաւագ, անուամբն՝ ոչ գործով, և աստուած զձեզ յիշէ յաւիտեանս, ամէն։*

## 618.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԱՂՕԹԻՑ

Երևան 8280 (տես նաև՝ 1384 և 1541 Թ.Թ.)

638 ...Գրեցաւ գիրքս ի Թուականութիւնն Հայոց ՊԻ. (1371), ի յիշատակ հոգւոյ իմոյ։ Որք ընթեռնոյք և որք աւրինակէք՝ զուք սրտի մտաւք մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ մեղապարտ հոգոյս, և Ամիրին, և Յակոբին, և Շահպարոնին, և Վասլին, և իւր կենակցին, և Շնովրշային, և Շահենշային, և Գորք մինակեցին. և այլ քրիստոնէից, որ մասնակից են ի պէտսն։

## 619.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 0422

Հետ. ստացող՝ Աստուածատուր

102ա Արդ, ի յայսմ ամի, որ էր Թիւս Հայոց ՊԻ. (1371), ես Աստուածատուր աբեղայ, գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց իմոց, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և ամենայն ազգականաց, և ետու վերստին ծաղկել զսա և կազմել և նորոգել։ Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս՝ զանարժանս զԱստուածատուր կր[աւնաւոր], և զծնաւղքն իմ, և զամենայն արեան մերձաւորքն՝ զկենդանիք և զննջեցեալք, և աստուած զձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Զաքարայ ծաղկող յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, ամէն։



ՊԻԱ 1372

620.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 5557

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Երուսաղէմ

311ա ...Յամի ութհարիւրորդի, քսանեմիերորդի մեծ թուականի մերոյ
(1372), ի հայրապետութեան տեառն Մեսրովպայ, ի թագաւորութեան
Կոստանդեա, և յեպիսկոպոսութեան տէր Գրիգորի Մարգս, նուաստ
ծառայս ծառայից աստուծոյ, բազմամեղ հոգս, որ ամաչեմ կոչիլ ի
բարձրագոյն քահանա[յա]կան անուանէն, զի ի դատապարտութիւն է
ինձ անունդ այդ, զի անարժան և դազիր գործաւք, բազմամեղու-
թեամբ, լալով ասեմ, զանբարկանալին աստուած յոյժ բարկացուցի։
Այլ ես՝ երկրորդ անառակ որդիս՝ Վարդան աբեղայս, որ տարա-
գիր եղէ յիմ հայրենի գաւառէն, որ եմ ի Բաբերթու, ի գեղջէ Երմնոյ
որդի Կիրակոսի, տղահասակ գնացի ի Ղրիմն, ի սուրբ վարդապետ
Աւետիս խոստաճարակն ի մաւտ, յետոյ աշակերտեցայ Պետրոս հայրա-
պետին և պաշտեցի զշարական և զտետր ի վանքն, որ կոչի Ղըզըլտաշ,
և եղա աբեղա, և կեցա Ժ. (10) տարի։ Յետո շինեցաք վանք նոր,
զոր Պետրոսի և Խոճայ Սգզի կոչի, յանուն երաշխաւոր սուրբ Աստուա-
ծածնին՝ խիստ վայելուչ և սիրուն ամենայն իրաւք։
311բ Եւ ես՝ յետինս ‖ կրաւնաւորաց, ալէկոծէի հանապազ վասն
անչափ և զառն մեղաց իմոց, թէ զի՞նչ արարից, զի կենցաղս այս
ունայն է և սնոտի...։ Եւ այլ ճարակ չգտա իմ զառն մեղացն, քան
զսուրբ առաքեալքն. երես գրի, և բազում աշխատութեամբ և նեղու-
թեամբ հասոյց զիս Քրիստոս և աղաւթք սուրբ առաքելոցն ի մեծն
Հռոմ...։ Եւ դարձա ուրախութեամբ ուր նաւահանգիստն էր, և չգտայ
նաւ, որ բերէր յԵրուսաղէմս, և դարձայ ի նոյն ճանապարհն, բազում
աշխատանաւք և նեղութեամբ մարմնոյ հասա ի տունս։ Ուզէի գալ
յԵրուսաղէմս, զմտաւ ածէի թէ զի՞նչ հաճոյ իցէ տեառն իմոյ նուէրք
ի մեղաւորէն։ Յիշեցի զայն, որ ասէ՝ ընկ[ե]այ ի տէր զհոգս քո, և
312ա նա հոգաց և երետ մակազաթ, և գրեցի աւետարան ըստ ‖ կարի
իմում, ի յոտն կալով, բազում ճգնութեամբ և աշխատ[ա]սիրութեամբ,
ոսկի ծաղկով և արծաթապատ բեւեռաւք։ Եւ բերի յԵրուսաղէմս, ի
սուրբ Գողգոթա, ուր Քրիստոս զսուրբ արիւնն իւր վասն մեր եհեղ
և փրկեաց զմեզ։ Եւ ուրախացա, զի արժանացոյց զիս Քրիստոս իւր
սուրբ տեսոյն, և դարձայ ի տունս։ Եւ հանապազ խիղճ մտացս կու-
տանջէր զիս, թէ ո՞ր եկի, զայս ամէն աշխատանք պիտի կորոնեմ։

Դարձեալ ապաւինեցայ ի Քրիստոս, թէ դու հոգւայ զիս, ըստ կամաց քո զգնացս ուղղեա, և երբ զիս յԱրքունտղեմս։ Եւ կայի Ժ. (10) ամ ի սուրբ Յակովբ, դրեցի Ա. ճաշ.ոց Փրկչին և Ա. Գողգոթային. և ծերացա և բթացաւ ամենայն կարողութիւն մարմնոյս։ Եւ զայաք ի սուրբ ծնունդս Քրիստոսի և աւետարան և այլ դիրք գիտոյ լինէր, և չկայր. և իմ դմտաւածի, թէ մեր բարեխաւս և միջնորդ սուրբ Աստուածածինն է, նմա Ա. աւետարան թող գրեմ, որ ինձ բարեխաւսէ

.312բ առ իւր կուսածին աստուածորդին։ Եւ... ‖ սկիզբն արարի այսմ լուսափայլ և կենսակիր աստուածաւանդ սուրբ կտակիս, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, տի նա, և յարուեստ բանի ոչ յաննշան գրչէ, այլ լի և կատարեալ արուեստիւ ի բանս, ի բառս, ի լծորդս և ի բացատս, և ի տրոհմունս առոգանութեանց։ Եւ յոյժ բաղձանաւք և յոքնատոչոր տենչանաւք, ալէտանջ երկաւք, մեծաւ աշխատութեամբ ըստ կարի գծագրեցի զսա ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ և ի յիշատակ հաւրն իմ Կիրակոսի, և մաւրն իմ Թանէրին, և եղբարցն իմ՝ Յակովբին և Աւետեացն և Աւետաբերին՝ կուսակրաւն կրաւնաւորացն, և ամենայն ազգականաց և երախտաւորաց մերոց, և վարդապետացն մեր, և խոստովանորդեցն, և ինձ՝ նուաստ գրչիս Վարդան խարողիս...։

.313ա ...Դարձեալ աղաչեմ զձեզ՝ լուսարար և սպասաւոր եղբայր, վասն Քրիստոսի սիրոյն և յուսոյ արքայութեանն. որ խնամով պահես, և քանի որ ահ լինի և մարդ չկենա, տանիս ի սուրբ Փրկիչն, յեկեղեցապանն ի պահ դնես, երբ ուզենաս՝ առնուս, և աւրհնիս յաստուծոյ և յամենայն սրբոց, ամէն։

621.

ՃԱՇՈՑ

Երևան 7432 (տես նաև 1653 թ.)

Նուիրող՝ Յովհաննէս
վայր՝ Ղրիմ, Շահնշահի գիւղ

378բ Այս գիր հոգևորական հրամանի և հաստատութեան է նուաստ Յովհաննէսի կրօնաւոր քահանայի, ծառայի Յիսուսի Քրիստոսի աստուծոյ մերոյ, շնորհաւք և ողորմութեամբ նորին աթոռակալի Հիւսուսական կողմանց։ Յաղագս որոյ զգիրքս զայս աստուածային, որ է ընթերցմունք սրբազանից գրոց հնոց և նորոց կտակարանաց, յամենայն աւուրս տաւնից տէրունականաց և բնաւից բոլորից սրբոց, ի ձեռն արժանահաւատ և յոլովագոյն վկայից քահանայից և ժողովրդականաց հաստատեալ կարգեցաք ի տաճարի սրբոյն Գէորգեայ արագահաս մարտիրոսի, արի և քաջ նահատակին Քրիստոսի աստուծոյ յուսոյն մերոյ, ի գեաւղ, որ կոչի Շահնշահի, ի գաւառս Ղրիմ քա-

զաքի, յիշատակ անջնջելի առաջի աստուծոյ Վարդանայ քահանայի և ամենայն երախտաւորաց սմին գրոց, որոց անուանքն գրեալ կան յաւարտ սորին գրոց, և որոց ոչ են գրեալ՝ գրեսցին ի գպրութիւն կենաց՝ յերկինս։

Արդ, մի ոք շորթեալ հանցէ զսուրբ գիրքս այս աստուածային ի վերոգրեալ տաճարէս սրբոյն Գէորգեայ քաջ նահատակին Քրիստոսի աստուծոյ, զի մի պատժեսցի յարդարադատէն աստուծոյ և ի սրբոյ նահատակէ նորին Գէորգեայ և յամենայն սրբոց, իսկ կատարուգք հաստատուն և անջրելի գաշանցս ուրհնեսցին յաստուծոյ ամենակալէ...։

Գրեցաւ գիրս յըստ մեզ մարդեզութենէն տեառն մերոյ և փրրկչին Յիսուսի Քրիստոսի ՌՅՀԴ. (1374) թվականին և ըստ Հայոց մեծի թվականին ՊԻԱ. (1372), ի դեկտեմբերի ամսոյ ի ԻԷ. (27)։ Եւ վասն առաւել հաստատութեան նշանեցաք մերով իսկ սովորական ձեռագիր նշանաւս։

| Կնիք* |
|---|

622.

ԱԻԵՏԱՐԱՆ

Երեան 6364

Գրիչ՝ Ստեփաննոս

վայր՝ Դարանաղեաց գաւառ, Աւագ անապատ

330ա ...Արդ, ես՝ նուաստ հողս Ստեփաննոս...շնորհիւն աստուծոյ և ողորմութեամբ նորին գրեցի ըզսուրբ և զկենսունակ աւետարանս ի յիշատակ մեր, և նախնեաց, և ծնաւղաց, և ամենայն երախտաւորաց մերոց, և ի պայծառութիւն սրբոյն եկեղեցւոյ, և ի զուարճութիւն մանկանց նորին։

Գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՊԻԱ. (1372), ի Դարանաղեաց գաւառիս Կամխայ, հանդէպ սրբոյ գերեզմանի լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, ի սուրբ և գերահռչակ անապատս, որ կոչի
330բ Աւագ, ընդ հովանեաւ սրբոց Առաքելոցս, ‖ և սրբուհոյ Աստուածածնին, և Կարապետին Յովհաննու, և բազմահաւաք սուրբ նշխարացս, որ աստ [կան]։

Արդ, աղաչեմ...յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփցուն և զխոշոր գրչակս զՍտեփ[աննոս]...։

Յիշեսջիք և զծնաւղսն մեր՝ զՍտեփաննոս քահանայն և զամենայն ազգատոհմ, որք յուսով առ Քրիստոս են փոխեալ։ Յիշեսջիք

* Բավականին մեծ (5×5 սմ) կնիք է, հավանորեն փայտյա։ Համաձայն հիշատակարանի այն պետք է պատկաներ «Հիւսուսական կողմանց» աթոռակալ Հովհաննիսին, սակայն կնիքը, որի տառերը միաձուլված են միմյանց բարդ փակագրով, դժվարությամբ ու ճիգով միայն կարելի կլինի կարդալ «Յովհաննէս կրաւնաւոր»։

զՆերսէս հարազատ եղբայր մեր։ Յիշեսջիք զճգնազ[դ]եաց, զառաքինասէր հայր Կիւրակոս՝ զառաջնորդ սուրբ ուխտիս. որ բազում բարութեանց առիթ եղև մեզ և բազմաց, որոյ տէր աստուած վարձա-
331ա հատոյց լիցի ի գա ‖ լստեան իւրում։ Յիշեսջիք և զմիաբանութիւն եղբայրութեանս, որ կան աստ առաքինի և սուրբ վարուք...։

## 623.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սեբաստիա, սր. Նշան, 64, ՀԱ. 1926 թ., էջ 44—45

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Դարանաղեաց գաւառ, Աւագ անապատ

602 ...Արդ, ես նուաստ Ստեփանոս...գրեցի զսուրբ եւ զկենսունակ աւետարանս ողորմութեամբ աստուծոյ, ի խնդրոյ հոգեսէր եղբօր մերոյ Ներսիսի՝ հարազատի եւ աստուածասիրի, որ յորդորեաց զմեզ եւ ետ գրել զսա ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց եւ ամենայն նախնեաց։ Եւ գրեցաւ ի թուականութեանս Հայոց ՊԻԱ. (1372), ի սուրբ եւ գերահռչակ անապատս, որ կոչի Աւագ, ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնիս, եւ Կարապետին Յովհաննու, եւ սրբոյն Ստեփանոսի նախավկային, եւ սրբոց Առաքելոցս, եւ բազմահաւաք սուրբ նշխարացս, եւ կենսակիր սուրբ նշանացս, ի Դարանաղեաց գաւառիս Կամխայ*, հանդէպ սրբոյ դերեզմանի լուսաւորչին մերոյ Գրիգորի։

Արդ աղաչեմ զձեզ...յիշեցէք սրտի մտաւք ի մաքրափայլ աղաւթըս ձեր զերկու եղբարքս՝ զՍտեփանոս գրիչ՝ անարժանս ի կրաւնաւորս, եւ զՆերսէս՝ հարազատ եղբայր մեր, հանդերձ ծնաւղովք մերովք եւ ամենայն նախնեաւք եւ հանգուցելովքն առ Քրիստոս։ Յիշեսջիք եւ զառաջնորդ սուրբ ուխտիս զԿիրակոս եւ զայլ միաբանութիւն եղբայրութեանս, որ աստ կան։

## 624.

## ՄԱՇՏՈՑ

Բրիտ. թնգ. 42. (Add. 19,548), Կոնիբ. Ցուց. էջ 89
(տես նաև 1375 թ.)

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Մելիտինէ

19բ Ո՛վ աստուածարեալ արհեպիսկոպոս տէր Յովհաննէս Մելիտինոյ, ընկալ զսակաւ գիրս և յիշեա զանարժան հոգս՝ զՆերսէս աբեղայս. ի թվ. ՊԻԱ. (1372), հոկտեմբեր ԺԹ.(19) աւրն։

* Տպված է՝ «ի զուրս Նազեաց գաւառիս կամ Խայ», անտարակույս, բնագրում պետք է եղած լինի՝ «ի Դարանաղեաց գաւառիս Կամխայ»։





625.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Ճանիկեան, Հնութիւնք Ակնայ, էջ 98—99. և Սրվանձա. Թորոս Աղբար, Ի. էջ 325—327 (Բինկայ գյուղի սբ. Հրեշտակապետաց եկեղեցի)*

Գրիչ՝ Գրիգոր—Խուլքլուշ [Տաքեացի]
վայր՝ Եկեղեաց գաւառ, Լուսաւորչի անապատ

ա

*...Գրեցաւ սուրբ աւետարանս հրամանաւ տիեզերալոյս մեծ րաբունապետին* Յոհաննու* Որոտնեցւոյ, *յաստուածապատ գաւառս* Եկեղեաց, *յանապատիս Լուսաւորչի, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս, զոր շինեալ է նոյն ինքն հայրն մերոյ սրբոյն Գրիգորի։ Որ և ի սմին եղեալ** ձեռնադրութիւն* Առաքելոյ։ *Ի թվականութեան Հայոց Պ.-որդի, Ի.-երրորդի, երկրորդի (1373), ձեռամբ յոգնեղկելի եւ բազմամեղ գրչի* Գրիգորի, *սպասաւորի նմին եւ բանի, մակ՝ ըստ նախնոյն**** Խուլքլուշ, *ի յընտիր աւրինակէ ստուգեալ։ Արդ, աղաչեմ զձեզ սրատասու.աթոր պաղատանաւք, ով մանկունք եկեղեցւոյ, տեարք եւ հանգիպողք, ընթերցողք եւ գաղափարողք, յիշատակել առաջի Քրիստոսի գքաջ ախոյանն և զարի նահատակն* զՅոհաննէս *րաբունին՝ զվարժապետն իմ, հանդերձ ծնողաւք եւ ամենայն զարմաւք իւր, եւ զիս՝ զմեղաւոր աշխատողս, եւ ծնողսն իմ կրկին, զքորս եւ զեղբարս, եւ ասել՝ Քրիստոս որդի, մեզ եւ այլոց աշխատողաց ի սմա, որք ի ծաղկել և ի կազմել [գործակից եղեն]։ Եւ ի Ղուկաս գլխոյն գրեալ եղեւ մինչեւ ՃԿԵ. համարն։ Որ եւ ամենեցուն ձեզ եւ մեզ ողորմեսցի Քրիստոս։*

Բ

*Աստուածաղանից անձանց եւ դասու սրբոց հարց եւ եղբարց եւ որդեկաց, տէրամբ աստուծով աղաչեմ ղպատահեալսդ սմա, եւ որ շահիք ինչ ի սմանէ եւ աւրինակէք, ղի յոյժ ընտիր աւրինակէ գրեցաւ, յիշեցէք սրտի մտաւք ի Քրիստոս 'զտիեզերալոյս րաբունապետ զվարդապետն իմ՝* զՅովհաննէս Որոտնեցին, *հանդերձ ծնողաւք իւրովք, եւ ինձ՝ մեղապարտ աշխատողիս, հանգիստ հայցել, զոր մեզ եւ ձեզ պարգեւեսցէ քրիստոս։*****

* Ճանիկ. «Օհաննու»։
** Ճանիկ. «լեալ»։
*** Ճանիկ. «միակ ըստ նախնեացն»։
**** Գրված է Մատթեոսի ավետարանի վերջում։

Գ

*Բազմաբիծ եւ դատապարտս ոգի* Գրիգոր *սարկաւագ, սպասաւոր բանի, յերեսս անկեալ աղաչեմ զաստուածասէր եւ դրարեմիս ընթերցողդ յամենայն ամի առնել զյիշատակարանս մեր, եւ թողութիւն մեղաց հայցել առաջի զենման դառինն տեառն սորա՝ ժրաջան եւ տիեզերալոյս մեծ րաբունապետին* Յոհաննու Որոտնեցւոյ, *որ եղեւ լուսաւորիչ երկրորդ Հայկազնեան ազգիս, եւ որպէս քաջ ախոյանսն՝* Աստուածաբանն Գրիգոր *եւ զերանելին* Կիւրեղ, *կրթեալ երկամբք ի մամուլս դիտութեան հանճարոյ հերքէր եւ հալածէր ի միջոյ եկեղեցւոյ ուղղափառաց զարիանոսքն, որք են ախթարմայքն, անուամբ քրիստոնեայք եւ ծածուկ ուձտեալքն ի Քրիստոսէ...։**

Դ

*Դարձեալ աղաչեմ [յիշել] ի տէր զբարի եւ զհաւատարիմ, զհեզահոգի եւ զքաղցրաբարբառ սարկաւագն* Նիկալ, *որ ցանկացող եղեալ*** *այսմ աստուածային զանձուս եռափափագ անձնչամբ դցայգ եւ զցերեկ, եւ վաճառեաց զինչս իւր եւ գնեաց զայս պատուական մարգարիտ, եւ եթող յիշատակ յաւիտենական իւր եւ ծնողաց իւրոց, հաւրն՝* Թուխմանուկայ, *եւ մաւրն իւր՝* Մինային***, *եղբարց իւրոց՝* Վասակին *եւ* Մրուանայ, *եւ քերցն իւր՝* Սառային *եւ* Սիրմային...։

*Ո՛վ եղբայր, զյիշատակարանս յետս գրեցի՝* յԵրուսաղէմ *սուրբ քաղաքս, ե կարի արտօրանօք, ի մեծի հինգշաբթւոջ աւուրս։ Վասն ստուգութեան ի տեղիս ի խաչ նշան եմ արարել ի վերայ անց բանի, որ յայլ աւետարանս լինի յայն տեղն գիր աւելորդ, և կամ թէ այս գիրս յայս տեղս պիտոյ է։ Զմաղաղաթս նոյն ինքն մեծ վարդապետն իւր ձեռօքն գործեաց, և մեզ ուսոյց զսոյն արուեստ։*****

## 626.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա, ոբ. Լուսաւորիչ եկեղեցի. Տ.-Ավետիսեան, Ցուցակ, էջ 177—178*

*Գրիչ՝* Բարսեղ
*վայր՝* Եզընկա, ի դուռն Վասկեռաու

294ա ...*Եղև գրաւ գրչութեան սորայ ի թուաբերութեան Հայոց ՊԻԲ. (1373), գըեցաւ տառս...ձեռամբ սուտանուն քահանայի* Բարսեղի, *ի*

---

* *Գրված է Ղուկասի ավետարանի վերջում։*

** *Ճանիկ. «Եղեա»։*

*** *Ճանիկ. «Մենային»։*

**** *Ճանիկյանը բ. և գ. հիշատակագրությունները չի հրատարակել, իսկ դ. հիշատակագրության երկրորդ պարբերությունը («Ո՛վ եղբայր...»), ընդհակառակը, բացակայում է Սրվանձտյանի հրատարակությունից։*

մայրաքաղաքս Եզընկա, ի դուռն Վասկերտու, ընդ հովանեաւ սուրբ Լուսաւորչին ի Հայ։

Արդ, աղաչեմ ձեզ, դասք քահանայից, որք հանդիպիք այսմ աստուածախաւս մատենիս կարդալով կամ տեսանելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զգրող, զծաղկող և զկազմող սորա՝ զԲարսեղ քահանայ, և որ առատն է ի տուրս բարեաց ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։

Ընդ նմին յիշեսջիք զաւակ՚ իմ զՄարգարէ և զզեռաբոյս զաւակն իմ զՆալխաթունն։ Եւ այլ աղաչեմ յիշել ի տէր զամուսին իմ՝ Խաթունն և զիւրն ամենայն, և՛ զկենդանիսն, և՛ զհանգուցեալսն։ Արդ, աղաչեմ յիշել ի տէր և զծնողսն իմ, զհանգուցեալսն ի Քրիստոս զհայրն իմ զՄարգարէ քահանայ, զմայրն իմ զՀարսանեայ խաթուն, և զայլ ամենայն ազգայինսն մեր, որոց ողորմեսցի Քրիստոս աստուած։ Ընդ նմին յիշեցէք զեղբայրն իմ զԱռաքել, և զկենակիցն իւր զԳրոց խաթունն, և զփոխեցեալ եղբայրքն իմ ի Քրիստոս՝ զՄկրտիչն և զԳրիգորն. զոր տէր աստուած հատուսցէ իւրեանց վարձս բարիս, ամէն։

Ընդ նմին յիշեսջիք զՄելիքսէթ սարկաւագն, որ զաւրինակն շնորհեց և աւգնական եղև մեզ ի կոկել Թղթիս, և ծնողսն իւր, զոր տէր աստուած հատուսցէ իւրեանց վարձս բարի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, չլինել մեղադիր խոշորութեան և սխալանաց նորա, զի այլ չէր դրել աւետարան, և վասն այնորիկ գրեցի զսա, զի աւրինակն ազեկ էր և ընդիր։ Նա ես տամահեցա ու գրեցի վասն անձին իմոյ և զաւակաց իմոց, զոր տէր աստուած վայելել տացէ բազում ժամանակաւ, ամէն։

Ընդ նմին յիշեսջիք և զՄարաիրոս քահանայն, որ փափաքանաւք ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ ծնողաց իւրոց։

Յիշեցէք զԹանտիկինն, որ աւգնական եղև յիսուն սպ[ի]տ[ակ] ի կոստղխն, զոր տէր աստուած հատուսցէ իւր վարձս բարի, ամէն։

Յիշեսջիք և զհայր Անտոնն, որ աւգնական եղև Ծ. (50) սպ[իտակ] կոստղխն, զոր տէր աստուած հատուցանէ իւր վարձս բարի, ամէն։ Յիշեսջիք և զՄխիթարն, որ աւգնական եղև Ծ. (50) սպ[իտակ] ի կոճկնին, զոր տէր աստուած հատուսցէ իւր վարձս բարի ի գալստեան իւրում, ամէն։

Ստացող՝ Թադէոս.

Բ

ԶԹադէոս սուտանուն կրօնաւոր յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր, ո՜վ սուրբ ընթերցողք, զի շատ աշխատեցա և ուղղեցի զսա ի ճշմարիտ և յուղիղ աւրինակէ։ Ամենայն արուեստաւոր ի դուրս կանիծեն, և զվատ գրագիրն՝ յեկեղեցին։

## 627.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՏԻԵԶԵՐԱԳԻՏԱԿԱՆ ԳՐՈՑ

Երեւան 2001

Ա. մասի գրիչ՝ Թումայ
վայր՝ Աղթամար

ա

…Զոր տեսեալ զայսպիսի պայծառ ջահս եկեղեցոյ սրբոյ և
93բ զգանձս պատուական եր ‖ ջանիկ և աստուածային ձրիւքն բարդա-
ւաճեալ, հանճարեղ և ուսումնասէր քահանայն Ստեփաննոս, և եա փա-
փաղմամբ գծագրել զսա ի վայելումն անձին իւրոյ ասաի կենացս, և
յիշատակ բարի հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց։ Եւ արդ, ես՝ ունայնս
և թափուրս յամենայն գործոց բարեաց, մեղուցեալ և անարժան ծա-
ռայս ծառայիցդ աստուծոյ, անուամբ միայն աբեղայս Թումայ, ըստ
իմում տկարութեանս յանձն առի և ամենակարող զաւրութեամբն,
աստուծոյ կատարեցի զսա բազում աշխատութեամբ, զոր քաջ իմա-
նան դիտնականքն զաշխատանք սորա, յաստուածախնամ կղզիս Աղ-
թամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և այլ բազմահաւաք սրբոցս, որ
աստ կան հաւաքեալ | | |

Բ. մասի գրիչ՝ Կարապետ

բ

222բ Ցամի ԺԻԲ. (1373) գրեցաւ մեկնիչս տոմարի ձեռամբ մեղաւորի
և անարժան գրչի Կարապետ քահանայի, ի խնդրոյ սրբասէր և կու-
սակրաւն աբեղայի Աստուածատրոյ, ի վայելումն անձին իւրոյ։ Որք
հանդիպիք յիշեցէք ի Քրիստոս զստացողն, և զգրողն, և զաշխատողն,
և աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 628.

### ԱԻԵՏԱՐԱՆ

Վենետ. 142, Ցուց. Ա. էջ 616—618

Գրիչ՝ Թորոս
վայր՝ Ամիթ քաղաք

272ա …Սմին՝ այս աստուածաւանդ սուրբ աւետարանիս, ցանկացող
եղեալ մաքրամիտ և սրբասէր քահանայ Յապտըլ[մսեճ], և ետ դրել
իմոյ ձեռամբ, որ զառածեալ եմ մեղաւք, սոսկանուն քահանայ Թորոս
գրչի. և ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց. ի վայելումն անձին
իւրոյ՝ ի յԱպտըլմսեճ քահանայ և իւր որդոյն, և յիշատակ իւր և
որդւոց իւրոց, և յիշատակ հոգոյ իւրոյ, և իւր որդւոյն Մարտիրոսի, և
ծնաւղաց Ներսիսի։

...Այլ և գրեցաւ սայ յաղնիւ աւրինակէ և յամէնընտիր նաև յարուեստ բանի ոչ աննշան գրէ, այլ լի և կատարել արուեստիւ ի բանս, ի բառս, ի լծորդս, ի բացատս, և ի տրոհմունս առոգանութեանց, ի ուղղութիւն կիտից և ոլորակաց։

...Միջնորդութեամբ կենարար հրաշիւք սուրբ պատարագին յիշեսջիք ի Քրիստոս զստացաւղ սուրբ աւետարանիս զԱս̣աբլմսեռ̂ քահանայ, և ի զիւր որդին՝ զՄարտիրոս, և ծնաւղս. և զմեղապարտ գծողս Թորոս, և զամուսին իմ զՄարբթայն, որ ի տարաժամ մահ փոխեցաւ ի Քրիստոս, և զծնողսն, և զեղբարսն իմ՝ զՍտեփանոս քահանայ և զՅովաննէս, և զամենայն երախտաւորս և զուսուցիչսն իմ, և քեռց իմոց՝ Մանանին...։

Այլ և գրեցաւ սուրբ աւետարանս ի Թուականիս Հայոց ՊԻԲ. (1373), ի քաղաքիս Ամիթ, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգա զաւրավարի, ի Թագաւորութեան Հայոց Կոստընդիանոսի, և ի հայրապետութեան տեառն Կոստանդնայ։ Արդ, որք հանդիպիք սուրբ աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք զստացող սորա, և զծնողսն իւր զԱսիլ և զՍիրմայն, և զիւր տոհմն, և զամենայն մերձաւորսն իւր։ Ընդ նմին և զմեղապարտ գծողս՝ զսուտանուն զԹորոս զագրալի...։

## 629.

### ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 8587 (տես նաև 1662 Թ.)

Գրիչ՝ Գէորգ

ա

Շնորհաւք աջոյն հաւրն անեղի,
Եւ էակցին իւր միածնի,
Եւ սուրբ հոգւոյն իւր փառակցի,
Համայնց սեռից շնորհաբաշխի,
Ի յանկ հանի զայս երկ բանի,
223ա Որ մանրուս ‖ ումն յորջորջի.
Ի հայկազնեա Թուականի,
Ի վեշտասան յիսնից ամի,
Եւ ի նորին գոլ շրջանի
Ի քսաներորդ երկրորդ Թուի (1373),
Ձեռամբ յոգնամեղի,
Որոյ անունս Գէորգ կոչի,
Ի վայելումն հեզաւորի
Եւ սրբամիտ կրաւնաւորի,
Որ և զգիրքս գրեցի,
Որոյ անունն Յակոբ կոչի,
Նաև միւս կրաւնաւորի,
Որ Կարապետ անուն կոչի,

*Որ աւժանդակ մեզ ի բարի*
*Կամաւքն իւրովք յերկրի։*
*Աղաչեմ դհանդիպաւղքդ այսմ դծի,*
223բ *Թէ և յաւրինակ || իսկ հանդիպի,*
*Վերոգրելոց, զոր յիշեցի,*
*Նաև ծնողաց իւր և զորմի,*
*Յիշել մաղթեմ յաւրն վերջի,*
*Յորոց և նոյն ձեզ պարգևի,*
*Ամէն, ամէն և եղիցի։*

Բ.լ.ց.փ.վ.ը.ն.բ.ճ.շ.գ.լ.շ.դ.ց.գ.բ.խ.դ.գ.դ.լ.շ., *որք կարդայք յիշեցէք* ց.վ,ե.կ.շ.բ.կ.ե.մ.խ.* *և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս։*

* *Ծածկագրի վերջին մասը («...յիշեցէք»-ից հետո) փոխարինագիր պարզ ծածկագրով կարդացվում է «գրող սորին», իսկ առաջին մասը մեզ չհաջողվեց վերծանել։*





630.

## ՃԱՇՈՑ

**Երևան 7438**

Գրիչ՝ Մարկոս
վայր՝ Սուրխաթ, Պիչանլիք դղեակ

469ա ...Եւ ես՝ յետնեալ հողս մեղապարտ, ի սրտէ խոցեալս ի սատանայէ Մարկոսս, անպարապ անձամբ ձեռնարկեցի զսա, ոչ վասն մեղ վայել[ել]ոյ, այլ ո և ոք հանդիպի փափագանաւք՝ առնիցէ ծախմամբ, զի յոյժ աղքատ և կարեաց գէմ էաք, սակաւ սակաւ գրեցաք, զկէս սորին ի մայրաքաղաք Կաֆային աստուածապահ, զկնի երեք ամի՝ առ ոտս սուրբ Յակոբի, և զայլ կէս մնացեալն՝ յետոյ կատարեցաք։ Զոր փափագեցաւ փափաքելի անընչմամբ իւրով սիրոյ սորա հեզահոգի աւրինվախ Աստուածատուր, և ետ գրել զսա անպիտան ձեռինս ամենայն հոգաբարձութեամբ, անհանգիստ հոգւովք երկնեալք ի քառեակ եղանակս՝ զտիւ և զգիշեր, ամենայն աւգնականութեամբ. ես առաւել աղաւթիւք և խնդրուածովք. վասն առաւել և ջերմ սիրոյն իւրոյ, զի թերևս տեսցէ զկատարումն սորա, ի յիշատակ իւր առ տէր և ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ։

Արդ, խնամաւք խնամակալին եղև զրաւ սորա, թէպէտ և անագան ի բազում զրաւսանաց աշխարհի, ի ժամանակս յոյժ անբարի, զի վասն ծովացեալ մեղաց իմոց կողմանս Հիւսիսական, խրատաւք չարին ի գումարի զոլով, երիս ամաւք կամք մնալով անյիշաչարին և անոխակալին այց առնել համայն իւրայոցս, զի մի գերեալքս և վարատեալքս ի վայրս նժդեհութեան կրկին կոզոպտեսցուք մեղաւք մերովք։

Այժմ աղաչեմք զամենեսեան զդասս լուսերամից, ո ոք հանդիպիք այսմ աստուածային խրախճանութեան, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զփափագմամբ ստացողն սորա՝ զպատուելի հայրն Աստուածատուրն, և զծնաւղսն իւր՝ զփոխեցեալսն առ Քրիստոս զՄխիթարն և զաւագ տիկինն Պաղի, զաւակաւքն՝ զՏիրատուրն և զխաչատուրըն, և զքեռ իւր Հերազն, և զաւակն իւր զՍիրայն և զՍուրաթն, և զկենակիցն իւր զՀոփսիմէն...:

Նաև, թէ արժանի համարիք, զանարժանս՝ զՄարկոս անիմաստ և ապիկար գրիչս, և զհայրն իմ զՅովանէս, և զմայրն իմ զԹուրվաթդան, և զքուրն իմ զԱննան՝ զփոխեցեալսն ի Քրիստոս աստուած, ցաւակցաբար յիշման՝ ի փառաւոր և ի սոսկալի ատենն, ամէն։

Կատարեցաւ սա մնացելովն կիսաւք, զոր ի վերոյ գրեցաք, ի

469բ *Թուականիս Հայոց ութհարիւրեր<ր>որդի ‖ քսաներորդի երրորդի (1374), մայիս ամսոյ ԼԱ. (31), ի մուտն յունիս, ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *ի եպիսկոպոսութիւն և ի յաթոռակալութեանն տէր* Յոհաննիսի *կրաւնաւորի* Սեբաստացւոյ՝ *կոռովամտի, ի հռչակաւոր քաղաքս կոչեցեալ* Սուրխաթ, *ի գաւառի* Ղրիմ, *ի դղեակս անուն* Պիչանլիք, *որ կան անհաւատ մարդիկք յերիցուէ ի ղատ, առ ատս սուրբ ձողաբարձ կենսակիր խաչին Քրիստոսի. Յիշեսջիք* զՅովաննէս *քահանայ, յոյժ երախտաւորս մեզ ամենայն դիմաւք, և զկենակիցն իւր բարի և ողորմած՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զկենդանի զորդին իւրեանց՝ յիշատակ հոգւոյ և մարմնոյ...։**

## 631.

## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆՔ ԵՐԵՄԻԱՅԻ

*Փիրղ. 6273, էջ 167 (Հայկավանք)*

*Գրիչ՝* Նահապետ

*...Արդ, գրեցաւ սուրբ և աստուածաշունչ մատեանս առ ոտս սուրբ առաքելոյս Գամաղիէլի, ի վայելումն աստուածահաճոյ անձին* Յոհաննէս *վարդապետի... ի դառն և ի վշտաբեր ժամանակիս, որ աշխարհս լի էր տառապանօք՝ երաշտութեամբ, դերութեամբ, թըթրով, մարախով, յորդ անձրևով, մահարերութեամբ, թանկութեամբ և այլ նեղութեամբ, ի թուին ՊԻԳ. (1374)։*

## 632.

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Վասպ. 77, Հայ. Ցուց. սյուն. 143—144 (տես նաև 1304)*

*Հիշ. ստացող՝* Վարդան

*Բաղձանք հոգևորական սիրոյ դերաղանց կոլով քան զամենայն էսս ցանկալիս, մինչ զի որոց առեալ ունիցին զնայ մոռացումն ամենայն մարմնականաց իբրաց առնելով, որում և ես կցորդել, ըստ կարի իմում, ամենաթշուառս ողով* Վարդան, *և կենակիցն իմ* Ոսկի, *յոյժ փափագմամբ ստացաք զամենունակ բշտեմարանս զանձուց աստուածաբան աւետարանիս՝ ի փրկութիւն անձանց մերոց և յիշատակ հոգոյ յետ աստեացս ելանելոյ՝ մեզ, և ծնողաց մերոց, և եղբարց, և ազգականաց մերոց՝ հոգևորաց և մարմնաւորաց։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ աւետարանիս, յիշեսջիք զմեզ յաղաւթս ձեր, և* զՎարդան, *և զկենակից իւր՝* զՈսկի՝ *և զամենայն արեան մերձաւորսն։ Եւ սրտի մտօք խնդրեցէք յաստուծոյ մեղաց թողութիւն գնողացն և գրողաց՝* Վարդանայ *և* | | | *և* Զաքարիայի *կազմողի,* Սարգիս *և* | | | *անհայի, յոյժ աշխատողի,*

*) *Շարունակությունն անարժեք է։*

և բազմամեղ Ստեփաննոսի, որ զսակաւ յիշատակարանս գրեցի։ Եւ աստուած առհասարակ ողորմեսցի. Նմա փառք յաւիտեան. ՊԻԳ. (1374) Թվ[ականին]։

## 633.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, 7874 (տես նաև 1457 Թ.)

Գրիչ՝ Մկրտիչ

...Արդ, ես՝ նուաստս յամենայնի Անտոն երէց, ծրագրեցի զսա
266բ ...ի վայելումն հաւատաց || ելոց ի Քրիստոս աստուած մեր։

Արդ. գրեցաւ սա ի թուաքերութեանս Հայոց ՊԻԳ. (1374), ձեռամբ սուտանուն դրչի Անտոն քահանայի, ի խնդրոյ սրբասնեալ և հեզահոգի, ամենայն իմաստութեամբ առլցեալ քահանային Գրիգորի, և որդւոյ նորա Միքայէլ քահանայի, և զաւակաց իւրոց՝ Անանիայի և Ամիր-Մելիքի, և կենակցին իւրոյ՝ Եղիսաբեթի, և Տամու[րի], և խուանդ
267ա խաթունին...* || ... և զսուտանուն արեղայս Մկրտիչս, որ զյիշատակարանս գրեցի...։

## 634.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Bibl. Nation. 132. Մակլեր. Ցուց. էջ 72

... [Գրեցաւ] ի գաւառիս, ի լեառնս Սեհոնի, յերկրին Ամուրհացւոց, ի դեաւղս, որ կոչի Մասարաբ, ընդ հովանեաւ սուրբ Յոհաննէսի։**

* Շատ բառեր եղծված-քերված են, և վերականգնվում են մեծ ճիգով։ Շարունակությունը, ուր հիշվում են ստացողի ազգականներից շատ ուրիշները, ավելորդ ենք համարում մեջ բերել։

** Գրիչն է «Կարապետ կրօնաւոր», հիշատակարանը գրվել է ՊԻԳ. (1374) թվականին։





## 635.

### ԱՆՍԻԶՔ ԱՆՏԻՈՔԱՑ ԵՒ ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՍՄԲԱՏԱՅ

*Մատենադարան հայկ. թարգմ. էջ 308, և Վիեն. 439. Տաշ. Ցուց. էջ 966 (տես նաև 1331 թ.)*

Գրիչ՝ Զաքարէ
վայր՝ Սիս

*Ի մեծ թուիս Հայոց, ի դառն եւ ի նեղ ժամանակիս, ՊԻԴ. (1375), յորում ամի առաւ քաղաքն Սիս, եւ ես նուաստ եւ սուտանուն եպիսկոպոս Զաքարէ պատահեցայ անդ. բայց եւ զողորմագին բանս, զոր ետես ակն իմ, ո՞ կարէ պատմել գրով, զի տեսի զակունք պայծառ եւ զարեգակունք, զաստեղս եւ զլուսինս, զի կային* անկեալ ափի։*

## 636.

### Մ Ա Շ Տ Ո Ց

*Բրիտ. Թնգ. 42. (Add. 19,548) Կոնիբ. Ցուց. էջ 89 (տես նաև 1372 թ.)*

Վայր՝ Կիլիկիա

26բ *Ի թվականին ՊԻԴ. (1375) էառ Յաշէխ Թամուրն զթագաւորական քաղաքն զՍիս և եղև սուգ մեծ։ Ի սոյն ամի եղև սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս, և եղաւ չափ մի ց[ո]ր[ենոյ] Ճ. (100) դր[ամ] տահիրի։*

## 637.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

*Երևան 1571*

Գրիչ՝ Վարդան
վայր՝ Գողթան գաւառ, Ագուլիս

285ա *Արդ, աղաչեմք զամենեսեանդ, որք հանդիպիք այս աստուածախաւս կտակարանիս... յիշեսջիք ի սուրբ սրտէ և ի բարի կամաց զստացող սուրբ տառիս՝ աստուածական, զերջանիկ Թովմա կրաւնաւոր քահանայն, և զհայրն իւր զՅակոբ քահանայն, և զմայրն իւր Աւագունին, և զքոյրն իւր զԵղիսաբեթ և զՄարթայ, և զայլ ամենայն արեան մերձաւորսն իւր, և զՅովաննէս փիլիսոփայն, և զհայրն, և զմայրն իւր, և զՅակոբ վարդապետն, և զՍտեփաննոս կրաւնաւոր քա-*
285բ *հանայն, որ դաւրինակն շնորհեցին, ¦ տէր աստուած շնորհեսցէ նոցա զերկնից արքայութիւնն, ամէն։*

* Տաշ. Ցուց. «զային»։

*Եւ դիս՝ զանարժան զծոյս զՎարդան՝ և զհայրն իմ զԹագորն, և զմայրն իմ, և զհօղեւոր հայրն իմ և զվարպետն՝ զՅովճաննէս կրաւնաւոր քահանայն, և զայլ երախտաւորն իմ յիշեցէք ի Քրիստոս, և յիշողքդ յիշեալ լիջիք յանյիշաչար տեառնէ մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն և յամենայն ժամ։*

*Եւս յիշեցէք զդծոյս և զկազմողս զՎարդան, որ խիստ նեղացա ի գրելն։ Ո՜վ երկեղալի և քաջահաւատ, խոշորութեան գրիտ և սխալանաց, աղաչեմ, անմեղադիր լեր, քանզի միտքս էր մոլորեալ ի ունայնս աշխարհի, և ես յոյժ նեղեալ կաի, յորժամ զմին գիրն հանէի միտս հազար բան անզանէր, գրիչն թափուր ի վայր ձնայր։*

*Գրեցաւ տառս աստուածային ընդ հովանեաւ սուրբ Թումաիս, որ է ի վանսն յԱգուլիս, ընդ իշխանութեան տէր Զաքարիաին, որ հայրապետ է Գողթ[ան] գաւառին։ Ի հայոց թուականին ՊԻԴ. կատարեցաւ սուրբ տառս՝ ՊԻԴ. (1375)։*

## 638.

## *ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆՔ*

*Վիեն. 203, Տաշ. Ցուց. էջ 721 (տես նաև 1350)*

*Գրիչ՝* ֆրա Ցակոբ
*վայր՝* Ղրի՞մ

*Ցամի ծննդեան տեառն և փրկչին ՌՑՀԷ. (1377),* եւ ի յամսեան սեպտեմբերին, կատարեցաւ շինուածս Սուրբ Խաչ, ի տօնի վիճիլին. ֆրա Յակոբ աղքատ հոգին, ի միաբանողաց եղբարց կարգին, ձեռնտուութեամբ եղբարց կարգին, շինեցի զսեղանատունս եւ զտօրմիթօրս վասն միաբանողաց եղբարցս կարգին։ Նաեւ զքան շինութիւնս զայս ԺԷ. (17) ամաւ յառաջ, զոր եւ շինել էի զեկեղեցին ի պատիւ սուրբ Նիկօլաոսի սքանչելագործ հայրապետին։*

*Ո՜վ եղբարք իմաստ բանին, ի ձէնջ հայցեմք ողորմութիւն, ինձ խնդրեցէք զթողութիւն...։***

## 639.

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 7547*

*Գրիչ՝* Ստեփանոս Սեւագլխոնց
*վայր՝* Սուրխաթ

267բ *...Արդ, այսմ աստուածապատում և Քրիստոսաւանդ տառիս ցանկացաւղ եղեալ ամենայն պարկեշտութեամբ զարդարեալն, համեստ և իմաստուն աղախինն Քրիստոսի՝ տիկինն* Շնոֆոր, *հանդերձ աստուա-*

** Հիշատակարանի գրության իրական տարեթիվը պետք է համարել 1376, որովհետև, ինչպես նշել ենք արդեն, ԺԴ. դարում գործածվող փրկչական թվականը մեծ մասամբ երկու տարով առաջ է ընկնում այժմ գործածվող թվականից (տե՛ս, օրինակ, հաջորդ հիշատակարանը)։*

*** Հիշատակարանը գրված է անկանոն ոտանավորով։*

ծաղաշտ և երկիւղած արամրն իւրով, որոյ անուն Իշխան յորջորջի, եառւն գրել զսա ինձ՝ մեղապարտ և անարժան գրչի Ստեփանոսի, ի յիշատակ հոգւոց իւրեանց և ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ։ Ի Թուաբերութեանս Ասքանազեան և Յաբեդական տաւմարի ի ՊԻԴ. (1375), և ըստ Նորում շրջանի ի ՄՂԱ. (201), և ի գալստենէ կենարարին ՌՅՀԷ. (1377), և յելիցն Ադամայ ի դրախտէն ՑՊ. (6800). ի հայրապետութեանն տեառն Կոստանդեայ, և ի թագաւորութեանն Լեւոնի, և յաթոռակալութեանն ամենայն Հիւսւսական կողմանց Յովաննէսի Սեբաստացւոյ, հանճարեղ և իմաստուն հռետորի։

268ա Բայց գրեցաւ սա յաշխարհիս Հոնաց և յերկիր Խը II բիմի, ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքիս, որ կոչի Սուրխաթ, ի Հողետներս վերի, առ ոտն սուրբ Աստուածածնին, և սրբոյն Սարգսի դաւրավարի, և այլ բազմահաւաք սրբոց։ Այժմ, աղաչեմ զամենեսեան զդասս լուսերամից, որք հանդիպիք այսմ աստուածային խրախճանութեան, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր զփափագմամբ ստացւող սորա՝ զվերոյգրեալ տիկինն զՇնոֆորն, և զզուգակիցն իւր զպարոն Իշխանն, և յերկոցունց կողմանց զծնաւղս նոցա՝ զՄանուկն և զԳոճար տիկինն, և զՄանուկլն և զՄինատիկինն, և զեղբարս նոցա զԳիշուկն, և զԲուզխաթունն, զՅովճաննէսն, և զՀեդօն, և զՏատուրն, նաև զամենայն արեան մերձակայս նոցին՝ զարս և զկանայս, զծերս և զտղայս, զկենդանիս և զհանգուցեալս զպատուեալս և զզանցարարեալս։ Նաև, թէ արժանի համարիք, զանարժան զծաւղս՝ զՍտեփանոս մականուն Սեւագըլխոնց, զմեղապարտ ծառայ ծառայից աստուծոյ, և զծնաւղս իմ, ցաւակցաբար յիշման ի փառաւոր և ի սոսկալի ատեանն։ Եւ որ սրտի մտաւք և յաւժարական սիրով յիշեսցէ զյիշատակեալքս ի սմա, յիշեալ լիցի և նա ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտ[եանս]։ Եւ որ հաւատով զամէնն ասասցէ, նմա ողորմեսցի Քրիստոս ի միւսանգամ գալստեան իւրոյ, ամէն։

## 640.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեն. 59, Տաշ. Ցուց. էջ 277 (տես նաև 1520 և 1587 թ.թ.)

Հետ. ստացող՝ Գրիգոր

301ա ...Սայ փափագեցաւ եւ գնեաց զաւետարանս յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, հաւրն իւրոյ Նորճատին, մաւրն իւրոյ՝ Դիմաթին, ի վայելումն Գրիգոր քահանային, որ գնեաց զսայ ի հալալ արդեանց իւր, ի յիշատակ իւր եւ ծնողաց իւր, եւ ամուսնոյն իւր Մարքայխաթունին. որք կարդաք կամ աւրինակէք, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր ղերախտաւորք մատենիս Սիրատանն, եւ զկենակիցն իւր զՀերազանդն, զԱւաք պարոն, եւ զխորիմշան, եւ զկենակից իւր զՄամուշն, եւ զորդին իւր զԴաւիթն, եւ զԼալխաթունն, եւ զՄխիթար քա-

հանան. եւ զամուսինն իւր զՎարդխտիկինն, եւ զորդին իւր զԿարապետն, եւ զամենայն արեան մերձաւորս, յիշեսջիք առաջի զենմանն Քրիստոսի։

Արդ, գնեցաք զսայ ի թվականութեանն Հայոց ՊԻԴ. (1375), փետրվարի Զ. (6), յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց, ամէն։

Յիշեսջիք զՅակոբն եւ զկենակիցն իւր զՄարթայ խաթունն ի սուրբ աղաւթքդ ձեր։

## 641.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9222,գ

Արդ, անկեալ աղաչեմ | | | ուխտի մանկուն եկեղեցոյ սրբոյ | | | ււր]ինակէք յիշեցէք ի Քրիստոս ըղհողևոր...տիկին զՀազարշէն | | |, որ գնեց զսա | | | ի հալալ արդեանց իւրոց և ետ | | | ի սուրբ դուռն Աստուածածնին յիշատակ | | | ը]արի ծնողացն և զաւակացն և ազգ[այնոց]. լսելով սորայ զերանաւէտ բարբառ[ն]՝ որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանիկք, [դար]ձեալ աղաչեմ յիշեցէք ի Քրիստոս զպատու[ական պ:ետն ըղտէր Ներսէս, որ պատճառ և ա[ռիթ եղև սուրբ աւետ]արանիս, և էառ՝ եդ զսա ի դուռն | | | որ հանապազ ի տեղս կենայ, ոչ ոք | | | հեռացու]ցանել զսա ի դրանէ սուրբ Աստուածածնիս | | |

Թվ. ՊԻԴ. (1375), ի քաղա[քս | | | *

## 642.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5317 (տես նաև 1626)

291ա | | | Գերեզ]մանէն սուրբ վարդապետին Գրիգորի, կամ ծախելով կամ գրաւելով, ոչ յիմոց և ոչ յաւտարաց. և որ յանդգնի և ծախէ՝ մասն զաստուածավաճառին առցէ՝ զՈւդային և զխաչհանուացն և զայլոցն։ Ի թվ. ՊԻԴ.(1375)։

---

* Պահպանվել է հիշատակարանի միայն ձախ եզրը։





643.

ԱՒԵՏԱՐԱՆ

*Փիրղ. C273, էջ 167—166 (Կտուց անապատ)*

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ յերկիրն Մոկաց, ի գիւղն Նանենց

*...Ես՝ Մխիթար սուտանուն քահանայ, գրեցի զսա յընտիր օրինակէ, ի թուականութեանս Հայոց ՊԻԵ. (1376), յերկիրն Մոկաց, ի գիւղն, որ կոչի Նանենց, ընդ հովանեաւ սուրբ Սարգիս զօրավարին, ի չարն և ի նեղ ժամանակիս, որ այլազգիք զօրացեալ են ի վերայ մեզ, վասն ծովացեալ մեղաց մերոց, զոր աէր·աստուած պահեսցէ զազգս Հայոց։*

644.

ԳԻՐՔ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆՑ

*Ալիշան, Սիսական, էջ 220*

Գրիչ՝ Մելքիսեդ
վայր՝ Որոտան

*[Աւարտեցաւ գիրս] ի դառնութեան ժամանակիս...բարեբարն աստուած լոյս ծագեաց մթացեալ և խաւարեալ ազգիս՝ զմեծ վարդապետն մանկանց Սիոնի...ղրաբունապետն վարդապետաց, զՅովհաննէս վարդապետ Որոտնեցի, որդի Իւանէի, որ վերստին զարդարեաց դեկեղեցի, և սնուցանէր զմանկունս Սիոնի, ջամբելով զկերակուրն կենաց հոգւոց և զհանգիստ մարմնաւոր պիտոյից, զյրուեալսն ի բազում թշուառութեանց՝ ի մի ժողովէր, և աներկիւղ պահէր ի դէմս ամենայն պակասութեանց հոգւոյ և մարմնոյ։**

645.

ՄԱՇՏՈՑ

*Երևան 6954 (տես նաև 1563 թ.)*

Գրիչ՝ Արիստակէս

*Արդ, գրեցաւ գիրքս այս աւրհնաբանի թուականիս Հայոց ||*
253ա ՊԻԵ. (1376), ձեռամբ անիմաստ գրչի սուտ Արիստակիսի, ի վայելումն սրբասնեալ եպիսկոպոսին տէր | | |**

* Ալիշանի տված ծանոթության համաձայն սույն ձեռագրի ընդօրինակությունն սկսվել է Որոտանում և ավարտվել Տաթևում՝ 1376 թվականին։

** Անունը քերված է։

646.

## ՔԱՐՈԶԱԳԻՐՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

Երևան 8029 (տես նաև 1336 թ.)

Հետ. ստացող՝ Ասլան Կաֆացի

34ա Դերձակ* Ասլան Կաֆացի,
Որ ի Գոռել Մանար գնացի
Զաս Վարդան գիրքս գնեցի,
Տիեզերայոյս վարդապետի,
Զինչ որ կարդայք ի ստենի,
Ի ժամայտուն, եկեղեցի,
Զծնողս յիշեցէք վասն Քրիստոսի,
Քրիստոս ձեզ ու մեզ ողորմի։
Թվ. ՊԻԵ. (1376)։

647.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Վենետ. 125, Ցուց. Ա. էջ 559—560

Հետ. ստացող՝ Ցիմի
վայր՝ Այաս

322բ Զվերջին ստացող սուրբ աւետարանիս Ցիմիս Այասցի, կին Վանքամի։ Ի դառնութեան ժամանակի աւարումն եղաւ էամ[ը]րոն բե[ր]-թի, և գերի բերին ըզսուրբ աւետարանս յԱյաս քաղաքի, նայ ես՝ Ցիմիս, վասըն սիրոյն Քրիստոսի, գնեցի զսուրբ աւետարանս յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց։

Ո՛վ սուրբ ընթերցողք աւետարանիս, ի ժամ բաշխման մարմնոյ և արեանն, զմեղաւք լցեալ ոգիս՝ զՑիմիս և զմայրն իմ զՀռաւփսիմին յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր, ընդ նմին և զեղկելի գծողս սորայ՝ զՅովսէփ զպրիկս յիշեցէք, և դուք յիշեալ լիցիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Վերջի յիշատակարանս գրեցաւ հրամանաւ | | |** տեառն մերոյ տէր Սիմէոնին. և քահանայսն, որ աստ հանդիպեցան՝ Վասիլ քահանայ և Ստեփանոս քահանայ, յիշեցէք ի մաքրափայլ [յաղաւթս ձեր]։***

* Բնագրում՝ «Թերձակ»։
** Եղծված է երկու բառ։
*** Հրատարակիչ Բ. Սարգսյանը կոչում է հետևյալ ծանոթությունը՝ «Թէպէտ և յիշատակարանիս գրութեան թուականը նշանակուած չէ, սակայն աւետարանիս գերելն հանդիպած է հավանօրէն յամի տէառն 1375 Սիս քաղաքի առման ժամանակ, իսկ գտնուելն և արձանագրուիլն յամին 1376—1378 (տես Ալիշան, Սիսուան, եր. 85, 227—8)»։



ՊԻԶ 1377

## 648.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Երևան 0402*

Գրիչ՝ Աւագ

ա

347ա ...*Արդ, որք ճաշակէք յաստուածային բուրաստանէս և յամենալի
սեղանոյս, որք պատահիք սմա ընթերցմամբ կամ աւրինակելով, յի-
շեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացող սորա զ*Յոհաննէս *քա-
հանայ, և զծնողքն իւր, և զազգս ամենայն, և զ*Պետրոս *քահանայ, և
զ*Ամիր, *և զ*Այխարուն, *և զ*Եզրիար, *և զ*Թումայ, *ընդ նոսին և զանպի-*
347բ *տան գրիչս զ*Աւագ *դպիր, և || զծնողքն իմ, և զազգն ամենայն յի-
շեսջիք, և աստուած-ողորմի ասասջիք ստացողացն և գրողացն ի ժամ
սուրբ և սոսկալի պատարագին։*

*Նորոգող՝* Զաքարայ
*վայր՝* Աղթամար

բ

*Արդ, ի յայսմ ամի, որ էր թուիս Հայոց ՊԻԶ. (1377),* Յոհաննէս *սրբազան քահանայ վերստին ետ նորոգել զսա և ծաղկել և գլխագրել և կազմել, զի յառաջին* Աւագ *վարդապետ, որ գրել էր՝ մահն հասել էր, և ոչ էր ժամանել կատարել զսա։* Ես* Զաքարայ *սուտանուն կրաւնաւոր՝ անիմաստ և տխմար գրիչ, և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ և տրտում և տխուր, վասն բազում մեղաց իմոց, բազում աշխատանաւք կատարեցի զսա ի կղզոջս* Աղթամար, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանացս, և ամենայն սրբոցս, ի հայրապետութեան տէր* Զաքարիայի։ *Ապա աշխատեցայ և գտնաւրինականքն զամէն մէկ մէկ յիւր տեղն եմ հանել, իսկի իրք պակաս չկայ, ապա ի գէճ տեղ էր դրած և լաւ չէր պահած, թուղթն ամէն տպռ ելեր և բրգացել, գղեղն չէր առնուլ, և խիստ վշտացայ։ Աստուած կու գիտէ, որ քան զառաջին գրողն ես շատ աշխատեցայ, էնոր համար, որ կէս բանին աւելի ղեռ ի տեղն էր։ Բայց դուք, սիրելի եղբարք, զաստուա-
ծ-ողորմին մի մոռանայք մեզ, և ծնողաց մերոց, և այլ ազգակա-
նացն, և ստացողի սորա, յառաջ յիշեցելոյ* Յոհաննիսի, *և ծնաւղաց*
348ա *նորա, || և ազգայնոցն ամենայն՝ կենդանեաց և ննջեցելոց։ Եւ ինքն,
որ տուողն է բարեաց, ձեզ՝ յիշողացդ և յիշեցելոցս, ողորմեսցի կրկին
կենաւք և երկու աշխարհաւք և ինքն աւրհնեալ եղիցի յամենայն
արարածոց, յերկնաւորաց և յերկրաւորաց, ի հրեշտակաց և ի մարդ-
կանէ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

---

* *Ըստ այսմ Աւագ գրչի հիշատակարանը գրված պետք է լինի 1377 թվականից տարիներ առաջ։*

## 649.

### ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետ. 201 Ցուց. Բ. էջ՝ 65—66

Հետ. ստացող՝ Հասան
վայր՝ Մէրտին, Թվին վանք

114բ Ի Թվականիս Հայոց ՊԻՋ. (1377) ես՝ մուղտսի Հասանս, հանդիպեցա գրոցս, որ էր ղերեալ և բերեալ ի Մէրտին քաղաք, գնեցի ի գերողէն, և ետու ի սուրբ ուխտն ի սուրբ Աստուածածին և ի սուրբ Ցսվանէո, որ մականուն Թվին կոչի, առ ի յիշ[ատ]ակ ինձ, և ծնողաց իմոց, և կենակցի իմոյ, և զաւակաց իմոց՝ փոխեցելոցն ի Քրիստոս։ Եւ մի ոք իշխեսց[է] հանել ի վանացն, կամ ծախել, կամ գրաւել, այլ Թայ սայ անջինջ յիշատակ։ Եւ ով ոք կարդա ի սայ, աստուած-ողորմի ասէ Հասանին, և Ջաքարին, և իւրեանց զաւակացն՝ Յովանիսին և Կիրակոս սարկաւագին, և այլ զաւակացն՝ փոխեցելոցն ի Քրիստոս, ընդ նմին և ինձ՝ Յակոբ եպիս[կ]ոպոսի, որ դյիշատակարանս գրեցի և էի տեղոյս վերատեսուչ. և որ աստուած-ողորմի ասէ և նմա տէրն ողորմեսցի յաւեղ ատենին։ Քրիստոս աստուած, քո գալըստեամբդ ողորմ[ե]այ Հասան մուղտսոյն և իւրայոցն առհասարակ, ամէն, եղիցի, եղիցի։

## 650.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

Երևան 4041 (տես նաև 1425 Թ.)

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Թավրէզ

ա

252ա Փառք...որ արժանացոյց զախմար և զանպիտան և զանարժան գրիչս Ներսէս երէց հասանել յաւարտումն այսմ աստուածախօս մատենիս աստուածազարդ և առաքելաշնորհ վարդապետին ասացեալ Գրիգորի Նարեկացոյ, ի խնդրոյ երջանիկ և առաքելանման հօրեղբօրն իմ տէր Յոհանեսի, որ եռափափակ և ըղձալի սրտիւ խնդրեաց զայս աստուածաշունչս տառս, յիշատակ իւրն, և ծնօղաց իւրոց, և եղբարց իւրոց, և ազգականաց, և ամենայն արեան մերձաւորաց, և երախտաւորացն, և բարեկամացն...։

Արդ, գրեցաւ սա ի քաղաքս ի Թավրէզ, ընդ հովանեաւ սուրբ Սար-
252բ գըսիս, ‖ ի Թուաբերութեանս Հայոց ՊԻՋ. (1377)։

Արդ, աղաչեմ զամենեսեան, զընթերցողդ և զժառանգոր[դ]սդ, յիշեսջիք սրտի մտաւք ի բարի զիս՝ զամենամեղ գրեյեակս՝ զՆերսէս երէց, և զհանգուցեալ հայրն իմ զՅովանէս, և զմայրն իմ Դքչախ, և զամենայն երախտաւորսն իմ. և խոշորութեան գրիս անմեղադիր

լերուք, զի ակարանա ամենայն մարդ ի գործս իւր, և աստուած առհասարակ ամենեցուն ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

253ա Յիշեա Քրիստոս աստուած ի քում յարքայութեանդ զԱրղուն տիկինն և զծնօղսն իւր՝ զԴաւիթ և զՀռիփսեմ, որ փափաքելի սիրով ետ գրել զպակասորդ Նարեկացոյս և կազմել. բարեխաւսութեամբ սրբոյն Գրիգորի Նարեկացոյն և ամենայն սուրբ վարդապետացն ջնջեա զձեռագիր նոցա յանցանացն և գրեա ի դպրութիւն կենաց, և որք հանդիպիք աստուած-ողորմի ասացէք և աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

## 651.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 7373

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Ղրիմ քաղաք

465բ ...Արդ, որք հանդիպիք այսմ պատուական և հոգեանորոգ տառիս, յիշեսջիք զվերոյգրեալ այրն աստուածասէր՝ զԱստուածատուր, և ծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն և զկարեւոր բարեկամսն, որք կան այժմ և որք փոխեալ են ի ժողովն մեծ՝ զՄխիթարն, զԱւագտիկինն, զԽաչատուրն, զՏիրատուրն, զՀերազանդն, զԽոսրով երէցն, զՔենքուշն, զՆորշան, զԳորգ երէցն, զՄարտիրոսն, զԱռաքելն, զԳորգն, զԳրիգորն, զՀեզզիկն, զՀերազանդն, զՄիրաքն, զՏղայպարոնն, զՅունանն, զԽաչատուրն, զԽերխաթունն...։

Ընդ նոսին և զգրիչ այսմ տառիս զՅովաննէս քահանայն, և զերանելի և զհոգեազարդ և զբազմաց վկայեալն՝ զՌւետիս քահանայն՝ զհայր սորա, և զմայր սորա, և զամենայն ընտանիս, և զզաւակս իւր յիշեսջիք դարձեալ ի Քրիստոս, և որք յիշէք, յիշիք ի Քրիստոսէ Յիսուսէ տեառնէ մերմէ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Արդ, գրեցաւ սա ի քաղաքս Ղրիմ, յաթոռակալութեանն Յովաննէս կրաւնաւոր քահանային, քաջ և իմաստուն և ուղղափառ առաջնորդին, ի թուականութեանս Հայոց ՊԻՁ. (1377), յաշխարհակալութեանն Մամայ պարոնաց պարոնին։

Ես՝ Աստուածատուր, ստացայ զգիրքս դայս և ետու իմ սանոյն, վերոգրեալ Վարդան աբեղին, զի յետ ելիցն իմոյ աշխարհէ եղիցի իւր սեպհական, յիշատակ մեր և մերոցն, և մի ոք իշխեսցէ հակառակել, զի տեառն ետու ձեռամբ սորա։





## 652.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետ. 12. Ցուց. հտ. Ա. էջ 127—128 և Ալիշան, Հայապատում, էջ 548—549 (տես նաև 1332, 1439 և 1577 թ.թ.)

Նորոգող՝ Յովանէս
վայր՝ յերկիրս Տարունու

ա

351ա Ի թուին Հայոց տոմարի որ ԳԻ. կոչի, (1371), ի յանգմանէ չարին, վասն ծովացեալ մեղաց մերոց, ի հարկապահանջութենէ այլասեռիցն աւերեցաւ երկիրս Տարունու, նաև սուրբ ուխտս Ղազարու, զոր և կրօնաւորք սուրբ Առաքելոյս տարաշխարհիկ լինէին՝ անցանելով յայլ գաւառ. և կացեալ սուրբ տառս աստուածաշունչ ի պահեստի բազում աւուրս՝ եղծեաւ, այլ և զբազում սուրբ զրենօք և աղեսանիւք, և եղեւ տրտմութիւն վանացս. զոր հետ աւուրց ինչ, յորում էր թվ. ԳԻԷ. (1378), ոմն յազնուական տոհմէ, բարեմիտ և սրբասէր կրօնաւոր՝ Պօղոս անուն, եղբօրորդի գոլով երջանիկ րաբունոյն Յոհաննիսի՝ փոխեցելոյն աստեացս առ Քրիստոս, որ ստացեալ ունէր զայս աստուածաշունչս, վասն որոյ Պօղոսս եւս առաւել հոգք յանձին կալեալ, վերստին ետ նորոգել զգիրքս զայս բազում աշխատութեամբ անձին և ընչից իւրոց, վասն վայելման ինքեան և յիշատակ Յոհ[աննէս] վարդապետին և Պօղոս աբեղաի. որ եղեւ նպաստ կրկին նորոգմանս, և եղբօր իւրոյ Յոհանէս սարկաւագի՝ հանգուցելոյն առ Քրիստոս։ Նաև զեղբայր վարդապետին՝ զՍարգիս քահանայն, և զծնօղսն մեր, և ամենայն արեան մերձաւորսն, աղաչեմ զհանդիպողք այսմ աստուածաշունչ գրոցս, յիշել ի տէր յօժար կամօք զվերոյգրեալքս, զի և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ ի բարին. Նաև զանարժան հողիկս՝ զՅովանէս անպիտան գրիչ, որ զսակաւ գիրս ցանցառ գրով ձարոտեալ գրեցի և կազմեցի, ոչ յարուեստ ինչ վստահանալով, այլ ըստ հարկեաց և յօժարութեան կամացս Պօղոսի, վասն որոյ չմեղադրել խնդրեմ և յիշել ի տէր միով տէր-ողորմաիւ։

բ

327բ ԶՊօղոս աբեղայ, զստացող սուրբ գրոցս, յիշեցէք ի տէր Քրիստոս՝ աղաչեմ, և զՅոհաննէս սարկաւագ՝ զհանգուցեալն առ Քրիստոս։ Եւս յիշեցէք ի Քրիստոս զաստուածասէր՝ Սիմէոն սարկաւագն և զծնողսըն իւր...որ ետ նորոգել և կազմել զաստուածաշունչս, զի խիստ եղծեալ և հնացեալ էր, բազում աշխատութիւնս և ծախս արար...։

## 653.

### ՀԱՐԱՆՑ ՎԱՐՔ

*Երևան 2680 (տես նաև 1580 թ.)*

Գրիչ՝ Մատթէոս
վայր՝ Անկեղակոյտ գիւղաքաղաք

369ա ...Եւ արդ, ես՝ յետինս ի բնաւից և հողոյ հաւասար, ժանգալից
մեղաւք խաւարեալըս հոգով Մատթէոս* երէց, ի տղաական հասակն,
մինչև էի ամաց քսանից, բաղում բաղձանաւք և խանդակաթ սիրով,
ըղձմամբ սրտիւ և տենչանաւք փափաղեցայ այսմ հոգիարաշխ աս-
տուածապարգեւ սուրբ գրոցս, որ անուանի Հարանց Վարք։ Եւ մեղ-
սամակարթ անձամբ դիեցի զսա հաւաքելով ի համաւրէն աշխարհաց,
ի բաղում սուրբ գրոց։ Զոր քաջ գիտէք, զի ոչ գոյ ի մի վայր այս-
քան ամենայն և անուշահամ, զմայլեցուցիչ և ծաղկափթիթ բուրաս-
տան, լի կենդանի անմահական բանիւք և վարուք աստուածահաճոյ
սուրբ հարցն։ Որոց յուսով և ըղձափափագ տենչմամբ ցանկացող
եղէ այսմ հոգիաբուղխ եդեմական վտակիս փանաք և մտիտ գրիչս
Մ[ատ]թ[էո]ս, զի զպասքեալ ծարաւ դառնաշունչ մահապարտ հոգոյս
սովաւ լցուցից։ Վասն զի յոգնակի սիրով գրեցի զսա ամըս է. (7),
առ ի յիշատակ անբաւի հոգւոյս իմոյ և փրկութիւն աղտեղեալ մեղ-
369բ սամակարթ ‖ հիքոյս անձինս։ Քանզի սուրբ և պատուական բարե-
շնորհ, աստուածաբնակ գիրքս այս պարունակեալ ունի յինքեան
զմեծամեծ սուրբ հարցն վարք և զբազմադիմի խաւսք և զխրատ նո-
ցա...։ Յաղագս որոյ ես՝ փանաքի հէքս Մատթէոս, գրեցի զսա սատար
սողոսկեալ հոգւոյս առ ի յիշատակ շեղեալ շուայտեալ մարմնոյս,
թէպէտ գտայց խեբեեշ մի ի մասանց փշրանաց արտաքս ընկելոց
արժանաւորն մանկանց սեղանոյ։ Արդ, աղաչեմ արտասուալից հա-
ռաչմամբ և մոխրամած դիմաւք, որք զաղափար[եա]լ ընթ[եռ]նլով
լուսաւորիք յայսմ գերազանց արփիափայլ փայլեթոնէ, յիշեսջիք
սրտի մտօք ի մաքրափայլ աղաւթս ձեր զստրուկ աղքատս ի բարեաց
գործոց՝ զՄատթէոս գծագրողս, և ի Քրիստոս հանգուցեալ ծնօղսն իմ,
և զեղբարսն, նաև զգերազնամաքուր աբեղայսն սրբազան՝ Իգնատիոս
և Եսայի, որ են հարազատ որդի վըտիտ գծողիս, եւ զՀռիփսիմի՝ մայր
իւրեանց, զյըսնամեայ ապաշխարութեամբ աղաւթեալն, և առաքի-
նասէր դուստր իւր՝ կուսանն Մարգարիտ։ Եւ որ առատն է ի տալն,
տացէ ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս զերկնից արքայութիւնն և
զպսակն անթառամ։

Կատարեցաւ հրաշափառ սուրբ գիրքս այս բարեբար շնորհաւք աստուած սուրբ հոգւոյն, ձեռամբ նոյն վերոյգրեալ Մատթէոս իրիցոյ, ի թվին Հայոց ՊԻԷ. (1378), ի գեղաքաղաքս, որ Անկեղակոյա կոչի, ընդ հովանեաւ ամենամաքուր տիրուհի փառաւորեալ սուրբ Աստուածածնին։ Եւ արփիաւորչին մերոյ՝ տեառն Գրիգորի Հայոց մեծաց

---

* Հապավված է Մթ. ձևով։

սուրբ լուսաւորչի, եւ այլ միեղէն սքանչելագործ զարմանահրաշ սուրբ եկեղեցեաց, որ է Քէթոյվանից սուրբ Գրիգոր, Նաղատայ սուրբ Գրիգոր, Խըոընոաւնից սուրբ Գրիգոր և Բերդոոյ սուրբ Գրիգոր...։

## 654.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 5558

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Աղթամար

629 Փառք անբաւ մարդասիրութեանն աստուծոյ, որ հասոյց զանարժանս յաւարտ սուրբ տառիս, զի գրեցաւ սա ի թուականիս Հայոց
ՊԻԷ. (1378), ի կղզիս Ախթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ
Նշանի, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, ձեռամբ ամենամեղ և
անիմաստ Կարապետ անարժան քահանայի և փցուն գրչի։
Արդ, ցանկացող եղեալ այսմ աստուածային և սուրբ կտակիս,
սրբասնունդ և պատուական կրաւնաւորն Թումայ։ Եւ ետ գրել զսուրբ
գիրքս զայս ի հալալ արդեանց իւրոց. յիշատակ հոգոյ իւրոյ, և ծնաւ-
ղացն Վարդանայ և Ավաքտիկնայ, և եղբարցն Յովաննէս քահանայի
630 և Աւետիսի, և ամենայն արեան մերձաւ[որացն]՝ կենդանեաց և հան-
գուցելոց։ Արդ, աղաչեմ զհանդիպեալսդ սմա կարդալով կամ աւրի-
նակելով, յիշեսջիք յաղկնաթոիչ յաղաւթս ձեր զընտրեալ կր[աւնա-
ւոր] զԹումայ, և զծնաւղքն իւր, և զեղբարքն իւր, և զապն՝ զՍտե-
փան, և զհաւրքոյրն՝ զՇնոռվոր, և զհաւատարիմ տանուտէրն՝ զԱմիր-
բէկ, և զկենակիցն իւր զՁիչաքմելիք, և զդեղեցիկ և զքաղցրատեսակ
որդեակն իւրեանց՝ զՍուլտանշայ՝ զփոխեալն առ Քրիստոս։ Ընդ նո-
սին և զիս՝ զանարժան և զսուտանուն Կարապետ քահանայ, և զծը-
նաւղն իմ՝ զՄկրտիչ քահանայ և զԹանկխաթուն, և զեղբարքն իմ, և
զհաւրեղբաւր որդին իմ՝ զԹումայ՝ զաարաժամ հանգուցեալն ի Քրիս-
տոս։ Մանաւանդ յիշեսջիք և աստուած-ողորմի ասասջիք ստացողացն,
և գրողացն, և աշխատողացն, և երախտաւորացն, ի ժամ սուրբ և սոս-
կալի պատարագին. և ինքն, որ առատն է ի տուրս՝ ձեզ և մեզ ողոր-
մեսցի, և հիմա փառք յաւիտեանս, ամէն։
Կրկին աղաչեմ, յիշեսջիք ի Քրիստոս զԿարապետ կրաւնաւորն,
որ աշխատեցաւ ի գալն և երթալն, և միջնորդ եղև այսմ բարի գոր-
ծոյ...։

## 655.

## ԱԻԵՏԱՐԱՆ

Վիեն. 272, Տաշ. Ցուց. էջ 692

Գրիչ՝ Յով[հաննէս]

290ա ...Ցամի Թուաբերութեանս մերոյ սեռի ՊԻԷ. (1378) կատարեցաւ սուրբ աւետարանս խաւսեցեալ ի բանէն աստուծոյ մարմնացելոյն վասն մեր՝ Յիսուսէ Քրիստոսէ տեառնէ մերմէ։

Աստուածասէր առն ծերունին՝ որոյ անունն Շահնշահ յորջորջի, եւ կենակից նորին Թագուհի, եւ աւաղաղոյն որդին նոցին Խոցադեղն, եւ եղբայր Խոցադեղին՝ Սիմէոն դպիրն, եւ հարսն Սիմէոնի դպրին Սարայն, որ մեծաւ սիրով ստացան յաղագս յիշատակի հոգւոյն Գոհարին՝ դստեր նոցին, որ է քոյր Խոցադեղին եւ Սիմէոնին։ Հաւ համարեցան զոտ քան զամենայն պատուականութիւն վայելման աշխարհիս...եռուն գրել զոտ սիրով եւ մեծաւ հաւատով, որոյ տէր աստուած վայելել տացէ Սիմէոն դպրին, եւ զհոգի հանգուցելոյն զԳոհարին ընդ կուսանաց կայանսն դասեսցէ։

Արդ, որք հանդիպիք սուրբ եւ պատուական աւետարանիս ընթեռնլով կամ գաղափար դնելով՝ յիսեսջիք ի Քրիստոս Յիսուս զհրաժարեալն յաշխարհէս զԳոհարն, որ աղա հասակաւ չուեաց ի սուտ եւ յունայն կենցաղոյս եւ ժամանեաց ի մշտնջենաւոր քաղաքն՝ ի վերինն Երուսաղէմ, որ է մայր մեր ամենեցուն։ Ո՛վ ընթերցաւղք եւ լսաւղք յիշատակարանիս, յիշեսջիք ի Քրիստոս զ՚ի սմա յիշատակեալսն զՇահնշահն, եւ զկողակից նորին զԹագուհին, եւ զնոցին զաւակսն զԽոցադեղն, եւ զկողակից նորին զՍառայն, եւ զնոցին զեռաբոյս զաւակսն զԳրիգորն, եւ զնորաբողբոջ եղբայր Գրիգորին՝ զՊետրոսն, եւ զվայելաւղ աւետարանիս զՍիմէոն շնորհաղարդ դպիրն...։

Ընդ նոսին եւ զիս՝ ան[արժա]ն ծառայս ծառայից աստուծոյ զՅով[հաննէս] գրիչս, արժանի արարէք յիշելոյ։ Եւ զիմ հայրն զԱ | | | քահանայն եւ զնորին կողակիցն, եւ դուք յիշիք ի յոյսն* բարի, որում փառք յաւիտեանս, ամէն։

---

* Տպված է՝ «յայսն», ուղղում ենք ըստ իմաստի



ՊԻԸ 1379

## 656.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Երևան 1527 (տես նաև 1302 թ.)*

Վայր՝ Ըռսաց աշխարհ

667ր ...*Ի Թվականին Հայոց ՊԻԸ. (1379) կոչեցաւ ի մեծ դիտապետէն Հայոց տէր* Յովհաննէս *կրօնաւոր քահ[անայ]ն. և սուրբ Ցակորա պահոցն նաւեցաւ ու գնաց ի մայ[րա]քաղաքն՝ի* Սիս: *Եւ ձեռնադրեցաւ ի մեծ [դիտապե]տէն տէր* Կոստանդեայ *արքեպիսկոպոս [ամենայն* Ըռօ]սաց *աշխարհի և* Վլախաց: *Եւ ի [դառնալ]ն իւրում յաշխարհն, տէր* Յոհաննէս *[արքեպիսկոպոսն] եբեր զգիրքս զայս, որ է Սաղ[մոսի] Մեկնիչ, մեծ նվերք աշխարհիս* Ըռսաց, *[ի լուս]աւորութի[ւն] մանկանց Սիոնի: Որպէս [սուրբն] Գրիգոր Լուսաւորիչ մեր եբեր մեծ պարգեք՝ զնշխարք մեծին Յովաննու և Աթանագինէ[ի] ի լուսաւորութիւն Հայաստան աշխարհին, սոյնպէս և տէրս մեր տէր* Յոհաննէսս՝ *զայս հոգիարուզ[ի] մատեանս եբեր ի լուսաւորութիւն և ի պայծառութիւն սուրբ եկեղեցոյ, եւ յիշատակ իւր և պարէնք յայնմ աշխարհքն, նայ և ծն[ողաց իւրոց]՝ հանգուցելոցն ի Քրիստոս, պար[ոն | | | և հեզահողի կենակց[ին | | |* չա *Խաթունին, և հարազ[ատ | | | տէր* Ավագ *սրբասէր կրօ[նաւորին, և* Ալէքսիէ *քահ[անայ]ին, և պարոն* Ուլ | | | *ընտա]նեացն իւր: Քրիստոս աստուած ընդ | | | ացէ. և հանգուցելոց | | | ացի, Քրիստոս աստուած մեր պարոն* Ճոանին | | |, Սովունչին *և այլ ամենայն | | |, ամէն: Եւ գծողի յիշատակ | | |* Կիրա՞կ]ոս *արեգիս, որ եմ սպասաւոր. | | | տէր* Յով]հաննէս *արքեպիսկոպոսիս:**

## 657.

### ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ

*Օքսֆորդ.* Ms. Arm. E. *36. Տիրայր վրդ. 89.*
*Թղթ. 121—122, էջ 1646—1648***

*Գրիչ՝* Գրիգոր Տաթևացի
*վայր՝* Տաթև

5ա *Զոր այսու յուսով տարփացող եղեալ սորին ուղղութեան, վերջինս [ի] բանասիրաց և տրուպս պետաց* Գրիգոր *կոչեցեալ՝ խնդրող*

---

* *Հիշատակարանը շատ վատ է պահպանված, հնարավորին չափ աշխատել ենք վերծանել անընթեռնելի մասերը:*

** *Ձեռագիրը, որի մեջ գտնվում է Գր. Տաթևացու սույն հիշատակարանը, ընդօրինակված է 1689 թ. Սարգիս երեցի կողմից:*

բանի, զոր ի վաղ ժամանակաց տենչացեալ կարօտ էաք, յեղակարծ ժամու. գտեալ եղև ի յարկեղս դրոց յեկեղեցւոջ առաքելական աթոռոյն Տաթևու, յորում ժամանակի էր կրկին ընձիւղեալ դառն և դաժան երկարնակ աղանդն քաղկեդոնի ի կոչեցեալ դեօղն Քռնա, շրջաբնակ գաւառօք։ Եւ մեք՝ զգիւտ սորա ի հրաւիրմանէ հոգւոյն ընկալեալք, առեալ իւրաքանչիւր ոք օրինակեցաք՝ ի վարժումն ուղղասէր մտաց։ Որոց և ես բստ իմում կարի տխեղծ մատամբ գծագրեցի զսա, առ ոտս մեծի վարժապետին իմոյ Յոհաննու Որոտնեցւոյ, որ և կրկին ընթերցմամբ լուսաւորեալ առաջնորդեցայ ի սմանէ։ Եւ ապա առեալ ընթացաք ի վերոյ ասացեալ գաւառն, և պարսաքարեալ սովաւ հարաք զհայհոյիչն ճակատ, և ցրուեցաւ փաղանկն աղթարմայութեան, և բազում վանորայս առեալ ի նոցանէ եդև ուրախութիւն ուղղափառաց գաւուց ամս բազումս։ Ցորում և էր թիւ շրջագայութեան տոմարիս մեծի Պ. և ԻԸ. (1379) ամի։

Արդ, յերեսս [անկեալ] աղաչեմ զաստուածասէր պատահօղսդ յիշել առ Քրիստոս զբազմերախտ* առաջնորդն իմ զվերոյգրեալն՝ զՅոհաննէ[ս] Որոտնեցին, հանդերձ ծնօղօք իւր կրկնակի։ Ընդ որով և նշխար շնորհի ձերդ մաղթանաց աղերսի իջցէ ի գերեզման ոսկերաց իմոց և լուացէ զզազրացեալ վէրս յանցանաց իմոց, թերևս գտից ողորմութիւն յամէնողորմ պարգևողէ աստուծոյն իմոյ Յիսուսի Քրիստոսի, որում փառք, ընդ հօր իւրում և ամենասուրբ հոգւոյն անկէտ յաւիտենիւ, ամէն։

## 658.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 9116

Հետ ստացող՝ Սարգիս
վայր՝ Կիպրո՞ս

ա

433բ ...Արդ, ես՝ նուաստ աբեղայ Սարգիս, չողայ յԵրուսաղէմ, և ի ճանապարհին՝ ի Կիպրոս, պատահեաց ինձ աստուածաշունչ պատուական մարգարիտս, և ես զմարմնաւոր զոյս իմ անյապաղ ետու ի գին սորա, յիշատակ ինձ, և ծնողաց, և եղբարց, և ամենայն ազգայնոց իմոց։ Արդ, որք ուգտիք ի սմանէ, յիշեցէք զմեզ ի Քրիստոս, նաև
434ա զեղբարսս մեր, համայն միաբանիւք սուրբ ուխտիս Անտոնի, ‖ աղաչեմ յիշել ի տէր...։

Գրեցաւ թվ. ՊԻԸ. (1379), նոյեմբերի ԻԹ. (29)։ Տարաժամ մահ է, ևս առաւել տղայոց, զոր յուսամք | | |** փութով անցուցանել ղցասումն պատուհասի յանցանաց մերոց, բարեխաւսութեամբ սուրբ աստուածածնին և ամենայն սրբոց։

* Տիրայր վարդապետի արտագրությամբ՝ «զբազմամերախտ» կամ «բազմաւերախտ» (լավ չի կարդացվում)։
** Մի բառ անընթեռնելի։

Հեա. ստացող՝ Մկրտիչ

Բ

434ա Ցիշեղէք ի Քրիստոս Ցիսուս ի տէր մեր զվերջին ստացաւղ գրոցս՝ զվճիտամիտ, զհեզահոգի, զկուսակրաւն զՄկրտիչ աբեղայն, որ փափագաւղ եղեալ այսմ աստուածաշունչ կտակարանիս, և զամենայն մարմնաւոր զգոյս իւր անյապաղ ետ ի գրոցս՝ ԻԴ. (24) փլաւրի, ի յիշատակ իւր և ծնողաց, և ամենայն արեան մերձակայից իւրոց՝ կենդանեաց և ննջեցելոց...։

## 659.

## ՉԱՓԱԲԵՐԱԿԱՆՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

Երևան 8477

Ցիշատակս սակս Ստեփաննոս գծողի յայժ եղկելի վայր՝ Սխգառ վանք

132բ Սուրբ երջանիկ տէրդ Ներսէս,
Զքեզ տէր ընտրեաց ի յաշխարհէս,
Տընօրինել Հայոց հանդէս,
Զեկեղեցի շնորհօք պէս-պէս։
Երկնօրաց նմանապէս,
Ինըն դասուց խորհրդապէս,
Փառս առաքել երկնահանգէս
Տեառն աստուծոյ ի յիւր հօտէս.
Աւրհնել զիրկիշն անհատապէս,
Ընդ հօր և հոգւոյն անշփոյթապէս,
Նըմին վեհի մաղթեա պէս-պէս,
Զքեզ աղաչեմ, տէր սուրբ Ներսէս,
Նուաստ ոգի ես՝ Ստեփաննոս,
Մաղթեա վասն իմ միշտ առ Քրիստոս,
Որով սրբի բորբք մարմնոյս,
Զնչի յանցանք խաւար հոգւոյս,
Սովաւ զարթնուլ ի խոր քնոյս,
Վերաբերիլ ընդ քեզ ի լոյս,
Ի յախջամուղջ տղմէ գբոյս,
133ա Ինձ ⟦ ձեռնտու լինել և յոյս,
Երգել ընդ քեզ զերգս հաճոյս,
Երրորդութեանն սահեծող ըզգոյս,
Բարունաբար ծոյլ և հիքոյս,
Լեր նաւակից ընկղմելոյս,
Գոհաբանող լինել հոգւոյս,
Տեառն արարչին, որ է մեզ յոյս։

Ի թվ. ՊԻԸ. (1379) գրեցաւ, ի յանապատիս, որ կոչի Սխգառ վանք, ձեռամբ մեղուցեալ Ստեփաննոս չկրօնաւորի, ընդ հովանեաւ

*սուրբ Աստուածածնիս։ Արդ, աղաչեմ, ով ոք որ հանդիպի սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի սուրբ աղօթս ձեր զմեղուցեալս և զանարժան գծողս զՍտեփանոս և զծնողսն իմ, զհայրն իմ զԿիրակոս, և զմայրն իմ զՄելքէ, և զքեռն զԳիւնէ, և զամենայն արեան մերձա-*
133բ *ւորս, ‖ և աստուած-ողորմի ասելով <և> Թողութիւն խնդրեցէք ինձ և ծնողացն իմոց...։**

## 660.

## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ԵՒ ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

*Երևան 159*

*Գրիչ՝* Կարապետ
*Վայր՝* Ապրակունե[ա]ց գիւղ

312բ *...Գրեցաւ աստուածաշունչ գիրքս աստուածաբանութեան Եսայեայ մարգարէին, և սուրբ առ[աքելոյն] Պօղ[ոս]ի և սուրբ Թագաւորին Սողոմոնի ձեռամբ* Կարապետի *անարհեստ գրչի, ի վայելումն առաքինասէր* Թում[այի] *քահանայի, և յիշատակ հօրն նորա* Յակոբ *քահանայի, և մօր՝* Աւագունու, *և քուեր[ց] նորա՝* Եղիսաբեթի *և* Մարթայի, *որք կարդայք կամ աւրինակէք յիշեցէք ի Քրիստոս աստուած, և աստուած զձեզ յիշէ, ամ[էն]։*

*Թվ. ՊԻԸ. (1379) գրեցաւ, ի գեօղս* Ապրակունե[ա]ց, *ի դրան սուրբ Սարգսի, ի յաւուրս* Մաղ[ա]ք[ի]ա *ճգնաւորի։*

## 661.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3330 (տես նաև 1474 Թ.)*

*Գրիչ՝* Ստեփանոս

ա

73ա *Քրիստոս աստուած, որդի աստուծոյ, քո սուրբ յարութեամբդ ողորմեա ստացողի սուրբ աւետարանիս* Ընքնատ*** *քահանայի. և մեղապարտ գրչի սուտանուն* Ստեփանոս *քահանայի, և ձեզ։*

*Ստացող՝* Ընքնատ

բ

259ա *Զստացաւղ սուրբ աւետարանիս* զԸնքնատ *քահանայ՝ զպատուելի և զհեզահոգի, յիշել ի տէր աղաչեմ, ծնողաւք, որ մեծաւ յուսով և բաղում փափաղանաւք ստացաւ զսայ յիշատակ բարի իւր և հաւրեղ-*

---

* *Ձեռագրի վերջում (էջ՝ 149բ—150ա) պահպանվել է գլխավոր հիշատակարանը, որը տարբերվում է բերվածի արձակ մասից միայն գրչության Թվականով, այնտեղ կարդում ենք «Գրեցի զհոգելից տառս... Թվ. Հայոց ՊԼ. (1381)», ուստի պետք է ենԹադրել, որ ձեռագրի ընդօրինակությունը սկսվել է 1379-ին և ավարտվել 1381-ին։*

** *Ստացողի անունը՝ «Ընքնատ» գրված է այլ ձեռագրով և այլ Թանաքով։ Ակնհայտ է, որ ձեռագիրը Ստեփաննոս քահանայի կողմից գրված է եղել վաճառքի համար, առանց նախօրոք պատվիրված լինելու։*

*րարց իւրոց՝* Խոսրով *քահանային, և* Մկրտիչ *քահանային, և* Մելիքսեթ *քահանային, որ են գնացեալ մահուամբ առ Քրիստոս՝ յոյսն ամե-*
259բ *նեցուն...։ Եւ ով որ զմեզ յիշման արժանի առնէ, Քրիստոս աստուած զինքն իւր երկնից արքայութեանն արժանի առնէ, ծնողաւք և ամենայն զարմիւք, ամէն։*

*Ի թուիս Հայոց ի ՊԻԸ. (1379)։*

**662.**

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ*

*Պրոֆ. Դ. Պ. Գորդեևի ձեռագրերից (Թբիլիսի)*

*...Գրեցաւ ի թվ. ՊԻԸ. (1379), ընդ հովանեաւ սրբոյն Անտոնի ճգնաւորին։ Արդ, որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ աւրինակելով յիշեսջիք ի Քրիստոս ղստացաւղ մատենիս զՍարգիս կուսակրաւն քահանայ հանդերձ ծնողիւք և հարազատ ազգայնաւք, նաև զծողի սորա, և աստուած յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։**

* *Շարունակությամբ կա ինն տող գրություն, որն այժմ ջնջված է։ Ընթեռնելի են միայն մի քանի տառեր։*





## 663.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Վենետ. 298, Ցուց. Բ. էջ 1098 (տես նաև 1520 թ.)*

*Ստացող՝* Կոստանդին կաթողիկոս
*վայր՝* Կիլիկիա

ա

28բ *Նուաստ* Կոստանդեան *կաթողիկոս գտայ զշարադրութիւնս հայրապետացն Հայոց, գրեալ ձեռամբ սուրբ հօրն մերոյ* Ներսէսի *արքեպիսկոպոսի* Տարսոնի, *և ետու գրել սսա, որ է այս։*

Ոմն ընթերցող

բ

*Ի մեծ թուիս Հայոց ՊԻԹ. (1380) ամի, յօգոստոս ամսոյ ԺԵ. (15), ի չորեքշաբաթի օր հանգեաւ ի Քրիստոս պատուական [կաթողիկոսն] Հայոց տէր* Կոստանդին *երկրորդ* Լամբրոնացին:

## 664.

### ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ ԵՒ ԹՈՒՂԹՔ ՊԱՒՂՈՍԻ

*Սեբաստիա, Ս. Նշան, № 3, ՀԱ. 1923 թ., էջ 72—74 (տես նաև 1309)*

*Գրիչ՝* Նախապետ
*վայր՝* Մոկաց գաւառ, սուրբ Կանաց վանք

283 *...Գրեցաւ աստուածաբան մարգարէութիւնս Եսայեայ ի սուրբ եւ յընտիր աւրինակէ, ի գաւառս* Մոկաց, *ի վանս, որ կոչի սուրբ* Կանաց, *ընդ հովանեաւ սուրբ Խաչիս, ձեռամբ յոգնամեղ եւ անպիտան ու փցուն գրչի* Նախապետի, *ի թվականիս Հայոց ՊԻԹ. (1380)։*

*Արդ, յիշեցէք ի Քրիստոս Յիսուս զառաջնորդ սուրբ ուխտիս* զՏիրացու, *եւ զեղբայր իւր* զՍտեփաննոս, *և զքուերորդին իւրեանց* զՅովհաննէս *կրօնաւոր, որ ետուն գրել զսայ եռաջփափաք սիրով ի վայելումն անձանց իւրեանց եւ յիշատակ հոգւոց իւրեանց եւ ծնաւղաց իւրեանց, զի որ ընթեռնու եւ աւգտի, ասասցէ՝ աստուած թողցէ զմեղս սոցա, զի եւ ձերն թողցի։ Արդ, յերեսս անկեալ աղաչեմ զմանկունս սուրբ եկեղեցւոյ, որք ընթեռնուք զպատգամն Եսայեայ մարգարէի, յիշեցէք ի Քրիստոս զառաջին գրողսն եւ զիս, որ յետոյ գրեցի, եւ անմեղադիր լերուք, զի ի ձմերանի գրեցաւ եւ ցուրտ էր տանն։*

665.

## ԱԻՆՏԱՐԱՆ

*Երևան 7862*

*Գրիչ՝* Յովաննէս
*վայր՝* Խախտեաց գաւառ

336բ ...*Գրեցաւ սուրբ աւետարանս թվ. ՊԻԹ. (1380), ձեռամբ մեղսամակարթ և փծուն դրչի* Յովաննէս *ուսումնականի, ի* Խախտեաց *գաւառի, ի սուրբ մենաստանս, որ կոչի* Խախն, ‖ *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, և Թէոդորոսի, և այլ բազում սրբոց, որ աստ կան։*

*Արդ, աղաչեմ | | | զի խոշորութեան և սղալանաց | | | չլինել մեղադիր. զի այս էր կար մեր։*



ՊԼ 1381

## 666.

## ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ

Երևան 8295

Գրիչ՝ Տուճեր

134ա ...Բայց գրեցաւ սա ի դուռն գամբարանի սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, և Սաղեմա սուրբ Նշանին, և սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, ի թվականիս Հայկազեանս սեռի ՊԼ. (1381), և ըստ եւթանասնիցն,* յԱդամա ի Մովսէս ամք ՎՈՁԹ. (3689), և ըստ Հրէիցն՝ ՍՆԾԳ. (2453), ըստ Եբրայեցւոցն՝ ՍՉԾԳ (2753)։ Անդրէաս ասաց մինչև ի ծնունդն Քրիստոսի՝ ՐՈ. (5600), և մինչև ի մեր թուականն
134բ հաւաքեալ՝ ՑՃԾԶ. (6156), յո‖րում իննևտասաներեակք** և եւթներեակք, շրջանք և շարժմունք ժամանակաց անսղալ զիջանելով աւարտին, և Քրիստոսի մարմնաւորութենէն առ մեզ ՌՅՂԶ. (1396)։***

Արդ, որ աւգտիք և վայելէք յուսով յաստուածային մատենէս, ով վսեմաճեմ երամս աստուածասէր խմբից, յերես անկեալ աղաչեմ, մեղաց թողութիւն հայցեցէք յաստուծոյ շնորհազարդ ծերունոյն՝ Մկրտիչ փակակալին, զի ջերմեռանդ սիրով և քաջ հաւատով ետ գսա գրել։

...Այլ և զիմ նուաստութիւնս աղաչեմ յիշել թողութիւն յանցանաց մեռեալ ոգւոյս, և շաղախեալ և ալեկոծեալ մտացս, անառակ գծողիս՝ Տուճերի, նաև զծնողսն մեր, և զուսուցիչն իմ՝ զհոգևոր հայրն՝ զիմաստունն և զհանճարեղն զտէր Կիրակոսն, և աստուած զձեզ յիշէ։

## 667.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 1566 (տես նաև 1418 թ.)

Գրիչ՝ Ատոմ
վայր՝ Մաղարդավանք

334ա ...Ողորմութեամբ հզաւրին Յիսուսի սկսա և աւգնութեամբ նորին կատարեցի, ես՝ անարժանս և մեղաւք զառածեալս և զտրուպս ի յեղբարց Ատոմ, որ ամաչիմ գրիչ կոչիլ, զկտակ մաղթանաց ամենագով սուրբ և հանճարեղ գերդ ականաւոր մեծանուն հաւր Գրիգորի Նարեկացոյ, զոր հոգին սուրբ մարգասիրաբար, սակս կենաց ամենից

* Ձեռագրում՝ «Հ-էցն»։

** Ձեռագրում՝ «Թժ. երեակք»։

*** Ըստ երևույթին գրչական սխալի հետևանքով բնագրում գրված է ՌՄՂԶ. (1296), ուղղում ենք՝ առաջնորդվելով հայկական ՊԼ. (1381) թվականով։

իւրաին յորդայորձան սահման և կնիք երկնագնաց ճանապարհին հաստատեաց մեզ բարեգործն, և դուռն մտից կենաց սովաւ վարժելոցն։

334բ Արդ, որ աղտիք ի սմանէ, յիշեսջիք ‖ նախ և առաջին զմեծ րաբունապետն Սարգիս, որ զաւրինակս շնորհեաց, ե զստացող սուրբ գրոյս զՍիմեոն, և զիւրսն ամենայն՝ ծնողաւքն հանդերձ։ Բայց գրեցաւ ի թուա[կա]նիս Հայոց ՊԼ. (1381), ի մեծ և ի հռչակաւոր վանքս Մաղարդու, ընդ հովանեաւ սուրբ Ստեփաննոս Նախավկաիս, և սուրբ Աստուածածնիս, և սուրբ Գէորգա զաւրավարիս և այլ բազում մասանցս, որ կա ի սմայ, ի յառաջնորդութիւն տէր Գրիգորի: Աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք յայսմ աստուածային պատուիրանէ, յիշեսջիք զվերոյգրեալս ի սմայ, ի սուրբ ե ի մաքրափայլ յաղաւթս ձեր, և զիս՝ զեղկելի փցուն գրիչս, ե զիմսն ամենայն, և զամենայն երախտաւորսն մեր ե զհանգուցիչսն...։

Զեղբայր, խոշորութիւն գրիս անմեղադիր լեր, տեղս չոՃ էր ու ես անձամբ տկար, լուր հանապազ զելն տեսան[է]ի։

## 668.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Մաքսուդ. Ցուց. Ագուլիսի, 26, Արարատ, 1911 թ., էջ 849

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Սրխզաու վանք, ճանդեպ Վարագայ

ա

...Ի թուականութեան Հայկազեան տոհմիս տոմարիս Պ.-երրորդի Լ.-երրորդի (1381), ես՝ անպիտանս ի մանկունս եկեղեցւոյ Ստեփանոս անարժան չկրաւնտւոր, գրեցի ըստ իմում կարութեան և կարգեցի ի դէմս քարտենի, ի յանապատիս, որ կոչի Սրխզաու վանք, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, որ է հանդէպ Վարագայ աստուածաբնակ լերինն, ի խնդրոյ երջանիկ, առաքինասէր և պատուական կրօնաւորի Կարապետի, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց՝ հաւրն իւր Զաքարիաի ե մայրն իւր Թամթայի, ե հարազատ եղբաւրն իւր Մկրտչի, լինել նմա յայսմ աշխարհիս առողջ կենաւք և յերկար ժամանակաւք...։*

Հետ. ստացող՝ Գրոց

բ

Գրոցո** զայս գիրքս, ի Բարերդոյ գերութիւնն, ազատեցի ի տաճկի ձեռացն, ով որ կարդայ աստուած-ողորմի ասացէք Խիրանշի ազային և Նանայ խաթունին։

* Հիշատակվում են ստացողի բազմաթիվ ազգականները, հետաքրքիր են հետևյալ անձնանունները՝ Ամիր-Լուս (արական), Աւան (ար.), Սրթլալ (իգական), Ղուէն (ար.), Բուլղա (իգ.), Խոնզգէ (իգ.), Սուլթան Նուզդա (իգ.), Խնդու (իգ.), Գիշուկ (ար.), Զուրաբեկ (ար).։

** Անձնանուն է։

669.

ՃԱՇՈՑ

Երևան 7477

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Ղրիմ քաղաք

ա

584բ ...Յիշեցէք ի Քրիստոս, ով եկեղեցական դասք և ամենայն հաւատացեալք, յարժանաւոր և յընդունակ աղաւթս ձեր զստացաւղ Ճաշոց գրոյս՝ զծերունի քահանայն զԹադէոս, և զծնաւղսն իւր, զՄովսէս արեղայն, զԿարապետն, զՅովհաննէսն, զՆերսէսն, զՌոստակէսն, զՎրթանէսն, զքոյրն զՍիրմայն, զեղբաւրորդիսն իւր զԱստուածատուր քահանայն, զՅովակիմն, և զԲաւնրաւսն, և զՎարդանն՝ տղայիւք իւրովք, որդւովք, որ են ժառանգողք մատենիս։ Զոր Թադէոս քահանայն յիւր հանգստեան աւրն այսպէս էր հրամայեալ, թէ Ճաշոյ գիրքն կենայ մեր եղբարցն և ազգաց յիշատակ և ի ժառանգութիւն որդւոց Վարդանայ, ձեռամբ և իշխանութեամբ Աստուածատուր քահանային և Յովակիմ բռայխին, եղբաւրորդեացն իմ՝ զՍարգիսն, զԱրկադէոսն, զՀերն, զՄարտիրոսն, զՏիրուհին, զՌոստակէս քահանայն, զԻգնատոսն, զԴաւիթն, զՍաքէոսն, և զամենայն արեան մերձաւորսն իւր, որ փոխեալ են առ Քրիստոս և որ փոխելոց են...։

Կատարեցաւ տառս ի Թվ. ՊԼ. (1381), յաւղոստոս ԻԶ. (26), ի քաղաքս Ղրիմ, առ ոտն սրբոյն Սարգսի զաւրավարի, յեպիսկոպոսութեանն տէր Ստեփանոսի, և յառաջնորդութեան եկեղեցւոյ սրբոյ Յովհաննէս կրաւնաւոր քահանայի, և աթոռակալի այսմ Նահանգի՝ բաբեփառ և ուղղադաւան վարդապետի, հո[ւ]սկ յետոյ և զմեղաւոր հոգս՝ զՍտեփանոս գրիչ, յիշման արժանի արարէք, թէ [և] ոչ եմ արժանի յիշատակի, և զծնաւղսն իմ՝ զՆատեր ժրաջան գրիչ, և զմայրն իմ, զեղբարսն իմ մելանաւորք՝ զԱւետիս, զՅովանէս, զԳրիգոր եպիսկոպոս, զփոխեալսն ի Քրիստոս, և զքուերսն իմ. եւ որք յիշեն՝ որպէս յիշեն նոյնպէս և յիշին ի Յիսուսէ, որում փառք։

Եւ խոշորութեան և սղալանաց մի մեղադրէք, զի այսչափ կարացի գրմրել։

ԺԴ. դարավերջի ստացող՝ Սարգիս
վայր՝ Մոդկան վանք

բ

589բ ...Արդ, ես՝ նուաստս և անպիտան ծառայս զՍարգիս կրաւնաւորս, և զեղբայրն իմ զԴանիէլ կրաւնաւոր, և զծնաւղսն իմ զՄոդիկն, և զմայրն իմ զԵտիլմելիքն, և զեղբայրն իմ զԳրիգորն, և զՆերսէս, զՄարտիրոս, և զՍահակն, զՔրիստոսատուր, և զքոյրն մեր զԲանուկն՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, ընդ նմին և զմաւրքոյր մեր, որ աւգնական եղև գրոցս։

Արդ, կրաւնաւորս այս Սարգիս... վասն հոգևոր սիրոյն, զոր ու-

նէր առ աստուած և առ աստուածայինս, զամենայն զգոյս իւր վաճառեաց ե ստացաւ զցանկալիս ամենեցուն՝ զՏարոյցգիրքս, զաւակ ի Սիոն և ընտանի յԵրուսաղէմ, կտակ անջնջելի և արձան անփշրելի, ըստ հրամանի աւետարանին՝ եթէ զամենայն զոր ունէր, արկ զոյիւ. չափ զկեանս իւր...։

Ես՝ Սարգիս աբեղաս և գեղբայրն իմ զ'ԻաՑիէլ կրաւնաւոր գրեցաք զՏարոյցգիրքս ի հազար սպիտակ, վասն յուսոյ արքայութեան և յիշատակ ննջեցելոց մերոց, և շնորհեցաք մեր վանիցն՝ առ դրանն սուրբ Նշանին, մականուն Մռղկան վանք, յիշատակ յաւիտենական։ Եւ եթէ ոք իշխանարար կամաւք. լրրութեամբ, կամ պատճառանաւք յանդգնութեամբ ձեռնամուխ լինի զրոցս և յափշտակեսցէ՝ մասն զՅուդային առցէ և բաժին զԿայենին և զխաչահանուացն, և ջնջեսցի անուն նորա ի գրրութեանն կենաց։*

## 670.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Երևան 5352 (տես նաև 1395 թ.)

Գրիչ՝ Յոհաննէս

...Արդ, գրեցաւ սայ ձեռամբ մեղսաշներկ ե յանյարմար գրչի Յոհաննիսի, ի խնդրոյ սրբասնեալ և անյաղթ փիլիսոփային Յոհաննէս կրաւնաւորին, ի վայելումն անձին իւրոյ, և իւր եղբաւրն՝ սուրբ քա-
259ր հանային Ստեփաննոս, և յիշատակ իւր ծնողացն, ‖ հաւրն՝ Աստուածատուր քահան[այ]ի, ե մաւրն Թագուհի, և զամենայն արեան մերձաւորսն իւր, զտէր Մարգարէն, զՄկրտիչն և զայլսն. զարձեալ, զերից երանեալ զբաբունապետն մեր զՍիմէոն, հանդերձ ծնողաւք, որ զաւրինակն շնորհեաց. և զամենայն կրօնաւորսն՝ զԹադէոս, և զՍտեփաննոս, զԱստուածատուր, և զՎարդան, զՄխիթարն, և զԹումէն, զՅովաննէս, և զՍտեփաննոս, այլ և Ստեփաննոս հայր վանաց, զարձեալ զՍիմէոն՝ զփոխեցեալն ի Քրիստոս, ե զամենայն հաւատացեալս ի Քրիստոս աստուած մեր, ընդ նմին զանհարմար գրիչս զՅոհաննէս և զիմ ծնողսն, ե որ զմեզ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Եւ ասացէք ուղեղ սրտիւ երանի որում թողութիւն և զայլսն։ Ի թվ. ՊԼ. (1381)։

## 671.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Երևան 1136 (տես նաև 1399 թ.)

Գրիչ՝ Սարգիս

221ր ...Գրեցաւ մեկնութիւն Արարածոցս ձեռամբ մեղապարտի Սարգըսի սուտանուն քահանայի..., ի թվաբերութիւնս Հայոց ՊԼ. (1381),

---

* Ձեռագրում կան նաև 1505, 1532 և 1587 թվականներից նվիրաբերական բովանդակությամբ հիշատակարաններ։

*գրեցաւ հրամանք Մովսէսի սուրբ մարգարէի։ Քրիստոս աստուած ողորմեսցի* Յոհաննէս *աբեղայի ծնողացն, որ զօրինակս շնորհեաց։* Յոհաննէս *հոգւո որդի էր* Յոհաննէս *վարդապետի և յետո վարդապետեցաւ և ինքն։*

## 672.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 8386*

*Գրիչ՝* Պետրոս

313ա *...Ի թվականութեանս Հայոց ՊԼ. (1381) գրեցաւ սուրբ աւետարանս այս ձեռամբ անարժան իրիցու* Պետրոսի, *ի խնդրոյ պատուական և ընդրեալ քահանային* Ստեփաննոսին, *և ի յիշատակ և ի վայելումն աստուածատուր զաւակացն՝* Մխիթարին, Մարգարէին, Դաւթին, Յովանիսին *և ամենայն զարմից իւրոյ, ամէն...։**

## 673.

### ՃԱՇՈՑ

*Երևան 7447 (անս 1388 թ.)*

*Գրիչ՝* Կարապետ
*Վայր՝* Ղրիմ

494ա *...Այժմ աղաչեմ զամենեսեան, զդասս լուսեղամից, որք հանդիպիք այսմ աստուածային խրախճանութեան, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զփափագմամբ զստացողն սորա...։***

494բ *Նաև, թէ արժանի համարիք, զանարժանս և զսուտանուն քահանայ զ*Կարապետ*՝ զծողս սորա, և զծնողսն մեր՝ զհայրն մեր զ*Առուծն, *և զմայրն մեր զ*Ոսկիտանէն *[յիշեսջիք]...։*

*Կատարեցաւ սա, որ կոչի Տարոյգիրք ձեռամբ յոգնամեղ* Կարապետ *քահանայի, ի թվականութեանս Մեծաց Հայոց ՊԼ. (1381), առ ոտս սուրբ Երրորդութեանն, աւարտեցաւ սա յամսեանն յունիս ամսոյ Զ. (6), և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս, ամէն։*

---

* *Շարունակության մեջ գրիչը խնդրում է հիշել ստացողի և իր բազմաքանակ ազգականներին։*

** *12 տող գատարկ է թողնված ստացողի և նրա մերձավորների անվանց գրանցման համար։*

ՊԼԱ 1382

## 674.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՐԳԱՐԷՈՒԹԵԱՆՆ ԵԶԵԿԻԷԼԻ, ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑԻՈՅ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԴԱՆԻԷԼԻ, ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

*Օքսֆորդ,* Ms. Arm. E. *35, Տիրայր վրդ. 88, թղթ. 121, էջ 1632—1635 (տես նաև 1405 թ.)*

*Գրիչ՝* Յոհ[աննէս]
*վայր՝* Ճանդեպ Ոստան քաղաքի

ա

186ա ...*Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսրբոցս զայսոսիկ մեկնութիւն, զոր արարեալ է սուրբն* Կիւրեղ Աղեքսանդրու *հայրապետն և տիեզերալոյս վարդապետն եկեղեցոյ սուրբն* Եփրեմ Խորին Ասորին՝ *զմեկնութիւնս Եզեկիէլի մարգարէի։ Ընդ նմին և զմեկնութիւն Դանիէլի մարգարէի, զոր արարեալ են սուրբ հարքն և հայրապետքն՝* Եփրեմ, Հիպողիտեայ, Ստեփաննոս. *զորս վերստին դարձեալ հաւաքեաց ի մի զամենեսեան զսոսայ սուրբ վարդապետն* Վարդան, *և առատացոյց լուսաւոր բանիւք, և եթող անջնջելի յիշատակ իւրն ե արեանառուացն, և ետ ի վայելս մանկանց եկեղեցո։*

*Սոցին փափաքող եղեալ ես՝ ապիկարս և յետնեալս ի մանկունս նոր Սիոնի,* Յոհ[աննես], *և գծագրեցի մեղսամած մատամբ իմով,* հրամանաւ սուրբ րաբունեացն մերոց* Յոհաննիսի *և* Կիրակոսի, *որ կան բնակեալ ի սուրբ և հռչակաւոր ուխտն, որ կոչի* Սուրբ Խաչ, *ի գաւառին, որ յորջորջի* Սրբատկերտ, *հանդէպ քաղաքին* Խիզանայ: *Արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք մակացութեամբ, զերանելի վարդապետքս* զՅոհ[աննես] *և* զԿիրակոս, *առաջի գործառութեան ահաւոր և սարսափելի զենման որդւոյն աստուծոյ յիշեսջիք։ Ընդ նոսին և զարտասանութիւնս ամբասիր** հնգից բազմախոնջ ձեռին* Յոհ[աննես]ի, *որ գրեցի փափաքելի և տենչալի սրտիւ, յիշատակ ինձ, և ծնաւղաց իմոց, և ամենայն արեանառուաց, այլ և վարժարան ինձ, և եղբարցն իմոց՝* Յակոբ *կրաւնաւորի, և այլոցն, ե որոց հանդիպի զկնի մեր։*

*Դարձեալ, կրկին աղաչեմ յիշման արժանի առնել զամենայն վերոյգրեալքս ի սմայ, ես առաւել* զՅոհ[աննես] *կրաւնաւոր, որ սիրեաց և ընդունեցաւ և օգնական եղև <և> զօրինակն շնորհելով, այլ և զեղբայրն իւր* զՍտեփաննոս *կրաւնաւոր՝ զփոխեալն ի Քրիստոս յայսմ ամի, որ բազում տրտմութիւն եղև եղբօրն և ամենայն սիրե-*

---

* *Ձեռագրում «իւրով»։*

** *Ձեռագրում «ամբասար»։*

լեացն։ Նայ և Մկրտչին, որ պատրաստէր զհացն, և Վարդան քահանային, որ զընակութիւն շնորհեաց, և ամենայն միեղէն եղբարցս, որ ի սմայ ժողովեալ են։ Եւ զԹումայ կրաւնաւոր, որ զաւրինակն շնորհեաց զԴանիէլին։* Աղաչեմ յիշել զամենայն երախտաւորսն մեր՝ զհոգևոր և մարմնաւոր, և յիշելոցս և յիշողացդ ողորմեսցի տէր Յիսուս Քրիստոս, ամէն։

Արդ, գրեցաւ սայ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին և սըրբոյն Գէորգա զօրավարին, հանդէպ Ոստան քաղաքի։ Որք աւգտիք ի սմանէ կարդալով կամ օրինակելով, խոշորութեան և սխալանացն անմեղադիր լերուք, զի կար մեր այս էր։ Ի թվականին Հայոց ՊԼԱ. (1382)։

Հեռ. ստացող՝ Զաքարիայ

Բ

187ա Զստացող գրոցս Զաքարիայ վարդապետս, և զծնաւղսն իմ, և զեղբարսն, և զամենայն արեան մերձաւորս իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս ի Քրիստոս, յիշեցէք ի տէր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։**

## 675.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7601

Գրիչ՝ Գէորգ
վայր՝ Երուսաղէմ

94ա Յամի ութհարիւր Հայոց թուի
Եւ յերեսուն ակնհալ և մի (1382),
Ես Գէորգ նւաստ, մեղաւք ի լի,
Եւ ծառայ ծառայիցդ Քրիստոսի,
Եկի ի տեղիքս այս ցանկալի,
Ի գերեզման տեառն անմահի՝
ՅԵրուսաղէմս պանծալի
Եւ ի քաղաք մեծ արքայի։
Արդ, դուք, որք դայք զմեր կնի
Եւ հանդիպիք սմին իրի, յիշեցէք ի Քրիստոս զանարժանս Գէորգ և զծնողսն իմ՝ զԱռաքել քահանայ, նաև զամենայն արեան մերձաւորսն՝ եղբարքք և զարմիւք, որք կարդայք կամ աւրինակէք, և դուք յիշեսջիք։ Նայ և զեղբայրս մեր զՍնայի*** յիշեսջիք առ տէր Յիսուս, հանդերձ ծնողիւք, որ աշխատեցաւ ի թուխտս և ի թանաք և ի ծաղիկ, բայց ես մեղապարտ ի յայլակերպութենէն ի հետ դրեցի, ոհ։

---

* Խոսքը Դանիելի մարգարեության մեկնության գաղափար օրինակի մասին է։
** Սույն հիշատակագրության ժամանակն անհայտ է. գրված է բոլորագրով։
*** 157ա էջում, խորանի մեջ, ծաղկող Սնային գրել է «Ցեսայի՝ ծաղկող սորա, յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր»։

## 676.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4171 (տես նաև 1411, 1650 և 1727 թ.թ.)*

*Հետ. ստացող՝* Էլբէգի

3r *Արդ, ես՝ նուաստ ծառայս աստուծոյ* Էլբէգի *տեսի զսուրբ աւետարանս ի ձեռն այլասեռից ի գերութիւն կրկին անգամ. և ես, յոյժ զառնացեալ և հեղձամղձուկ սրտիւ տռչորեալ, բազում աղերսանօք և սէր ցուցանելով, <և> ետու Ճ. (100) դ[ահե]կ[ան], այլ և թափեցի զտիրական հրամանքս, յիշատակ ինձ, և ծնաւղացն իմ* Բուղիկա, *և մաւրն իմոյ* Գոհարին, *ի վայելումն որդո իմոյ* Ներսէս *քահանայի, զոր տէր աստուած վայելել տացէ խորին ծերութեամբն, և որք այլ աշխատեցան ի տուրք և ի գին սորայ՝* Խէրադին *ներկարարն, և մայր՝* Թաջխաթունն, *և* Գոհար-խաթունն, *և դուստրն իւր՝* Նազրաթ: *Աղաչեմք զձեզ դասք սրբայղան և ղլուսերամ քահ[անայից], յորժամ կարդայք առաջի սուրբ սեղանոյն. յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեզ, և զերախտաւոր զհոգևոր հայրն մեր զտէր* Ստեփանոս, *և զորդին իւր* զՅակոբ *քահանայ, զի յոյժ կամակից եղեն և առաջնորդ սուրբ աւետարանիս, և զաւակին իմ* Ներսեսին *ուսմանն, զոր տէր աստուած վարցայհտառյց լինի հարիւրայպատիկ և ի հանգերձելումն, ամէն։*

*Թվ. ՊԼԱ. (1382)։*

## 677.

### ԳԻՐՔ ՑԱՂԱԳՍ ՎԵՑՕՐԵԱՑ ԳՈՐԾՈՑ ԱՐԱՐՉՈՒԹԵԱՆ, ԲԱՐԹՈՒՂԻՄԵԱՑ

*Երևան 1656*

*Գրիչ՝* Մխիթար

111r *Զտղքատս և զունայնս ի մարմնոյ արդեանց և առաւել ի բարի գործոց* զՄխիթար *բանի սպասաւոր յիշման արժանի մաղթեմ, բանի սիրողք, զի ի գիշերի և ի տըւընջեան թաքնաբար և երկիւղիւ սևագրեցի, վասն տառապանաց աղքատութեանց, որ կայ յերկար ի մարմինս սեռաբար։ Եւ անմեղադրութիւն խնդրեմ խոշորութեան և սխալանաց, զի վասն կարեաց և անձեռնահաս լինելոյ այսչափս ժամանեցի, ի թվ. ՊԼԱ. (1382), Լ. (30) օր։**

---

** Ցանկանում է ասել, որ ձեռագրի ընդօրինակությունն ավարտել է 30 օրվա ընթացքում (ձեռագիրը բաղկացած է 111 թերթից=8,4 տպ. մամուլ)։*





## 678.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍՏՈՐՈԳՈՒԹԵԱՆՑ ԵՒ ՑԱՂԱԳՍ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԳՐՈՑՆ ԱՐԻՍՏՈՏԵԼԻ, ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՐՈՏՆԵՑՒՈՅ

*Երևան 5931 (տես նաև 1444 թ.)*

*Գրանցող և խմբագրող՝* Գրիգոր Տաթևացի

ա

119բ *Ի թուականութեանս Հայոց երկքարից և հարիւրոց և երից տասանց երկ թուոց (2.4.100+3.10+2+551=1383), հաւաքեցաւ լուծմունք սակաւ ինչ ստորոգութեանց և պերի արմէնիաս գրոցս, մատամբ տխեղծ և անարհեստ ձեռին Նիրհուն հսկողի, բանին խնդրողի, ի լուսաւոր բանից մեծ վարժապետին իմ* Յովհաննու Որոտնեցւոյ, *առ ի վարժումն ածխոյժ մտաց ուսումնասիրացդ։ Արդ, թէ գտցի ինչ ի սմա ըստ կամաց ձերոց՝ տեառն շնորհք և վարժապետին իմ, իսկ նուաղն՝ մերումս տկարութեան, զի միայն փոյթ ունէի ոչ թաքչել բառ ինչ կամ բան, այլ և զպակասն լնուլ և զաւելորդն կշռել։ Եւ սգալանաց մերոց պարտեաց թողութիւն խնդրել աղաչեմ...որ և մաղթեմ զգաղափարօղսդ գրել և զսակաւ յիշատակս, զի և դուք գրեսջիք ի դպրութիւն կենաց, ամէն։*

*Այլ և զհամշիրակն եղբայր՝ զ*Գէորգ *վարդապետն* Եզնկացի, *որ աշխատեցաւ սրբագրելով զսա յիշեսջիք ի տէր, աղաչեմ։*

*Գրիչ՝* Յոհաննէս

բ

*Այլ և զ*Յոհաննէս *վարդապետ՝ զգրող այսմ տառի, գրեա աստուած ի | | | որդոյ քո միածնի, զվարդապետն աստուածաբնակ ուխտին* Մեծոփայ *վանից վանականի, ամէն։*

## 679.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Փիրգ. 6273, էջ 169 (Ղալաթիա)*

*Հետ. ստացող՝* Սարգիս
*վայր՝* Տրապիզոն

ա

*Ես՝ մեղուցեալ ծառայս աստուծոյ* Սարգիս, *որդի* Մանկաերին, *բնական ի* Խախտեաց *գաւառէն, ի* Բաբերդու, *ի գեղջէն* Գոգուայ, *ի թուիս ՊԼԲ. (1383), որ* Փալաա *ղանն զ*Կաֆան *էգարկ և զինչ ելն (*) և*

զսուրբ աւետարանս զերի տարան ի յԱւրաբազարն, ի յէկիկէզն, ես՝ Սարգիս և Յովանէս՝ Մեհրազի որդին, հանդիպեցաք ի հաւն,* և գնեցաք զսուրբ աւետարանս, ամէն խա[ր]ճով նստաւ ինձ և Յովանիսին ճխ. (140) սպ[իտակ]. ես զՅովանիսի բաժինն ի յինքն վճարեցի և սուրբ աւետարանս եղաւ ինձ, յիշատակ հոգւոյս ե մարմնոյս, ի թուիս ՊԼԳ. (1384) բերի ի Տրապիզոնս և ետու ի Չարխափան սուրբ Աստուածածինս։

Հետ ստացող՝ Նարատին
վայր՝ Աւթուզի վանք

Բ

Նոյնօրինակ և ամենագովելի այս Նսրսսսինս մականունն Նիկոլայոս՝ ստացաւ զսուրբ աւետարանս...և ետ ի վանս Աւթուզին, որ է յանուն սուրբ Կարապետին և Մկրտչին Յովհաննու։**

680.

ՔԱՐՈԶԳԻՐՔ ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍԻ

Երևան 2259

Գրիչ՝ Սարգիս
վայր՝ Մակու

297բ ...Արդ, գրեցաւ քարոզգիրքս այս ի մենաստանիս ի Մակու, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի, կա[յ] և առ ոտն կացեալ մեր իմաստուն հռետորի Կարապետ րաբունապետի, ձեռամբ նուաստ և տրուպ Սարգսի սպասաւոր[ի] բանի, ի նեղ և ի դառն ժամանակի, զի սաստկացեալ էր մահտարաժամն վասն ծովացեալ և բազում մեղաց մերոց, ի թվականիս Հայոց ՊԼԲ. (1382), այլ զրաւ եղև ի միւս ամն (1383)։ Արդ, որոց և հանդիպի սա, գնելով կամ օրինակելով, յիշեսցիք ի մեղսաքաւիչ և ի մաքրափայլ յաղօթս ձեր զիս՝ զգծողս զՍարգիս վարդապետ, որ բազում և դառն աշխատանօք գրեցի զսա, մի՝ զի անվարժ էի գրոյս, և միւս՝ զի ժամանակս ձեռք չէր ի տալ, այլ և զծնողսն իմ զՅովանէս և զէլխաթուն, և զեղբարսն իմ՝ զԹումաշահ և զՎարգանշահ, և զամենայն արեան մերձ[աւ]որքն իմ, այլ և զՄաթէոս վարդապետն, որ զօրինակն անխնա կուշնորհէր, և Քրիստոս աստուած զյիշողքն յիշէ յարքայութիւնն, ամէն, եղիցի, եղիցի։

* Իմա՝ հօն — այնտեղ։.

** Նարատինի հիշատակարանը անթվական է. հայտնի է սակայն, որ նա տէր է դարձել ավետարանին 1383 թվից տարիներ առաջ։ Ըստ Փիրղալեմյանի Աւթուզի վանքը գտնվում է Կաֆայում։



113—35

## 681.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Հալէպ, սր. Մնկ. 6, Սիւրմ. Ա. էջ 79 (տես նաև 1506 Թ.)*

*Նորոգող*՝ Արիստակէս Սեբաստացի
*վայր*՝ Կամախ, Աւագ վանք

514 *Եւ արդ, սուրբ աւետարանս այս, վասն անարժան չոշտփողաց, անկեալ էր ի ձեռն այլազգեաց, զոր ի տեղիս հատեալ էին և կորուսեալ՝ ի ղատաղարտութիւն անձանց իւրեանց։ Իսկ ոՄն քրիստոսասէր եւ յաստուածահաճոյ ժողովրդոց՝* Առաքել *անուն, ի* Կամխա *Ներքին երկրէն, ի գեղ* Կախմխոյն, *ազատեաց զսուրբ աւետարանս ի յայլազգեաց, և զպակասն գրել ետ և եդ ի գեղ* Կախմխին, *ի դուռն սուրբ Աստուածածնին, առ ի յիշատակ իւր, և ամուսնոյն իւրոյ* Պլաւբին, *և զաւակաց իւրոց՝* Յովսէփին, Պաւղոսին, Զաքուխին, *և դստերաց իւրոց՝* Գոճարին *և* Բէլուճոյ, *այլ և հաւրն իւրոյ* Յովսեփին, *և մաւրն* Մեծխաթունին, *և մամուն* Ըռանային, *նաև ամենայն մերձաւորաց՝ պարոն* Առաքելին, *և իւր լիցի բարեխաւս սուրբ աւետարանս առ Քրիստոս՝ ի թողութիւն մեղաց նոցա. եւ այլ ոչ ոք չունին իշխանութիւն ծախել կամ գրաւել զսուրբ աւետարանս ի յիւրոց, կամ յաւտարաց, կամ գեղացի։ Իսկ եթէ յանդգնի ոք գաղտ կամ յայտնի և հանէ զսա ի դրանէ սուրբ Աստուածածնին՝ ընդ բանադրանաւք սրբոց հարցն եղիցի, աստ մի հասարակեսցէ զաւուրս իւր, և ի հանդերձեալն ընդ Հրէիցն եղիցի մասն նոցա։ Բայց թէ ահ լիցի կամ խռովութիւն, խնամով պահեն դեղին աւագերէցն և տանուտէրն, ի յամրոց ղրկեն, և ի հութ տեղաց ի զատ պահեն, և փոխանակ յաշխատանաց վարձս յաստուծոյ և ի սուրբ աւետարանէս առնուցուն՝ ընդ միոյն հարիւր։ Այլ և յիշեսջիք զայժմու ժամանակիս քահանայքն, որ ի յաստուածապահ գեղս յայս կան՝ զծերունի* Երեւան *երէցն, և զ*Պետրոս *աւագերէցն, և զ*Յովճաննէս *նորընծայն, և զբարեպաշտ տանուտէրքն՝ զ*Յոճաննէս *և զ*Պարոնակն, *և զայլս ամենայն։*

*Բայց գրեցաւ պակասորդ սուրբ աւետարանիս և կազմեցաւ ի մեծափառ սուրբ ուխտս, որ կոչի* Աւագ վանք, *ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և սրբոց Առաքելոցն, ձեռամբ իմով՝* Արիստակէսի Սեբաստացոյ, *վերջին սպասաւորի սուրբ ուխտիս։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, զսրբամիտ ընթերցողսդ, յիշեսջիք զպարոն* Առաքելն *և զիւրսն ամենայն, նա և զիս եւ՝ զծրող սորա, և զամենայն երախտաւորսն մեր, զերջանիկ րաբունին իմ զ*Գէորգէոս, *զվերափոխեալն առ Քրիստոս, զկենդանիսն և զփոխեցեալսն առ Քրիստոս...։*

*Բայց եղև զրաւ սոշա ի Թվ. ՊԼԲ. (1383), աւղոստոս ամսոյ ի մինն, ի փառս Քրիստոսի։ Ո՜հ ոհ, դառն ժամանակիս, զի յամենայն կողմանց աւերք եղև և մահտարաժամ։*

## 682.

### ՃԱՇՈՑ

*Երևան 4656 (տես նաև 1365 և 1560 թ.թ.)*

*Հետ. ստացող՝* Ուլուպեկ
*վայր՝* Ղրիմ

506ա *Զվերջին ստացաւղ սուրբ գրոցս զպարոն* Ուլուպեկն, *որ ստա-ցաւ զսա ի հալալ վաստակոց իւրոց և եդ յիշատակ ի սուրբ Սար-գիս յեկեղեցիս, յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և եղբարց, հօրն իւ-րոյ պարոն* Շահինշային, *և մօրն* Զումլայ խաթունին, *և եղբարց իւրոց՝*
506բ Տուկալպեկին *և* Նիկողո || սին...:

*Ի թուիս Հայոց ՊԼԲ. (1383) և դեկտեմբեր ամսոյ ի Ա. (1) գնեց պարոն* Ուլուպեկն *զսուրբ մատեանս՝ Ռ. (1000) սպիտակ, ի* յԱւետիքեն, *և է այս Աւետիքս եղբայր* Ցովել *աբեղին, և սոքա որդիք* Ցովանեսին, *և նա* Սարգիս *քահանային, և են սոքա յազգէ* Նատե-րանց:*

## 683.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3303 (տես նաև 1300, 1367, 1553 և 1087 թ.թ.)*

*Գրիչ՝* Առաքել
*վայր՝* Ապահունեաց վանք

120բ *Քրիստոս աստուած, ի քո միւսանգամ գալըստեանն ողորմեա* Հռեփսիմեայ *և ծնաւղաց իւրոց, հաւրն* Վարդերեսին *և մաւր իւրոյ* Ծաւճարին, *և թող զիւրեանց յանցանոն, զի յամենայն ժամ ողորմու-թիւն կառնէ վանաց՝ ի ձէթ և յամենայն պէտս, և ի գիր գիր մեծ խալկինն ի վանքս.*** *և այժմ աղաչեմք զձեր սրբութիւնդ, զի ով ոք բնակի ի սուրբ ուխտս՝* յԱպահունեաց *վանքս, և պատարագէ զՔրիս-տոս ի սուրբ Նիկողաոսի տաճարս, ի ժամ սուրբ պատարագին, յի-շեցէք* զՀռեփսիմեն, զՎարդերեսն *և* զԾաւճարն, *և մեղաց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ, որ պարգևէ զարքայութիւնն նոցայ և ամե-նայն հաւատացելոց: Գրեցաւ ի թվիս ՊԼԲ. (1383), յիշեցէք զգրիչս* զԱռաքել *սարկաւարգս:*

---

*Հիշատակարանը եղծված բնագրից ընդօրինակել է 1560 թվականին ձեռագրի կազ-մող Եօլպէյ Նազաշ սարկավագը:*

*** Անհասկանալի այս բառերը գուցե կարելի լինի սրբագրել այսպես՝ «և եդիր գիւր մեծ խալին ի վանքս»:*



ԳԼԳ 1384

## 684.

### ՃԱՇՈՑ

Երևան 7402

Գրիչք՝ Յովհաննէս և Մարկոս
վայր՝ Կաֆայ

516բ ...Եւ մեք՝ յետնեալքս՝ Յովհաննէս երէց աղայ հասակաւ, և ես՝
Մարկոս Թարմատար կոչեցեալ, անուամբ և ոչ գործով ի կարգ երի-
ցութեան, անպարապ ձեռնարկեցաք ի սա. ի ծննդենէն փրկչին մինչ
ի յարութեան զատկի գրեաց Յովհաննէս վերոյգրեալ երէց, յոյժ աշ-
խատանաւք, երկրորդ՝ ի ծաղիկ և ի կապ, և ի յարութենէն փրկչին
մինչ ի վերջսն՝ ես անարժան Մարկոսս գրեցի, հրամանաւ և ծա-
517ա խիւք եղբաւր ‖ մերոյ Մարտիրոս քահանայի՝ վեհականի և ճշմար-
տի, որ ի կանուխ ժամանակաց հետամուտ եղեալ փափագելի տենչ-
մամբ իւրով սիրոյ սորա, ետ գրել զսա անպիտան ձեռացս մերոցս,
որդւոյ իւրոյ Յովհաննէս երիցու՝ գրչի, և յետնեալ անպիտան Մար-
կոս գրչի, ամենայն հոգաբարձութեամբ, անհանդիստ հոգւովք երկնեալ
ի քառակս եղանակս՝ զտիւ և զգիշեր, ամենայն աւգնականութեամբ,
եւս առաւել աղաւթիւք և խնդրուածովք, վասն առաւել և ջերմ սի-
րողաց սմին, յորդորելով զհոգեոր և զխոստովանող զորդիսն իւր և
զհաւատարիմսն յուսով՝ զերեսին եղբարսն հարազատսն՝ զՅովանէսն
և զՄելիքսեթն և զՄկրտիչն, ի հալալ արդեանց իւրեանց ամենայն
ծախիւք յիշատակեցին ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ անջնջելի։
Արդ, խնամաւք խնամակալ էին եղև դրաւ սորա ի ժամանակս
յոյժ անբարի, զի վասն ծովացեալ մեղաց մերոց կողմս Հիւսսական
խրատուք չարին ի գումարի գոլով, իշխանք և հազարապետք զմի-
մեանս սատակեն. կամք մնալով անյիշաչարին և անոխակալին՝ այց
առնել համայն իւրայոցս, զի մի գերեալքս և վայրատեալքս ի վայրս
նժդեհութեան կրկին կողոպտեսցուք մեղաւք մերովք...։
517բ ...Կատարեցաւ ի Թուաբերութեանն Աղքանաղեան և Յաբեգա-
կան տումարի ԳԼԳ. (1384), և ըստ նորում շրջանի Յ. (300), և ի
գալստենէ կենարարին ՌՅԶԶ. (1386), և յելիցն Ադամայ ի դրախ-
տէն ՑԳԹ. (6809)։ Ի հայրապետութեանն տեառն Թէոդորոսի և յե-
պիսկոպոսութեանն տէր Ստեփանոսի՝ տղայ հասակաւ, և յաթոռակա-
լութեանն տէր Յովանիսի Սեբաստացւոյ՝ իմաստնոյ և խոհեմականի,
ի Թագաւորութեանն մերոյ՝ տէր Թաղաւսրեսցէ և խնամէ, և յաշ-
խարհակալութեանն տաճկաց Թախթամիշ ղանի. Ապա աղզի, յաշխար-
հիս Հոնաց և ի յերկիր Խրիմի, ի հոյակապ և ի հռչակաւոր մայրաքա-

*դաքիս, որ կոչի* Կաֆայ, *ընդ ափն ծովու, Հաղինացւոց իշխանութեանն, ընդ հովանեաւ սուրբ Յակովբա Մծբնայ հայրապետի։ Եւ որ սրտի մտաւք և յաւժարական սիրով յիշեսցէ զյիշատակեալքս ի սմայ յի-շեալ [լիցի] և նա ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։ Եւ որ հաւատով զամէնն ասասցէ, և նմա ողորմեսցի Քրիստոս աստուած ի միւսան-գամ գալստեան իւրոյ, որ է աւրհնեալ յաւիտեան։*

*Եւ մի ոք անաւաղ շաւշափեսցէ զսա կամ ի գետնի զնիցէ, այլ զգուշութեամբ սպասաւորեսցէ սմա, երկու կամ երիւք դաստառակաւ, զի զգեցուսցէ զնա զգեցուցանաւղն Ադամայ, որում փառք յաւի-տեան, ամէն։*

## 685.

## Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Վիեն. 400, Տաշ. Ցուց. էջ 934 (նաև 1315 և 1650 թ.թ.)*

*Հետ. ստացող՝* Սարգիս
*վայր՝* Օշական

328ա *Ի թվականիս Հայոց* ՊԼԳ. *(1384) ես...*Սարգիս *եւ ամուսին իմ* Ալթա-ղան, *ի ժամանակիս յորում բազում նեղութիւնք...եղեւ աշխարհիս Հայոց, որ բազդ | | | եկն եւ աւերեց զամենեսին։ Ի յայսմ ժամա-նակիս սուրբ* օ*ետարանս ի գերութեան էր յառ Թուրքմանին եւ | | | ի մէջ եմուտ եւ չկարացին առնուլ։ Ես աւաք* Սարգիսս *բազում ջա-նիւք աշխատեցայ զիմ գլխոյնին (*) Դծ. (400) դ[ահե]կ[ա]նի, ու Ա. կապոց Ճ. (100) գ[ահե]կ[ա]նի՝ տվի ի յիմ հալալ արդեանց եւ գնեցի զսուրբ աւետարանս, յիշատակ ինձ եւ ամուսնի իմոյ* Ալթաղին, *եւ ծնողաց իմոց* Հեղուին, *եւ.* Արուսխաթունին, *եւ իմ սրտի աւժարու-թեամբս ետու զայս ի գերեզման սուրբ* Մեսրոպ *վարդապետին, եւ քահանայքն խոստացան տարոջն Ի. ժամ. Ա. յաւուր յայտնութեանն, եւ Ա. յօուր յարութեան...։*

## 686.

## ԳԻՐՔ ՏՆՕՐԻՆՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ, ԹՈՎՄԱՅԻ ԱՔՈՒԻՆԱՑԻՈՑ

*Երևան 68*

*Վայր՝* Նախիջևան

ա

29ա *Երկիրս զառն է և չնոր,*
*Սիրտս տրտում է և ժխոր,*
*Ցիմ ընկերացն եմ ես մոլոր,*
*Վասն այն կու գա զիրս խոշոր։*

Բ

51ա Ժուղլ* խիստ է և ժխոր,
Երկիրս չար է շմընդոր,
Աստուած առնէ շուտով անդորը,
Որ ազատիմ ի ծովյս խոր։

Գ

103ա Ի Հայոց ԳԼԳ. (1484). Սալիթաղեցի Սարսուն ֆրա Տերունական խոստովանահայրն կախուեցաւ։

Դ

160ա Մեծ հոգս եղև ինձ այս տարի,
Մահտարաժամս յերկիրս կու ընկնի,
Նախիջևան քաղաք կու անցնի,
Կու մեռանին շատ դարիպնի։

Ե

170ա Աստուած ողորմի Վախախին, ամէն։

Զ

186բ Ի տօնի սուրբ Թօմայի
Վարդապետին Աք[ու]ինացի,
Ֆրա Ջուանն առաքի
Առ ժողովուրդն Գողթանի.
Ցետև նորա խիստ շատ լացի,
Աստուած նորա առնէ բարի։

## 687.

## ՏԻՄԱՐ

Երևան 6815

Ծմրագրող և գրիչ՝ Յոհաննես

8ա Գրեցաւ տումարս, որ է ընթացք արեգական, զոր արարեալ է ումեմն իմաստակի՝ Սարգիս փիլիսոփաի, բազում աշխատանաւք, յաղագս դիւրահաս և հեշտագիւտ լինել ուս[ու]մ[ն]ասիրաց և տումարագիտաց՝ մանկանց եկեղեցոյ, որք ուգաիք և վարժիք ի սմանէ և կամ ուրինակէք, յիշեցէք յաղաւթս ձեր զպատճառ սորայ զՍարգիս փիլիսոփայն։

Եւ զիս՝ զմեղաւոր հոգս՝ զգրիչ սորա զՅոհաննէս յանցաւոր, որ բազում փափագանաւք ի խնդիր եղէ բանիս իմաստութեան, և զտի զաւրինակն առ քահանայի միոջ Ներսես անուն կոչեցեալ, և առեալ գաղափարեցի։ Եւ ըստ իմում տկարութեանս և սակաւ գիտութեանս յաւելի ի սմա

* «Ժուղլ» նշանակում է «զրույց», «աղմուկ»։

զժամք գիշերին, և զմասունք նորին, և զամիսք Եբրայեցւոցն և զՍարկաւագին, և զանփոխ եղանակքն, և զմոլոր աստեղացն զտիպսն և զանուանս՝ յիւրաքանչիւր տեղիսն, և զկենդանակերպսն՝ ըստ ազգաց, և զէ. (7) զաւտեացն զտիպսն և զանուանքն։ Վասն զի Սարգիս փիլիսոփայն անփոյթ էր արարել, աւելորդս համարելով։ Եւ ինձ յոյժ պիտանի եղև, զի շնորհաբաշխ հոգին, որ զրազումս նմա յայտնեաց, նոյն ինքն և զսակաւս մեզ բացայայտեաց, զի մասնակից եղեց աղաւթից նորա, և ձեզ՝ յիշողացդ մերոց։ Վասն զի երևի սայ իմաստուն մտաց գանձ յայտնեալ և աղբեր ջրոյ կենդանոյ բղխեալ, իսկ անմիտ և անհանճար մտաց՝ սինս և չընչինս, իբրև զմարգարիտս առաջի խոզաց։ Արդ, աղաչեմ զաւրինակաւղսդ, գրեցէք զսակաւ յիշատակարանս՝ յիշատակել զարարող սորին զՍարգիս փիլիսոփայն և զիս՝ զՅովաննես յանցաւորս, որ կցորդ եղէ նորին բանի ըստ իմ տխմարութեանս, ընծաեցի պտուղս յանբեր արմատոյ, և վարդ ի փշաբեր ոստոյ, և բան յանիմաստ մտաց, և ընծայս ի քարացեալ սրտէ, վասն զի իմաստք ոչ սպառին յանձնէ մեզուցելո, զի բարերար տէրն ծագէ զարեգակն իւր ի վերա չարեաց և բարեաց, և զցաւղ շնորհաց իւրոց ցաւղէ ի վերայ արդարոց և մեղաւորաց։ Բայց գրեցաւ ի թվիս Մեծ Հայոյն ՊԼԳ. (1384), իսկ Սարկաւագին՝ Յ. (300), ի Հոռոմին ՌՃԼէ. (1137), և յԵբրաեց[ւոց] ՋՁԵ. (985), յաւգոստոս ԻԷ. (27), ահկի ԺԶ. (16)՝ Մեծ Հայ[ոյն], և Եբր[այեցւոց]՝ իլուլ Թ. (9), և Սարկ[աւագի]՝ նաւասարդ ԺԷ. (17)· արեգակն ի կենդանակերպս՝ ի Կոյսն, աւուրս Թ. (9), ի գաւտիսն՝ յարեգակն աւուրս Թ. (9), ի գիրն Շ. Գ. աւր, աստիճանն՝ ԻԲՌՆ. (22400), հոլովն՝ ՅՁԳ. (383), ժամք տվ[ընջեան]՝ ԺԲ. (12). և մասն՝ ԻԱ. (21), և ժամք ¦գիշ[երոյ]՝ ԺԱ. (11), մասն՝ Թ. (9)։

## 688.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 3276

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ մերձ ի Խիզան

121ր Զնուաստ ծառայս յիշատակի արժանի արասջիք։ Ի թվականիս ՊԼԳ. (1384) գրեցաւ սուրբ և ոգեշահ մատեանս այս, զոր ի շնորհաց կարօղատուր հոգւոյն սրբոյ առեալ երիցս երանելի արգինաւոր ծերոյն Եւագրի մեծի և հզօր վարդապետի, յանապատիս մերձ ի Խիզան, սուրբ Խաչ անուն յարջաբջական, որք հանգիպիք այս մատենի Ներսէս անուն մեղաւորի*

* Ներսեսը գաղափար օրինակի գրիչն է։ Նրա հիշատակարանը թերի է ընդօրինակված։

## 689.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԱՂՕԹԻՑ

*Երևան 8280 (տես նաև 1371 և 1541 թ.թ.)*

*Հետ. ստացող՝* Կարապետ

630 *...Զստացաւղ գրոցս զ*Կարապետ *աբեղայ, և զծնողս իմ՝ զ*Մաթէոս *քահանայ, և զ*Օվաննէս *քահանայ, և եղբայրն իմ՝ զ*Գրիգոր *սարկաւագ, զքուրն իմ՝ զ*Հռոփսիմ, *և զքեռն իմ զ*Մխիթար *հայրապետ, և զեղբայրն իւր* Շնովոր, *զկողակիցն իւր զ*Տաւնայն, *և զամենայն արեան մերձաւորսն մեր՝ զորս յիշեցաք [ա̈] զորս ոչ կարացաք յիշել, զոր Քրիստոս աստուած ի միւսանգամ գալստեանն իւրում հատուցէ նոցա և մեզ զիւր երկնից արքայութիւնն, և որ երախտիք ունին...։*

*Եւ գրեցաւ ի թվ. ՊԼԴ. (1384), մեհե[կի] Ը.(8), փետրուար ԺԴ. (14), շաբաթ Լ. (30)։*

## 690.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երևան 4113*

*Եղբայր գրիչ* Յակոբի

470բ *...Վասն զի եղև աւարտումն հոգեշունչ տառիս ձեռամբ մանկահասակ շնորհալից կուսակրաւն քահանային* Յակոբ *կոչեցելոյ, որ և ի գրաւ գրոյս կոչեցաւ ի վերին տուղէն ի վերին առաղաստն, ի լուսեղէն խորա[նն, փո]խարէն երկաջան քրտանցն ի սմա, և եթող բազմա[պատիկ սուգ անմխի]թար և ինձ՝ հիքոյս և թշուառականիս | | | եղբայրն իմ։ Ի թվ. Հայոց ՊԼԴ. (1384), յունուարի | | | լսելով կամ աւրինակելով | | | թողութիւն մեղաց | | | ելով, զի փափագանաւք ցանկացաւ սմա | | |**

## 691.

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Ն. Ջուղա, Ամենափրկիչ, 181, Տ.-Ավետիսյան, Ցուցակ, էջ 49*

*Հետ. ստացող* Պօղոս

*Ես՝* Պօղոս *կրօնաւորս, որ միայն զանունս ունիմ և ոչ զգործք, ցանկացող եղէ այսմ հոգիարուխ և աստուածաշունչ տառիս...և ստացայ զսա ի հալալ ընչից իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, հօրն իմոյ* Էլտարին *և մօրն իմոյ* Հռիփսիմէ*...։*

*Թվ. ի ՊԼԴ. (1384)։*

---

* *Հիշատակարանը մաշված և խոնավացած լինելու պատճառով չափազանց եղծվել է։ Վերջին 10 տողից վերծանելի են միայն առանձին, ոչինչ չասող, բառեր։*





## 692.

### ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

Երևան 592

Գրիչ՝ Ղազար
վայր՝ Գողթան երկիր, Սինեական անապատ

ա

231ա ...Ցանկ ելեալ կատարեցաւ գծագրութիւն աղօթական երգարանի ծ[րագր]ութեամբ տխեղծ մատամբ անարժան | | | կրօնաւորի Կարապետի, [ի վայել]ումն անձին իմոյ և եղբօր ի[մոյ | | | ի և այլ ումն հանդիպի | | | հանդիպողաց այսմ տառ[ի] ուսանելով (˚) կամ գաղափարելով յիշեսջիք [զստ]ացօղ և զծնօղ սորին՝ զվերագր[եալքն], հանդերձ ծնօղօք...։

231բ ...Սկիզբն առեալ ի յերկիրն Որոտան՝ ի դրան սուրբ Կարապետին և աւարտեալ ի յերկիրս Գողթան՝ ի յանապատս Սինեական, ի դրան սուրբ Յովանիսիս, առ ոտս մեծ րաբունապետի Յոհանիսի, ի
232ա ժամանակս մ || ստէի*, վասն անհուն և ծովացեալ մեղաց մերոց, ի թուաբերութեան Յաբեթական տոմարիս ՊԼԴ. (1385) և ի փոքր թուականութեան ՅԲ. (302), ի Հռոմաեցւոց ՌԾ.**

բ

116ա Զստացօղ պատարագամատուցիս զԿարապետ դպիրն, և զհարազատ եղբայրն իւր՝ զՄկրտիչ մոնթն, և զծնօղսն իւրեանց յիշեցէք ի յանարիւն զենումն Քրիստոսի, և զիս՝ զանարժանս անուն՝ Ղազար սուտանուն քահանայ՝ ծրող սորին, յիշեցէք ի յաղօթս ձեր։

## 693.

### Ճ Ա Շ Ո Ց

Երևան 4870 (տես նաև 1490 Թ.)

Գրիչ՝ Զաքարայ
վայր՝ Աղթամար

ա

473բ ...Զոր տեսեալ զայսպիսի զանձս աստուածային և պայծառ լուսով, սրբազան և ընտրեալ և երից երանեալ եպիսկոպոսն տէր Թու-

---

* Առաջին տառը՝ «մ», գրված է անորոշ, բառն անհասկանալի է։

** Հիշատակարանի բառերից շատերը պատռված, մաշված և անվերծանելի են։ Շարունակությունը, ընդամենը մեկ—երկու թվի տեղ, պատռված է։

մտյ, և ցանկացեալ այսմ աստուածային փարթամ գանձուցս, և ջեր-
մեռանդ սիրով հոգոյն սրբոյ և մեծ փափաղմամբ ստացաւ զսա յիշա-
տակ հոգոյ իւրոյ, և ծնաւղացն՝ Շէրինշաճի և Շնոճուոր տիկնայ, և
հաւրեղբարցն՝ Թումայի, Յովճաննիսի, և հաւր քեռոյն՝ Գրիգորի, և
քերցն՝ Տիկնուցի, այլ և եղբաւր իւրում՝ Ստեփաննոս կր[աւնաւորի]
474ա և Յովան ‖ նիսի, և քերցն՝ Նազխաթունի և Մամխաթունի, և ազ-
գայնոցն ամենեցուն՝ կենդանեաց և հանգուցելոց, և ամենայն արեան
մերձաւորացն։ Եւ ետ զսա նուէր և ընծայ ի դուռն սուրբ Խաչիս
Աղթամարայ...* ի թուականութեանս Հայոց ՊԼԴ. (1385), ի հայրա-
պետութեան տէր Զաքարիայի։ Վասն որոյ բարեխաւսութեամբ սուրբ և
փառաւորեալ աստուածածնի Մարիամու և աղաչանաւք ընտրելոց
474բ սրբոց, Քրիստոս աստուած՝ քահանայապետն երկնաւոր, զտէր ‖
Թովմայ եպիսկոպոս, և զծնաւղսն իւր, և զեղբարքն՝ զՍտեփաննոս կրաւ-
նաւոր և զՅովճաննէս, և զազգն ամենայն առհասարակ, և զամենայն
յառաջ յիշեցեալքն խորանակից և դասակից արասցէ սրբոց վկայիցն...։
Դարձեալ և զմեղապարտ Զաքարայ գծագրող սորա, զաղետս
տարակուսանաց իմոց առաջի մատուցեալ, աղաչեմ զսրբութիւնդ ձեր,
ով սիրելի և հաւատարիմ ծառայք Քրիստոսի...յիշեսջիք և զիմ անար-
ժանութիւնս...։ Նաև զծնաւղքն մեր՝ զՄկրտիչ քահանայ և զԹանկ-
խաթունն, և զեղբարքս մեր՝ զԿարապետ քահանայ, և զՅովաննէս, որ
աշխատեցաւ ի կոկել թղթիս, և զԽաչիկ, և զամենայն արեան մեր-
ձաւորքն մեր՝ զկենդանիք և զննջեցեալք, և զուսուցիչն մեր զԿա-
րապետ կր[աւնաւոր], և զայնոսիկ, որք երախտաւորք եղեն մեզ ի
պէտս մարմնաւոր պիտոյից։ Ընդ նոսին զաստուածասէր սանուտէրքն՝
475ա զԿիրակոս, և զտէր Խաչիկ, և զծնաւղս ‖ նոցին, որ միջնորդ և առիթ
եղեն այսմ բարի գործոյ...։

Բ

ԶՓայիկենց Ատոմ յիշեցէք ի Քրիստոս։**

* Մի ընդարձակ հատված, ուր հիշատակվում են ստացողի մերձավոր և հեռավոր ազգականներից շատերը, դուրս ենք թողնում։
** Գրված է այլ ձեռագրով։

694.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

Երևան 2178

Գրիչ՝ Յակոբ Րռշտոնցի

ա

91ր Ո՛վ սի[ր]ողք իմաստից, որդիք Սիոնի,
Որք փափաքիք այսմ բանի,
Որ է լցեալ յոյժ պիտանի
Աստուածաշունչ և արտաքի.
Թէ միտ դնէք դուք այսմ իրի,
Լինիք հաղորդ այս իմաստի,
Զի առ յիմարն ոչինչ արժի
՚Ի առ իմաստունն՝ գին աշխարհի,
Զտառատիպ այսմ գծի
Յիշման առնէք դուք արժանի՝
Զ[Յ]ակոբ ծըրող, մեռեալ ողի,
Որ եմ յերկրէն Րռշտոնի
Եւ աշակերտ այս սոփերի,
Առ ոտն* սուրբ վարժապետի,
Որ մականուն Կախիկ** կոչի։

բ

188ա Զլցեալ մեղօք զՅակոբ աշակերտ բանի,
Որ ոչ ունիմ գործ պիտանի,
Յիշման առնել զիս արժանի,
Որք ճաշակիք յայս սոփերի,
Զի քաղցր է սա յայնմ, որ մտի,
Որ ի սմանէ զճաշակն ունի։

---

* Ձեռագրում՝ «ոտըն»։

** Ակնարկված է Հովհ. Որոտնեցին։ Նրա մահը ըստ Մ. Չամչյանի (հտ. Գ. էջ 450) տեղի է ունեցել 1388 թվականին, ըստ Ղ. Ալիշանի՝ 1385 կամ 1386 թ.թ.։ Մենք ճիշտ ենք համարում վերջին թվականը, հիմք ունենալով Գրիգոր Խլաթեցու «Յիշատակարան աղետից» գրվածքի (Վաղպատ, 1897, էջ 1) համապատասխան վկայությունը։

Ըստ այդմ, Հովհ. Որոտնեցու կենդանության օրոք գրված հիշատակարանների ժամանակագրական վերջին հնարավոր եզրը համարելով 1386 թվականը, բոլոր այն անթվական հիշատակարանները, որոնցում հիշվում է Հովհ. Որոտնեցին, տեղադրում ենք 1386-ի թվաշարքում։ Նրանք բոլորն էլ գրված պետք է լինեն ոչ ուշ քան 1386 թվականը։

## 695.

### ՈՍԿԵՓՈՐԻԿ

Վեննա. 253. Մարգ. Ցուց. Բ, էջ 741—742

*Խմբագիր՝* Գրիգոր Տաթևացի

ա

68ա *Արդ, ես՝ վերջին սպասաւորացս բանին՝* Գրիգոր *քահանայ* [Տաթևացի], *ժողովեցի զծաղկաքաղս՝ մեկնութիւն սակաւուք մարգարէին Եսայեայ, ի լուսաւոր բանից տեառն՝ իմոյ և վարժապետին* Յովհաննու Որոտնեցւոյ, *որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի՝ անզրաւ կենօք։ Արդ, պիտանութիւն սորա է ի ընթերցասացութիւնս, և ի քարոզս բանի, և ի կորզս զրուցաց։ Զի թէ իցէ ինչ ըստ ախորժակաց՝ տեառն շնորհք, իսկ պակասն՝ մերում տկարութեանս, ներել աղաչեմ։ Որ և մարդասիրեալ եղբայրական խնամօք՝ կաթիլ մի ի ցօղոյս աղօթաց ձեր իջցէ յոսկերս իմ, և լուացէ զբազմաշարաւ ապականութիւն հոգւոյ և մարմնոյ իմոյ, և ծնողացն իմ՝ զներելիսն և զմահացուսն։ Եւ ձեզ յիշողացդ և մեզ յուսողացս առհասարակ վայելեսցի յոյս հանդերձեալ փառացն ի Քրիստոս Յիսուս, ի տէր մեր։ Առ որ աղերսեմ, որք ընդօրինակէք՝ գրեսջիք և զսակաւ յիշատակս մեր, զի և դուք գրեսջիք ի դպրութիւնն կենացն, ամէն։*

*Հեղինակ՝* Յովհան Որոտնեցի

բ

185բ *Ո՞վ եղբայր, դեռ տետր էր՝ օրինակ տուի, տարան ի* Բօղլի *Թալանն՝ կորցուցուցին (այսպէս). վերստին կարտւտեցաւ յառաջին օրինակէն գծագրելոյ. վասն որոյ ես՝ տկարս վարդապետս* Յովհաննէս՝ *զառաջինն և զերկրորդս գրեցի, աղաչեմ յիշել սրտի մտօք և անպարսաւ զմեզ թողուլ։**

## 696.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ

Երևան 3902

247ա *Զհոգեկիրն ի մարմնի և զներանձնացեալն ի շնորհի, զաշխարհալուր և զտիեզերածաւալ յայտնիչն իմաստից, զմեծ վարժապետն հայկազեան տոհմիս՝* զՅոհաննէս *մականուն* Կախեալ ի Սէրճ Աստուծոյ, *աղաչեմ յիշել յաղօթս, ո՜վ սիրողք իմաստից և աշակերտեալք ճշմարիտ բանին։ Եւ նոյն ձեզ յիշողացդ պարգևեսցի յանաչառ դատաւորէն, որ ըստ գործոց հատուցանեն, ամէն։*

*Աղաչեմ անյարմար գրիս և սխալանաց սորա անմեղադիր լերուք, զի յօժարութիւն կամացս մոռացումն արար տկարութեան մտացս, թողութիւն առ ձեզ է։*

---

* *Սույն հիշատակարանները վերաբերվում են Հովհ. Որոտնեցու աշխատությանը, որը ձեռագրում կրում է հետևյալ խորագիրը՝ «Ծաղկաքաղ մեկնութիւն Եսայեայ, ի լուսաւոր բանից...Յովհաննու Որոտնեցւոյ, հաւաքեալ աշխատասիրութեամբ Գրիգորի՝ աշակե ն է։*

## 697.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Վիեն. 322. Տաշ. Ցուց. էջ 764

176բ Զստացող տառիս՝ զմեծ տէլէտն իմաստից, զրաբունապետն զՅոհաննէս [Որոտնեցի] ընդհանուր սեռի, յիշեցէք ի Քրիստոս, եւ զի կախեալ է սիրով ի սիրոյն Քրիստոսի։

## 698.

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 185 (տես նաև 1405 Թ.)

Գրիչ՝ Պաւղոս

ա

105բ Ստացաւղի սուրբ տառիս, սուրբ և երանաշնորհ րաբունապետի և տիեզերալոյս վարդապետի Յոհանիսի [Որոտնեցւոյ] ողորմեայ Քրիստոս ի քում սոսկալի և ահաւոր ատենիդ, և ամենայն զարմից իւրոց։ Այլ և յոգնամեղ և ողորմելի ոգւոյ Պաւղոսի, և ծնողաց իւրոց, և ամենայն ի քեզ հաւատացելոց, ամէն։

Բ

276բ Զստացաւղսորա՝ զսուրբ և զերանաշնորհ րաբունապետն և զկենդանի նահատակն Քրիստոսի՝ զՅովհաննէս, և զամենամեղ հոգիս Պաւղ[ոս]՝, ծնաւղաւք մերովք և ամենայն ազգականաւք աղաչեմ յիշել աղաւթիւք և խնդրուածաւք ի տէր Յիսուս Քրիստոս։

## 699.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երևան 1178

Հետ. ստացող՝ Սիմեոն

ա

319ա Տէր աստուած Յիսուս Քրիստոս, աղաչանաւք մաւր քո և ամենայն սրբոց քոց, ողորմեա ամենայն աշխատողացն ի սմա՝ գրողացն և ստացողաց, նաև ինձ՝ մեղաւոր բիւր չարեօք և անարժան ամենայն բարեաց վերջին ստացողի՝ Սիմէոնի տրուպ վարդապետի ի քո ահագին և ի փառաւոր գալստեանդ, և որոց զամէնն ասեն...։

Գրիչ՝ Սարգիս

Բ

125բ Սիրով էին ներգործական
Կամացդ սուրբ եղև վախճան
Անկմամբ տառիս, թէ ու անագան,

*Որում ծուլալն եղև խափան,*
*Բարուն խոհեմ և հեզական,*
*Ներհուն յարհեստս այս ցանկական,*
*Գլուխ տողեալ բայիս լրման,*
*Մաղթեմ չառնել զիմս անպիտան,*
*Ի տարակոյս ողոյս պայման,*
*Արտազատել իբր անարժան,*
*Սեղանոյս տալ տաղանդ բաշխման*
*Միթէ՞ ղիպիմ շահոյն պատկան։**

գ

132բ *Թէ յիշելոյ արժանի առնես, սուրբ վարդապետ* Յոհ[ան], *քո հրամանքէ ես խիստ եմ յաղաչել։*

ԺԸ. դարի ստացող**

դ

319ա *Աստուած ողորմի* Յոհաննէս *բաբունեաց պետին՝ լուս հոգոյն, որ գիրքս տեսանք ուրախացանք. Բժ. (12) աւր ի սայ հայեցանք, փոքրէ-շատէ բան հասկացանք, վասն այս ող[ո]րմիս գիրեցանք։*

## 700.

## *ԺՈՂՈՎԱԾՈՒ ԲԱՆԻՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ, ԳՐԻԳՈՐԻ ՏՂԱՅԻ ԵՒ ԱՅԼՈՑ*

*Երևան 5707 (տես նաև 1401 թ.)*

*Գրիչ՝* Յակոբ
*վայր՝* Երընջակ

485ա *...Զոր ե ես՝ ծանրամեղ ոգիս* Յակոբ *պիտակ անուամբ կրօնաւոր, որ միայն զկարգ քահանայութեանս անուամբ ունիմ և գործով անչափ հեռի եմ ի սմանէ, որպէս արևելք յարեւմտից, որ եմ կիսակենդան՝ հոգւովս մեռեալ և մարմնով կենդանի, որպէս դիակ իր ի վերայ երկրի, զոր գծեցի և ի յանկ հանեալ աւարտեցի Յիսուսի ձեռնտու[ու]թեամբն, տխուր մատամբ և յողդողդ ձեռամբ, որչափ իմս էր կարողութիւն, ինձ ի սփոփանս, ի դարձ և ի զղջումն անձինս շնորհիւն աստուծոյ և սրբոց օգնականութեամբ։ Եւ յետ ելանելոյ յաշխարհէս թողում զսա մանկանց եկեղեցւոյ խրախութիւն և ի պայծառութիւն, և զղջումն արտասուաց ամենայն ոգւոց։ Արդ, աղաչեմ զձեզ, ով բարեսէր ոգիք, թէ հանդիպիք*

---

** Տողերի սկզբնատառերով հողվում է գրչի անունը՝ «Սարգիս»։*

*** Հիշատակագիրը, ըստ երևույթին, ծանոթացել է ձեռագրի հետ՝ երբ դեռ պահպանվում էր գլխավոր հիշատակարանը։ Ըստ նրա տեղեկության գ. հիշատակագրության մեջ հիշվող Հոհանը «բաբունեաց պետ» է եղել։ Այս տվյալի հիման վրա նույնացնում ենք այդ Հոհանին Հոհան Որոտնեցու հետ (մհ. 1386), և սույն հիշատակագրությունները նույնպես տեղադրում ենք 1386-ի թվաշարքում, որպես նրանց գրության վերջին հնարավոր տարեթիվ։*

սմա կարդալով, կամ օրինակելով, կամ տեսանելով, կամ սեփհական
զսա իւր ժառանգելով, յիշեցէք սրտի կամօք միով տեր-ողորմ[այ]իւ
զողորմելիս Յակոբ՝ զտառատիպ սմին, որ միշտ հոգս ակամբս առ
ձեր ազօթքտ ակնարկեմ։

Նաև զմարմնաւոր ծնօղքն մեր և զնախնիքն՝ զԳրիգորէս և զԹու-
մա, զԴուռմէլիք և զԱւաճռիկին, և զքաջահաւատ որդիս՝ զԱստմ և
զՂրէլ, մամնաւոր ծնօղքս մեր, [և] զհորեղբայրն իմ՝ զՅովանէս կրօ-
նաւոր, որք գնացին առ Քրիստոս, այլ և զկենդանիքս, որք այժմ ի
միջի կան, զհարազատ եղբայրն իմ զՎարոս*, և զքուերքն՝ զԳոնար-
մելիք և զՇաճար, և զկենաց կցորդ նոցա՝ զԽութլուշա և զԱտոմ, և
զայլ արեան մերձաւորքն մեր՝ ի ձեր սուրբ յաղօթքդ յանձն արարաք։
Դարձեալ և զհոգևոր երախտաւորքն մեր՝ զուսուցիչքն և զլուսաւո-
րիչքն՝ զՍիմէոն վարդապետն՝ զարին և զառաքինին Ռօշտեան գա-
ւառին, զլծակից և զհամանմանք նորին՝ զերկու արեգակունքն, զեղ-
բարքն մարմնին՝ զՍտեփաննոս ընդ Յովհաննէսին, որ են նազելի
փիլիսոփայք և վարպետ ծովու բոլորին, և զՍիմէոն զհոգևոր վերակա-
ցուն մեր, զի դուք, որ զանուանս լսէք, զաստուած-ողորմին յօժարու-
թեամբ ի հետ կրկնեցէք, զի և դուք գտանիջիք, զի բազում յօժարու-
թեամբ ցուեցան ի վերայ մեր և բազմաց՝ ի յերգս երաժշտական և
ի բանս հոգևորական։ Այլ ես առաւել զանձն քրիստոսակիր, որ անէ
և ուսուցանէ՝ զՄխիթար վարդապետ իմ, որ է յոյժ ցուեցող անձին
իմոյ և բազմաց, զի ամենեքեան, որ ի սա գիմին՝ հաւատով բարձ-
485բ բանան և վարուք պայծառան || ան, զոր և հայցեմ Յիսուսէն իմոյ
ես՝ ամենայն հաւատացելովք, մալ սմա ի մէջ իմանալի դրախ-
տիս, բազում ամօք տևել ի մարմնի՝ յօգուտ և ի շահ ամենայն չա-
փու հասակի։ Այլ և յիշեսջիք զհոգևոր եղբարքս մեր՝ զ[Յ]ովհանէս՝
կազմօղ սուրբ գրոցս, և զԿարապետ՝ ծաղկօղ, որ ձրի ծաղկեաց,
ես առաւել զբարի շառաւեղքն յօրհնեալ արմատոյն՝ զԿարապետ
կրօնաւոր ի տիոս մանկութեան և զեղբայր սորին՝ զՄկրտիչ
դպեր, որ են աշակերտք մեր, զի բազում աշխատութեամբ ջա-
նացին ընդ մեզ, զի զամէն զթուղթս սուրբ գրոցս սոքա կոկեցին և
տողեցին, այլ և ծնօղք սոցին առաւել քան զմարմնաւոր ծնօղքն մեր
զուէթ ցուցին, և հարկաւոր պիտոյիւք զմեզ լցուցին, զոր և պարգևա-
տուն աստուած միոյն հազարապատիկ հատուսցէ աստ և ի հանդեր-
ձեալն, և զցանկալի զաւակ սոցին՝ զԿարապետ և զՄկրտիչ, պա-
հեսցէ անարատ խնամքն տիրական գ | | | օք ժրաջան ի կարգ բեմ-
բական, ընդ սուրբ առաքինիսն միաբան, մինչ ի խորին ծերութեան։

Այլ գծագրեցաւ մատեանս աստուածային ի թուականիս Հայոց
ՊԼԵ. (1386), ի ժամանակիս, որ է գառն և լալարեր, զի ամենեքեան՝
մեծէ ի փոքր, ձանձրացեալ կան ի կենաց, ըստ Քրիստոսի բանին,
թէ՝ գայցէ ժամանակ, որ ասասցեն բլրոց թէ անկերուք ի վերայ
մեր և լերանց թէ ծածկեցէք զմեզ, զոր և տեսաք աչօք մերօք։

* Կարելի է կարդալ նաև «զՎարոս»։

Այլ մեք ընդ սուրբ և տիեզ[եր]ահամբաւ և երանաշնորհ բաբունապետիս Հայաստանեաց և վերադիտողի տեառն Յովհաննու Որոտնեցոյ կայաք կարդալ և ի դրել ի համալսարան սորին, որ յայս անծուկ և խաւարեալ ժամանակիս փայլէր որպէս զարեգակն ի վերայ աշխարհի անուն սորին, զի զամենայնի զխոց բժշկէր և զկարօտութիւն լնոյր՝ զիշխանի և զաղատի, զկաթողիկոսի և զիմաստասիրի, զի ազգս հայկազեան մեծ պարծանս ունէր զսա ի վերայ ամենայն ազգի։ Զի ժողովէր զհեռաւորս և զմերձաւորս, զորբս և տանընդանիս, երկնէր և ուսուցանէր, և փառաւոր յաստիճանս նստուցանէր, զոմանս բաբունս և քահանայս, զոմանս երաժիշտս և փիլիսոփայս, զայլ ոք ծաղկող և քարտուղարս։ Զծոյլսն ի յետինս արհամարհէր, զարիսն ի վեր փառաւորէր, ամենեցուն կերակուր և [հ]անդերձ, գիրք և մեկնութիւն, և անխռով խաղաղութիւն, և այս վասն աստուծոյ սիրոյն և իւր հոգւորն շահի։

Եւ մինչդեռ անճառ ցնծութեամբ և բերկրալից ուրախութեամբ լցեալ կայաք, բաբունին կ. (60) աշակերտօքն, ի բնիկ գաւառն իւր՝ յերկիրն Որ[ո]տան, կարդալով և գրելով զսուրբ մատեանս, մեղքն իմ ծովացեալ եհան զգունդս անօրինաց ի վերայ քրիստոնէից, մանաւանդ ի վերայ տանն Բուրդելի։ Որ եկին և առին զբերդն Որոտան, և հայրենազուրկ արարին զպարոն Սմպատն, որդի Նահիկին։ Եւ կամէին ձերբակալ առնել զսուրբ բաբունիս մեր վասն հայրենեաց ժառանգութեանն։ Եւ սա կամօքն աստուծոյ զերծաւ ի նոցանէ. և բ. (2) ամ բոլոր յայլ և յայլ տեղիս շրջէր աշակերտօք հանդերձ՝ կարդալով և ուսուցանելով։ Եւ ես ծանրաբեռն մարմնով, զթուղթ և զօրինակ, զգրիչ և զթանաք ի յուս իմ բարձեալ, ի հետ գնայի, կարդայի, և որչափ ժամանէի՝ զսուրբ մատեանս գրէի, բազում նեղութեամբ և չարչարանօք, զի ուր սկսա անդ ոչ էառ զկատարումն։

Դարձեալ քաղցրացոյց աստուած զկամք անօրինացն ի վերայ սուրբ վարդապետիս, և եկեալ սորա անխռով խաղաղութեամբ ի վերայ վանորէից իւրոց, ի գաւառն Երընջակայ, շինէր և հաստատէր զսուրբ զեկեղեցիս շքեղ և փառաւոր ի մէջ անօրէն իշխանաց և բերդաւագաց, և ուրախ և ցնծութեամբ կայաք առաւել քան զառաջինն։*

701.

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 557

Գրիչ՝ Գրիգորիս
վայր՝ Եզնկայ

227ա Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ և զլուսազարդ մատեանս ես՝ նուաստ ծառայս ամենայն ծա-

* Հովհան Որոտնեցու մահը Գրիգոր Տաթևացու որոշակի վկայությամբ, տեղի է ունեցել 1386 թվականի հունվարի վեցին (տես՝ «Յիշատակարան աղետից», էջ 1-2)։ Ուստի պետք է ենթադրել, որ սույն հիշատակարանը գրվել է այդ թվականի սկզբին՝ այն է օգոստոսի 11-ից (Նավասարդի 1-ից) մինչև հունվարի 6-ը։

ռայից աստուծոյ Գրիգորիս՝ մեղուցեալ և անարժան քահանայ, ի Հայոց թուականիս ՊԼԵ. (1386), յունիս Ժ. (10), ի խնդրոյ բարի և հաւատարիմ ծառային աստուծոյ Թաճատինի, որդոյ խաւճա Ահրոնի, և ի մարմնի դասէն՝ թոռն տէր Սարգսի, որ մեծաւ յուսով և բազում փափագանաւք և ցանկութեամբ խնդրեաց զսայ ի լուսաւորութիւն անձին իւրոյ և ի մխիթարութիւն լսողաց հաւատացելոց։ Կրկին աղա-
227բ չեմ զա ‖ մենեսեան յիշել ի տէր զստացաւղ սորա զամիր Տաճատինն՝ ծնողաւք, և զնուաստ գրչակս՝ ծնողաւք, և դուք յիշիք ի աէր, յորժամ գայ արքայութեամբ իւրով և թողցէ զյանցանս ձեր և ծնօղաց ձերոց։

Եւ աղաչեմ չլինել մեղադիր, զի ի ծերութեան ժամանակս [գրե-ցաւ], այս չափ էր կար մեր։ Բայց գրեցաւ սայ յաստուածապահ մայ-րաքաղաքս Սգնկայ, ընդ հովանեաւ սուրբ և երկնանման տաճարիս սուրբ Կաթողիկէիս և սուրբ աջոյս տեառն Ներսէսի, և այլ բազմա-հաւաք որբոցս, որ աստ են։ Զոր խնդրեմ յաստուծոյ, զի պահեսցէ
228ա զտաճարս զայս սուրբ՝ հաստատ և անխախտելի ‖ մինչ ի գալուստն Քրիստոսի և | | | յամենայն երևելի և աներև[ոյթ | | | ոյ։ Այլ և մի պակասեսցէ ի սմանէ երգ սաղմոսաց, ձայնք պաշտամանց, բու-րումն խնկոյ՝ մի պակասէ ի դրանէ սորայ։ Եւ սպասաւորք սորա և պատարագիչք՝ առաջինքն և վերջինքս, մնասցեն սրբութեամբ ի կամս աստուծոյ։ Նայ և զաստուածասէր պարոնս մեր զԱմիր-Սուլայիմանն շնորհեսցէ այս սուրբ տաճարիս և մեզ ընդ երկայն աւուրս, մինչ ի խորին ծերութիւն. և աջ անեղին և բազուկ հզաւրին պահեսցէ զսայ յամենայն երևելի և յաներևոյթ թշնամոյ հոգո[վ և մարմնով]...*

702.

ԱԻԵՏԱՐԱՆ

Փիրղ. 6273, էջ 170—171 (ի վանս Սքանչելագործ)

Գրիչ՝ Խաչատուր
վայր՝ ի քաղաքիս Արծրունիս

ա

...Եւ արդ, դրեցաւ սուրբ աւետարանս այս ձեռամբ մեղապարտ խաչատրոյ անիմաստ և տխմար գրչի, յընտիր և ի ստոյգ օրինակէ, կենօք տառապանօք և բազում պանդխտութեամբ...։

Իսկ ի Հայկազին թուականի ՊԼԵ. (1386), ի քաղաքիս Արծրու-նիս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սուրբ Ստեփաննոսի, ի հայրապետութեան կիլիկեցւոց տեառն Թէոդորոսի, և ի մերոյ հայ-րապետութեան Աղթամարայ՝ տեառն Զաքարիայի, և ի կայսերական բռնակալութեան ազգին Նետողաց Ահմատ ղանին, ի թշուառ և ի չար ժամանակի, յորում է արդարութեան կողմն նուազեալ և անիրաւու-

---

* Շարունակությունը մաշվել է և նորոգության ժամանակ տուժելով անընթեռնելի է դարձել։ Կարդացվում է ոմն «Խուքլու»-ի անուն, «որ է փոխեալ ի Քրիստոս»։

թիւն յամենայն կողմանց զօրացեալ։ Որ և յայսմ ամի բազում նեղութիւն և չարչարանք կրեցին եկեղեցիք և մանկունք նորին ի ձեռաց անօրինին Ղարայ Մահմատի, զի որպէս ի հնումն յարոյց սատուած զՆաբուգոդոնոսոր ի վերայ Երուսաղէմի, նոյնպէս և ի մերումս՝ ի վերջին դարիս, ելեալ չար բռնակալ և խրոխաս Ղարա-Մահմատ։ Եւ արդ, ես՝ Յովհաննէս մոհդասի, ետու գրել զսա ոչ վասն մարմնական ինչ արդեանց՝ այլ զանձ յերկինս...։

Այլ և ետու զսա ի դուռն Տկոց վանից* եկեղեցոյն, որ կոչի սուրբ Անանիա, և մի ոք իշխեսցէ վաճառել զսա կամ փոխել յայլ տեղիս։

Բ

Ի յութհարիւր Թուականին,
Յեռեսուն և հինգ սկսեալ ամին
Ի Հայկազեան ազգի սեռին (1385),
Ի նեղութեանց ժամանակին,
Զոր այլազգիքն նեղէին,
Զքրիստոնեայք նախատէին,
Զեկեղեցիսըն քակէին։
Զոր մեղաւորս ի Թիւ արկի
Եօթանասուն եկեղեցի,
Որ ի դաւառս էր Արծրունի,
Զդրունս նոցա խորտակեցին,
Եւ զսեղանս տապալեցին,
Եւ զհիմունս շարժեցին,
Զկտակարնսն գերեցին։
Քահանայք նստեալ լային
Եւ ժողովուրդք գումարէին։
Արդ, ո՛վ եղբայր, զսուգ վշտին
Զեկեղեցեաց, որ հասուցին,
Եւ այսպէս է՞ր հանդիպէին.
Վասն մեղաց, որ գործէին։

* Տկոց վանքի մասին Փիրղալամյանը գրում է. «Սոյն Տկուց վանքն է այժմ աւեր և անկանի ի Բզնունիս, և կայ բացակայ կէս ժամ հեռաւորութեամբ ի սուրբ ուխտէն Սքանչելագործայ, որ է աթոռանիստ վանքն Արծկոյ»։

## 703.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4814*

*Նորոգող՝* Արղուն
*վայր՝* Ոստան

266բ *Արդ, ի վերջին ժամանակիս, ի թուականիս Հայոց ՊԼԵ. (1386), ես* Արղունս,* *որ էի յապարանս ամիր* Մէլիք-Ասադի, յՈստան *քաղաքի, եառ վերստին նորոգել զաւետարանս յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, հաւրն իմոյ* Քուրդամիրի, *և մաւրն իմոյ* Հերիքտիկնայ, *և այլ ամենայն մերձաւորաց։ Ով որ հանդիպիք սմա յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր* զԱրղուն *և զծնաւղսն իւր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։***

## 704.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ակնայ սբ. Գէորգ եկեղեցի, Շ. Ճանիկեան, էջ 78*

*Ստացող՝* Խութլուշայ

*...Ի հայկազան թուականիս ՊԼԵ. (1386) կատարեցաւ աստուածախաւս գանձս տէրունեան...ի հայրապետութեան Հայոց տեառն* Զաքարիայի *և ի թագաւորութեանն, որ ոչ երևի բարեպաշտ, այլ վասն մեղաց մերոց բարձան բարեպաշտ թագաւորքն և աստուածասէր իշխանքն քրիստոնէից, և բազմացան ի վերայ ազգիս Հայոց ազգն | | | որ հալածեն...։*

*Արդ, ցանկացող եղեալ սուրբ արքայութեան երկնից* Խութլուշէն, *ետ գրել փափաքանաւք զաւետարանս յիշատակ իւրն և բարի ծնաւղաց իւրոց, հաւրն* Խութլուբէկին, *և մաւրն* Էլխաթունին, *և կենակցին իւր* Սիրմային, *և ծնողացն իւրոց՝ հաւրն* Շատլուսին, *և մաւրն* Ջխանմելիքին, *և տղայոց իւրոց՝* Մարտիրոսին *և* Առաքելին *և* Կիրակոսին, *և* Հազարդեղին, *և* Խուցդեղին, *և* Խութկէն, Եղիսաբեթին, *և* Հուքնշին, *և* Դովլաթին, *և ամենայն արեան մերձաւորացն իւրոց՝ կենդանեացն և ննջեցելոցն։*

* *Հիշատակարանը հրատարակված է նաև Ե. Լալայանի Ցուցակում (էջ 117), սակայն նորոգողի անունն այնտեղ աղավաղվել ու դարձել է «Արղուման»։*

** *Արղունի կողմից նորոգված այս ձեռագիրն ընդօրինակված է 1294 թվին։*

705.

ԿՈՉՈՒՄՆ ԸՆԾԱՅՈՒԹԵԱՆ ԿԻՒՐՂԻ

*Երևան 4957 (տես նաև 1538 թ.)*

Գրիչ՝ Ցոհաննէս
վայր՝ եկեղեց Վարագայ, Շուշան գիւղ

268ա ...[Գրեցաւ ի թուին Հայոց]* ՊԼԵ. (1386) վարդապետութիւնս Կիւրղի, ձեռամբ Ցոհաննէս նուաստ, մեղապարտ քահանայի, ի գեաւղս կոչեցեալ Շուշան, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգեայ զաւրավարին, որ է հանդէպ Վարագայ։ Արդ, ով ոք ընթերցցի, յաղաւթս իւր յիշեսցի զստացող սորա զՏիրատուրն և զծնողս Ցոհաննէս, և ուղիղ սրտիւ ասէ զաստուած ողորմին. և ինքն, որ ասատն է ի տուրս պարգևաց, տացէ ձեզ և մեզ, ամէն։ Ընդ նմին յիշեսջիք զհոգևոր որդեակս իմ՝ զԿարապետ սարկաւագ, որ զթուղթն կոկել է և աշխատել. և Քրիստոս ձեզ և մեզ ողորմեսցի, ամէն։

706.

Մ Ա Շ Տ Ո Ց

*Փիրղ. 6273. էջ 170 (Վան)*

Գրիչ՝ Գէորգ
վայր՝ Վան

Արդ, գրեցաւ խրատքս այս թաղման ձեռամբ մեղապարտ...Գէորգ երէցու, որդւոյ Առաքել քահանայի, ի մայրաքաղաքն Վան, ընդ հովանեաւ տաճարիս սուրբ Նշանիս և սուրբ Աստուածածնիս, թուին ՊԼԵ. (1386),

707.

ԳԻՐՔ ԵԻԹՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆՑ ՊԵՏՐՈՍԻ ԱՐԱԳՈՆԱՑԻՈՑ

*Երևան 48 (տես նաև 1606 թ.)*

Գրիչ՝ Գրիգոր Տաթևացի
վայր՝ Վաղարշապատ վանք

ա

80ա Զբարեբջանկացեալն երանականն կենաւք և զկայծակնամաքուր հոգևամուխ արփիաւորեալն մտաւք, զտիեզերալոյս բաբունապետն՝ զտէրն իմ Ցովհաննէս Որոտնեցի, հանդերձ ամենայն աշխատողաւքն ի սմա, յարուցեալ դասաւորեսցէ Քրիստոս ի կեանս անմահ, ի պատիւ և ի հաղորդակցութիւն սիրելեաց իւրոց, ամէն։**

* Սկզբից թերթ է ընկել, պահպանվել է հիշատակարանի միայն վերջին մասը։
** Գրված է սորբին լուսանցքում Գր. Տաթևացու ձեռքով, բնագրից մանր տառերով։ Ակնհայտ է, որ հիշատակագրությունը և ձեռագիրը արտագրվել են Հովհ. Որոտնեցու մահվանից՝ ուստի 1386-ից, հետո։

Բ

92բ Ո՜հ թէ զմեզօք մեռեալ ոգի,
ԶԳրիգորի փցուն գրչի,
Ցիշման առնէք արժան բանի
Ցօժար սրտիւ զտէր-ողորմի,
Զոր հասարակ առատացի
Տալ զպարգևըս հայցողի։

Գ

109բ Ցուսոյ գիրքս և Սիրոյ*
Որ շագկապեալ | | | **
[Հր]ամանէ մեծ րաբունոյ***
. . . . . . . . . .
[Աւար]տեցաւ ի վանքս Վաղատնոյ,
Ձեռամբ Գրիգոր Տաթևացւոյ...։

Դ

138ա Ո՜հ, կաղ իշովս մինչև յերբ հասից յաւարտ գրոցս։

Ոմն կաթոլիկ ընթերցող

Ե

47ա ...Ո՜ Տաթևացի, ձչ երկնչիս յաստուծոյ խառնելով զԹոյնդ անապական գինւոյ, որ սպանէ ոգիս պարզամտաց։

Զ

62բ ...Որոտնեցին և Տաթևացին զորոմ յոգնապատիկ սերմանեալ է ի մէջ սուրբ Գրգիս։****

* Պետրոս Արագոնացու աշխատության գլուխների վերնագրերն են։

** Հիշատակագրությունը եղծված է։

*** Ի նկատի ունի իր ուսուցիչ Հովհ. Որոտնեցուն, որն իր դասախոսությունների ընթացքում օգտագործում էր նաև հայ ունիթորների կողմից ստեղծված թարգմանական գրականությունը։

**** Այս հիշատակագրությունները գրված են նշված էջերի ստորին լուսանցքներում։ Դրանց անհայտ հեղինակը այդպիսի մի հիշատակագրություն թողել է նաև 84բ էջի ներքին լուսանցքում, սակայն ինչպես ա. հիշատակագրության սկզբի մասը, այնպես էլ այդ՝ ամբողջովին քերվել է հետագայում։ Ընթերցվող եզակի բառերից կարելի է եզրակացնել, որ նրանց մեջ ևս հիշատակագրության հեղինակը մեղադրում է Տաթևացուն կաթոլիկ հեղինակի մտքերն աղավաղելու մեջ։

708.

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԵՂԻՇԷԻ

Թորոս Աղբար, Բ. էջ 334 (Խարբերդ)

Գրիչ՝ Ոհ[աննէս]
վայր՝ Վան

Գրեցաւ աստուածաշունչ տառս ձեռամբ...Ոհ[աննէս] երիցու... ի Թուականին Հայոց ՊԼԵ*. (1386), ի քաղաքիս Վան, ընդ հովանեաւ սուրբ Վարդանայ...։Որք հանդիպիք այս աստուածային դանձուցս Եղիշայի...յիշեսջիք զստացող զտէր զՆրկմ[...]դոս կրաւնաւորն, եւ զծը-նողսն՝ զԵփրեմ քահանայ, եւ զքեռին՝ զՍտեփաննոս կր[աւնաւոր] | | | Խոշորութեան եւ սխալանաց գրիս անմեղադիր լերուք, զի մեր կարս այս էր։

Ես Նիկողայոս աբեղայ, կամաւն ամենակալին աստուծոյ ստա-ցայ զՎարդանդիրքս, եւ ետու զսա ինձ յիշատակ եւ ծնողաց իմոց ի դուռն սուրբ Տիրամաւրս լուսոյ, որ մի. ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Աստուածածնիս Խառաքաստայ վանուց, ոչ յի-մոց եւ ոչ յաւտարաց։

---

* Տպված է «ՊԼԻ», որը, իհարկե, տպագրական կամ գրչական սխալի արդյունք է, վերջին թվանշանն ուղղում ենք «Ե» (5), սակայն կարող է եղած լինել նաև ՊԼԲ.(1383), ՊԼէ. (1388) և ՊԼԸ. (1389)։





# 709.

## ՀԱՐՑՄՈՒՆՔ ԳՆՈՐԴԱՅ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ

Երևան 3616*

Հեղինակ՝ Գրիգոր Տաթևացի
վայր՝ Սահապօնք ամրոց

320բ Եւ այս յաղագս այսորիկ այսքան ըստ բաւական բանի տուեալ գլուխս, այլ ըստ կարի տկարութեանց արտայայտումն, մանաւանդ հարկեալ ի սիրոյ քումդ հոգեւորական խնդրոյ, և այս ի խռովութեան ժամու, և յանձուկ տեղւոջ, յորում պաշարեալք ի հինից նետողաց կրկին յարուցեալ խորագոյն սնուանեալ յազգաց, զոր և անբաւ բազմութեամբ ապականեալ աւերեաց զաշխարհս Հայոց, Պարսից, Վրաց և զամենայն արևելեայս։ Ոմանք ի գերութիւն վարեալ արք և կանայք, և կէսք սաթուր դիաթաւալ սրախող գալարեալ առհասարակ, քահանայք և աշխարհականք. դէշ անկեալ դիակամբք, անթաղ ընկեցեալք, և այլ ի բազմազան տանջանարանս մաշեալք։ Ոմանք հրով կիսայրեացք առչորեալք, և այլ[ք] ի սովոյ ճաղանաքեկ վտանգեալք, կէսք խստամբեր կրօնիւք չարչարեալք, և այլք երկեղիւ պակուցեալք։ Որ և մերն ունելով իբր մեռեալս կամաւոր ի պահոջ Սահապօնս կոչեցեալ ամրոցի, ոչ ինչ ընդհատ լսելով ի մեզ զօրինակ մեծի սասանատառուսան

* Ձեռագրում արտագրված են Տաթևացու «Հարցմանց Գիրքը» և սույն՝ «Հարցմունք Գէորգ վարդապետին...» աշխատությունը։ Ձեռագրի վերջին՝ 281-321 թերթերը, ինչպես նաև միջից մի շարք թերթեր, արտագրված են նորոգողի կողմից, ԺԶ. դարում, հավանաբար՝ փտած ու խունացած բնագրից։ Բնագիրը (ձեռագրի մեծագույն մասը), մեր կարծիքով, հեղինակի՝ Գրիգոր Տաթևացու, ինքնագիրն է։ Ի հաստատություն վերոհիշյալ կարծիքի ունենք հետևյալ տվյալները.

ա) Ձեռագիրը շատ նման է Գրիգոր Տաթևացու ձեռագրին (հմմ. օրինակ, Երևանի № 16 ձեռագրի հետ՝ «Գիրք ութն առաքինութեանց Քրիստոսի», որը Գրիգոր Տաթևացին արտագրել է Հովհ. Որոտնեցու համար)։

բ) Կան բաց թողնված տեղեր հետագայում լրացնելու համար. և իրոք, մի քանի էջերում դրանք լրացված են նույն, բայց ավելի մանր, ձեռագրով։

գ) Լուսանցքներում, տարբեր դասավորությամբ գրված են բազմաթիվ հավելումներ ու պարզաբանումներ, որոնք արտագրության ժամանակ պետք է մուծվեին (և մուծվել են) բնագրի մեջ։

դ) Կան տողերի ու բառերի ջնջումներ, որ սովորական ձեռագրերում չեն հանդիպում։

ե) Բազմաթիվ հատվածների կից, լուսանցքներում, գրված են ծանոթագրություններ տվյալ հատվածը տեղաշարժելու, մի քանի թերթ առաջ կամ ետ տանելու մասին։ Բերենք մի քանի օրինակ. «Զայս Դ. թղթով ի յետ նշանածն գրէ» (էջ 14ա), «զԵղեկիէլի տեսիլն աստ գրէ, Բ թուղթ շրջէ» (էջ 46բ), «Բ. թղթով յառաջ ի նշանածն գրէ» (էջ՝ 78բ), «Գրէ զայս հետ բոլէին (իմա՝ «Վասն բոլէին» հատվածի), ի մին այլ երեսն» և այլն և այլն։

զ) Բերված օրինակներից պետք է եզրակացնել, որ այդ ծանոթագրությունները

ատենի։ Նախ որպէս անդանօր ողջունեն զխաղաղութեան ե զշինութեան գոլ, յեղակարծ ժամու հասանել բարկութեան, նմանապէս ե աստ՝ աւուրն կիրակէի ասացեալն կրկնոյ զատկի, յանկարծահաս ժամու շարժեալ հեղեղաց ուղխից խռովութեան զաւրաց, սաստաղին
321ա դոչմամբ ե ահագնատեսիլ, սուսերամերկ կորվալիճ նետողաց, ‖ որք պատեալ պահեալ պաշարէին զմեզ։ Ասացեալն նմանապէս և աստ կատարեալ, ոչ միայն անդ ի հեռաստան կամ ազալերկան (*), այլ ե ի դռան կլայիս սակաւ ինչ զանգաղեալ, մեռոյն փրկեալ և միւսն գերեալ։ Էր ե տեսանել աստ աղէողորմ տեսիլ միայն արտասուալի դիմաւք և կամարարձ հառաչմամբ, ազգ ե սիրելիք, ծնօղք և եղբարք, այլ ինչ ոչ օգնել ի գերութիւն վարելոց, որպէս ե յայնմ աւուր՝ ի կորուստ մատնելոց։ Այլ ե աստ ապաշաւելն ոչինչ օգնել. որպէս ե անդ ոչ լսողացն բեբանով հաշեալք, որ ե ոչ գոյր անդրէն դառնալ, ե ոչ կարի աւժարացն շահավաճառ եղեալ, ոչ գիտ ե ոչ ողորմ հանգոյն յիմարացն որիորդաց, զի ունողք բարիկեցիկք կենօք ե ոչ նոյնպիսիքն սովամահ տուայտեալք, ի սպառեալ ոիրոյ ե հատում յուսոյ, բազմանալ անօրէնութեանց, և տիրել անզղջութեանց, որ և խղճի որդանց անհանգիստ մտաց, ե շրջապարեալ ընդելեաց ի հեռատակ ճիւաղաց։ Եւ առ այս եկն ինձ, ով քաջ զուգակշիռ հասարակութեանց մեծատանց և աղքատաց, զի սրոց բազում աւանդեցաւ առաւել ինձ պահանջեցաւ, ե փքացելոցն հպարտութեամբ փոխանակ խրախութեանց, ճիչ աղաղակի ընդդէմ հեշտալեաց անհանգիստ խշտիս յերեկօրեայ զառաւաւտ խնդրէաք, ե ի նմա՝ զեռանդն երանեալք։ Եւ այս ոչ շաբաթու ե աւուրց սպառեալ, այլ ամսոց յերից երկարեալ սորին, և գործելեացն վրէժ ոչ կշիռ հատուցեալ։

Եւ այս աղէտ անզերծ տարակուսից շրջապատեալ զմեզ շըրջագայութեամբ տումարի Հայկազեան սեռից՝ հաբիւրից կրկնակի քառից և վեցեաց վեցից $(100 \cdot 2 \cdot 4 + 6 \cdot 6 + 551 = 1387)$, յորում ամի եղև ծռատօն զատկաց ազգի կոչեցեալ Յունաց, ի վերոյ ասացեալն աւուր նորոյս տէրունեաց։ Եւ այսպէս, տրտմեալ ոգով և թախանձեալ մտաւք, ընծայեցի տխեղծ մատամբ զխունախոյ զնըւէրս բանի իբր զլաւմայս այրոյն՝ քումդ գանձարանի։ Եւ մաղթեմ եղբայրական սիրով, զի ըստ բնածին բարերոյս բարուցդ աշխոյժ մտաւք ուղղապէս որոնել, զթերին լնուլ և զաւելորդն կշռել. հաւա-

---

գրված են արտագրող գրչին ուղղություն տալու նպատակով (գրէ, շրջէ և այլն); և որ «Հարցմանց Գրքի» սույն սևագիր օրինակը հեղինակի կողմից հանձնված է եղել ում գրչի սրբագրության և գեղեցիկ ու մաքուր արտագրության համար։ Եվ իրոք, 277ր էջում պահպանվել է մի գրություն, որը մենք համարում ենք ուղերձ գրված հեղինակի կողմից գրչին. այնտեղ գրված է «Այլ դու, ով այրդ աստուծոյ, մաքրամիտ և ճգնազգեաց միայնաւոր սուրբ հայրդ Սահակ, թէ և զիջանես եղբայրական սիրով խնդրել բանս ի մէնջ, սակայն կարող ես և զթերին լնուլ և զաւելորդն կշռել և զմեզ օգտեցուցանել, ի ներքոյ է քոյին պայծառամիտ սրբութեան սրտի, որովք միշտ երանութեամբ աստուած տեսցես...»։

Թվում է թե բերված տվյալները բավարար են եզրակացնելու համար, որ մեր Մատենադարանի № 3616 ձեռագիրը Գրիգոր Տաթևացու «Հարցմանց Գրքի» ինքնագիր, զույգ նախնական, օրինակն է։

նելեացն՝ տեառն շնորհք, և սխալանաց՝ տկարս անօթոյ, միայն բարեսէր կամօք յիշատակ բարի առ քոյդ արձանագրեսցի, ի տէր ողջ լեր։

710.

ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրդ. 6272, էջ 179—180 (Վան, սբ. Պօղոս եկեղեցի)

Գրիչ՝ Պետրոս
վայր՝ Քաջբերո[ւնո]յ երկիր

Ի ծաղման ճշմարիտ արեգականն, և յայտնիլ աստուածն բանի, նորագուարճ բերկրանօք պայծառացան արարածք։ Արդ, զայս պատուական ակս շափիւղայ... առեալ զսա տէր Թումեն, իւրն հոգևոր պաշար երկնաձիգ ճանապարհին, որ տանի առ հանդերձեալ և յահագին դատաստանն...։ Սկիզբն արարեալ գրութեան սուրբ աւետարանիս յայսմ ամի. որ էր թիւ Հայկազեան տումարիս ՊԼԶ. (1387), ի դառնաբեր ժամանակիս, որ աւերեցաւ բաղում տեղիք վասն մեղաց մերոց։ Յարուցեալ յարևելից չար բռնաւոր ազգն մահմետական, անուն նորա Լանկ-Թամուր, բազում և անթիւ զօրօք պատեալ ի Պարսից մինչև Հռոմաց երկիրն, և եկեալ ի տունս Հայոց, քանդեալ և գերեալ զամենեսեան, և սրախողխող արարեալ անողորմ զհայ և զտաճիկ՝ զորս գտաւ։ Եւ ո՞վ կարէ պատմել զչարութիւն և զվնաս նորա, զոր արար ի տեղիս-տեղիս։ Արդ, կատարեցաւ աստուածախօս գանձս տէրունեան ի յերկիր Քաջբերո[ւնո]յ, ի յանապատս, որ Մանուկ Սուրբ Նշան կոչի՝ օծեալ Թադէոսի առաքելոյն, և առ ոտս Գէորգայ զօրավարին, ի հայրապետութեան Հայոց տեառն Զաքարիայի, և ի ձեռնակալութեան երկրիս Ղարայ-Իւսուֆին, որ է չար և դառն և պիղծ և աւերարար երկրի։ Եւ ես՝ թշուառացեալս և անարժանս և անվարժս ի գրչաց Պետրոս աբեղայ, յանձն առի և տառապանօք և պանդխտութեամբ գրեցի վասն ժամանակիս, որ ամենայն բարի և կերակուր պակասեցան, և ոչ խաղաղութեան տեղիք [կայ յերկրի]. զայս աղաչանքն առ աստուած ունիմք, որ չտայ մեզ այլ տեսնուլ, զոր տեսաք։*

711.

ՃԱՇՈՑ

Փիրդ. 6273, էջ 177—179 և ՀԱ, 1926 Թ., էջ 241—242
(Սեբաստիոյ սբ. Նշան)

Գրիչ՝ Գէորգ
վայր՝ Եզնկայ մայրաքաղաք

Ի բազմազան տառատպութեան տառից գծագրութեան փառաւորեալն աստուած փառաւորեսցի, այն, որ օրհնեալ է յամենեցունց,

* Սույն հիշատակարանը ձեռագրից հանված և պատառոտված վիճակում այժմ պահվում է Մատենադարանի № 9223 ձեռագրի (հիշատակարանների ժողովածու) մեջ։ Ունի նաև հետագայի ստացողների հիշատակարաններ 1399 և 1495 թվականներից։

զորս ստեղծ և էած ի գոյութիւն։ Արդ, զկնի ամենայն փառաբանութեան... եղէ և ի մէնջ օրհնութիւն ի նուաղ և ի տկար հոգոյս անարժանութենէս, որ արժանի արար զիս հասանել ի կատարումն գրոյս...։

Ընդ սոյն և ես՝ նուաստ և յետինս ոգւոց հետոց հետևեալ՝ և ոչ գործոց, անուամբ՝ և ոչ բանի վաստակոց, թարմատարս և անարժանս յընկերակցաց իմ, ծոյլ և պղերգս ի դասս քահանայից Գէորգ, որդի Առաքել երիցու, չունիմ պատասխանի բանից խօսելոյ, զի եմ պարտական բիւրոց քանքարոյ, պղերգացայ առ տէրն ամենի, և թաղուցի զարծաթ տեառն իմոյ։ Եւ զծաղրեցի զսա ի մայրաքաղաքս Եզնկայ, և եղի իմ կամաւ և յօժարութեամբ յիշատակ ինձ, և այս վերոյգրեալ ննջեցելոցս, ի տաճարս, որ կոչի ընդ սուրբ խաչիւ անուամբ՝ սուրբ Նշան, և կանգնեալ կայ յանուն սուրբ Աստուածածնին Գրիգորի։

Յայսմ ժամանակի, յորում էր թուական Հայոց ՊԼԶ. (1387), եկաւ այդն խուժադուժ յարեւելից, ի կողմանց* Հիւսիսոյ, որ կոչէր Լանկ-Թամուր, և եկն մինչև յԱրզրում**, և բազում ոճիրս գործեաց | | | ***զոր յետս**** դարձոյց աստուած, և աղօթք սուրբ Լուսաւորչին պահեաց զքաղաքս Եզնկայ և զգաւառս իւր, որք են առ մեզ բոլորակայ։*****

## 712.

## ՃԱՇՈՑ

Երևան 4884

17բ Ո՛վ եղբարք, անմեղադիր լերուք, զի բազում խաբարս և խեղճս լսէաք ի ձեռաց Թամուրին. և սրտերս իբրև ոնաւահանգիստ կենայր, վասն այն, որ բազում սխալեցաք ի գիրքս, անմեղադիր լերուք աղաչեմ, զի ժամանակն յոյժ դառն էր։******

## 713.

## ՁԱՓԱԿԱՆՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Օքսֆորդ, Ms. Marsh. 17, Տիրայր վրդ. 34, թղթ. 119, էջ 467

Նախագաղափարի գրիչ՝ Ներսէս

132ա ԶՆերսէս տարակուսեալ աղաչեմ յիշել, ՊԼԶ. (1387)։ Զար է ժամանակս ի չարութեանց մերոց չարաց, զի որպէս սերմանքն հանգոյն նման, կունձքնք ն որայքն (")։ Եւ զվերջն նա միայն գիտէ, որ գիտողն է տնտեսւոյն և ևս որդոց մարդկան։

---

* ՀԱ «կողմանց» փխ. «ի կողմանց»։

** ՀԱ «յԱրզրում»։

*** Ըստ Փիրղալեմյանի ծանոթագրության «Անխոհեմ ձեռք մի... մի էջ գլխովին եղծեալ էր»։

**** Փիրղ. «յետոյ» փխ. «յետս»։

***** ՀԱ «բոլորականս»։

****** Ձեռագրի գրության ժամանակը, հավանաբար, պետք է լինի 1387-ը, Լանկ-Թամուրի առաջին անգամ Հայաստան արշաված տարին։

## 714.

### ՊԵՆՆՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ

Երևան 2316

Գրիչ՝ Պետրոս

242ա ...Ի թուակ[անութեանն] Հայոց ՊԼԶ. (1387), ես՝ նուաստս և տարտամս ի գործոց բարեաց Պետրոս սուտանուն սարկաւագս, որ միայն զանուն ունիմ սարկաւագի և զգործն ոչ, որ ցանգացայ գրել զաստուածային յայտնութիւնս ի խնդրոյ պատուելի վարդապետացս՝ Ղազար վարդ[ապետի] և Գրիգոր վարդ[ապետի]՝ հաւրեղբարց իմոց, ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ կենդանեաց և հանգուցելոց։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և լսէք կամ աւրինակէք զսա, մեղաց մերոց թողութիւն խնդրեցէք յաստուծոյ և ծնողաց մերոց, և աստուած զձեր մեղքն ջնջէ, և զլսողաց, և ուք ամէն ասէն. և զինչ դուք մեզ ասէք և խնդրէք, գտջիք և դուք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն, և յամենայն ժամ։

## 715.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7651 (տես նաև 1320 թ.)

Հետ. ստացող՝ Պարոնշահ

272բ Զվերջին ստացողք սորին՝ զՊարոնշահ պարոնն, հանդերձ ծնաւ-
ղիւք և ամենայն արեան մերձակայիւք, յիշեսջիք։ Յիշեսջիք և զհարսն
իմ՝ զՃահան-Մելիքն, հանդերձ ծնաւղիւք, որ ցանկացաւ սայ անգին
մարգարտիս և ցանկալի մատենիս, որ է թագաւորական, որ ցանկա-
273ա ցաւ սմայ Ջահան-Մելիքն՝ դուստր տէր Գրիգորին, ‖ և ստացաւ զսայ
ի հալալ արդեանց իւրոց, որ երետ զիւր նշանն՝ ԳՌ. (3000) սպ[իտակ],
և զերեստեսէն՝ ԳՌ. (3000) սպ[իտակ], և էառ զսա որպէս հրամայեաց
փրկիչն, թէ նմանեցաւ արքայութիւնն երկնից առն վաճառականի,
որ խնդրեաց մարգարիտս գեղեցիկս, և գտեալ մի պատուական մար-
գարիտ, երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր և գնեաց զայն
273բ մարգարիտ։ ‖ Արդ, ցանկանալով սայ այս մարգարտիս, զամենայն
զոր ինչ ունէր վաճառեաց և ստացաւ զայս անգին մարգարիտս յի-
շատակ իւր և ծնողաց իւրոց։

Արդ, որք հանդիպիք այսմ սուրբ աւետարանիս կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք զստացողք սորա՝ զՋահան-Մելիքն, և զհայրն իւր զտէր Գրիգորն, և զմայրն իւր զԽութլու-Մելիքն, և զայլ ամենայն արեան մերձակայսն՝ զկենդանիս և զհանգուցեալսն, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, ամէն։

Գրեցաւ վերջին յիշատակարանս ի թվ. ՊԼԶ. (1387)։*

---

* Բացի սրանից ձեռագրում կան նաև հետագա այլ ստացողների հիշատակարաններ, որոնց հեղինակներն են՝ Խաչատուր եպիսկոպոս Ջեյթունցին (1621 թ.), Երուսաղեմի նվիրակ Կարապետ վարդապետը (1624 թ.) և այլք։

716.

### ԴՐՈՒԹԻՒՆՔ ԴԻՈՆԻՍԻԱՑ ԱՐԻՈՊԱԳԱՑԻՈՑ

Երևան 166

Հետ. ստացող՝ Յոհաննէս

324ա Զվերջին ստացօղս զտէր Յոհաննէս, և զեղբայրն իմ զտէր Պետրոս, և զծնօղսն իմ զՅովաննէս քահանա, և զմայրն իմ Աղբրաց, և զԱգոբն յիշեցէք ի սրբազան յաղօթս ձեր, և աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, մեզ և ձեզ ողորմեսցի, առհասարակ, ամէն։

Որ կարդայք և որ օրինակէք սրտի մտօք թողութիւն խնդրեցէք մեզ։

Գրեցաւ յիշատակարանս ի թվին ՊԼԶ. (1387), տրէ Թ. (9), օրն հինգշաբաթի, և զիս զսուտ ծրողս յիշե[ցէք]։*

* Ձեռագրից գասելով այս հիշատակագրությունը չի կարող 1387 թվականից լինել. ըստ երևույթին հիշատակագրության վերջին պարբերությունն արտագրել է գրչի այժմ չպահպանված հիշատակարանից ստացող Հոհաննեսը։

## 717.

### *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ*

*Երևան 1144*

*Գրիչ՝ որդի* Ալեքսանի
*վայր՝* Սպատկերտ գաւառ

431ա *Հրամանաւ և աւժանդակութեամբ բաբունեացս մերոց* Յոհաննէսի *և* Կիրակոսի, *նաև հոգո և մարմնո մեր տածողաց, ուխտի որբում հռչակաւոր նախնաւանդ տանս առաջնորդք՝ յատուկ անուամբ Սուրբ Խաչ յորջորջեալ, կրօնիւք ընդիրք, և ի Քրիստոս մերձաւորութեանն արժանիք, և հմուտք աստուածաշունչ մատենից, որք վարժիչք և ուսուցիչք եղեն փանաքութեանս մերո, զորս և ընդ որս գրեսցէ տէր ծնօղօք իւրեանց ի դպրութիւն կենացն յաւիտենականաց։*

*Արդ, այսուհետև, զպատահողքդ այսմ տառիս յընթերցումն, յուսումն և ի գաղափար, աղաչեմ մաղթանաւք յիշել ի Քրիստոս զմեզ և զմերսն, զընթացեալսն և զպատրաստեալս, յաւէտ ևս զծնօղսն իմ ըստ մարմնո՝ զ*Ալեքսանն *քահանայ, և զհաւն* զՅովհաննէս *քահանայ, և զմայրն իմ՝ զհանգուցեալսն առ տէր, նաև զեղբայրն իմ* զՅակոբ *կրօնաւոր, որ ի տարաժամ հասակի ել ի կենաց, և զկենդանիսն՝* զՊետրոս *կրօնաւոր, և* զՄկրտիչ՝ *զկազմող սորին, և զայլ ամենայն արեանառուսն մեր, այլ և զԹդԹի կոկողսն և զամենայն երախտաւորսն ի սմա, որպէս զի ողորմութիւն գտցուք յիշեցեալքս յիշողօքդ հանդերձ յողորմածէն աստուծոյ՝ աւրհնելոյն յաւիտեանս։*

431բ *Բայց գրեցաւ սա ի թուաբերութեանս Հայկազեան ‖ ՊԼԷ. (1388), ի գաւառիս* Սպատկերտ, *ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի նախավկայի, ի դառն և ի նեղ ժամանակի, որում այց արասցէ Քրիստոս տառապանաց քրիստոնէից, և զանշարժ խաղաղութիւն իւր պարգևեսցէ աշխարհի, վասն զի կարիք է խաղաղութեան, և ոչ դո ուստէք օգնութիւն, բաց ի խնամոցն աստուծոյ՝ աւրհնելոյն յաւիտեանս, ամմէն։*

*Յայսմ ամի եկն անօրէն դանն* Թամուր-Լանկ *կոչեցեալ ի քաղաքն* Վասպուրական. *և առ զդղեակն և քարայատակ արար, զոմանս գերեաց, և զոմանս գահավիժեաց, և զայլս ի սուր սուսերի մաշեաց, և զերկիրն հրով ճարակեաց։*

## 718.

### ՑԱՂԱԳՍ ԿՈՒՍՈՒԹԵԱՆ, ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑՒՈՑ

Երևան 471

Գրիչ՝ Սէթ

26բ Կատարեցաւ տառս Կուսութեան հրամանաւ երջանիկ և քաջ րաբունապետացս մերո[ց]՝ Յոհ[աննիս]յի, եւ Կիրակոսի, եւ աշակերտի սոցա՝ հարազատ եւ ժրաջան մշակին աստուծոյ Յոհ[աննիս]ի կրաւն[աւորի], ձեռամբ մեղսասէր և փծուն գրչի Սէթ սուտանուն սարկաւագի, աղաչեմ յիշել ի տէր սրտի մտաւք, եւ նոյն ինքն Քրիստոս ձեզ ողորմեսցի, ամէն։*

## 719.

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վաստ. 99. Հալ. Ցուց. սյուն. 202. Ջուլամերիկի Փոկան գյուղի եկեղեցի. (տես նաև 1339 թ.)

Հետ. ստացող՝ Տիրացու

Արդ, ի վերջին աւուրս, և երևկոյացեալ ժամանակիս, և յետին դարիս եկ ազգն նետողաց, որ կոչի Թամուր, այլադէմ, այլալեզու, նմանեալ երկրորդ Ներոնի։ Ելեալ յարևելից և ընթացեալ ընդ ամենայն տիեզերս, սուր ճարակ արարեալ զամենեսեան, և ըղձացեալսն գերի վարեցին։ Ըղվիշտ և ըղկսկիծ և զդառնութիւն ժամանակիս ընդ գրով ոչ կարէ արկանել։ Եւ բերեալ էր զսուրբ աւետարանս գերի։ Ես՝ Տիրացու կրօնաւոր, ստացայ սուրբ աւետարանս յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ Հայրապետին, Դաստպետ քահանայի, և տէր Սէթի, և ամենայն մերձաւորաց մերոց, ամէն։

Գրեցաւ ի թվ. Հայոց ՊԼԷ. (1388). ընդ հովանեաւ սուրբ առաքելոյն Բարթուղիմէոսի և յառաջնորդ[ութեան] | | |ան հեղի և խոնարհի | , |

## 720.

### ԳԻՐՔ ՀԱՐՑՄԱՆՑ ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Փիրզ. 6273, էջ 180 (Լիմ անապատ)

Գրիչ՝ Ստեփաննոս
վայր՝ Թիլկուրան գիւղաքաղաք

Փառք... որ կարողացոյց և օժանդակեալ հասոյց յաւարտ այսմ հրաշալի փառաղարդ և լուսաշաւիղ հարցմանց և մեկնութեանց անհուն ծովոյս և խորին և անհասական իմաստիցս աստուածային ի լոյս վարդապետէն Վարդանայ, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի, ամէն. ի թուականութեանս Հայոց ՊԼԷ. (1388), ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին Հաճկատարեայ, ի գիւղաքաղաքս, որ կոչի Թիլկուրան, ի դառն և

* Տեղադրում ենք 1388 թվականի տակ նույնացնելով սույն և նախորդ հիշատակարանների Հովհաննես և Կիրակոս րաբունապետներին։

յետին ժամանակս, որ Թամուր-Լա[ն]կն խաղ[աց]եալ, եկեալ անթիւ բազմութեամբ բարբարոսօք, և աւերեաց զտունն Արևելեան, ի Սմըրղանդ քաղաքէ մինչև յԵփրատ Տարօնոյ, և ապա դարձաւ։ Ձեռամբ ապիկար և անհմուտ այսմ արուեստի Ստեփաննոս երիցու, ի խնդրոյ երջանիկ և աստուածահաճոյ խոճայ Ղազարին։

721.

## ՀՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՈՐԴԻՈՑՆ ՅԱԿՈԲԱՅ

Վիեն. 126, Տաշ. Ցուց. էջ 413

Գրիչ՝ Ստեփաննոս երէց
վայր՝ Թուրկուրան գիւղաքաղաք

184բ Արդ, ես լցեալս անչափ մեղաւք,
Հիւանդացեալս ամէն դիմաւք,
Ստեփաննոս երէց եւ ոչ գործաւք,
Յանդգնութեամբ գրեցի ձեռաւք,
Ի Հայոց մեծ թուականիս
ՊԼԷ.-երորդիս (1388),
Ի գեղաքաղաք Թուրկուրանիս
ՅԱստուածածին սուրբ տաճարիս,
Խնդրող բարի | | |

722.

## ՃԱՇՈՑ

Երևան 7447 (տես նաև 1381 թ.)

Գրիչ՝ Մարկոս
վայր՝ Ղրի՞մ

ա

494բ ...Յանկացող եղեալք սիրոյն Քրիստոսի և իւր արքայութեանն բարեպաշտ և հեզահոգի Յովանէս և համեստ զուգակից իւր Նուրմելիքն, և ստացան ի հալալ արդեանց իւրեանց զաստուածապատում Ճաշոց դիրքս գնով արծաթոյ, [յորդորմամբ բարեպաշտ և հաւատարիմ տանուտրոջ պարոն Խաչպէկի]* վեցհարիւր և Ծ. (650) խարճովն, ի Կարապետ իրիցու եղբաւրորդուէն՝ Ամիր-Սարգսէն, յիշատակ իւրեանց անջնջելի և ծնողաց իւրեանց...։

...Գրեցաւ յիշատակարանս ի թվաբերութիւնն ի ծննդենէն Քրիստոսի ըստ Հայոց հաշուի ՌՅՂ. (1390), եւ ըստ Յունաց՝ ՌՅՂԶ. (1396), եւ ըստ Ֆռանգաց ՌՅՁԸ. (1388), եւ ըստ Ասորոց՝ ՌՅՀԺԱ. (1381°), և Հաբեթական տոմարիս Հայոց ՊԼԷ. (1388), ի փետրուարի ամսոյ ԻԸ. (28), նահանջի ամի, ձեռամբ յոգնամեղի անձին՝ Մարկոս դրչի, և Քրիստոսի Յիսուսի փառք...։

* Փակագծի մեջ առնված մասը ջնջված է և դժվարությամբ է վերծանվում

Գնման արձանագրութիւն

բ

Տէր Յովանէսս գնեցի զգիրքս ի Կարապետ իրիցու եղբաւրորդոյն Զճ. (600) սպ[իտակ], վկայութեամբ տանուտերանց։
Եւ՝ Պուզմիշ հոռոմս՝ քարխանաճիս, վկայ եմ գրոցս.
Եւ՝ Մելքիսեթս և Մկրտիչս՝ Բ. եղբայրքս, վկայ եմք.
Եւ՝ Հընդուշայս՝ ապրեփեցս, վկայ եմ.
Եւ՝ Ցեվատշայ զինեծախս, վկայ եմք, որդիք Թաֆրեզլուի.
Եւ՝ Սարգիսս Անտոնու [որդի]՝ կարևորս, վկա եմ։

## 723.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5480

Գրիչ՝ Պետրոս

ա

81ա ...Արդ, աղաչեմք զմանկունսդ սուրբ եկեղեցոյ յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ աւետարանիս զտէր Թումա, և զեղբայրն իւր զՍտեփաննոս կրաւնաւորն՝ զհանգուցեալն ի Քրիստոս..., և ինձ Պետրոս գրչի։

բ

125բ Ո՛վ, դասք լուսերամից, որք հանդիպիք կենսաբեր սուրբ աւետարանիս, յիշեցէք յաստուածամերձ յաղօթս ձեր զստացող սորա զտէր Թումա զերջանիկ եպիսկոպոսն, և զքրիստոսունակ հոգին՝ զՍտեփաննոս կրօնաւոր՝ զփոխեցեալն ի Քրիստոս, նաև զաստուածասէր ծնօղքն՝ զհայրն զՇիրինշահ, և զմայրն զՇնօճվոր տիկին, և զհօրեղբարսն՝ զԹումա, և զՅովհա[ննէս] | | |

Միւս գրիչ՝ Ատոմ

գ

6ա Զմեղուցեալս յամենայնի, զսակաւ տառապող ցանգիս, զԱտոմ սպասաւոր բանին Յիսուսի յիշել ի տէր աղաչեմ։ Գրեցաւ ՊԼԷ. (1388), մարգաց ի ԻԶ. (26) և նոյեմբեր Դ. (4), որ է սահմի ԻԶ. (26)։

## 724.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9112 (տես նաև 1581 և 1687 Թ.Թ.)

Գրիչ՝ Թումա
Վայր՝ Շիրիան

299ա Գրեցաւ բերան և բարբառս փրկչական և աստուածական տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ստեղծողին<´ին> մերո ի տեղիս, որ կոչի Շիրիան, ձեռամբ յոգնամեղ և անարհեստ և փցուն գրչի Թումայի՝ անուամբ քահանայի, ի Թվ. ՊԼԷ. (1388), յարեդ ամսու։ Անմեղադիր լերուք, զի տեղիս անհաստատ էր, շտապով գրեցաւ։ Որ զմեզ յիշէ և զերախտաւորսն մեր՝ յիշեալ լիցի ինքն և իւրքն ի Քրիստոսէ աստուծոյ մերո, որ է աւրհնեալ յաւիտեանս։





## 725.

## ԾԱՌԸՆՏԻՐ

*Մաքսուդ, Ցուց. Ագուլիսի. 24, Արարատ, 1911 թ., էջ 760—765*

Գրիչ՝ Կարապետ
վայր՝ Ախթամար

ա

### Վասն գալոյ Լանկ-Թամուրին բազում զաւրաւք և նեծեղովք, որ կոտորեաց զամենեսեան

528բ *Արդ, ո՜վ եղբարք և հաւատացեալք Քրիստոսի, լուարուք զպատուհաս բարկութեանս, որ եկն եհաս ի վերայ մեր վասն մեղաց մերոց։ Քանզի ներէր մարդասիրութեամբ և ողորմութեամբ, եռանդնաշարժ սիրով երկայնմտութիւն սիրոյն աստուծոյ, յորժամ էր կամք մարդոյն տրամադրեալ ի բարեբուն բարին, և կատարող գոլով կամաց արարչին։ Իսկ յորում ժամանակի ոչ հնազանդեցան աւրինաց ստեղծաւղին իւրեանց, բարձեալ բարեգութն աստուած զխնամ ածելն բարձրութեամբ ձեռինն առ ի հարկանել, և երթալով երթայր ընդ խոտորնակին ուժգին խոտորնակ, որպէս է տեսանել և նախնոյն Ադամայ մինչև առ յապա | | |*

*Ոմանք երկրակարկափ պատառմամբ յանդունդս տապալեցան, ոմանք այսպէս և ոմանք այնպէս սաստկակսկիծ դանիւ տանջեցան։ Որպէս եղև ի վերջացեալ աւուրս և յերեկոյացեալ ժամանակիս, ի Հայկազեան ազգիս թուոյս տումարի ՊԼԶ. (1387), ելեալ այր անաւրէն ըստ նմանութեան Գողիաթայ, Լանկ-Թամուր անուն կոչեցեալ, գրեթէ սկաւառակ ութնեկի լցեալ դառնութեամբ բաժակաւ ի ձեռինն աստուծոյ, զոր եհեղ ի վերայ չարագործ ազգի մարդկայնոց, ըստ նախնոյն Ասուրայ, Նաբուպաղասարայ և այլոց վայրենաբարոյիցն։ Ուստի շարժեալ յելիցն արևու, ի շահաստանէն, որոյ անուն կոչի* Սմըրղընդ, *և ձայն ահարկու արկեալ ի վերայ բազում գաւառաց, զոր կային տէրութեամբ այլոց, և յոլովք արտաքոյ յերկիւղէ և ի կարծեաց յոչ կամաց զետեղեալ | | | զաւրաց բազմութիւն հարիւր հազար սուսերամերկաց երկաթակուռ զինուորաց։ Սկսեալ ի յութհարիւր և յերեսուն (1381) թուին խորհուրդ դալստեանն, և յետ վեց ամի ապա եհաս առ մեզ շշուկն դողացուցիչ։ Զի յամսեանն մեհեկի ազդեաց մահն վաղահասուկ ի բոլոր աշխարհս Հայաստանեաց։ Ահա, անդ էր տեսանել դառոսուռ ահագնահայեցութեան գազանաբարոյ մարդոց, զի լսողքն սրտաթափ լինէին և հանդիպողքն, տեսանելով ի հեռաստանէ զփոշի ոտից նոցա իբրև դամբ միգախառն, զի արագէին երիվարք խստեբախ, և հիանային ազդ մարդկան յանսովոր պատահմանցն։ Եթէ լի-*

նէր ուրուք զաղթեալ ի բարձրակատար զագաթս լերանց, և անգուստ ի խոնարհ նայելով ի վերայ լեգէոնախումբ կուտակեալ խռովութեան ծովուն, սոսկանայր հոգին ի մարմինն, որ թէպէտ կենդանի, այլ վատթար գոլով քան զբազմաւրեա մեռեալս, ի փայլմանէ սուսերացն, ի ճաւճելոյ բոմբրացն, ի գաբբելոյ երիվարացն, ի փողնչելոյ կառացն, ի խբխնջելոյ բարձրապարանոց ծովային ձիոցն, ի ճչելոյ ձայնիցն, ի տեսութենէ անհուն հեծելոցն, որ եռային, զեռային, զդաշտս ծածկէին, զլերինս բոլորէին, զլարս լնուին, զլայնանիստ տեղիս փակէին, աշխարհալուր զձայնս առնէին, զերկիր ողջոյն աստղակարկաջ և բոսորաներկ խորանաւք լնուին և ութաւրեայ ճանապարհաց դապաւանդակ և զկայմ լարուցն մի առ մի հիւսեալ մանէին։ Եւ թէ ոք ընդգիմանայր նոցա անառիկ զգեկաւ, վաղվաղակի անգր ժամանէին իբրև զբազմութիւն մարախոյ, բոլորէին, ճչէին, գոչէին, ոռնային, բառաչէին, հաջէին, հառաչէին, խխընջէին, որոտային, զգհաւլսն դմղրմէին, զնազարայսն հարկանէին, զչարխն լարէին, զնետսն տեղային, | | | ռմբաքարսն հոլովէին, զըլգիհոնն ձգէին, զմճնեղ մեքենայից | | | նէին և յերկնուստ | | | սէին, փակէին, քանդէին, քարայատակէին, փորէին, փոս հատանէին, կռփէին, կռանէին, զամաց հազարաց շինուածս՝ միաւրեա անհետ կորուսանէին։ Իսկ նոքա, որ ի ներքս ամրոցին էին՝ տապէին, տագնապէին, թուլանային, սարսէին, սարսափէին, ծարաւէին, նքթէին, նքողէին. երկիւղիւ երկնչէին։

Անդ էր տեսանել զլաց ծնաւղացն, զաղէտ զաւակացն, զգալաբուﬓ աղեացն, զայլայլուﬓ դիմացն, զզեղնանալ երեսացն, զնուազուﬓ ձայնիցն, զկապուﬓ ոտիցն, զդագարուﬓ ձեռացն, զհամբանալ լեզուացն, զխափանուﬓ մտացն։ Ոﬓ աղերսէր, ոﬓ աղաղակէր, ոﬓ հայցէր, ոﬓ պաղատէր, ոﬓ խնդրէր, ոﬓ աղաւթէր և ոﬓ արտասուէր։ Եւ ոչ լսէր հեշտալուրն աստուած վասն մեղաց մերոց և անուղ[ղ]այ գնացից, այլ մատնէր ի ձեռս անաւրինաց։ Իսկ յորժամ բռնանային և առնուին զբերդ ուրուք, | | | աղաղակ բառնաին, և ի լեառն քաղաքի կամ բերդի հաւաքէին, զոոհ տուեալ առժամայն զզրունս երկաթիս խորտակէին, յամենայն կողմանց ի վեր խաղային, իբրև զծով փրփրադէղ կոխակաւք զառհասարակսն ծածկէին։ Աւա՜ղ ժամուն, ոﬓ արիւնաթաթախ զիագլոր թաւալէր ի մէջ արեան ծովուն, ոﬓ կիսակտուր գլուխն ի յանձնէն ջուր խնդրէր և ի ծարաւոյ անդէն մեռանէր, ոﬓ անկեալ գլուխ ի վայր և արեան աղբիւրն ի բերանոյն ելանէր։ Ո՜հ ձայնին, ո՜հ աւաղին, ո՜հ կսկծոյն արտասուագին, ջոկ առ ջոկ, բոլուկ բոլուկ, երամ երամ, ոգկուզաւրէն անկեալ զնէին, մրցացի, աքացի և ծղացի։ Անդ, վա՜յ, աստ վայի վա՜յ, անդ ա՜ւշ, աստ վա՜շ։ Ահա անդորրացաւ ծով հեծելոցն, ահա ի խոյզ և ի խնդ[ի]ր ելին,* և խնդրէին, հարցանէին զքրիստոնեայսն, և յորժամ տեղեկանային՝ անողորմ սպանանէին | | | թիւս հազարաց. զհրաշագործ եպիսկոպոսունսն սրոյ բերանոյն տային, զսրբասնեալ քահանայսն քարաջարդ զգլուխսն առնէին, զՔրիստոսի հաւտն կերակուր շանց արկանէին, զողայսն առա-

* Տպված է «խնդրելին»։

*Թուր ձիոց առնէին, զկանայսն խայտառակէին, զմանկունս նոցին գերի վարէին. իբրև զկալ կամնասայլից զողայսն ձիովք կասէին, և փոխան ցորենոյ արիւնս զետոց բղխէին, և փոխանակ յարգի զոսկերս իբրև զփոշի յերկիր հոսէին։ Ցագեցան գազանք, ձանձրացան թռչունք, տարակուսեցան գայլք, թէ զում ուտէին միս՝ զհայրապետա՞ց, թէ զքահանայից, թէ զսարկաւագաց, թէ զպաշտաւնէից, զճգնաւորա՞ց, թէ զլեռնականաց։ Դարձեալ, ժամանէին յեկեղեցիս, աապալէին զսեղանս, այրէին զգրունս, պզծէին զտաճարս, խորտակէին զտուփս խնկոց և հաղորդաց, ուրացուցանէին ի հաւատոյ և ապա սպանանէին։ Ի սով սաստկութեան սովացուցանէին, մինչ զի զշուն, զկատու, զէշ, զձի, զհեզձուկ, զմուրտառ, նախ զսիրասնունդ զաւակսն խորովէին և ուտէին. բարձաւ զաւրութիւն հացի և ջրոյ։*

*Եւ արդ, ճշմարիտ ասեմ ի Քրիստոս, որ ի հազարէն և ի բիւրէն զմինն մասնաւորեցի վասն ձանձրութեանն լսողաց։ Եւ այս ամենայն եղև վասն ծովացեալ մեղաց մերոց։*

*Ի յայսպիսի դառն և աղէտակոծ ժամանակիս, ես՝ նուաստս ի գրչաւորաց* Կարապետ *քահանայ, սկսայ զգիրքս այս և կատարեցի, ով հանդիպիք այս ողորմելի պատմութեանս գիս՝ զմեղաւոր գրողս, և* զՍտեփաննոս *միայնակեացն յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

*...Արդ, ի յայսմ դառն և ի տարտարոս ժամանակիս երեւեալ խաբեբայ և սուտ միայնակեացն* Ստեփաննոս, *և ելեալ ի խնդիր այս աստուածային անկողոպտելի տէրունական գանձուցս...։ Վասն որոյ մեծ փափաքանաւք ետ գրել զսա* Ստեփաննոս *միայնակեացն, յիշատակ անջինջ հոգոյ իւրոյ և ծնաւղացն՝* Մկրտչի *և* Խուանդի, *և քերցն՝* Ուալուն-Մելքի *և* Շաքար-Խաթունի, *և փեսային իւրոյ՝* Յովաննիսի, *և ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոց։ Եւ ետ զսա նուէր և ընծայ ի դուռն սուրբ եկեղեցեացն Ամենափրկչին և Տիրամաւր* | | | *ի*] *գեաւղն* Գաւաշ...:

*Եւ արդ, ես՝ ամենամեղ և անարժան ծառայ ծառայիցն աստուծոյ* Կարապետ *անարհեստ դրիչ, յանձն առի տկար անձամբ և ծանրաբեռն մեղաւք, տգէտ գիտութեամբ և անիմաստ մտաւք, անհմուտ գրոց գիտութեամբ և անվարժ արուեստիւք, յանդգնութեամբ ձեռնարկեցի ի մեծ գործս յայս, ոչ ըստ իմում արժանաւորութեանս, այլ ապաւինելով յամենակարաւղ զաւրութիւն պարգևատուին, որ տայ առատապէս և ոչ նախատէ. բազում և մեծ աշխատանաւք հասուցի զսա յաւարտումն, յաստուածաբնակ կղզոջս* Ախթամարայ, *ընդ հովանեաւ ամենայաղթ սուրբ Խաչիս և սուրբ Նշանիս, ի թուակա[նութեան Հայոց]* ՊԼԸ. *(1389), ի հայրապ[ետութեան] տէր* Զաքարիայի, *վասն որոյ բարեխաւսութեամբ սուրբ և փառաւորեալ աստուածածնին Մարիամու և աղաչանաւք ընտրելոց սրբոց և սրբոյն Ստեփանոսի, Քրիստոս աստուած՝ թագաւորն երկնաւոր... ծովացեալ մեղաց իմոց մաք-*

րումն արարեալ է և երկնից խորանաց մտիցն արժանացուսցէ ըստ իւրում ողորմութեանն։ Նաև զծնաւղքն իմ՝ զՄկրտիչ քահանայ և զԹանկ-խաթունն, և զեղբարքն՝ զՋաֆարիայ, որ զրելոյն աւգնեաց և ծաղկեաց զՅովսեփն՝ որ աշխատեցաւ ի կոկել թղթիս, և զԽաչիկ, և զքեռին իմ զՊարոնյոն, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, և զամենայն արեան մերձաւորքն իմ՝ զկենդանիք և զննջեցեալք։ Եւ զուսուցիչն մեր զԿարապետ կրաւնաւորն՝ հաւրեղբայր մեր, և զայնոսիկ, որք երախտաւորք եղեն մեզ ի պէտս մարմնաւոր պիտոյից, եւ զկենակիցն իմ զԳուլմելիք...։

[Յիշեցէք և զ]պատուական քահանայքն, որ են ի գեաւղն Գաւաշ, զ[Յ]ոհաննէս փիլիսոփայն, որ է նա որդի մեծ քահանային Թադէոսի, և զերկու Թումայն, և զերկու Ստեփաննոսն, և զՄարտիրոսն, և զԳրիգորն, և Ժամահարն, և զԿիրակոսն, զի վայելելով զգիրքս ուրախացին սովաւ և յիշեսցեն յաղաւթս իւրեանց զստացողն և զգրողն և ղաշխատողն։ Եւ զտանուտէրքն՝ զմեծ և զփոքր, զհաւատարիմ տանտիկնայքն, զայր և զկին, զծեր և զտղայ, պահեսցէ Քրիստոս աստուած ի խաղաղութիւն, և արժանի արասցէ արքայութեան իւրում, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Յիշեցէք ի Քրիստոս զՅովանէս սան իւր և զայլ սաներն և աստուած զձեզ յիշէ։

## 726.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 3487

Գրիչ՝ Յակոբ Ղրըմեցի
Վայր՝ Եկեղեաց գաւառ, Կապոսի վանք

139ա ...Արդ, ես՝ Յակոբ Ղրըմեցիս, ունայնագործս ի բարեաց և ուխտազանց գտեալս ի տեառնէ, նայ և վատթարս ի մէջ սրբ[ա]զանից՝ ըստ անարժան զնացից, գրեցի զերեքեան գիրքս զայս իմով ձեռամբ անարհեստ գրչի։ Առաջին՝ զՀոգոց և զՋաւրութեանց Նորին, յերկրորդ զԱռաքինութեանց հոգոյն, երրորդ՝ Վասն բնութեան հրեշտակացն։ Ի թվականութեանս Հայոց՝ մեծ թուականին ՊԼԸ. (1389), և փոքերն ՅԸ. (306), ի գաւառիս Եկեղեաց, ի հռչակաւոր վանքս, որ կոչի Կապոսի, ի ստորոտ լերինս Սեպուհու, ընդ հովանեաւ կենաց բարեխաւսին սրբոյն Յակոբի, և եառ զսա Աբրահամ աբեղային՝ բանի սպասաւորի և գրոց աշակերտի քաջ հռետորին Եզնկացոյ Գէորգ վարդապե-
139բ տին, || զորս յուսամ յապէնիազն* աստուած, զի խաղաղութեամբ վայելել տացէ զսա Աբրահամ գրոց աշակերտին, երկար ամօք և յամեբամ ժամանակօք, և հասուսցէ յաստիճան կատարել վարդապետութեան, և պահեսցէ ի կամս իւր, ամմէն։

Եւ զբառագիրքն իմ, յորում Փառք ի բարձունսն մեկնութիւն գրեալ է ի սկիզբն, եառ Յովանէս աբեղային՝ գրոց աշակերտին և բանի սպասաւորին։

* Իմա՝ «Ապենիազն»-ընկալօղ։

## 727.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեննա. 151, Ցուց. Ա. էջ 652

Հետ. ստացող՝ Սահակ

337բ Ընդ նմ[ին] և զվերջին ստացողս՝ Սահակ քահանայ, և զդեռայբուս զաւակ սորին Յոհանէս սարկաւագն, և զեղբայր սորին՝ զԱբրահամ, և զքեր սոցին՝ Ո[ւ]ստիանէ, և զՇղիսէ, և Մարիամ, և զմայր սոցին Տիրուհի, և զծնողսն իմ՝ Գէորգ քահանայ, և զհանգուցեալ զմայր իմ | | | ին, և զեղբարսն իմ զհանգուցեալ ի Քրիստոս՝ զտէր Զաքարէ եպիսկոպոսն։ Արդ, բարեխաւս ունիմ սուրբ աւետարանս, զի թողութիւն շնորհեսցէ յանցանաց մերոց և ձերոցդ։ Եւ որք յիշէքդ յիշեալ լիջիք ի դուք առաջի ահեղ ատենին Քրիստոսի, և թողութիւն խնդրելով մեղաց մերոց և ձերոց, և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս, ամէն։ Գրեցաւ ի թվին Հայոց ՊԼԸ. (1389), զվերջին գրող ինադանց և սխըս պատառ Յոհ. (այսպէս)։

## 728.

## ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑ

Երևան 1142

Գրիչ՝ Ներսէս

ՊԼԸ. (1389)։*

549ա Զներսէս անարժան սպասաւոր բանի աղաչեմ յիշել և անմեղադրելի արձակել ի բամբասանաց։

* Թվականը գրված է 543ա էջում։





## 729.

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ԱՒԵՏԱՐԱՆԻ

Երևան 9223,է (տես նաև 1495 թ.)

Ստացող՝ Թումա
վայր՝ Աղթամար

3ա Ես՝ տէր Թումա՝ յետինս ի հայրապետաց և առաջինս ի մեղա-
ւորաց, յոյս առ Քրիստոս աստուած եդի հաստատուն հաւատով, և
եռափափագ սիրով, եռանդնաշարժ սրտիւ, ետու ծրագրել զկենսաբեր
սուրբ աւետարանս, և ըստ կարի զարդարել յարծաթ և յոսկի, ի հա-
լալ արդեանց և ի խոնջաքիրտն երկանց աշխատանաց։ Եւ ետու զսա
ի զուան գերահրաշ և երկնանման կաթուղիկէիս՝ սուրբ Խաչիս Աղ-
թամարա, յիշատակ անջնջելի և կտակ անդառնալի մեզ՝ երկուց եղ-
բարցս՝ Թումա եպիսկոպոսի և Ստեփաննոս կրօնաւորի, և ծնօղաց մե-
րոց և հօրեղբօրորդւոցն՝ Մկրտչին և Աւետոին, և ամենայն արեան
մերձաւորաց և երախտաւորաց։ Նաև լեռղահատոր համշիրակ եղբարց
մերոց, որ են սպասաւոր սուրբ եկեղեցույս՝ Զաքարիա և Կարապետ,
Կոստանդ և Աւետիս, Աստուածատուր և Մկրտիչ, Յոհաննես և Պետրոս,
Ստեփաննոս և Յոհաննես, Գրիգոր և Մխիթար, Ստեփաննոսեանցն և Կի-
րակոս, Ստեփաննոս և Սարգիս, և Մկրտիչ միակեաց, և Արև, || որ հա-
3բ նապազ աղօթեն բազկատարած մաղթանօք զփրկութիւն ամենայն
աշխարհի....։

Եւ մի ոք իշխեսցէ հեռացուցանել զսա ի դրանէ սուրբ Խաչիս յափշտակելով, կամ գողանալով, կամ ծախելով, կամ գրաւելով, դատի ի Քրիստոսէ թէ յանգգնի և արասցէ անիրաւութիւն, և մասն զՅուդային առցէ և զայլ խաչահանուացն։ Իսկ առաջնորդք և փակակալք և դասավար, որ զաղաչանս մեր կատարեն՝ կատարեսցի խնդրուածք նոցա առաջի Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յերիս յաւիտեանս՝ ընդ հօր և սուրբ հոգւոյն, աստուած ի վերայ ամենայնի, ամէն։

Ի թվկն. ՊԼԹ. (1390) վայելչացաւ, ի փառս Քրիստոսի։

## 730.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

Երևան 4938

Գրիչ՝ Ծերուն
վայր՝ Ոստան

ա

202բ ...Գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՊԼԹ. (1390), ի քաղաքիս
Ոստան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս և սրբոյն Ստեփանոսի

նախավկային, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, ձեռամբ ամենամեղ և անիմաստ ե վայ և եղուկ գրչի Մերուժի։ Արդ, ցանկացող եղեալ այսմ աստուածային և սուրբ կտակիս երջանիկ ե պատուական հայրն Յոհաննէս՝ առաջնորդ վանաց սրբոյն Վարդանայ,* որ կոչի Ապազվաթ,** քանզի յոյժ փափագմամբ ետ գրել զսա յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց՝ Յովաթիսի և Թարխաթի, և սնուցչին իւրոյ Խութլուի...։

293ա ...Դարձեալ կրկին աղաչեմ զամենեսեան, յիշեսջիք ի Քրիստոս զերջանիկ և զսրբասնունդ փիլիսոփայն զԹումա, որ զաւրինակն շնորհեաց, պարգեւեսցէ նմա տէր աստուած զերկնից արքայութիւնն իւր և ծնողաց իւրոց, և Քրիստոսի աստուծոյ փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

բ

1բ Տէր աստուած վայելել տացէ զսա Յոհաննէս վանից հաւրն ընդ երկայն աւուրս, և յետոյ՝ անջինջ յիշատակ պահեսցէ զսա հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց։ Եւ զիս՝ զմեղուցեալ ծաղկողս և զգծողս՝ զՄերուժ, յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ [յիշէ]։***

Նուիրատու՝ Յոհաննէս

գ

Ես՝ Յոհաննէս, առաջնորդ անապատիս Ապազվաթից, ետու զնորոգեալս սուրբ եկեղեցւոյս, յիշատակ ինձ, և ծնաւղացն իմոց, և ամենայն արեան մերձաւորացն...։

731.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երեւան 4941

Գրիչ՝ Զաքարայ
վայր՝ Աղթամար

ա

278ա ...Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչիս և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, և ի թուին Հայոց ՊԼԹ. (1390), ձեռամբ Զաքարայ սուտանուն կր[աւնաւորի], անիմաստ և ախմար գրչի...։****

278բ ...Որք պատահիք սմա տեսութեամբ և ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր զստացողք սորա՝ զպարոն Թաղաչարն, ե զծնողքն իւր՝ զՄարտիրոս և զՄարգարիտ, և զեղբայրն՝ զԹաւաքալ, և զազգն ամե-

---

* «Վարդանայ» գրված է մի այլ վանքի ջնջված անվան վրա, նոր ձեռագրով։
** Գտնվում է Նարեկից արևելք, մեկ ժամվա հեռավորությամբ։
*** Մերուժ ծաղկողի սույն հիշատակագրությունը գրված է սկզբի թերթի վրա, Գրիգոր Նարեկացու նկարից ցած։
**** Շնորհալի և վարժ գրիչ է։

նայն առհասարակ՝ զկենդանիք և զհանգուցեալքն, և զկենակիցն զԽութ-
լումէլիք, և զնորին ծնողքն՝ զԱմիր և զՇնոհուր տիկին, և զեղ-
բարքն՝ զՍտեփանոս և զՄկրտիչ, և զորդն ամենայն առհասարակ։
Եւ զսրբասէր և զպատուական քահանայն զՅովաննէս փիլիսոփայն, որ
յայսմ ամի տարաժամ մահուամբ փոխեցաւ առ Քրիստոս, յիշեցէք
և աստուած-ողորմի ասացէք, և զերախտաւոր հոգևոր քոյրն մեր
զԱննա հաւատավոր, ընդ նոսին և զանպիտան գրիչ Ջաֆարայ, և զծնող-
քըն իմ՝ զՄկրտիչ քահանայ և զԹանկխաթուն, և զեղբարքն մեր՝
279ա զԿարապետ քահանայ և զՅովաննէս, որ աշխատեցաւ ի կոկել ||
Թղթիս։ Եւ զուսուցիչն մեր զԿարապետ կր[աւնաւոր]՝ զհանգուցեալն
ի Քրիստոս...։

ԶՍարգիս քահանայն, որ կազմելոյն աւգնեաց և աշխատեցաւ,
յիշեցէք ի Քրիստոս, և աստուած ողորմի ասացէք ծնաւղաց նորա։

Բ

...Այրն աստուածայսէր Թադաչարն...ետ գրել զաւետարանս ի
279բ հալալ գոյից իւրոց, եւ ետ զսա սարի սուրբ || Գորգին և սուրբ Աս-
տուածածնին՝ անջինջ յիշատակ իւրն և ծնաւղացն։ Իսկ առաջնորդք
սուրբ ուխտին տան ի տարին Դ. (4) օր ժամ Թադաչարին, նաև կե-
նակցին իւրոյ, քանզի շինեաց ջաղաց և զայն ես ետ սուրբ ուխտիս...։

Նուիրատու՝ Թադաչա՞ր

Գ

279բ Այլ շնորհեցի զսա ժրաջան քաջ աշխատողաց և ծնաւղք կենաց
բանին, զաւրէն մեղուաց շրջելով ի գերբուկս խրթնահայեաց աստուա-
ծաշունչ գրոց բերելով զքաղցրահամ գիտութիւն ի բջիջս բանաւոր
մտաց քաղցր ոգւոց, մեծն ի պըւէտից, վարժավարժիցն պետն՝ վար-
դապետին Սարգիս, և ճգնազգեացն վարդապետ Յոհաննէս, և Թումայ
վարդապետ, և զՅովանէս վարդապետ։ Եւ հեզահոգի հայրն վանաց,
280ա որ և անուն || Պաոկ յորջորջի, և զայլ միաբանսն և զկրաւնաւորս
սուրբ ուխտիս...։*

732.

Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

Երևան 284**

Նուիրատու՝ Ըզպիլ
վայր՝ Երուսաղէմ

Ի թվականութեանս Հայոց ՊԼԹ. (1390), և ի կաթողիկոսութեանն
տեառն Թէոդորոսի, և յեպիսկոպոսութեանս Երուսաղէմի տէր Գրիգո-
328ա րիսի Մըսրցոյ, || բերաւ աստուածազարդ և չորեքծագեան եդեմա-
բուխ քառավտակ և աստուածախաւս սուրբ աւետարանս ի Տարսուսոյ

* Շարունակությունն անհետաքրքիր է։

** Ձեռագիրն ընդօրինակված է 1272 թվականին։

ի սուրբ քաղաքս Երուսաղէմ։ Զոր երեք հաւատարիմ աղախինն Քրիստոսի Ըոպին իբրեւ կինն, և եղ ի սուրբ Յակոբ, առ ի յիշատակ իւր, և առն իւրում Գրիգոր քահանայի, և զաւակին իւրեանց Յոհաննիսի, նաև և առաջին ստացողին Սմպատայ, և կողակցին իւրոյ Տիրանցին։ Վասն որոյ, առ ոտս անկեալ երկրամած դիմօք, ես՝ մեղուցեալ Ըոպիս, և աղաչեմ զերամս եպիսկոպոսաց, և զքահանայից, և զսարկաւագաց, այլ և զամենայն լսողաց դասս, որք վայելէք ի քաղցրաճաշակ յեզեմայտունկ փտակաց քառառաջեայ | | . անաց կենդանական աստուածախաւս [աւ]ետարան բանիցս, առ ոտս անկեալ աղաչեմ, յի-
328բ շեսջիք զիս՝ զմեղուցեալ |: Ըոպին, և զԳրիգոր երէցն իմ, և զաւակն մեր զՅոհաննէս, ընդ նմին և զառաջին ստացող սորայ զՍմպատ, և զկողակիցն իւր զՏիրանցն յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր, և աստուած զ[յ]իշողդ յիշէ, ամէն։

Եւ եթէ ոք զսուրբ աւետարանս բռնաբար իշխանութեամբ կամ գողութեամբ, վասն իւր ագահ բարոյն, հանցէ ի սուրբ քաղաքէս Երուսաղէմի, իւր առանձին ստանալով կամ ազգականի շնորհելով, ինքն Քրիստոս լիցի նմայ դատախազ յիւր մեծ և ի սոսկալի ատենին, և եթէ ոք զ[յ]իշատակս եղծանել կամեսցի ի սուրբ աւետարանէս՝ նոյնպէս դատեսցի ի Քրիստոսէ, ամէն։

Ստեփանոս մեղաւորս գրեցի զսակաւ յիշատակս, աղաչեմ յիշել ի տէր։

## 733.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 2090

Գրիչ՝ Վարդան

վայր՝ Մոտ առ մայրաքաղաքն Սուլղաթ

290բ ...Որում ցանկացաւղ եղեալ Նեռվէ միայնակեացն և ետ գրել զսա, զի ետես զանհամար ազգս անաւրէնութեանց և ախտից՝ զորս սա թուէ առ մեզ բազմապատկաբար կատարեալ...։

291ա ...Եւ զձեզ աղաչեմ, որք պատահէք զինչ աւրինակաւ և իցէ, յիշել աղաւթիւք զՆեռվէ միակեացն, և զծնաւղսն իւր, և զամենայն արեան մերձաւորսն։ Յիշեսջիք զԳրիգոր քահանայ և զՄխիթար, որ զթուղթն շնորհեցին, յիշեսջիք զԱւետիս միակեցն, որ ի գինն աւգնական եղև, յիշեցէք զառաջնորդ սուրբ ուխտիս՝ զՅովաննէս միակեցն, որ զմեզ ժողովեց, և ի կերակուր և յամենայն գործս ձեռնտու եղև մեզ։ Յիշեցէք զՏէրն և զՄովսէս կրաւն[աւոր],որ մեզ պանդխտակից եղան և խիստ երախտաւոր են, յիշեցէք զպատուելի քահանայ և զիմաստուն՝ զՍտեփանոս, որ մեզ կարեկից եղև և զաւրինակն շնորհեաց։ Ընդ նոսին և զեղկելի գրչակս՝ զՎարդան սարկ[աւագ], զտարտամս ի բարի և զգաստս ի չարիս, զբանական լուսով թերիս և զխաւարաւ բնա-
291բ ւին ի լիս, զմոլորեալս յանապատիս, ‖ զպանդխտացեալս յաւտար երկրիս, յիշեցէք յաղաւթս, հանդերձ ծնողիւք մերովք և ամենայն արեան

մերձաւորաւք, զի և դուք յիշեալ լիջիք ի նոյն բարի աւրհնելոյն յամենայնի, ամէն։

Արդ, գրեցաւ սա ի Թվ. Հայոց ՊԼԹ. (1390), տրէ ԺԶ. (16) և նոյեմբեր ԻԴ. (24), յաշխարհիս Հռեաց, մաւտ առ մայրաքաղաքն Սուլղաթ կոչեցեալ, ի սուրբ մենաստանս, որ կոչի Հայր Ցուխանիսի, առ դուռս տաճար[ի] տիրամաւրն և այլ սրբոց, ի հայրապետութեանն Թէոդորոսի և յեպի[սկոպոսութեան] աշխարհիս այս տէր Ստեփաննոսի, Կրկին աղաչեմ զամենեսին, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք սրտի մտաւք զՆեռվէ միա[յնակեցն] և զծնաւղսն իւր, եւ զանարհեստ գրիչս և զծնաւղսն իմ, և խոշորութեանն և սխալանացն մի մեղադրէք, զի կար մեր այսքան էր, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։



ՊԽ 1391

## 734.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 1874

Գրիչ՝ Թումա
վայր՝ Վան

ա

368ա Փառք...որ հասոյց զանարժանս յաւարտ սուրբ տառիս, զի գրե-
ցաւ սայ ի Թուականիս Հայոց յուԹհարիւրերորդի քառասունևերորդի
(1391), ի քաղաքս, որ կոչի Վան, ընդ հովանեաւ տիրամաւր սուրբ
Աստուածածնիս, և սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, և սրբոյն
Վարդանայ զաւրավարին, և սրբոյն Սահակա, ձեռամբ ամենամեղ և
անիմաստ Թումա քահանայի և սուտանուն գրչի։ Զոր տեսեալ զայս-
պիսի զանձս աստուածային և պայծառ լուսով հոգեկիր և ընտրեալ
կրաւնաւորն Սիմէոն, և ցանկացեալ այսմ աստուածային փարթամ
զանձուցս և ջերմեռանդ սիրով հոգոյն սրբոյ և մեծափափաքմամբ
368բ ստացաւ զսա յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղացն՝ ‖ Յովաննիսին և Հռիփ-
սիմին, և եղբարցն՝ Մարտիրոս կրաւնաւորի և Մուրատ մահդասոյ, և
քեռն՝ Վարդանա, և այլ ամենայն ազգականացն առհասարակ։ Եւ ետ
զսա գրել ի յարդար յընչից իւրոց, զոր տէր աստուած վայելել տացէ
նմա, և պահեսցէ զնա անսասան մինչ ի խորին ծերութեան. և յետ
ելիցս աստեաց սրբոց կուսանացն մասնակից և դասակից արասցէ,
հանդերձ ծնաւղաւք և ամենայն ազգականաւք, ամէն։

Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց, մեղաւորս յարդարոց, ան-
կատարս ի կատարելոց, մեղանչականս յանմեղաց, անկարգս ի կար-
գաւորաց, անյիշելիս ի գրչաց, անարհեստս ի յարուեստաւորաց,
տգէտս ի գիտնականաց, անբանս ի բանականաց բազմամեղս Թումա,
տեսի զսէր և զփափաք հոգևոր հաւրն իմոյ Սիմէոն կրաւնաւորի, և
իմ տկար անձամ[բ]ս յանձն առի, և ամենակարող զաւրութեամբն
369ա աստուծոյ կատարեցի զսուրբ գիրքս ‖ զայս ի գառնացեալ և ի
վշտաբեր ժամանակիս, յորում էր Թիւս Հայոց ՊԽ. (1391), ի հայրա-
պետութեան տեառն Զաքարիայի և մեր հայրապետին՝ տէր Սահակայ։
Այնց չար էր ժամանակս, որ ի չորս տարին բռին գրեցի, զամէն
փախստական կացինք ի կատարս լերանց՝ քաղցած և պանդուխտ, և
ամենիքեան մեռեալ էինք կենդանաւին ի յահէ Թամուրին։ Այլ, ո՞վ
կարէ զայն չարութիւնն պատմել և կամ գրել, եւ դուք հանդիպեալքդ
սմա՝ պատուական հարք և եղբարք, ընթերցողք և լսողք և աւրինակ
գնողք, յերես անկեալ աղաչեմ զսրբութիւնդ ձեր, ասասջիք լիակա-
տար բերանով՝ Քրիստոս ճշմարիտ աստուած, յորժամ գաս հայրենի

փառաւք ի դատել զամենայն արարած. քո, բարեխաւսութեամբ սուրբ
Աստուածածնի՝ ծնաւղի քո, և ամենայն սրբոց քոց, քաղցրալուր
բարբառով կոչեա յանուանէ զծառայն քո՝ զՍիմէոն քահանայ, զծը-
նաւղսն իւր և զազգն ամենայն, և տուր նոցա լսել զուրախութեան
369բ ձայն քո, Ս եթէ՝ եկայք բարի և հաւատարիմ ծառայք, մտէք յու-
րախութիւն տեառն ձերոյ՝ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուան իմոյ,
ժառանգեցէք զարքայութիւն իմ, ամէն։
Դարձեալ աղաչեմ զձեզ, ո՛վ դասք լուսերամից, ընդ նոսին և
զեղկելիս զանարժան Թումա գրիչս յիշման արժանի արարէք, և զծը-
նաւղքն իմ՝ զՄուրատ և զՆազմելիք, զհարեղբայրն և զուսուցիչն իմ
զՍիմէոն քահանայ, որ շատ է աշխատել ի վերայ ինձ, փոխանակ
քրտնաջան աշխատութեան նորա տացէ նմա Քրիստոս աստուած զեր-
կընից արքայութիւն, ամէն։ Եւ զեղբայրն իմ զՅովաննէս և զՄկրտիչ,
զքոյրն իմ զՇնաւեր, և զքեռն՝ զՊետրոս և զՍողոմոն մահդասի, և զամու-
սինն իւր զԱզիզմելէք, և զաւակն իւրեանց զՄկրտիչ քահանայ, և զա-
մենայն արեան մերձաւորքն մեր՝ զկենդանիք և զհանգուցեալք, և
զԹադէոս, և զՇամշա՝ զկենակիցն իւր, և զմայրն իւր զԽալխաթուն,
և զերախտաւորք և զսպասաւորքն մեր ի պէտս մարմնոյ, և լի բե-
րանով և ուղիղ մտաւք և ողջամիտ հաւատով աստուած-ողորմի
ասացէք։
370ա Եւ զվարպետն իմ զՄերուն քահանայ յիշեցէք ի Քրիստոս աս-
տուած, որ առատն է ի տուրս բարեաց, տացէ ձեզ զանսպառ ուրա-
խութիւն և զարքայութիւն՝ յիշողացդ և յիշեցելոցդ, և Քրիստոսի
աստուծոյ մերոյ փառք, պատիւ և զաւրութիւն այժմ և միշտ և յա-
ւիտեանս յաւիտենից, ամէն։
ԶԿիրակոս քահանայ և զԿարապետ սարկաւագ յիշեցէք ի Քրիս-
տոս, որ աշխատեցան ի կոկ թղթիս։

Բ

Ո՛վ սուրբ Գրիգոր Նարե[կա]ցի, պարծանք ազգիս Հայկազանի,
Ես չեմ արժան այսմ գործի, որ զքո մատեանս իմ մատամբս գր՛ի,
Ձեռքս, որ ի մեղքն շաղախի, զիա՞րդ զսա շաւշափեսցի.
Աչքս, որ յերակ յաբատ նայի, զիա՞րդ ի սայ նաել իշխի,
Միտքս, որ զհետ չարին շրջի, զի՞րդ զսա ստուգել կարի.
Բոլոր անձամբս եմ ի չարի, քան զանաւրէն՝ այլ աւելի.
Այս շուն անբանս չորքոտանի, չ՚ի արժանի, որ զայս հոգեշահ տառս գր՛ի,
Այլ ըստ խնդրոյ Սիմէոնի՝ սուրբ և ընտրեալ քահանայի,
Ինձ հաւրեղբայր էր, և բարի վարպետ, և խիստ ու առաքինի,
Էր կուսակրաւն և ծերունի, զգեցեալ զգեստ կրաւնաւորի,
Միայնակեաց յանապատի, վասն սիրոյն տեառն Յիսուսի,
Փափագմամբ եկեալ առ իս, երեն եղեալ իւր ծառայիս.
Այս շուն պոռնիկ չարագործիս և անարհեստ Թումա գրչիս,
Արտասուալից աղաչէր զիս, թէ՝ կատարէ զիմ խնդրելիս,
Խնդրեմ զգանձս հրաշալիս Նարեկա սուրբ վարդապետիս,

Այնչափ չհանդչիմ ես յաշխարհիս, յ[ը]նչուր հայիմ զդիրքս ի գրկիս,
Առնում ի գիրկս ածեմ երեսիս, ապա դիւրեանա խոցած հոգիս,
Ցանձն արար աստուծոյ դիս, թէ ամբողջ Յիսս ի յաշխարհիս,
Զայս պատուիրեց իւր ծառայիս, թէ աղաւթք արա ի գրել տառիս։
Ես չար զաւակ եղա զերիս և աւրինազանց ի յայս բանիս,
Խցեցի զլսելիս, ունկն ոչ դրի բարի խրատիս,
Ոչ արարի բան մի բարիս, այլ անդադար գործի* չարիս,
Մեղք գործեցի ի յաշխարհիս, խիստ անառակ կացի զերիս,
Անկարգ շրջի** ըստ իմ կամիս. ոչ ոք չուն՚ի, որ խրատէր զիս,
Երիտասարդ եմ հասակիս, բնութիւնս չարխիս նեղէ զիս,
Սատանա մարտեաւ ընդ իս, ետ ինձ գործել բազում չարիս,
Ոչ կամեցա զհոգոյ բարիս, աւաղ, եղո՜ւկ և վա՜յ է զիս։
Յորժամ յիշեմ ես զիմ չարիս, նա սասանի սիրտս ի փորիս,
Ջ՚աւաամ թէ առնէ տէրն ինձ բարիս, կամ ողորմի այս պոռնկիս,
Ո՜վ ընթերցող զի՞րդ յամիս, ի յանշէջ հուրն կու այրի հոգիս,
Ողորմութեան Յիսա գերիս, ոչ ոք չունիմ, որ թափէ զիս,
Յորժամ յանձուկ տեղի նստիս, արտասուալից զսա ընթերցիս,
Բազկատարած ի վեր նայիս, աստուած թող զմեղքն Թումա գրչիս։
Ո՜վ, եղբարք, խիստ վիշտ կրեցի զի անյարկինք ու աւուրքս ձմեռն
Ու այլասեռունք յարուցեալ էին ի վերա քրիստոնէից։
Ի վշտաբեր ժամանակի ու ի բազմանալ ազդին տաճկի,
Քրիստոնէից վճիռ լինի ի յազգմանէ սատան[այ]ի.
Շուն մի եկեալ Խորասանցի, Թամուր. անուն միակողմի,
Բարկութեամբ լցեալ լինի նման իժի և քարբ աւձի։
Զայն չարութիւնն, որ նա գործեց, զայն ո՞ր լեզու պատմել կարէ,
Թող հողածին մարդ չհայի զինչ տեսաք մեք յայս ժամանակի.
Փախստական զամէն կացի, մերկ և անյարկ և ղոյզնայի,
Բոլոր աշխարհս յերերմանի, զինչ զըեկեալ նաւ ի մէջ ծովի,
Սուգ մեծ եկեալ հայեոց ազգի, զի նայ յազգէն մուխանաթի
Ջալատ եհան նա Ղզուինցի, կաշառ երետ բազում ոսկի,
Թէ ով ոք զՔրիստոս աստուած ասի՝ բազում չարեաւք չարչարեսցի,
Ոչ թէ տանջի՝ այլ առժամայն գլխատեսցի,
Թէ այնց, որ լսէք դուք կաշառի, նա ձեր գլուխ առ իս բերուի,
Այլ զինչ քրիստոն[եայ] անուն լինի, ամէն ի սուր սուսեր մաշի։
Նոքա [ա]ռին սուր երկսայրի, շրջին քան զշուն կատղած յերկրի,
Որ խոստովանէր զհայր և զորդի, աստուած անմահ՝ տէր կենդանի,
Կոտորեցին անխնայելի զաղդս Հայոց և զՎրացի,
Շատ քահանայք առաքինի, սարկաւագունք հեզահոգի,
Ծգնաւորք յանապատի, զամէն ի կեր տուին սրի։
Շատ քակեցին եկեղեցի, և վանորայս, ուխտատեղի,
Այլ և զերկիրս Վասպուրականի քան զամէն տեղ խիստ աւերի,
Առնու զդղեակն զՎանայ քաղաքի, չողորմի մեծի և ոչ փոքրի,

* Իմա՝ «գործէի»։
** Իմա՝ «շրջէի»։

Ջամէն ի բերդն ի վայր ձգի ու զմնացեալսն գերի տանի։
Ըզչարութիւնն Թամուրի ո՞ր հողածին պատմել կարէ,
Ոչ գթայր հայր ի յորդի, ոչ մայրն ծիծ տայր տղայի.
Ի յիմ չարեացն, որ գործեցի, նա բարկացաւ տէր կենդանի։
Ով որ ունի հոգի բարի, ի վերջ գրոցս նա ընթասցի,
Որ Թումա անբան չորքոտանի՝ զկատարեալն ձեզ ասի,
Ով որ կարդա և կամ լսի, սրտի մտաւք արտասուեսցի,
Ձձեռն ի վեր կարկառեսցի, Քրիստոս աստուած, թո՛ղ զմեղքն Թումա գրչի։

Ծաղկող՝ Մերուճ

Գ

1բ Ո՛վ, մանկունք սուրբ եկեղեցոյ, որք հանդիպիք սմա կարդալով կամ տեսանելով, յիշեցէք յերկնագնաց յաղաւթս ձեր զտառապեալ մեղաւք հոգիս՝ զՄերուճ ծաղկողս և զծնաւղսն իմ, և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն, ամէն։

## 735.

## ԼՈՒԾՄՈՒՆՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԳՐՈՑ ԿԻՒՐՂԻ, ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՅ

Երևան 2497

Հեղինակ՝ Գրիգոր Տաթևացի

142բ Այլ ո՛վ քաջդ հռետորաց, համշիրակդ Գէորգին, ընկալա զհարկե-
ցուցիչ հրաման քումդ եղբայրութեան, և աշխատասիրեալ ըստ կարի
տկարութեան ի լուծումն խնդրոյն, որ վասն Պարապման Գրոցս, ոչ
ամենևին ընդ անկոխն ընթացեալ ուղի, այլ սակաւ ինչ հաւաքեալ ի
քրտանց առաջնոց հարց, և իր ինչ ի լուսաւոր բանից Լուսաւորչին
մերոյ,* և բովանդակն իսկ՝ յառատաձիրն շնորհաց։ Այլ է ուրեք յեր-
կարեալ բանից ի թիւս գլխոց ի պէտս բեմասացութեան և ի կարգս
զրուցատրութեան, և բազում ուրեք՝ համառօտ անցեալ, ոչ այլ ինչ
հոգացեալ բայց միայն զուղղափառ տեսութիւնն, և զայս ոչ վարկ-
143ա պարազի, այլ բազում աշխատանաւք ի սոյն գե‖գերեալ ընծա-
յեցի եկեղեցեաց Հայաստանեացդ։ Արդ, եթէ գտանիցի ինչ ի սմա
ըստ ախորժելեաց ձերոց՝ տեառն շնորհք, և նուազն՝ սխալակիր անո-
թոյս, որ և եղբայրասէր կամաւք աղերսեմ զպակասն լնուլ, զաւելիսն
կշռել և չափաւորին աշխոյժ մտաւք հանդիպիլ, և մի հարևանցի
տեսութեամբ և բանիւ արշաւել, որպէս ոչ մտերիմ կամ զրախօս,
զլացող և բասրասէր դսրովող։ Եւ դարձեալ պաղատիմ աղերսանկեալ,
զի ընդ ներել սխալանաց բանից, ներումն հայցել և սխալանաց գոր-
ծոց անյիշաչարն տեառնէ։ Զի թերևս ցօղ քաղցրութեան ձերոյ իջցէ
ի գերեզման մահու մեռելոյս, և լուացեալ բուժեսցէ զբազմազան

* Ակնարկում է Հովհան Որոտնեցուն։

շարաւալէր վէրս հողոյ և մարմնոյ ամենաթշուառս անձին։ Այլ և լէցի ժառանգ բարեաց և յիշատակ աւրհնութեան լուսաւոր վարժապետին հանուրց Յոհաննու Որոտնեցոյ, որոյ եղէ ի վերջին ժամու վերջացեալ սպասաւոր նմա, ոչ զոլով ներբաղդատ իբաւք կամ մտաւք, թէև համաձայն կամ առընչական աշակերտեալ՝ պետ անուանեցայ։

Որ և եղև գրաւ վերլուծութեանս ի թվական Հայկազնեան տու-
143բ մարի կրկնակի հարիւրոց || չորից և տասանց քառից (2·100·4+10·4+551=1391), ի նեղ և ի ստորասուզեալ ամանակաց, յորում սակաւ ինչ յառաջ հէնք այլասեռ ղաւրաց զերկիրս մեր տապալեալ գերեաց և աւերեաց, և այլ բազմավէպ պատիժ յանցանց զմեզ շրջապատեաց և այժմ խնամ վերնական, նայելով ի տառապանս մեր, սակաւ ինչ թոյլ ետ շունչ կլանելոյ, թէև տակաւին ես ձեռն բարձր [է] ի հարկանել։ Զոր ի ձեռն ձերոցդ սրբանուէր մաղթանաց դարձեալ դարձուսցէ զպատուհասս մեղաց և կրկին պարգևեսցէ զխաղաղութիւն ըստ իւրոյն խոստմանն, զոր ի միասին վայելեսցուք, դուք և մեք, անզրաւ կենաւք ի Քրիստոս Յիսուս՝ ի տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Եւ որք ընդաւրինակէք գրեսջիք զսակաւ յիշատակարանս մեր, և դուք գրեալ լիջիք ի դպրութիւն կենաց, ամէն։*

## 736.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ Ի ՄԱՏԹԷՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԷ

Երևան 2519**

Հեղինակ՝ Մատթէոս
վայր՝ Երնջակոյ երկիր, Ապրակունեաց վանք

ա

73ա Արդ, ես՝ վերջինս սպասաւորաց բանին և տրուպս բանասիրաց Մատթէոս քահանայ, որ միայն անուամբ և ոչ արդեամբք, տխաղծ մտաւք և տարտամ լեզուաւ. ձեռնարկեցի յայս գործ տեսութեան ոչ աւելի ինչ հոգացեալ, այլ ճշմարտութեանն հետևեալ, միայն այնմ բանի արարաք լուծումն, որ յայս գլուխ առանձնակի գրի, իսկ այլքն՝ հարքն մեր արարին ի Մաթէ[ոս] գլուխ, ընդարձակ հարցմամբ անտ գտցես։ Արդ, է պիտանացութիւն սորա ի քարոզս բանի, և ի կագ զրուցաց, և ի ըեմասացութիւնս, և զայս ոչ գիտնոց վասն, այլ մանկանց իմոց խորհրդակցացն։ Եւ արդ, թէպէտ իմաստնոցդ ամենայն յայտնի է այս, բայց յինէն տաժանելի*** կրիւք յառաջ եկն, վասն որոյ աղաչեմ զթերին լնուլ, և զաւելորդն կշռել, և սխալանացն նե-

* Հիշատակարանը համեմատել ենք Երևանի № 5931 ձեռագրում եղող ընդօրինակության հետ, և նրա միջոցով ուղղել ենք մի քանի տառասխալներ։

** Սույն ձեռագիրը հեղինակի ինքնագիրն է, օգտագործել ենք նաև Երևանի №№ 2518 և 5232 ձեռագրերում պահպանված ընդօրինակությունները։

*** №2519 ձեռագրում՝ «տարջանելի»։

րել, մանաւանդ՝ ուղիղ մտաւք ընթեռնուլ, ընդ որ և հայցեմ, որք պատահիք, մաղթել առ մարդասէրն՝ թերևս իջցէ մասն ինչ ի սրբա-
73բ ն || ուէր յաղաւթից ձերոց ի չարաւալի հողիս, և սրբեսցէ զաղտ հնութեան մեղաւք մեռելոյս, և ազատեսցէ ի կուտակեալ ալեաց և արժանացուսցէ յետին մշակացն։

Արդ, եղև գրաւ համառաւտութեան բանից քարոզութեան ի թու[ին] Հայոց Գ. և Խ. (1391), առ ոտս արգիւնաբան հռետորին՝ Գրիգորի մեծի [Տաթևացւոյ], յերկիրս յԵրնջանկոյ, ի վանքս Ապրակունեաց, զոր մեծ ջանիւ էառ ի յազթարմայից երկարնակացն քաջ նահատակն Քրիստոսի Մազաքիաս, որ և այս ես ի նորին նշուլից շնորհացն առեալ գծագրեցի առ ի յիշատակ առ յապա եղելոց մանկանց եկեղեցեացդ Հայաստանեաց։ Այլ որք գաղափարէք՝ գրեսջիք զսակաւ յիշատակիկս մեր ի վերջք գրոցս, զի և զուք յիշեալ լիջիքի տեառնէ. որ և զարձեալ աղաչեմ, ոչ ջնջել կամ հատանել զսակաւ յիշատակս մեր, թէպէտ չեմք արժանի, զի և մեզ ընդ ձեզ լիցի հասանել մասին սրբոյն ի Քրիստոս Յիսուս ի աէր մեր, որ է աւրհնեալ, յաւիտեանս, ամէն։

Բ

153բ Զաշխատող բանիս և զգծող զՄատթէոս սուտանուն մոնազնս աղաչեմ յիշել ի տէր, և անմեղադիր լինել, զի այգչափ կարացի։

737.

ՃԱՇՈՑ

Սեբաստիա, սբ. Նշան, 75, ՀԱ, 1926 թ., էջ 241—242
(տես նաև 1387 թ.)

Գրիչ՝ Գէորգ
վայր՝ Երզնկայ

483բ ...Գէորգ երէցս ցանկացող եղէ հոգեզարդ բուրաստանիս եւ ատենական ճաշակացս. ողորմութեամբ աստուծոյ սկսայ ձեռամբ իմով գծագրել, եւ շնորհիւ նորին կատարեցի առ ի յիշատակ եւ ի փրկութիւն հոգւոց հաւրն իմոյ՝ Առաքել քահանայի, եւ մաւրն իմոյ՝ Գայիանէ[ի], եղբարց իմոց՝ Մովսէս դպրի, եւ Յովհաննէսի, եւ Մկրտչի, կենակցի մերոյ կարճահասակի՝ Նուզտան կոչեցելոյ, եւ զաւակի իւրոյ Էլմուզպա՝ փոխեցելոյն առ Քրիստոս, եւ առ դրան տաճարիս են սոքա հանգուցեալ, եւ քըւեր իմոյ՝ Հռիփսիմէ[ի]...։

Յիշեսջիք յաղաւթս ձեր առաջի սրբոյ սեղանւոյս զառաջին շինաւղ սուրբ եկեղեցւոյս ղպապն մեր՝ զմեծ Առաքել երէց, եւ զամուսին իւր զ[Ոսկ]տիան, զդուստրն իւրեանց՝ զՏիրատիկին, եւ զայրն իւր զԳէորգ քահանայ, որ են պապք մեր, որ եւ նոքա կան հանգուցեալ ի յայս տաճարի։

Յիշեսջիք յաղաւթս ձեր զմայրենի պապն մեր զՎարդան քահանայ, եւ զերիցակինն իւր զՔուրխաթ, որ եւ նոքա բազում արդիւնս

եւ ողորմութիւնս են արարեալ այս տաճարիս, որ եւ կայ գրեալ առանձինն յիւրեանց գիրքն, որ է յիշատակ առաջի սուրբ Նշանիս, որ կոչի Ծառընտիր, եւ է յիւրեանց հալալ արդեանց։

…Ցիշեսջիք յաղաւթս ձեր կրկին սնուցանողն մեր եւ ղերախտաւորն ղկնի մայրական մեր ծննդեան՝ ղՃաշթ, եւ զեղբայրն իւր զՍարգիսն…։

Եւ գծագրեցի զսայ ի մայրաքաղաքս Երզնկայ, եւ եղի իմ կամաւ եւ սիրոյ յաւժարութեամբ յիշատակ ինձ եւ այս վերոյգրեալ ննջեցելոյս, ի տաճարս, որ կոչի ըստ սուրբ խաչիս անուան՝ սուրբ Նշան, եւ կանգնեալ կայ յանուն սուրբ Աստուածածնին եւ Լուսաւորչին Գրիգորի…։

Ցիշեսջիք յաղաւթս ձեր զեղբարքս մեր զԿարապետ քահանայ եւ զՄկրտիչ սարկաւագ, որք են այժմ առ մեզ եւ սպասաւոր այսմ սուրբ Նշանիս, որք եւ ցանկացան* յիշատակել սաս եւ աւգնեցին ինձ յայսմ գիծ…։

Աւարտեցաւ սայ ի Թվ. Հայոց Պխ. (1391), յամսեանն հոկտեմբերի։

## 738.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1980

Ստացող՝ Յովաննէս
վայր՝ Եզընկայ, Տիրաշէն վանք

ա

40ա …Արդ, կատարեցաւ վեցհարիւրեակ սուրբ հաւրն Եւագրիս ձեռամբ Մովսէս քահանայի, ի գաւառիս Եկեղեաց, ի քաղաքիս, որ կոչի Եզընկայ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս։ Արդ, աղաչեմ զամենեսեան, զգասքդ սուրբ քահանայից և զայլ աստիճանաւորաց սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք այսմ հոգեշահ նուագիս, աւգտելով կամ աւրինակելով, յիշման արժանի արարէք զանպիտան գրիչս զՄովսէս

40բ և ծնողսն իմ։ || Այլ և դիս՝ զՅովաննէս նուաստ ոգի, զստացաւղ այսմ հոգեշահ մատենիս, արեելեան ի գաւառէն, որ կոչի Գեղարքունի, գեղջէն, որ կոչի Վարդենիս, աղաչեմ յիշել ի տէր և զծնողսն իմ՝ զհայրն իմ զՆլուկն, և զմայրն իմ զՇնոհոր տիկինն, և զեղբարսն, և զքորսն, զկենդանիսն և զննջեցեալսն, և զամենայն արեան մերձաւորսն իմ աղաչեմ յիշել ընգդէմ սուկալի պատարագին, և աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալստեանն, ամէն։

Գրեցաւ ի Թվականիս Հայոց Պխ. (1391), ի սեպտեմ[բեր]ի Լ. (30), տանուտէր կշիռն։

Ես Յովաննէս կոչեցայ յաստիճան քահանայութեան և ձեռնադրեցա ի տէր Գրիգորէ յարհիեպիսկո[պո]սէ՝ վերադիտողի Եկեղեաց գաւառի, յորդւոյ պարոն Պէկթամուրին, զոր տէր աստուած պահեսցէ

* Տպված է՝ «ցանկացաւ»։



113—38

զնա, և զհարազատ եղբայրն իւր զպարոն Յովանէսն, և զպարոն Պեկթամուրն՝ զաստուածապարգև զաւակն իւր յամերամս ժամանակս խաղաղութեամբ կենաւք, հանդերձ ամենայն արեան մերձաւորաւք, ամէն։ Ի թվ. հայոց ՊԽ. (1391), ի նաւասարդի ԺԳ. (13) և դեկտեմբերի ԻԶ. (26), ի տաւնի մեծ մարգարէին Դաւթի և սուրբ առաքելոյն Յակոբայ, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին, և սուրբ Կարապետին, և սուրբ Ստեփաննոս Նախավկային, և Նշխարաց սրբոյն Ներսէսի։ Եղև ձեռնադրութիւնս մեր ի վանքս Տիրաշէն կոչեցեալ, տանուտէր կշիռն էր տարոյն։

Բ

244բ ...Ես Յովանէս նուաստ ոգի
Եւ բնական Գեղարքունի,
Որ Գեղամա անուամբն կոչի,
Եւ ի գեղջէ Վարդենեցի,
Զսակաւ բանիցս աշխատողի,
Որ զլուծմունքս գրեցի
ԶԳրիգորի Նարեկացի՝
Հայոց մեծաց հռետորի։
Զձեզ աղաչեմ եղբարք բարի,
Զուսումնասէրքդ ցանկալի,
Թաղծեալ դիմաւք արտասուալի,
Որք հանդիպիք այսմ տառի,
Զիս յիշեցէք ի գործ բարի...։
Ի Հայոց մեծ թուականի
Ի ութհարիւր և քառասնի (1391),
Յուլիս ամսոյ տասն և ութի,
Եւ ի յարեգ՝ վեցերորդի,
Ի յԸնկեղեացս գաւառի,
Ի Տիրաշէն մենաստանի,
Ընդ հովանեաւ տէր Ներսեսի,
Գրեցաւ լուծմունքս բախծալի։

739.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8772 (տես նաև 1350 և 1371 թ.թ.)

Ծաղկող՝ Ծերուն

Ա

15բ Զոչ յիշելիս ի գրչաց զԾերուն մեղապարտ ծաղկողս յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ։

Հետ. ստացող՝ Սիմէոն

Բ

271բ Արդ, ի Թուականիս Հայոց ՊԽ. (1391), ես՝ Սիմէոն քահանայս եւ տէր վերըստին նորոգել զսուրբ աւետարանս՝ տնաւրինականաւքն և ցանկաւքն և ծաղկաւք, ձեռամբ յողնամեղ Ծերունի, ի վայելումն անձին իմոյ և որդոյն իմոյ Աստուածատուր քահանայի և յիշատակ հոգոց մերոց։

Ով որ հանդիպիք սմա կարդալով կամ տեսանելով յիշեցէք յերկնագնաց յաղաւթս զստացող սորա զՍիմէոն քահանայ և զկենակիցն իւր, զԱստուածատուր քահանայ և զկենակիցն իւր, զԹումա և զկենակիցն իւր՝ զԹամթա, զաւակ | | | զՑաւղիկ, և զեղբարքն իւր՝ փոխեցեալ ի Քրիստոս, և զերկու քու || երքն իւր՝ զԽաթունմէլիք և զԹաղամէլիք, և զայլ ամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն ի Քրիստոս, և զՏիրատուր միայնակեցն, և ինքն, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և մեզ ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

272ա

Ընդ նոսին և զԾերուն մեղապարտ ծաղկող և զծնաւղսն իւր յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն, ամէն։*

## 740.

### ՃԱՇՈՑ

Երևան 7446 (առա նաև 1442 թ.)

Գրիչ՝ Մարկոս
վայր՝ Ղրիմ

528ա ...Արդ, որք հանդիպիք...յիշեսջիք ի տէր զԱռաֆիլ երէցն, և զկենակիցն իւր զՆասափ՝ զփոխեցեալն ի Քրիստոս, և զծնաւղսն իւր՝ զԱռաքել իրիցու, զԱնդրիաս երէց, և զկենակից իւր ըզԹռանգ տիկինն՝ զփոխեցեալսն առ տէր, և զեղբայրն իւր զԳրիգորէս, և զքուրն իւր զԱրիայ՝ զնոյնսն՝ առ Քրիստոս փոխեցեալսն։ Յիշեսջիք և զորդեակսն իւր՝ զԱնդրիաս տղայ՝ աշխարհի երէց, և զկենակից իւր, և ըզաւակսն իւրեանց՝ զՄուսէխն, և զեղբայրն իւր զԱստուածատուրն, և զքոյրն իւր զՁումլախաթունն, և զմայրն սոցա՝ զԽաթունմէլիքն, և զայլ միահամուռ զամենայն արեան մերձաւորսն՝ զկենդանիսն և զհանգուցեալսն...։

528բ ...Արդ, որք հանդիպիք սմա ընթերցմամբ կամ գաղափար գնելով, յիշեսջիք առ Քրիստոս սեռն սիրով ի միտս բարիս զաշխատեալքըն ի սմա՝ զծաղկող և շնորհազարդաւղ և կազմող այսմ աստուածապատում տարեգրոցս՝ զՍտեփանոս քահանայ Նաւերենց անհ[ա՜ա] գրիչ, և զորդեակն իւր զՅոհաննէս քահանայ ծաղկաւղ՝ հանդերձ ազգականաւք։

* 272բ—273ա էջերում գտնվում է «վերստին նորոգող» «ըռեռ Ծաւակ»-ի անհետաքրքիր հիշատակարանը։

Վասն որոյ աղաչեմք ըզսուրբ ընթերցաւղսդ յիշեսջիք և զիս՝ զոչ արժանիս յիշելոյ ի բարի, զանարժան ծառայս ծառայիցդ աստուծոյ, ըղհետնեալս ի յուղիղ և ի ճշմարիտ գրչաց՝ զՄարկոս գրիչս, և ըզծնողսն իմ՝ զՅովանէսն և զԹուրքմանդան...։

Գրեցաւ կրկին յիշատակարանս Առաքել իրիցու՝ ստացողի վերջին, ի թվ. ՊԽ. (1391)։

## 741.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վաղ. 166. Հալ. Ցուց. սյուն. 224—226 և Փիրղ. 6273, էջ 183
(Վան, Այնկուսներ եկեղեցի)

Գրիչ՝ Անդրէաս
Վայր՝ յերկիրս Խողձայ

Արդ, գրեցաւ աստուածախօսս աւետարանս թթազարդ, չորեքվտակ, յեդեմաբուխ, առատաբաշխ ընդ ունկն իմաստնոց և ընդ բիր տեսողաց, ընդ տիեզերս ամենայն՝ յերկնային ծովէն ի՝ ծարաւ յերկիր հոսե[ա]լ, որ գոչէ զձայն առիւծու, և զմիր մշակութիւն եզանց, և զաստուածաստեղծ պատկեր մարդոյ, որ զչորեքնիւթ[ե]այ յաւարտաւն առնէ զմարդոյն։

Գրեցաւ աւետարանս ի դառն և անհանգիստ ժամանակիս, յերկիրս Խողձայ,* ձեռամբ մեղապարտ Անդրէասի։ Որք հանդիպիք ի սմայ յիշեսջիք զծնողսն մեր փոխեցեալսն ի Քրիստոս, և աստուած ամենեցուն յիշողացդ ողորմեսցի, ամէն։

Ի թվ. ՊԽ. (1391) գրեցաւ։

## 742.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7648 (տես 1344 թ.)

230ր Ի թւին ՊԽ. (1391) և յունիսի...[ԻԵ՞].(25), դշ. [երեքշաբաթի] օր աւետարանի | | | չգին | | | ա վասն աշխատանաց | | | էջ իրիցկինն | | | քհի. Կ.(60) դրամ Ղրիմի, յաղագս իւր իրիցուն հոգոյն | | | [երե՞ա] հոգոյն և մարսիթին (՞) հոգոյն, Սուքիաս երէցս այլ զապուլ արի։**

* Գ. Փիրղալամյանը «Խողձայ»-ի փոխաց ունի՝ «Խողկայ»։
** Ձեռագիրը Մատենադարանի սակավաթիվ կրկնագրերից (палимпсест) մեկն է։





## 743.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

*Փիրզ. 6273, էջ 184 (Վան, Աթանանց գիւղ)*

*Հետ. ստացող՝* Սիմէոն
*վայր՝* Աղթամար

**ՊԽԱ.** *Թուին Հայոց (1392) էառ* Ամիր-էզդին *զ*Ոստան *քաղաք յեղրօրէն իւրմէ, Նաւասարդի ամիս, ի յայտնութեան պահոց երեքշաբթի, և շատ պակասութիւն էած քրիստոնէից։ Ո՛վ սուրբ մանկունք և հոգևոր եղբարք, զայս Նարեկացիս* Յակոբ *վարդապետ ինձ՝* Սիմէոն *վարդապետիս ետուր։ Զ*Ոստանայ *երկիրս աւերեցին, այս յ*Աղթամար *էր, բերաւ* Յակոբ *վարդապետն ի* Վան*, յորժամ զօրքն Թուրքաց կոտորեցան, վարդապետն փախեաւ ի* Վանայ*, և երեկ ի* Նարեկ*, հեծելէն նոհատակեցաւ։ Գիրքս մնաց ի* Վան*, մօտ յաշխարհական երէց մի, նա փախուց և տարաւ յ*Աղթամար*. տէր* Զաքարէն *խաշր տարաւ, ես՝* Սիմէոն *վարդապետս, երեսուն թանկայ տուի ու թափեցի։*

## 744.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3717*

*Գրիչ՝* Պետրոս
*վայր՝* Քաջբերունեաց երկիր, գիւղ Նվըեդի

*Արդ, յանդ ելեալ կատարեցաւ սուրբ աւետարանս և բերանս*
327բ ‖ *Քրիստոսի և քարոզի Յիսուսի տեառն աստուծոյ մերոյ ի յեր-*
*կիրս* Քաջբերունեաց*, ի յանապատս, որ Մանուկ Սուրբ Նշան կոչի, աւ-*
*ծեալ առաքելոյն Թադէոսի, ընդ հովանեաւ սորին և առ ոտս սորին,*
*ի գեաւղս* Նվըեդի *Նորշինայ, ընդ հովանեաւ սրբոյն Ստեփաննոսի,*
*և Յովաննու Կարապետին, Գէորգեա զաւրավարին, և Սքանչելագործ*
*Սուրբ Նշանիս, որ է հանապազ առ մեզ ի պահարանի։ Եւ ես՝ Թա-*
*փուրս ի բարեաց գործոց* Պետրոս *անուամբ աբեղայ, և գործովք*
*ունայն, ընդ հովանեաւ սրբոցս կատարեցի զսուրբ աւետարանս, մեղ-*
*սամած մատամբս յաւրինեցի, մինչ քաւի մեղս ի մարմնի։ Ի Թուա-*
*կան Հայկազեան տումարիս* **ՊԽԱ.** *(1392), ի հայրապետութեան տեառն՝*
Զաքարիայ*, և յերկրակալութեան երկրիս* Քաջբերունեաց Ղարա-Յու-
սուֆի։

328ա *Արդ, աղաչեմք զմանկունսդ սուրբ և ‖ կեղեցոյ, յիշեցէք ի*
*Քրիստոս և ի սուրբ յաղաւթս ձեր [զստացաւղ սորա]՝ զ*Թադէոս *կրաւ-*
*նաւորն, և ծնաւղքն իւր, և զամենայն արեան մերձաւորքն իւր, զվար-*

*զապետ՝* Ստեփաննոս *փիլիսոփայն, և զեղբայրն՝* զՅոհաննէս *վարդապետ, որ բազում աշխատութեամբ ուսուցին* զԹադէոսն*...։*

328բ *Դարձեալ յիշեցէք...զաշխատաւոր սորա՝ զկոկաւոր թղթիս՝ զաշակերտն իմ* զՄեսրոպ *տրեզայ, որ բազում երախտիք տարաւ ի վերայ...։*

## 745.

## *ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ*

***Երևան 149 (տես նաև 1331 թ.)***

*Հմտ. ստացող՝* Յոհաննես

278բ *Ո՛վ, դասք լուսերամից, յորժամ հանդիպիք այս աստուածաշունչ տառիս յիշեսջիք ի վերնաթուիչ յաղօթս ձեր զվերջին ստացող գրոցս՝ զտէր* Յոհաննէս *և զծնողսն իւր, զհայրն իւր* զՈվաննէս *քահանայ, և զմայր իւր* զԱզբբաց, *և զարհիեպիսկոպոս եղբայրն իւր զտէր* Պետրոս, *և զամենայն արեան մերձաւորսն։*

*Թվ[ին]* ՊԽԱ. *(1392) կատարեցաւ տէր* Թէոդորոս Սսոյ *կաթողիկոսն բարի խոստովանութեամբ ի Քրիստոս, և յետ սորա, մին այլ տարին, կատարեցաւ ի յայլադղաց սպանմամբ տէր* Զաքարիայն՝ *աթոռակալ* Ախթամարայ *և պատուելի կաթողիկոսն, ով որ յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոս։*





## 746.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ազգ. հանդէս, Բ. գիրք, 1897 թ., էջ 281—284*
*(Ջաւախք, Ռիլիսկա գիւղի եկեղեցի)*

Գրիչ՝ Գրիգոր Խլաթեցի
վայր՝ Ցիփնայ վանք

ա

*...Շարագրեցաւ ի խնդրոյ աստուածասէր և երկիւղած քահանայի* Ցովհաննիսի *բարեպաշտի։*

*...Ել՝ ես յոքնամեղս և փծուծս ի գրչաց* Գրիգոր *պիտականուն վարդապետ, տեսեալ զփափագ և ղսէր սորա առ նա, յանձն առի և յանկ հանեալ կատարեցի ըստ իմում կարի զխնդիր սորա, շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ, ի թուականիս Հայոց ի ՊԽԲ. (1393) ամի, յամսեանն արեգի։*

*Արդ, եղև սկիզբն սորա ի վանս* Սուխարայ, *որ այժմ կոչի* Խառաբաստայ, *ընդ հովանեաւ հոյակապ և հռչակաւոր, բարձրաբերձ և պայծառաշէն սուրբ եկեղեցւոյ, որ յանուն սուրբ տիրամաւրն լուսոյ կառուցեալ կայ։ Եւ աւարտեցաւ ի վանս* Ցիփնայ, *ընդ հովանեաւ սուրբ Ստեփանոսի և Վասիլ Թագաւորի սուրբ Նշանի, որոց խնամաւքն աւարտեցի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք պատահէք սմա տեսութեամբ կամ աւգտութեամբ, յիշման արժանի արարէք զվերոյասացեալ պատուական քահանայն* զՅոհանէս, *որ ստացաւ զսուրբ աւետարանս ի հալալ արդեանց և յարգար վաստակոց իւրոց, յիշատակ բարի իւրն և ծնողաց իւրոց՝* Ստեփանոս *քահանայի, և ամուսնոյն* Յովանիսի՝ Ուլուխի: *Որոց ողորմեսցի Քրիստոս աստուած այժմ և յաւուրն անեղելի։ Նաև թարմատար գրչիս* Գրիգորիս *և իմոցն ամենայնի, ամէն։ Նաև զբարեմիտ հեզահոգի և զսրբասէր աբեղայն* զՆորստակէս՝ *կոկաւղ քարտիս, յիշեցէք և աստուած ողորմի ասացէք նմա։*

*Եւ արդ, զնեղութիւն ժամանակիս ով կարէ ասել կամ ընդ գրով արկանել, զմահ և գերութիւն, զսով և զսասանութիւն, զոր կրեմք ազգս քրիստոնէից ի յայլասեռ անաւրինաց և անհաւատից։ Զի շարժեցաւ տուն* Խորազմին *առհասարակ ցեղ թաթարին, գալ աւերել և ապականել զաշխարհս ամենայն։ Եւ մեզ ի յահէ նոցին սասանիմք, և աւր ըստ աւրէ մահու ակն ունիմք, և հաւատալով հայցեմք յաստուծոյ փրկել զմեզ յայնմ ահագին սպառնալեացն։ Այլ և զղառնագին վիշտս, զոր կրեմք ի մերոց իշխանաց, ի թուրքէ և ի քրդէ, յընտանեաց և յաւտարաց, ի ներքուստ և արտաքուստ՝ անասելի և անպատմելի։*

Այլ զի և կաթողիկոսքն մեր դերկուսին սպանին ի միում ամի։ Հերու զտէր Թէոդորոսն ի Սիս սպանին, և մինչդեռ տարին չէր վճարել՝ զտէր Զաքարիայն ի յՈստան քարկոծ արարին, թող զայլ նեղութիւնս, զոր ընդ մեզ անցուցանեն։

Ողբ ի գծողէս բանի [ի Գրիգորէ Խլաթեցւոյ]

Բ

Եկայք ողբասցուք եղբարք զչարութիւն ազգին նետողաց,
Ռամք Հայաստանեայց զառնացեալք ի յանաւրինաց,
Գաղձլն* Խառաղ:ար բուսեալ յանդաստանս մեր Հայաստանեայց.
Սիրտչոր առնեն ըզմեզ զրկելով ի մեր հայրենեաց։
Արամ և Եփրեմ լըծեալ հալածեն ըզտունս Յուզայանց,
Յայսմ աւրինակի սոքա՝ Թորղոմեանք և ազգն Մարաց,
Սաստիւ տագնապեն ըզմեզ նեղութեամբ ի յամէն կողմանց։
Գլուխ ոչ գոլով Հայոց, վշտացեալ յամենայն գիմաց,
Րաբունք ժողովոյս մերոյ զմեզ լացէք ի ձեռս այլազգեաց։
Ի թիւ ութհարիւր Հային՝ քառասուն և երկու ամին (1393),
Գառինն աստուծոյ վկայ զհայրապետն մեր արարին.
Որդիք Հագարու զարմին չարաչար զմեզ խոցոտեցին,
Ռամեալ ժողովոյս Հայոց ըզգլուխն ի մեզնէ բարձին։
Ի հնգետասան աւրին մեհեկի, չորեքշաբաթին,
Էկին պատեցին զմեր տէրն և յատեան մահու մատնեցին,
Վասն Քրիստոսի սպանին, զի գլխաւորքն քրիստոնէին
Առին բաղանիսն ածին, առաջի պիղծ ամիրային,
Սաստիկ չարախաւսէին, թէ հարեալ է սա զմեր զաղին։
Նա, պիղծ ամիրայն ասէր՝ ուրացիր զՔրիստոս կենդանին,
Զխտչեալ թագաւորն անմահ՝ ըզկապաւղն երկնից կամարին։
Արդ, սուրբ հայրապետըն մեր ղաւանէր զորդին միածին.
Քրիստոս է աստուած հաւրիս, արարիչն յաւիտենին,
Ահա հաւատամ ըզնա փառակից հոգւոյ ճշմարտին։
Ռամիցն հրաման տըւին ամենայն և մոլնայ, ղաղին
Իսկոյն խոցեցին բզտէրն և ընծան պէս զոչեցուցին,
Առին բաղանեացն ելին և քարիւ ըզգլուխն հարին,
Կապած էր չըւանն ի վիզն, զոր առեալ ի քարշ տանէին.
Այնչափ զնա հարին սրով և քարիւ մինչ կատարեցին,
Թաւալ ի փողոցն արկին զմարմինն մեր պատրիարգին,
Ուղեղըն ցրուեալ գըլխին, ըզգագաթն վերացուցին,
Ղամպար վառել կամէին ի յայրել ըզնըշխարս մեր տիրին.
Իսկ ամիրապետն ասաց զնա տանել ի յիւր հայրենին։
Կական յայնժամ ըռամին հառաչմամբ յերկիր հնչեցին,
Որ ի քարկոծման ժամին փախուցեալ ղաւղեալ թաքչէին,
Սաստիկ էր լալիւն նոցին, կոծ և աշխարն ի վերայ տիրին,
Իբր ըզտէրունեան աւրին զտերացն Ե[բուսաղ]էմին։

* Տպված է «գանձըն»։

Նման Նախավկային վըկայեալ մեծ տէրն յՈստաֆին։
Աւաղ, ըզմեզ ասեմ եղբարք, որ հասաք յաւուրս անագին,
Խոց վիրաց առաք ուժգին յայլասեռ ազգէ հրամանին.
Թող մեզ խաւարի այսաւր լոյս լուսնին և ակն արևին։
Աստանաւր և մեք եղբարք կոծեսցուք զաղէտս անագին,
Մեծահանդէս աթոռին Սիս անուն վիճակ մեր վեհին,
Այլ և զհայրապետ նորին, զտեղապահ սուրբ Լուսաւորչին,
Ռամից բոլորից Հային զտէր Թորոսն անդէն սպաննեցին,
Այն էր հերունի ամին և զմեր տէրն ի տարելցին,
Ցայժմ ի անագին վըշտին մեք վիրաւք հարաք զառնագին։*
Տէր Զաքարիա, բարի նահատակ եղեր Քրիստոսի,
Տէր Զաքարիա, արի խաչակից եղեր Քրիստոսի,
Տէր Զաքարիա, ընտրեալ քաջ հովիւ նման Քրիստոսի,
Վասն մեր բարեխօսեա առ Քրիստոս տէրն ամենայնի
Շնորհել մեզ հովիւ բարի՝ զհարազատն քո սիրելի,
Զտէր Դաւիթ հոգւորն արի, լի շնորհաւք, յաջորդ աթոռի,
Պահել անսասան յերկրի յամերամս ժամանակի։
Այլ և երղաւղիս տաղ[իս] Գրիգորի անձին եղկելի՝
Մասն ընդ քեզ պարգևեսցի յաննախանձ մեր տեառնէն ձըրի։
Ամէն և այս եղիցի անյաջաւղ գրանս ընդունողի։

Գ

Ինքն գիտէ տէրն կայուն,
Որ ի յայրէն մինչև ի նուն,
Ոչ է կտրած գրիչս ի բուն։

747.

ԳԱՆՁԱՐԱՆ

Երևան 5328

Խմբագիր՝ Գրիգոր Խլաթեցի
Վայր՝ Ցիպնայ վանք

289ա Ցայս փափագ[եալ] և ես՝ տրուպս ի կարգաւորաց և յետինս ի բանասիրաց, անուամբս Գրիգոր պիտակաբար, և թմրեալս ծուլութեամբ ի տիղմս մեղաց, և անընդոստ մըրափած, մեծաւ տաժանմամբ ի հոգս անկեալ ժողովեցի զպիտանի գանձերս, և եդի ի կարգաւ ի միում տըփի զասացեալս ի հոգեկիր արանց յառաջնոցն և յետնոցս, որք արժանի եղեն պարգևաց հոգոյն սըրբոյ և ասացին զանազան ոճով ի կերպ և ի գոյնս ձայնի, ի կարգ և ի շարս բանի՝ զանազան եղանակաւ. ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ և ի զըւարճութիւն մանկանց նոր Սիոնի, որ աւր ըստ աւուր գեղղեղեալ փոփոխեն ի փառս աստուծոյ և ի պատիւ սրբոց նորա։ Արդ, այսոցիկ ցանկացող եղեալ

* Մինչ այստեղ տողերի սկզբնատառերով հողվում է «Երգս այս Գրիգորի է վասն Զաքարիա կաթողիկոսին Ախթամարայ»։

*բարեմիտ և սրբասէր վարդապետն Թումայ և իւր մտերիմ և համակամ աշակերտքն՝ Մաթէոս, Պետրոս ե Ստեփաննոսն, և ետուն դրել զսա եռափափագ և սիրատարափ ողով...։*

89բ *Եւ արդ, գրեցաւ սա ի վա‖նս Ցիպնայ, ընդ հովանեաւ ամենագաւր սուրբ Նշանի և կաթուղիկեայ սուրբ Սանխիանոսի, հանդէպ սրբարար ծովուն, ուր մանր ձկունքն ելանեն։ Ցամս թագաւորութեան ազգին նետողաց Ղարայ-Ուսուփին և որդոց նորին։ Արդ, որք հանդիպիք սմա տեսութեամբ և կամ ուղտութեամբ ինչ իւիք, յիշեցէք ի միտս բարիս և ի պատկանաւոր խընդրուածս զվարդապետսն Թումա ե զմտերիմ եղբարս նորա՝ զսրբակրաւն աբեղայսն՝ զՄաթէոս, զՊետրոսն, ե զՍտեփանոս՝ քըւերորդի վարդապետին, նաև զթարմատար մեղսամած գրիչս Գրիգոր, և զծնողսն իմ, և զուսուցիչսըն։ Եւ որք յիշէք զմեզ յիշեալ լիջիք և դուք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։**

## 748.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թաւրիզ, Մասնաւորաց, 8, Աճառեան, Ցուց. էջ 83*

*Ծաղկող՝* Առաքել

*...Ցորոց եւ ծաղկեալ լուսով | | |** մանգութենէ սրբութեամբ եւ պայծառամիտ մանուկս, ուսումնասէր անձն եւ պանծացեալ հաւատով, ժրաջան մշակ, սուրբ և կուսակրաւն քահանայս* Բարսեղ, *որ մեծաւ փափագանաւք եւ երանաւետ յուսով վառեալ յաստուածային սէրն. գրեաց զաւետարանս զայս բազում աշխատութեամբ. միայն ինքն պատրաստեալ զամենայն նիւթ, գրեաց ձեռամբ իւրով ոչ զոք ունելով աւգնական։ Եւ կատարեալ զսուրբ աւետարանս ի թվ. ՊԽԲ. (1393) ամին։ Եւ ընթացեալ ինքն ի ճանապարհ ինչ առ կաթուղիկոսն, եւ ի ճանապարհին պատահեալ անաւր[ին]աց՝ սպանեալ նահատակեցին զնա | ։ | այլ սրբութեան վարուցն ընկալաւ, եւ | | | եան հեղմանց պսակն ի սպա | | | առ, որ ցանկացեալն էր, որում փառք յաւիտեանս, ամէն։*

*Եւ ես՝ տէր* Առաք[ել *| | | եղբայր նորին, բազում դա | | | փոխելով զեղեալսն առ նայ, զեաւթն ամիսս շուրջ գալով յերկրէ յերկիր, բազում աշխատութեամբ խնդրէի զեղբայրըն իմ, եւ յետոյ գտեալ յայլոց ի սարն, որ կոչի* Եղջախոտ, *եւ առեալ ղնշխարս նորա եղաք ի տապան ի վանս* Վաղաղնոյ, *առ սեմաւք դրանցն սուրբ Կարապետին։ Եւ յետոյ նոյն ես՝ տէր* Առաքել, *ծաղկեցի զսուրբ աւետարանս եւ զցրուացանգն գրեցի եւ կազմեցի ի թվ. Հայոց ՊԾԶ. (1407) ամի,****

---

* «Գանձարան» ժողովածուի նյութերի հավաքման և խմբագրության մասին Գրիգոր Ծլաթեցու կողմից գրված սույն հիշատակարանը անթվական է։ Տեղադրում ենք Ծլաթեցու մի այլ՝ 1393 թվականին գրված, հիշատակարանին առընթեր, չնայած ըստ որոշ տվյալների սա գրված պետք է լինի երկու-երեք տարի առաջ։

** Թերթերի ծայրերը մաշված են, որոշ բառեր թերի են վերծանվում։

*** Հիշատակարանը, այսպիսով, գրված է նահատակված գրչի եղբայր, ձեռագրի ծաղկող Առաքելի կողմից 1407 թ., սակայն այն տեղադրում ենք 1393-ի թվաշարքում, նկատի

ի յիշատակ նահատակ եղբաւրն իմ Բարսեղ քահանայի՝ գրաւղի սուրբ աւետարանիս։

Արդ, աղաչեմ զամենեսին՝ զորբակրաւն քահանայս | | | հաւա]տաւորսդ ե[կ]եղեցւոյ, որ հանդ[իպի]ք սուրբ աւետարանիս | | | աւ[ր]ինակելոյ կամ ժառա[նգելոյ | | | յիշեցէք սրտի մտաւք ի [մաքրափայլ յաղօթս] ձեր զաշխատող սուրբ աւետարանիս զԲարսեղ քահանայն. եւ ամենայն սղալանաց նորա թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ։ Ընդ նմին եւ զզտռնացեալս ոգով զտէր Առաքել, եւ զծնաւղսն մեր զԴաւիթ եւ զՄելիք, եւ զամենայն արեան մերձաւորսն մեր, եւ զմեծ րաբունապետն մեր զԳրիգոր վարդապետն, եւ թողութիւն խնդրեցէք յաստուծոյ ամենայն սղալանաց մերոց։ Եւ յիշողացդ զմեզ առաջի աստուծոյ եւ յիշեցելոցս առհասարակ ողորմեսցի Քրիստոս աստուած մեր, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն...։

749.

ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ

Երևան 2365

Գրիչ՝ Յակոբ Ղրիմեցի

120ր Արդ, ես՝ Յակոբ Ղրիմեցի սպասաւոր բանի, ուխտազանցս աստուծոյ, ետու զարտաքին իմաստասիրական գիրքս համշիրակ եղբաւր մերոյ տէր Խաչատուր բանի սպասաւորի, զոր տէր աստուած վայելել տացէ սմա հանդերձ արդիւնաւոր վարդապետութեամբ, զի առէ գիրն սուրբ, թէ՝ որ արասցէ և ուսուսցէ այնպէս զմարգիկ...։*

Ի թվականիս Հայոց ՊԽԲ. (1393), մարտի ԻԲ. (22),** աւրն շաբաթ։ Արդ, մեղուցեալս յամենայնի և անճրեսս ի Քրիստոսէ. աղաչեմ յիշել յաղաւթս քո, և զերախտաւորք գրոցս, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

750.

ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 765

Գրիչ՝ Մխիթար
վայր՝ Բաբերցիք գիւղ

307ր Շնորհիւ տեառն սկսայ և ողորմութեամբ նորին աւարտեցաւ գիրքս այս, որ կոչի մանրուսումն, ի թվ. ՊԽԲ. (1393), հոկտեմբերի ԺԶ. (16)։ Գրեցաւ ձեռամբ բազմամեղ և անարհեստ գրչի Մխիթար իրիցու, ի գեղս, որ կոչի Բաբերցիք, ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնի և այլ սրբոցն, յառաջնորդութեան մերոյ նահանգիս տէր Գրի-

---

ունենալով, որ ինչպես ձեռագրի գրչությունը, այնպես էլ գրչի նահատակության հետաքրքրական պատմությունը վերաբերում է 1393 թվին։

* Բնագրում գրված է «...ուսուսցէ նա" մէ"», հապավումները բացել ենք հիմք ունենալով Մատթեոսի ավետարանի համապատասխան հատվածը (Ե. 19)։

** Կարող է կարդացվել նաև ԻԳ. (23) կամ ԻԴ. (24)։

զօրի արքեպիսկոպոսի, ի վայելումն սրբասնեալ և հեզահոգի Մանուէլ
308ա կրաւնաւորին, որ ստացաւ զսա յընչից իւ || րոց։ Արդ, որ աւգտիք
ի սմանէ ուսմամբ կամ՝ աւրինակելով, յիշեցէք զստացաւղ սորին՝
զՄանուէլ կրաւնաւորն, և զհայրն իւր՝ զԿարապետ քահանայ, և զմայրն
իւր՝ զփոխեալն առ Քրիստոս, Նաև զերախ[տ]աւոր ուսուցիչն մեր՝
զՍտեփանոս կուսակրաւն քահանայն, որ բազում աշխատութեամբ
308բ զառտիարակեաց և ուսոյց զմեզ...։ Նա և զաւրինակիս շնորհաւղն՝
զկուսակրաւն քահանայն զԹադէոս յիշեսջիք յաղաւթս ձեր առ տէր,
և զԽաչատուր կրաւնաւորն, որ զկցիս* աւրինակն շնորհեաց։ Եւ
զիս՝ զանարժան գրիչս, որ չեմ իսկ արժանի յիշելոյ, և զհոգևոր
հայրքն մեր՝ զՄովսէսն, և զՆերսէսն՝ կուսակրաւն քահանայն, և զՏէր
Մկրտիչ քահանայն, որ զարուեստս դրչութեան ուսուցին մեզ և առաջ-
309ա նորդեցին ի գործս || յայս, ծնողաւք և ամենայն երախտաւորաւք մե-
րովք յիշել առաջի աստուծոյ, և աստուած զձեզ յիշ[է] յիւր երկնից
արքայութիւն[ն]. ամէն։

## 751.

## ՄԱՇՏՈՑ

Փիրդ. Նոտարք հայոց, էջ 2—5

Գրիչ՝ Թովմա
վայր՝ Վան

ա

... Արդ, գրեցաւ տառս աստուածային ի խնդրոյ հոգեոր և պատուական միայնակեցին Ադամի։ Եւ արդ, ես՝ անպտուղս ի բարեաց... տնյիշելիս ի գրչաց՝ Թովմա քահանայ, տկար անձամբս յանձն առի և ամենակարող զօրութեամբն աստուծոյ կատարեցի զսուրբ տառս, ի դառնացեալ և ի վշտաբեր ժամանակին, յորում էր թուին Հայոց ՊԽԲ. (1393), ի քաղաքիս, որ կոչի Վան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս, և սուրբ առաքելոյն Պետրոսի և Պօղոսի, և սրբոյ Սահակայ և սրբոյն Վարդանայ, ի հայրապետութեան տեառն Զաքարիայի և տէր Սահակայ։ Արդ, աղաչեմ զդասքդ լուսերամից՝ զմանկունսդ սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա կարդալով կամ օրինակելով, յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զԱդամ միայնակեաց՝ զստացող սորին, և զեղբայրն իւր զԹումայ աբեղայ... և ընդ արժանաւորացն զանարժան գծողս զԹումա մաղթեմ յիշել ի սուրբ յաղօթս ձեր. և զհայրն իմ՝ զՄուրատ մահտասի, և զմայրն իմ՝ զՆազմելիք։ Յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զպարոն Թումայ, և զեղբայրն իւր զԹադէոս, և զծաղկեցեալ զաւակս իւրեանց՝ զԽալիֆայ և զԱսլան-Մելիք, զոր տէր աստուած պահեսցէ զնոսա անսասան... մինչև ի խորին ծերութեան..., ամէն։

բ

Օրհնած է հայրն մեր հոգւով՝
Ադամ՝ ամէն ազգատոհմով,
Որ փափագմամբ առ մեզ գալով

* Գուցէ ցանկացել է գրել՝ «զկցուրդիս»։

Եւ զայս սուրբ գիրքս ետ գրելով,
Բաղում ծախիւք ազատելով,
Զպէտս մարմնոյ մեղ բերելով։
Ունկ դրէք ղուք լսելով,
Որ ես պատմեմ զամէն կարգով,
Բերէր խաղող մեծ կողովով,
Գինի բերէր մեծ տկերով,
Քազա* բերէր անուննճ խոնչով,
Եւ զայլ բարիքն ձվ ածէր ի բով։
Այլ ոչ ասեմ ես բան յոլով
Որ չձանձրանայք ղուք լսելով։
Բայց ով որ սէր ունի հոգով,
Զմեզ յիշէ բոլոր սրտով,
Տէրն ձեզ ողորմելով,
Զձեր մեղքն և զմերն ջնջելով, ամէն։

752.

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 4908

Գրիչ՝ Զաքարայ
վայր՝ Աղթամար

ա

286ա ...Ուստի և տեսեալ զսորա անճառ փրկագործութեան խորհուրդ սրբասէր և ընտրեալ կրաւնաւորն Թադէոս, և ստացաւ զսուրբ աւետարանս յիշատակ իւր, ծնաւղաց իւրոց Ենկկայ և Ավքայի, և եղբարցն՝ Ստեփաննոսի, Աստուածատրոյ և Մարտիրոսի, և քերցն՝ Թամամի, Էլխաթունի, Մարխաթունի, Մամատիկնայ և Զմրուքի, և պապերոյն՝ Խաչերեսի և Շամամի, Թադէոս քահանայի | | | և այլ ամենայն արեան մերձաւորացն՝ կենդանեաց և հանգուցելոց...։

286բ Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի կղզիս Աղթամար, ընդ հովանեաւ սուրբ Խաչի և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր Զաքարիայի, և ի թուին Հայոց ՊԽԲ. (1393), ձեռամբ անարժան և սուտանուն գրչի Զաքարայի...։

Ստացող՝ Թադէոս

բ

88ա Ես՝ Թադէոս կրօնաւոր, տըւի զսուրբ աւետարանս ի դուռ սուրբ Աստուածածնիս Խառայրաստայ վանիցս, յիշատակ ինձ և ծնողաց իմոց։ Մի ոք իշխեսցէ հեռացուցանել ի դրանէ սորայ, ոչ եպիսկոպոսաց, ոչ ի վարդապետաց, ոչ ի քահանայից և ոչ յըռամկաց. և որ յանդգնի հեռացուցանել զվարձս ամենայն չարայգործացն և զՅուդային և զայլ պղծսցն ընգալցի։

* Իմա՝ ըզաթա։

*Այլ աղաչեմ զղաս[ս] սուրբ քահանայիցտ խնամ տանել<ով> սորայ։*

*Եւ որ առաջնորդ լինի սուրբ ուխտիս, տարին Գ. (3) ժամ առնեն, մին՝ սուրբ Ծնընդեանն, մին՝ սուրբ Ցարութեանն, մին սուրբ փոխման Աստուածածնին։ Կատարողք աղաչանաց մերոց աւրհնին յաստուծոյ ե յամենայն սրբոց, ամէն...։*

## 753.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

*Երևան 2510*

*Գրիչ՝* Մխիթար

*վայր՝* ի վանս Սուճարու, որ կոչի Խառաքաստ

318ա *Փառք ամենազաւր տէրութեանն Քրիստոսի աստուծոյ մերոյ, որ ետ կարողութիւն տկար սգոյ* Մխիթար *գրչի հասանել յաւարտ մեկնընչիս Արարածոց Մովսիսի Ե. գրոց, յամի ՊԽԲ. (1393) Թուականիս։ Եւ արդ, գրեցաւ սա ի վանս* Սուհարու, *որ կոչի* Խառաքառտայ, *ընդ հովան[ե]աւ հոյակապ ե գեղեցկաշէն սուրբ եկեղ[եց]ոյս, որ յանուն սուրբ Աստուածածնի, առ ոտս երջանիկ և հեզահոգի* Սարգիս *րաբունապետի ե վարդապետին իմոյ* Գրիգորի: *Գրեցաւ սա ի վայելումն անձին իմոյ և յիշատակ հողոյ իմոյ և ծնաւղացն իմոց՝* Զապաճին *և* Թանխաթունին:

## 754.

## ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆ ԳՐՈՑ ԵՒԱԳՐԻ

*Փիրդ. Նօտարք Հայոց, էջ 2*

*Համառօտող՝* Մատթէոս

*վայր՝* Տանձափարախ անապատ

*Արդ, եղև գրաւ համառօտութեան սորա ի ներքսագոյն անապատիս* Տանձափարախոյ*, *յորում նստէաք լռիկ ի տան, յամի ՊԽԲ. (1393)-երորդի Թուականութեան Հայոց։ Արդ, աղաչեմ, որք օգտիք ի սմանէ... յիշեսջիք զանարժան աշխատող սմին զ*Մատթէոս *վարդապետն։*

## 755.

## ՃԱՇՈՑ

*Փիրդ. Նօտարք Հայոց, էջ 2*

*Վայր՝* Խանդէպ Վարագայ

*Ջօրութեամբ աստուծոյ կատարեցի [զսա] ի դառնացեալ և ի վշտալից ժամանակի, ընդ հովանեաւ սուրբ Գէորգայ զօրավարիս, որ հանդէպ* Վարագայ, *և ի հայրապետութեան տէր* Սահակայ *և եղբօր նորին* Պօղոսի, *և ի Թուին Հայոց ՊԽԲ. (1393)։*

* *Գտնվում է Բարկուշատ գավառում։*

**ՊԽԳ** **1394**

## 756.

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

*Ինճիճ. Սաորագր. հին հայաստ. էջ 228*

Վայր՝ Լիմ կղզի

Գրեցաւ... ի Լիմն կղզիս, ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ հոյակապ և հռչակաւոր, բարձրաշէն և գեղեցկաշէն տաճարիս, յամի ութհարեւրերորդի քառասներորդի և երրորդի (1394), յորում ամի սաստուածասաստ բարկութիւնն շարժեցաւ ի վերայ երկրի՝ արիւնարբու զօրքն Թաթարին, որոյ անուն գլխաւորին Լանկ-Թամուր կոչիւր... յորոյ սաստիցն զերծեալ մեր ապրեցաք առ ոտս երջանիկ վարժապետին Սարգսի, ի Լըման կղզիս։

## 757.

### Գ Ա Ն Ձ Ա Ր Ա Ն

*Երևան 3503*

Գրիչ՝ Եսայի
վայր՝ Սիս

...Արդ, գրեցաւ եղանակաւոր տաղարանս հին և նոր, զոր առաջին սուրբ հայրքն են նշանակել, ի թվականին ՊԽԳ. (1394), ի հայ-
384բ րապետութեան տեառն Կարապետի, և ի թագաւոր || ութեան Կիպրոսի Ճագերի, որ և ի վերայ Հայոց այլ աւրհնւեցաւ և անուանեցաւ թագաւոր։ Գրեցաւ սա ձեռամբ վերջին և մեղսաթաւալ և անարժան գծաւղի Եսայի տրեզայի, ի քաղաքս Սիս, ընդ հովանեաւ սուրբ Նիկաւլաոսի, և կենսակիր սուրբ Նշանացս՝ Զորովանիցն, և [Արքա՞]կաղնոյն, և Վանկոյ սուրբ Նշանին, և աջոյն սուրբ Լուսաւորչին, ի լաւ և յընդիր աւրինակէն Յեսու փիլիսոփային, որոյ աէր ողորմեսցի, ի խնդիրս և ի փափաքս անձին իմոյ, և եղբաւրն իմոյ Պետրոս աբեղայի, և յիշատակ ծնողաց մերոց՝ Մարտիրոսի, և հաւրեղբաւրն իմոյ՝ Թումէոս քահանայի, և մաւրն իմոյ Մարթայի և ամենայն ազգականացն՝ կենդանեացն և հանկուցելոցն, ամէն | | |*

* Շարունակության մեծ մասը պատռված է։ Պահպանվել է միայն մի քանի անարժեք

## 758.

### ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 5608 (տես նաև 1303 թ.)

Հետ. ստացող՝ Ահարոն

Ո՛վ, պատուական եղբայր Ըսքոտկես քահանայ, զԱհարոն սուտանուն քահանայս և զմեղաւք փարթամս՝ ըզստացող գրոցս յիշեալ ի մաքրափա[յ]լ աղաւթս ձեր և զծնաւղս իմ ի տէր։ Ի թվականին Հայոց ՊԽԳ. (1394), նուեմբերի Դ. (4) օրս։

## 759.

### ԳԻՐՔ ՊԱՐԱԳՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՒՈՅ

Օքսֆորդ, Ms. Arm. E. 20. Տիրայր վրդ. 73. թղթ. 121, էջ 1242—1245

Ստացող՝ Յովհաննէս
վայր՝ Հերմոնի վանք

ա

212ա ...Զոր այսու յուսով տարփացաւղ եղեալ սորին ուղղութեան վերջինս բանասիրաց և տրուպս պետաց Յովհաննէս կոչեցեալ, խնդրող բանին տեառն Յիսուսի, զոր ի վաղ ժամանակաց տենչացեալ կարօտէաք, յեղակարծ ժամու գտեալ եղև ի յարկեղս գրոց ի հին վարժարանի ի Հերմոնի վանս կոչեցեալ, առ ոտս Ծերուն րաբունոյ, ի ձեռն համշիրակ եղբաւր մեր Յովանեսի. օրինակ մեզ ետ, շնորհեսցէ նմա տէր աստուած վարձս բազումս։

Արդ, ես՝ մեղապարտս ի մանկունս եկեղեցւոյ Յովհաննէս վարդապետ, գրեցի բազում աշխատութեամբ ի վայելումն ինձ և իմոցն՝ Ղազար համշիրակ եղբաւր իմոյ, աղաչեմ զպատահեալսդ ի սմին յիշել առ Քրիստոս զվերոյգրեալսդ և զբազմերախտ զպարոն Ամիրմուլքն, ծաղկեալ զաւակաւք իւրովք և ծնօղաւք հանդերձ, որ դքարտեզս շնորհեաց, և զմիաբանակեցունքս մեր, զուրբ հարքս զմահզասի Ստեփաննոս, և զԻրիցհայր, և զմիւս Ստեփաննոս, և զՄարտիրոս՝ զորքա ծ[նողօքն] հանդերձ, և զիս ծնողօք իմովք...։

Գրեցաւ սա ի թվիս ՊԽԳ. (1394), ի դուռն լուսաբեր անարատ կոյս Մարիամու ծնօղի հայրական [ծոցա]ծին [ ' [

բ

200բ ԶՅովհաննէս վարդապետ Մեծոփոյ վանաց և զԹովմա խնդրող բանի յիշեցէք ի տէր։

## 760.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Թորոս Աղբար, Բ. էջ 368—369*
*(Զմշկածագի սբ. Աստուածածին եկեղեցի)*

*Գրիչ*՝ Բարսեղ
*վայր*՝ Երզնկայ, Կալամբտի գիւղ

ա

...*Գրեցաւ սուրբ աւետարանս... ձեռամբ* Բարսեղ *քահանայի, ի թուակ*[*անութեան*] *Հայոց ՊԽԳ. (1394), ի կաթողիկոսութեան տէր* Կարապետին, *ի հայրապետութեան տէր* Գրիգորին, *ի գաւառս, որ* յԵզնկեոյ, *ի գեղս, որ կոչի* Կալամբտի, *ընդ հովանեաւ սուրբ Թադէոսի եւ սուրբ Կիրակոսի։*

*Հետ. ստացող*՝ Թադէոս
*վայր*՝ Խարտիշարի վանք

բ

*Ես*՝ Թադէոս *քահանայս, գնեցի զսուրբ աւետարանս ի հալալ եւ արդար վաստակոց իմոց, յիշատակ ինձ, եւ ծնողացն իմոց* Յոհանէսին, *եւ մաւրն* Ծըհէլին, *եւ եղբաւրն* Պօղոսին..., *ի հայրապետութեան* Խարտիշարի *վանուցս տէր* Աստուածատրին, *ի դուռն սուրբ Հարապետին եւ սուրբ Սարգսին. վայելել տացէ զսուրբ աւետարանս* Թադէոս *քահանային եւ հարկեւոր եւ երկիւղած երէցկնոջն իւր* Շահմելիքին, *որ ետ ի գին սուրբ աւետարանիս զքիմխայ եւ զոսկի աւզերն... աստուած... տայ լսել զերանական ձայնն՝ եկայք աւրհնեալք...։**

## 761.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 2189*

*Գրիչ*՝ Գրիգո՞ր
*վայր*՝ Թավրի՞զ

ա

434ա *Եւ զպիտակ պետս* Գրիգոր՝ *վերջին գծող յիշեալ աղաչեմ։*
*Իսկ ըստ Հայոց* [*Ը*]*ՃԽԳ. (1394) աւարտ եղև գիրքս։***

---

* *Բ. հիշատակագրության ժամանակի մասին որևէ ծանոթություն հրատարակիչը չի տալիս։*

** *Ձեռագրի վերջին թերթերը, որոնց վրա գրված է եղել գրչի հիշատակարանը, 1709 թվականին եղել են եղծված վիճակում։ ՈՐՈ Ծաչատուր «րանի սպասաւոր», սխալներով և անփութորեն, արտագրել է հիշատակարանի միայն մի մասը։ Տուժել է նաև գրչության թվականը։ Ձեռագրում պահպանված մանր հիշատակագրություններից դատելով այն գրված պետք է լինի ԺԴ. դարի վերջին, սակայն Ծաչատուրի կատարած սխալի հետևանքով ձեռագրի ընդօրինակության թվականը դուրս է եկել ՉՃԽԳ. (1294)։ Տարեթվի առաջին թվանշանը ուղղում ենք «Ը»-ով։ Հնագրական տվյալները ըստ ամենայնի հիմնավորում են մեր սրբագրությունը։ Ձեռագրի գիրը շատ նման է ԺԴ. դարի երկրորդ կեսում Տաթևում գրված ձեռագրերի գրին։*

Բ

434բ Արդ, ի փափաքանաց քան զօրութիւն քաջարանաց, վասն զի յորս թեակոխէ մտացն յօժարութիւն, մոռացումն առնէ դժուարագունակ կրից եկելոց։ Ցայս տարփումն եռացեալ հոգիս, որ ի բոլոր բարեաց եմ ունայն և ցուրտ սառուցեալ, որ ը[ն՞դ] զուարթականն առնուն թմրութեան գործով ընդդէմ ինձ առբերեմ։ Համարձակեցայ հանդգնաբար եւ գրեցի զփոքրիկ ձեռագիրս, ի սկիզբն եղաւ գրոյս գրուակ մի քարոզ, և դրուակ յառաքելական և հայրապետադիր կանոնաց, և մասն ինչ վկայութեանց սուրբ գրոց, և յայլ օգտակար և պիտանի բանից վարդապետաց։

Գ

Վայ և եղուկ է զմեզ, զի խապարս դառն է և սարսռելի, որ ասեն թէ չաղաթէն երեկ, ոչ բարով։

Դ

Աւա՜խ անտանելի դառնութեանս, զոր | | | եկն չաղաթայն ի Թավրեզ | | |*

Ե

Այսօր ի դուրս ելան մեր հայերս և բերդի Թուրքերն և Ժ. (10) չաղաթա սպանին, և Է. (7) մարդ բռնեցին, և բազում աւար առին։

Զ

Վա՜, զի չաղաթին յահէն սասանեալ կամք և տարակուսեալ և ոչ գիտեմք թէ վերջն ինչ է լինելոց. աւա՜խ անտանելի դառնութեանս։**

* Պատռված է։

** Գ, Դ, Ե, և Զ. հիշատակագրությունները գրված են 84բ–85ա, 165ա, 319բ–320ա և 323բ էջերի ստորին լուսանցքներում։



ՊԽԴ 1395

762.

ՄԱՇՏՈՑ

Երևան 6925

Գրիչ՝ Ստեփանոս
վայր՝ Խիզան

87ր ...Արդ, գրեցաւ գիրս հոգեշահ, մահու և կենաց յարմարող և միջնորդ առ աստուած և առ մարդիկ, ի թուականիս Հայկազեան տումարի ՊԽԴ. (1395), ձեռամբ մեղսամերկ և փծուն գրչի՝ սուտանուն Ստեփանոսի, ի քաղաքիս, որ կոչի Խիզան, ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնին և սրբոյն Սարգսի զաւրավարին, ի հայրապետութեանն Կիլիկեցոց տէր Կարապետի, որ մականուն Բոկիկ կոչի, և ի մերում հայրապետութեանս տէր Դաւթի Աղթամարեցոյ, և ի թագաւորութիւնս այլայսեռից Լանկ-Թամուրի, որ տիրեալ ունէր ի տանէն Սըմբրղընդայ մինչև ի Բաբելոն, և անտի մինչև ի Միջագետս Ասորոց՝ Ուռհա, և անտի մինչև ի գլուխ գետոյն Եփրատայ։ Եւ զչարութիւնն նորա, զոր գործեաց առ եկեղեցիքն և առ եկեղեցականքն և առ հաւատացեալս, ո՞ կարասցէ պատմել, զի բազումք սրով կատարեցան, և
88ա բազումք սովալըլուկ եղեալ, և այլք առ յոտս || ձիոց անկեալ կատարեցան չարաչար կոտտանաւք, զոր տէր աստուած բարձցէ զթագաւորութիւն նորա և անզընդասոյզ արասցէ և տացէ մեզ թագաւոր խաղաղարար։

Ո՜վ, պատուական մանկունք եկեղեցոյ, որք հանդիպիք այսմ տառիս, յիշեցէք ի յերկնաթռիչ յաղօթս ձեր զբարեպաշտ տանուտէրն զՄուրատն, և զծնողսն իւր, և զբարի կենակիցն իւր զՂըպչախն, և զծընողսն իւր, զի յոյժ փափաքմամբ ետուն գրել զՄաշթոցս զայս ի վայելումն Կարապետ քահանային...։

Արդ, աղաչեմ զձեզ մանկունք եկեղեցոյ, ես՝...Ստեփաննոս քահա-
88բ նայ, որ զտառս գրեցի, յիշման արժանի || առնել զիս, և զծնողսն իմ, և զծերացեալ հայրն իմ զԳրիգոր քահանայն, զի յոյժ երախտաւոր է ինձ, և զամենայն արեան մերձաւորսն իմ, և զթղթի կոկողն, որ վասն մի տէր-ողորմոյ, զինչ ես գրէի նայ յոյժ փափաքանօք կոկէր...։

763.

ՀԱՏՈՒԱԾ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Փիրդ. Նոտարք Հայոց, էջ 6—7

Ստացող՝ Յուստիանէ խաթուն
վայր՝ Խաղտեաց Նահանգ, Խաղնանի մենաստան

Ի թուաբերութեանս ՊԽԴ. (1395), ի հայրապետութեան տեառն Թէոդորոսի... և ի յառաջնորդութեան մերոյ նահանգիս Խաղտեաց՝

Բաբերդոյ տէր Յովհաննիսի արքեպիսկոպոսի, եղեւ հրաման ի տեառնէ աստուծոյ մերոյ վերափոխել ի տէր Յիսուս սրբասնունդ և երանաշնորհ եպիսկոպոսին մերոյ տէր Յովհանն[իսի], եղև պակասութիւն ամենայնի մեզ ամենեցուն, ես առաւել հրեշտակարնակ մենաստանիս Խաղձանեայ, զոր և ի սատրելոյ չարին յարեան ոմանք ի մէնջ, ի մեր ազգականաց, և հակառակեցան վանիցն, և ցրուեցին զուխտ և զամենայն, զոր ինչ կայր ի նմա. զոր տէր Յովհաննէս հանցէ զպատիժ պատուհասին ի գլուխ հակառակողին, ամէն։

Ես՝ նուաստ ոգի՝ քոյր տէր Յովհան եպիսկոպոսի, վերստին հաստատեցի զսուրբ ուխտն Խաղձանեայ, Ուստիանէ խաթուն, և պարոն Թզոռս՝ որդի իմ, և ժողովեցաք զջահ և զանօթ սուրբ եկեղեցեաց, և եղաք ընդ ձեռամբ մերով յիշատակ մեզ և ծնողաց մերոց՝ պարոն Աստուածատուրին և մօրն իմոյ Խաժիկ խաթունին։

764.

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 5352 (տես նաև 1381)

Վաճառող՝ Յոհաննէս

ա

360ա Ես Յոհաննէս վարդապետս, Աստուածատուր երեցու որդիս, Ստեփաննոսի եղբայրս, ծախեցի զիմ Սաղմոսի Մեկնիչս Յովաննիսին սպասաւորի բանի, Վարդանա որդոյ։ Մարդոյ զբուց չկայ ի ներս, ոչ իմոց ու ոչ աւտարաց, ով որ դաւի առնէ ատենին Քրիստոսի մատնի։

Ես՝ Սարգիս բաբունապետս վկա. Ես՝ Կարապետս վկայ. Ես՝ Ստեփանոս, որ դդիրս գրեցի, վկա։ Թվ. ՊԽԴ. (1395)։

Աստուած վայելեալ տացէ ընդ երկայն աւ[ու]րս, ի փառս և ի գովեստս Յիսուսի աստուծոյ, ամէն։

բ

Այլ և զնոյն վերոգրեալս զՅովանէս՝ աշակերտ բանի, աղաչեմ յիշել ի տէր, որ մեծաւ ջանիւ և ըստ կարի աշխատութեան, ուղղեաց զմատեանս աստուածային հոգոյն ի լաւ և ի յընտիր աւրինակէ, որ ուղ[ղ]եալ էր յիմաստուն արանց, և դասիւ առ ոտն էր երջանիկ վարժապետիս մերո Սարգսի, ի սուրբ ուխտս Վարագ։ Զի էր տեղիք, որ բանն էր սղալ, և էր՝ որ բառն, և էր՝ որ կէտն և շեշտն. ըստ կարի մերո, զոր գիտացաք, և ողորղեցաք և դրաք զհարցականն և զհա[յ]ցական։ Որք կարդայք կամ աւրինակէք, յիշեցէք ի Քրիստոս զառաջին աշխատողսն, և զվերջինս, և զգրողս, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոս, ամէն։

Եւ զիս՝ զանարժանս ի մանկունս եկեղեցոյ՝ զՍտեփանոս, որ զյիշատակարանս գրեցի, բարի կամաւք յիշել աղաչեմ։

## 765.

## ՑԱՂԱԳՍ ՄԱՐԴՈՅՆ ԼԻՆԵԼՈՒԹԵԱՆ, ՄԱՏԹԷՈՍԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Երևան 512

Հեղինակ՝ Մատթէոս
վայր՝ Տաթև

264բ Աչ-ղ, ես՝ խոցոտեալ հոգի և մարմին տկարացեալ, և տարտամեալ մտօք և գիտութեամբ, վիրաւորեալ ի բանսարկուէն, մեռեալ ոգի Մատթէոս քահանայ սպասաւոր բանի, առի յանձն աշխատութիւնս զայս, ոչ զի կարողութիւն էր իմ, այլ հարկեցեալ ի խնդրոյ սրբազան եղբօր մերոյ Սարգսի քահանայի, որ փափաքեաց սմա, հաւաքեցի ի բանից հարանց սրբոց պարզ և յստակ ի հասկացումն, զոր վայելել տացէ տէր աստուած սրբութեան գործով, մանաւանդ ի զուարճութիւն մանկանցդ եկեղեցւոյդ Հայաստանեայց, վասն որոյ երես անկեալ աղաչեմ հանդիպողացդ սմա, զի մտադիւրութեամբ ընթերցջիք՝ զպակասն ուղղելով և զաւելորդն կշռելով, և սխալանացն ներել աղաչեմ, զի այսքան կարացի։

265ա Այլ և աղաչեմ յիշել ի մաքրափայլ յաղօթ ձեր, թերևս իջցէ շնորհ ողորմութեան աստուծոյ ի յոսկերս մեռելոյս և լուացէ զաղտ հնութեան իմոյ։ Արդ, եղև գրաւ համառօտութեան բանիս ի թվին Հայկազան տումարի կրկին քառից հարիւրից և քառից տասանց և քառից թուոց $(2 . 4 . 100 + 4 . 10 + 4 + 551 = 1395)$, ի ժամանակի նեղութեան, ուր աւերեալ քակեաց զաշխարհս ամենայն հուրն հարա[ւա]յին Թամուր կոչեցեալ, և մեք դեգերեալ ի դրանս սուրբ առաքելոյն Եւստաթէի պանդխտական կենօք, առ ոտս երջանիկ րաբունապետին Գրիգորի, սպասեմք վերին խնամոցն, եւ իմ՝ առեալ սատ, անգեալ կենօք ձեռնարկեցի յայս գործ տեսութեան։ Քանզի իմաստունք ոչ կարօտին սմա, զի նոցա ամենայն ինչ յայտնի է, այլ իմ ընկերակիցքն ուսցին ի սմանէ, զի մի անգիտութեամբ խաւարն ամենեին կուրացուսցէ զնոսա։ Այլ և աղաչեմ զգաղափարողսդ, զի զսակաւ յիշատակս մեր գրեսջիք ի կատարումն գրոց...։

## 766.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ինճիճեան, Ստորագր. հին Հայաստ. էջ 171

Վայր՝ Ըռըշտունիք, Տշող գիւղ

Գրեցաւ ի թուականիս Հայոց ՊԽԴ. (1395), ի յերկիրս Ըռըշտունեաց, ի գեաւղս, որ կոչի Տշող...։





## 767.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7700 (տես նաև 1025 Թ.)*

*Նուիրատու՝* Ամիր-Սարգիս
*վայր՝* Ախալցիխէ

1ա *...Ցիշման արժանի արարէք զվերոգրեալս զայր* Ամիր-Սարգիսն, *և զամուսին իւր՝* զՆաքելխաթունն, *և զքուրն իւր՝* Փաշախաթունն, *և զհաւրեղբաւրորդին՝* զՎարձիկուլն, *և զհանգուցեալ ծնողսն՝ զպարոն* Մխիթարն *և զպարոն* Մինախաթունն, *որ և Քրիստոս աստուած իւր տեսուն արժանի առնէ։*

*Այլ և ընծայեցաք զսայ ի սուրբ Քառասունքն, ի* յԱխալցիխու, *ի թագաւորութեան* Գէորգին, *ի պարոնութեան աթապակ* Իւանէին, *ի կաթողիկոսութեան տեառն* Կարապետին, *ի հայրապետութեան ի տէր* Յակոբոսին *և տէր* Ներսէսին, *ի թվ. Հայոց ՊԽԵ. (1396)։ Զոր տէր աստուած վայելել տացէ քահանայիցն* Տիրատրոյ *և* Սարգսին, *որ բազում աշխատանք կրեցին ի սուրբ Քառասունքն աղաւթիւք և պատարագաւք։**

## 768.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Վիեն. 129, Տաշ. Ցուց. էջ 416—417*

*Կազմող՝* Յովհաննէս

235բ *Ով ոք հանդիպի սուրբ աւետարանիս, յիշեցէք ի տէր զսասացուղք սորա զերկու հարազատ կրաւնաւորքն՝* զԹորոս *եւ* զՍտեփաննոս, *եւ զծնողսն իւրեանց, եւ զհայրն իւրեանց* զՄովսէս, *որ ստացան զսա եւ ետուն վերստին նորոգել թվ. ՊԽԵ. (1396), ի վայելումն ինքեանց եւ յիշատակ հոգոց նոցա եւ ծնաւղաց իւրեանց, ամէն։*

*Ընդ նոսին եւ զեղկելի կազմողակս* զՅով[հաննէ]ս *աղաչեմ արժանի առնել յիշման աղօթից, ծնող[օ]ք մերով հանդերձ։***

---

* *Ձեռագիրն ընդօրինակված է 1237 թվականին։ Սույն հիշատակագրության միայն վերջին էջն է պահպանվել։*

** *Ձեռագրի գրչության թվականն անհայտ է, 235ա էջի հիշատակարանի համաձայն գրված է «Ձեռամբ* Սարգսի *կրաւնաւորի հանգուցելոյ ի Քրիստոս, ի խնդրոյ պատուական կրաւնաւորի* Մարտիրոսի*»։*





## 769.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 5456

Գրիչ՝ Մաքէոս

272բ *Ո՜վ վեհամիտ ընթերցող, զստացող աստուածաշունչ տառիս՝ զԱտոմ կուսակրաւն աբեղայ և զիս՝ զմեռեալ հոգի զՄաքէոս սուտանուն վարդապետ, որ բազում աշխատութեամբ գծեցի, յիշեցէք ի Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ։**

## 770.

### Շ Ա Ր Ա Կ Ն Ո Ց

Երևան 2478

Գրիչ՝ Ատոմ քաքուեհ

196ա *Աւաղ և եղուկ եղբայր*
*Թէ այս ինչ բաներ կու լինի.*
*Մէկ մի գիր կածեր աշխարհի*
*Եւ յամէն դիմաց ժողովի,*
*Մեռնիլ չի կամի եղբայր,*
*Թէ հազար մեռած տեսանի,*
*Մէկ պահ մահն ի միտն անկանի*
*Յորժամ զդին անկեալ տեսանի,*
*'Ի այս ամէն մարդոյ հանդիպի.*
*ԶԱտոմքս** ծոյլ բաբունի,*
*Որ միայն ըզանունս առի*
*Եւ ի գործոյս եմ յոյժ հեռի.*
*Զի՞նչ աւգուտ է մարգսյն այգի,*
*Որ ի պտղոյն ինքն չվայելի,*
*Այսպէս ես գիրք լաւ ընտրեցի*
*Ի յամենեցուն եմ ամայի։*

---

* Ձեռագրի գրչին նույնացնում ենք Գր. Տաթևացու աշակերտ, նշանավոր մատենագիր ու քարոզիչ Մաթեոս վարդապետի հետ, իսկ ստացող Ատոմին՝ Տաթևացու համանուն աշակերտի հետ, որի խնդրանոք նա գրեց իր «Հարցմանց Գիրքը»։ Վերջինս մեռավ 1397թ., երբ Տաթևացին դեռ չէր ավարտել իր աշխատությունը (տես՝ հիշատակարան № 771)։ Այս տվյալների հիման վրա սույն հիշատակարանը տեղագրում ենք 1397-ի թվաշարքում, որը նրա գրության ժամանակագրական վերջին հնարավոր եզրն է։

** Տես նախորդ ծանոթությունը։

## 771.

## ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՑ

**Երևան 915**

Հեղինակ՝ Գրիգոր Տաթևացի
վայր՝ Տաթև

344բ *Արդ. ես՝ վերջինս ի ծնունդս եկեղեցոյ և արուպս բանասիրաց Գրիգոր պիտակ անուն խնդրաւղ բանին, բացայայտեցի զբանս հարցմանցս ի լուսաւոր բանից վարդապետաց եկեղեցոյ, ի խնդրոյ ումեմն բանասիրի Ատոմի ուղղափառի, որ ի վաղուց հետէ թախանձէր։ Եւ ես՝ վասն իմոյ տկարութեանս և ժամանակիս վրդովման, զխնդիրն յապաղէի։ Եւ ապա ի սէր և յանձուկ ժտելոյ նորին, ապաստանեալ ի նայն, որ զաւրացոյց զտկարս, ձեռն ի գործ արկեալ աւարտեցի բազում միջոցաւ և փախըստեամբ ի տեղից, և մեծ ջանիւ փութացեալ։ Որ և ոչ ժամանեաց ի կատար բանիս վերոյասացեալ խնդրողն, այլ ի հասարակ գրոյս՝ հասարակեաց և նա զկեանս առաւրեա, հասեալ ի գանձն իմաստից և յագրերն գիտութեանց, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամէն։*

*Արդ, եղև գրաւ բանիս ի շրջագայութեան Հայկազեան տումարիս ՊԽԶ. (1397) թուի, ընդ հովանեաւ երկնահանդէտ մեծարգոյ ուխտի Սիւնեաց նահանգի, առաքելական աթոռոյ սուրբ առաքելոյս և այլ շրջակայ հրեշտակաբնակ սուրբ մենաստանաց, որոց խնամօքն ամրացեալ փրկեսցուք յամենայն փորձութեանց, ամէն։*

*Իսկ լուծումն հարցմանցս այսոցիկ ոչ ամենևին աւտարաձայն աւելորդ խուզեալ և ոչ գեղջուկ իմն յաշխարհական խաւսից յարմարեալ։ Այլ զպիտանիս եկեղեցոյ և վարդապետաց ոգեշահ խնդիր հաւատոյ միայն. հոգ տարեալ ուղղակի ճշմարտութեան և անըստգիւտ իմացման, բովանդակեալ ոչ զամենայն, որ ամենեցունց է գիտելի, այլ բանս բազումս, որ բազմաց է պիտանի և խնդրելի։ Արդ, է ինչ սմա հաւաքեալ ի լուսաւոր բանից վարդապետաց սրբոց ըստ գրոյն կամ իմացուածոյն. եւ է ինչ ի ներգործութեանց հոգոյն աստուծոյ շնորհեաց, որ ծածկէ յիմաստնոց և յայտնէ տղայոց, և յիւրաքանչիւր ժամանակս ըստ կամաց իւրոց. եւ թէ այս և թէ այն։*

*Դու ընկալ զխնդիրդ մտաց առանց ամենայն երկբայութեանց,*
345ա *իբր ի միոյ կենե ‖ զուտ աղբերէ կենաց ուռճալըրացեալ և պտղաւէտեալ ի փառս և ի գովեստ նորին տընկագործի և առաջնորդի։ Զոր և ես զաւրէն մշակաց բազմահաւաք պտղոց, կամ փունջ մի անուշահոտ բազմերանգ ծաղկանց, կամ չնչին թռչնոյ զխորխախ մեղու, կամ որպէս լոմայս այրոյն, տառապեալ գոյիւ աղերս ընծայեցի ի գանձանակ ճոխութեան ձերդ մեծութեան՝ իմաստասէր և ճշմարտասէր եկեղեցեացդ Հայաստանեայց և ընթերցասէր մտաց, որ և աղաչեմ զբարեմիտ հանդիպօղս եղբայրական սիրով հաւանել, զպակասն լնուլ և զաւելին կշռել, և պիտանեացն փառս վերընծայել այնմ,*

*որ փառաւորերալն է ի պարգևս իւր, իսկ զանպիտանս՝ ներել մերոյ փոքրընկալ անաւթոյ և դանդաղկոտ փութոյ։*

*Դարձեալ, երես անկեալ արտասուալիր դիմաւք հողս և փոշի սուրբ գարշապարաց ձերոց, աղերսեմ ի խորոց սրտէ զհարազատգութ հարց և եղբարց մեր հոգևորաց, զի կաթ մի արտասուաց ի կաթիլ գուլէ ձերդ մաղթանաց ցաւղեսցէ ի գերեզման հոգոց իմ տառապանաց և լուացէ զբազմաշարաւ զազրացեալ ոսկերս մեղաւք մեռելոյս։ Զի թերևս վասն ձեր սիրալիր մաղթանացդ գտայց ողորմութիւն յամէնողորմ փրկչէն մերմէ։ Այլ և վարժապետին իմոյ և մեծ հռետորի Հայոց* Յոհաննու Որոտնեցոյ *եղիցի ի սմա յիշատակ մաղթանաց մասին աւրհնութեանց և վիճակի ժառանգութեան՝ սրբոցն ի լոյս, զի. նա ծնաւ զմեզ ըստ բանին, ըազմաջան երկաւք կըթիլ ի մամուլս վարժարանի և ի յոյսն կենդանի, որ և ձեզ յիշողացդ և մեզ յուսոզացս, առհասարակ, ողորմեսցի բարերար և բազումողորմ մարդասէրն աստուած և տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն։*

*Այլ և զերջանիկ գաղափարաւզսդ մաղթեմ, որք ընդաւրինակէք զգիրս Հարցմանցս այսոցիկ, գրել և զսակաւ յիշատակս այսոցիկ, որպէս և դուք լիցիք գրեալ ի գիրն կենաց, ամէն։*

*Ւրեոցի և յայսմ տեղւոջ հարցմունք Գէորգեա վասն բազում վկայութեանց, որ առեալ է ի գիրս յայս, զի անտարակոյս լիցի։ Են ամենայն հարցմունքդ չորեքտասան գլուխ, որպէս յայտ է ի կարգիտ։*

772.

ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7629*

Գրիչ՝ Ռոստակես
վայր՝ Հիզան քաղաք

264բ ...*Եւ արդ, ես՝* Մարտիրոս, *յետինս և անպիտանս յորգիս եկեղեցոյ ցանգացող եղէ աստուածախաւս և աւետարեր սուրբ աւետարանիս և ետու գրել զսայ յիշատակ հոգւոյ իմոյ և եղբաւրն իմոյ* Կիրակոսին, *որ գնաց, որ քարգործ բերէր, որ զեկեղեցին շինէաք, և ի* Կար[ա՞ղ]ի *սարն աւազակքն ի վերա անգեալ՝ անմեղութեամբ և պատըանաւք ըմբռնեալ, և իբր նման անմեղին Աբելի և Յովաննու Մկըրտչին և Ստեփանոսի Նախավկային մարտիրոսական պսակաւ ներկեալ արեամբն իւրով՝ պսակեցին զառն տանջանաւք, որ և վայրքն ծաղկաւէտ առողեալ էր կարմիր արեամբ իւրով, եւ իւր գեղեցիկ մանկութեան հասակն իբրև զվարդս պայծառ հարեալ ի կարկտէ և թափեալ յոստոյ. և մնացաք ի ճանապարհսն նորա հաելով, եթէ գայցէ բերելով ընդ իւր դշինաւզ եկեղեցոյն։ Եւ մեք ոչ գիտէաք եթէ նա յայնպիսի դառն չարչարանս մատնեալ էր։ Եւ մանուկն այն Կիրակոս ածէր զակն իւր ստ և անտ եթէ ոք յեղբարցն և կամ յազգականացն և յ[ը]նդանեացն երևէր և հասանէր իւր յաւգնական, և*
265ա *ոչ էր, և ոչ ևս երևէր։ ‖ Եւ ապա լցեալ զակն արտասուաւք աղա-*

ղակէր՝ Քրիստոս աստուած, համարեա զմահ իմ ընդ մահուան մարտիրոսացն, և առեալ զհողն խաչաձև արկանէր ի բերանն, և ապա տայր զինքն իբրև զոչխար ի զենումն։ Եւ մեք գնացաք և գտաք ի քարանձաւք լերինն անփոփեալ խոռոչս ձորոց, առեալ բերաք ի տուն | | | *զաւետարանս յիշատակ Կիրակոսին և կենակցին իւրոյ Մօզանին, նաև ծնաւղացն, հաւրն իւրոյ՝ Ծերի, և մաւրն իւրոյ՝ Քափուրի. և եղբարցն՝ Մարտիրոսին, Յովաննիսին և Եղևոնին | | | **, և այլոցն ամենայնի, առհասարակ։

265բ ...Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս այս ձեռամբ մեղապարտ Ռստակէս անիմաստ և ախմար գրչի, յընդիր և ի ստոյգ աւրինակէ Աղեթընցո, ի Յովաննէս փիլիսոփայէ դրեալ, կենաւք և սառապանաւք և բազում պանդխտութեամբ։ Ի մեծ թուիս, ի յեղանական շրջագայութեան արեգականն ստորիջիւք երկնաչու ճանապարհաւ յերկնից յերկիր հաելով, ըստ արարչութեանցն չափեալ յելանելոյն Ադամա ի դրախտէն մինչև դայս աւր ամք ՑՊԻԴ. (6824), իսկ ի Հայկազան թուականիս ՊԽԶ. (1397), ի քաղաքիս Հիզան, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնի և սուրբ զաւրավարացն Սարգսի և Գէորգայ, ի հայրապետութիւնն Կիլիկեցւոց տեառն տէր Կարապետին, և ի մերոյ հայրապետու[թեանս Աղ]թ[ամ]ար[այ | | | Զաքար[իայի | | | *** և իշխան ոչ գոյ մեր, զի անտէրունչ շրջէաք։ Եւ կայսեր | | | զութիւն ազգին նետողաց Թամուր խանին, ի թշուառ և ի չար ժամանակի, յոր էառ զԹարբեզն, զ[Ի՞]կլադ, և զԵդեսիա, և զՌա...դեն, և զՄերդին, և զԱմիթ, և զամուրսն Աւրնկու, և զամենեսեան ի սուր սուսերի մաշեաց և հրո[վ այր]եաց և զոր գերի վարեաց, և յորում է արդարութիւն յամենայն ուրեք նուազեալ և անիրաւութիւն յամենայն կողմանց զաւրացեալ, որ և յայս՝ առ ի բազում նեղութիւն և չարչարանք կրեցին եկեղեցիք և մանկունք նոցին ի հնարից այլասեռից. զոր տէր աստուած յետս ընդդէմ դարձուցանէ և կործանեսցէ զնոսա և զչարութիւն նոցա | | | ****

## 773.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՃԱՌԻՑ

Վենետ. 315 Ցուց. Բ. էջ՝ 1284—1285

Գրիչ՝ Ներսէս
վայր՝ Գամաղիէլի վանք

347ր ...Եւ արդ, ես՝ Ասատ միայնակեացս, ետու գրել զգիրքս զայս յիշատակ հոգոյ իմ և ծնաւղաց իմոց։ Եւ արդ, գրեցաւ սայ՝ ձեռամբ Ներսիսի մեղապարտ ծառայի, անիմաստ և տխմար գրչի, որ և ազա-

* Երեք տող անընթեռնելի։

** Մեկ և կես տող գրված է կարմիր թանաքով, ապա ջնջված ու այլ ձեռագրով ավելացված են հաջորդ չորս բառերը։

*** Մաշված և անընթեռնելի բառեր են։

**** Վերջից թերթ է ընկել։

չեմ ընանդիպողքս գրոցս՝ յիշել յաղաւթս ձեր, և անմեղադիր լինել, զի անընդել գոլով յարւեստ գրչութեան և րաղում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մեւում, զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, աշխատասիրեալ իմ ի սմայ՝ գրեցի անարժան ձեռաւքս։ Ի մեծ թուիս...յելանելոյն Ադամայ՝ մինչև ցայսր ամք ՑՌՈ. (6600), իսկ ի Հայոց թուականիս ՊԽԶ. (1397), ի վանքս Գամաղիէլ կոչեցեալ, ի հայրապետութեանն Կիլիկեցոց տէր Կարապետին, և ի մեր հայրապետութեան Աղթամարայ տէր Դաւիթի, և ի թագաւորութեանն այլասեռից Թամուր-Լանգին, զոր տէր աստուած բարձցէ [զթագաւ]որութիւն նորա [և խորա]սոյզ արա[սցէ], և...փրկեսցէ զմեզ, [ի] նեղչաց մերոց, [որ-պէս զԻսրայէլ] ի ձեռաց Փարաւոնի։ Եւ աջն ան[մահ]ին և բազուկ հզաւր թագաւորին անսասանելի պահեսցէ զաթոռ թագաւորական և հայրապետական, զի ի յիշել զանուն սոցայ՝ սասանել սաքբին, և ոչ ևս երևին թշնամիք ճշմարտութեանն...։*

## 774.

## ՃԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

Սրուանձտ. Թորոս Աղբար, Բ. էջ 385—386 (Արգնի Բարձրահաւեաց որ. Աստուածածնի վանք)

Վայր՝ Սանահին

Գրեալ ի Լոռու գաւառի, ի գերահռչակ սուրբ ուխտն Սանահին, ի դրան սուրբ Աստուածածնի եւ սուրբ Կաթողիկէի, ի թուաբերութեան ամանակիս Աբեթական մեծ տումարիս ՊԽԶ. (1297), յանիշխանութեան աշխարհիս...**

## 775.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Փիրղ. Նօտարք Հայոց, էջ 9—10 (ի Կարնոյ եկեղեցի)

Կազմող՝ Յովանէս
վայր՝ Գուգարաց վանք

...Թվ. ՊԽԶ. (1397) բերաւ սա ի Կիլիկիոյ գաւառէն ի յաստուածապահ ղաղեակէն, որ կոչի Մըլեվոն, ձեռամբ Յովանէս նուիրակիս, և կազմեցաւ ի սուրբ անապատս, որ կոչի Գուգարաց վանք, ընդ հովանեաւ սուրբ Յովհաննու Մկրտչին և մօր լուսոյ սուրբ Աստուածածնին, աղաչեմ զի և սպասաւորք սուրբ անապատիս՝ զՍերովբ կրօնաւորն, և զՄկրտիչ կրօնաւորն, և զԿարապետ հայրպետն, և զայլս յիշեցէք առ Քրիստոս։

* Շարունակության մեջ հիշվում են գրչի և ստացողի մերձավոր ազգականները։
** Հիշատակարանը համառոտված է հրատարակչի կողմից։

776.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սեբաստիա, Ս. Նշան, № 65, ՀԱ. 1926 Թ., էջ 45—46*

*Ստացող՝* Վարդան
*վայր՝* Եզնկայ

ա

452 *Արդ, աղաչեմ ամենեսեան, որք կարդայք կամ աւրինակէք զսուրբ աւետարանս, յիշեցէք եւ մեղաց թողութիւն հայցեցէք* Վարդան *քահանայի, եւ ծնողաց սորա* Խոսրովի, *եւ կենակցի իւրոյ* Մամախաթու-նի, *եւ դեռաբուսիկ որդւոյ իւրոյ* Պռոխորոնի։ *Յիշեցէք զկենակիցն* Նիկողոսի, *ամէն, ի սուրբ աղաւթս ձեր, եւ աստուած զձեզ յիշէ յիւր սուրբ արքայութիւնն, ամէն։ Գրեցաւ վերոյգիրս ձեռամբ* Վարդան *քահանայի, թվ. ՊԽԶ. (1397)։*

*Գրիչ՝* Մխիթար

բ

452 *Արդ, գրեցաւ յիշատակարանս ի* յԵզնկայս, *ի յանուն* Վարդան *քահանայի, որ ստացաւ զսա ի յարդար ընչից իւրոց, յիշատակ իւր, եւ ծնողաց իւրոց փոխեցելոցն ի Քրիստոս,* Լուս *երիցու, եւ* Մկրտիչ *իրիցու, եւ միւս* Վարդան *երիցու, եւ այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց, մաւր իւրոյ* Զապելին, *եւ մաւրքուրին* Մամատիկնա, *եւ եղբաւրն* Նիկողայոսի, *եւ դաւակի իմոյ* Մկրտիչ *սարկաւագի, եւ եղբաւրորդւոյ* Յակոբի, *եւ* Դաւթին, *որ յաւետարանիս վերադինս աւգնական եղեւ, եւ երիցու կնոջն* Հատիին, *եւ իւր մաւրն* Քուրխաթունին, *եւ պապուն* Յովանիսին, *եւ իւր հաւրն* Գիշուկին, *եւ եղբաւրն* Կարապետին, *եւս առաւել* Մխթալին, *որ աւգնական եղեւ ի գինս...։*

*Եւ արդ, գրեցաւ վերոյգիրս ի սուրբ աւետարան ձեռամբ անարժան երիցու* Մխիթարի, *թվ. ՊԽԶ. (1397), յունիս ամսոյ Բ. (2)։*

777.

## «ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ» ԵՒ ՍԱՀՄԱՆՔ ՀԱՒԱՏՈՅ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երևան 1555*

*Վայր՝* Երուսաղէմ

*...Արդ, սկսեալ եղև սուրբ գիրքս, որ է Յիսուս որդի և Հաւատոյ Արմատ, առաջնորդութեամբ հոգւոյն սրբոյ, ի սուրբ քաղաքս* Երուսաղէմ, *ընդ հովանեաւ սուրբ հրեշտակապետացս, և աստ կատարեցաւ։*
328ա *Արդ, աղաչեմ զաղօթասէր եղբարքդ և զուսումնասէր ‖ մանկունքդ սրբոյ Սիոնի, դի յրնթեռնուլն ձեր զսուրբ գիրքս յիշեսջիք ի մաքուր աղաւթս զերախտաւորք սուրբ գրոցս, և աստուած զձեզ յիշեսցէ ի խնամս ողորմութեան իւրոյ, ամմէն։*

*Գրեցաւ սուրբ գիրքս ի թվիս Հայոց ՊԽԶ. (1397), ի յօգոստոս ամսոյ ԻԲ. (22), և փառք տեառն աստուծոյ իմոյ։*





## 778.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 1091

Գրիչ՝ Պետրոս

վայր՝ ի գաւառս, որ կոչի Բարձն, որ է Ախբակ

275ա ...Ի թուականիս Հայոց ՊԽԷ. (1398) գրեցաւ Արարածոց Մեկնութիւնս ձեռամբ մեղապարտ ծառայի Պետրոսի փծուն գրչի, ի խնդրոյ արժանաւորեալ կրաւնաւորի՝ Պետրոս քահանայի, որ է քուերորդի տեառն Ստեփաննոսի, որ է յաթոռ սուրբ առաքելոյն Բարդողիմէոսի։

Արդ, յերես անգեալ աղաչեմ զղասս սուրբ հայրապետաց և վարդապետաց և զերամս սուրբ քահանաից, որք հանդիպիք այսմ տառիս յիշեցէք ի տէր մեր Յիսուս Քրիստոս զտէր Ստեփաննոս և զտէր Տիրացու, որ է հաւրեղբաւրորդի նորին և յոյժ ցաւակից սուրբ ուխտիս, հանդերձ ծնաւղաւք և ամենայն ազգականաւք, և զստացող սուրբ գրոցս՝ զՊետրոս կրաւնաւոր, որ ցանկացող եղև այսմ հոգևոր աստուածային մատենիս, և յոյժ փափաքանաւք և ջերմ սիրով ետ գրել զսա, յիշատակ իւրն, և ծն[աւղ]ացն իւրոց՝ հաւրն իւրոյ Ղարամանին, և մաւրն իւրոյ Աւագուհոյ, և այլ ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և մեզ՝ ամենայն հաւատացելոց ի տէր մեր Յիսուս Քրիստոս, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Արդ, գրեցաւ սայ ի դառն և ի նեղ ժամանակիս, քանզի բազում ի վշտի կա երկիրս այս վասն ծովացեալ և բազմացեալ մեղաց մերոց, զոր հրամաէ առաքեալ Պաւղոս եթէ՝ այժմու մեղքս առաւել է քան զխաչահանուացն։ Ցայսմ ամի ըմբռնեցին զպարոնն Հայքարա, որ
275բ էր յոյժ խնամակալու ազգիս քրիստոնէից, առ|| աւել քան զնախնիքն իւր, զի ըմբըռնեցին զնա և գբին ի բանդի ի մէջ ծովու, և զաւրաւք բազմաւք եկին ի Ձորն Դիզա, և աւար հարին մինչ ի Զուլամէրկ և ի Գաւառ, զոմանց զտուն այրեցին, զոմանց* զվաստակ կերան և զպահուստն զամէն գտան, և զանառիկ ամրոց Անին առին, և զայն որ խնաեցին, յետ հարկապահանջութեամբ աշարին իբր զկոզոպուտ։ Մեր յոյս և ապաւէնն աստուած է։

Միթէ նա կարճէ զչափ չարին,
Աւարտ առնէ պատուհասին,
Կանգնէ զաթոռ թագաւորին,
Եւ առաւել քան, զոր էին։
Պարտ է առ տէրն ապաւինել
Գիրկ արկանել ոտից նորին,

* Բնագրում՝ «զոմանց»։

Որ չթողու զմեզ իբր զհաւտ,
Առանց հովիւ ի մէջ դաշտին։

Գրեցաւ գիրքս ի գաւառս, որ կոչի Բարմն, որ է Ախրակ, ի դուռն սուրբ առաքել[ոյն] Բարգուղիմէսսի, ի հայրապետութիւն տեառն Ստեփաննոսի, և յիշխանութիւն Միր-Ալադնի և Ամիր-Ջէնդնի, որ է գեռ ըմբռնած ի մէջ կղզոյն Ախթամարայ։ Եւ խոշորութեան գրոյս և սխալանաց անմեղագիր լերուք, զի կարողութիւնս մեր այս չափ էր։

Արդ, աղաչեմ զամենեսեան զպատահողք սորայ, յորժամ ընթեռնուք զսուրբ գիրքս, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զստացող սուրբ մատենիս՝ զՊետրոս, հանդերձ վերոասացեալ անուամբքն և ամենայն զարմօք, ե աստուած-ողորմի ասացէք նմա ե իւրոցն, ամէն։ Ընդ նմին զփծուն զրիչս զՊետրոս, և զԱստուածատուր քահանայն, որ զաւրինակն շնորհեց, ե զԱկոբ կրաւնաւորն, որ զթուղթն կոկեց, որ ե մարգասիրեալ եղբայրական խնամաւք կաթիլ մի ի ցաւղոյ աղաւթից ձերոյ իջցէ յոսկերս մեր ե լուասցէ զբազմաշարաւ ապականութիւն հողոյ և մարմնոյ մերոյ, և գծնաւղացն մերոց՝ զներելիսն և զմահացուսն, և ձեզ՝ յիշողացդ ե մեզ՝ լսողացս, առհասարակ, վայելեսցի յոյս հանդերձելոց փառացն ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է աւրհնեալ յաւիտեան։

779.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՑ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ, ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 7416 (տես նաև 1599 և 1740 թ. թ.)

Գրիչ՝ Պաւղոս
վայր՝ ի Քաղաքս Խալաթան,
հանդէպ Կոստանդինուպօլսի

ա

447ա ...Արդ, ցանկացաւղ եղեալ այսմ աստուածային գանձիս և անգին մարգարտիս աստուածասէր և հաւատարիմ, հեզահոգի ե ողորմած, տանց աստուծոյ զարդարաւղ և սպասաւորաց նոցին տացաւղ Աբրահամ վաճառական, որ էր վկայեալ յամենեցունց ե հաւատարիմ գտեալ մեծամեծաց ե փոքունց, և հլու հնազանդ առաջնորդաց եկեղեցոյ, նաև ուղղափառ հաւատով ամրացեալ։ Սա փափագաւղ եղեալ բանի մարգարէին, թէ՝ երանի, որ ունիցի զաւակ ի Սիովն և ընտանիս յԵրուսաղէմ, և գնացեալ ի ցանկալին ամենեցուն յԵրուսաղէմ, և երկրպագեալ տնաւրինականացն, ե մասնաւորեալ աղաւթարարացն՝ որ անդ յընչից իւրոց ե ուրախացուցեալ զամենեսեան հոգևոր առհիւք և մարմնաւոր։ Եւ խոստացաւ երկնահանգէտ և սուրբ մենաստանին սրբոյն Ցակոբայ զգիրքս ցանկալի, որ կոչի Սարգիս Գիրք։ Եւ ետ գրել իմոյ՝ անարժան քահանայիս և փցուն գրչի Պաւղոսի, որ գրեցաւ ի քաղաքս Խալաթան, հանդէպ Կոստանդինուպօլսի, ի նեղ և ի նուրբ ժամանակիս, որ թուրքն խսարել է զմեզ և զՍտըմբօլն, վասն ծովացեալ մեղաց մերոց, և ակնկալութիւն և ազատութիւն ի վերուստ լիցի յողորմած տեառնէն, զի այս չորս տարի է, որ բա-

447բ դումք կու ցանկան մահու, որ եմք ի բանտի։ Եւ ըդ ‖ ծերունի հայրն իմ՝ զՄատթէոս ժրաջան քահանայն և զանձանձիր ազաւթաւորն, և զմայրն իմ, և զամենայն ազգայինս իմ՝ զկենդանիս և զհանգուցեալս, յիշեսջիք ի Քրիստոս մեղաց թողութիւն խնդրելով։ Դարձեալ յիշեսջիք ի Քրիստոս դարժանին յիշատակի զԱբրահամ մղտեսին, որ ետ զմատեանս սուրբ ի մեծ և յաւաղ եկեղեցին՝ ի սուրբն Սարգիս, յիշատակ իւր և իւրոցն ամենայնի։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զսա անտի, զի մի պատժեսցի յաստուծոյ և յամենայն սրբոց...։

Արդ, գրեցաւ սա ի թուականութեանս Հայոց ՊԽԷ. (1398)։

Բ

419ա Քրիստոս աստուած, ի քո ահաւոր և ի սոսկալի գալըստեան ողորմեա ստացողի գրոցս մղտըսի Աբրահամին, և ծնաւղացն իւրոյ՝ Ոսկիծամին և Մարխմտիկնա. և եղբաւրն իւրոյ Յովանէսին, և քուրոջն իւրոյ Նուրխաթունին, և կնոջն իւրոյ Մամուշխաթունին, և ամենայն համաւրէն ազգականաց իւրոց ողորմեսցի աստուածն ամենեցուն, ամէն։ Նաև ինձ՝ ողորմելի և անպիտան գրչիս Պաւղոսիս, և հօրն իմոյ Մաթէոս քահանայի, և մաւրն իմոյ Արուզին, և երկոսեան քւերցն իմոյ՝ Թամթային և Մարիանէ, և կնոջն իմոյ, և մորքուրոջն իմոյ՝ Աննային, և որդոյն իւրոյ Յոհաննէս քահանային, և այլ համաւրէն աղգականաց իմոյ՝ կենդանեաց և մեռելոց, ողորմեսցի աստուած ամենեցուն առհասարակ, ամէն։ Այլ և կարդացողաց և լսողաց և ամենայն ժողովրդեանս, և որ ղամէնն ասէ, ամէն։ Ընդ նմին յիշեսջիք յաղաւթս ձեր զվարպետն իմ զՍտեփանոս Նատերանց զանհաս գրիչն, և զանդրանիկ որդին իւր զՅոհանէս քահանայ, և զծերունաւղսն իւր, և զեղբարսն իւր՝ զտէր Գրիգոր եպիսկոպոսն, և զՍեւտիֆ ծաղկաւղ, և զՅովաննէս զանհաս գրիչն, և զամենայն համաւրէն ազգայինս իւր յիշեսջիք յաղաւթս ձեր, ամէն։

Աղաչեմ զդասս սուրբ քահանայիցդ, յորժամ կարդայք և կամ աւրինակէք, նա խոշորութեան և կամ սղալանաց մի մեղադրէք, զի կար մեր այս չափ է, զի ի նեղ և ի դառն ժամանակիս գրեցաւ, որ երեկ անաւրէն Թուրքն բաղում զաւրօք և հեծելաւքի վերայ Ղալաթանիս, շատ աւէր արաւ ի քաղաքիս դուրս, և մեք ի նեղութիւն և ի չարչարանք էաք. գիշեր և ցերեկ, և կարաւտ էաք դքալ մ[ը] Թացնի։ Յայս նեղութիւն և ի դառն ժամանակիս գրեցաւ գիրս, կրկին և երեքկին կու աղաչեմ զձեզ՝ զդասս քահանայիցդ, որ սղալանաց կամ խոշորութեան մի մեղադրէք, զի կար մեր այս չափ էր։

## 780.

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 5510*

Գրիչ՝ Զաքարայ
վայր՝ Աղթամար

271բ *Արդ, գրեցաւ սուրբ աւետարանս ի կղզիս* Աղթամար, *ընդ հովա-*
*նեաւ սուրբ* Խաչիս *և սուրբ Նշանի, ի հայրապետութեան տէր* Դաւթի,
*և ի թուին Հայոց ՊԽԸ. (1399), ձեռամբ մեղապարտ և անարժան*
Զաքարայ *անիմաստ և ախմար դրչի, և անընդունակ գոլով յարուեստ*
272ա *գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ | | | ում*
*զոր պարգևեաց մեզ մարդասէր հոգին, [բա]զում աշխատանաւք գրեցի*
*անարժան ձեռաւք իմովք, ի ստոյգ և յընտիր աւրինակէ, կենաւք*
*տառապանաւք և բազում պանգխտութեամբ։ Արդ, որ ճաշակէք յաս-*
*տուածային բուրաստանէս և յամենալի սեղանոյս, որք պատահիք*
*սմա տեսութեամբ կամ ընթերցմամբ, յիշեսջիք յաղաւթս ձեր [ստա-*
*ցող սորա* զԴանիէլ, *և զծնողքն՝* զԱբրահամ *և* զՄարեմ, *և զեղբարքն,*
*և զպտղն, և զորդին, և զդուստրն. և ետ զսա ընծայ ի սուրբն Ստե-*
*փաննոսի Նախավկայն յ*Ոստան *քաղաքի, և յորժամ ընթեռնուն յիշեն*
զԴանիէլ *և զծնողքն, և աստուած ողորմի սոեն]։*[*]

*Ընդ նոսին և զանպիտան գրիչ* Զաքարայ, *և զմեր ծնողքն՝* զՄկըր-
տիչ *քահանայ և* զԹանկխաթունն, *և զուսուցիչն մեր* զԿարապետ *կրաւ-*
*նաւոր, զհանգուցեալն ի Քրիստոս, և զեղբարքն՝* զԿարապետ *քա-*
272բ *հանայ և* զՅովաննէս, *որ աշխատեցաւ ի նիւթ թղթիս, և* զԽաչիկ,
*և զքոյրն մեր* Խէրխաթունն, *որ բարի մահուամբ հանգեաւ ի Քրիստոս,*
*և զամենայն ազգականքն մեր՝ զկենդանիք և զհանգուցեալքն։ Եւ որք*
*զմեզ յիշէք սրտի մտաւք և զուք յիշեալ լիջիք յառատ յողորմու-*
*թեանն աստուծոյ, որ է աւրհնեալ գովեալ և բարեբանեալ այժմ և միշտ*
*և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

## 781.

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Սրուանձտ. Թորոս Աղբար, Բ, էջ 429—430 (տես նաև 1581)*

Գրիչ՝ Յովհ[աննէս]
վայր՝ Շուշանց գիւղ

*Գրեալ ի սուրբ ուխտն* Վարագայ *ձեռամբ* Յովհ[աննէս] *գրչի,*
*ընդ հովանեաւ սուրբ Նշանին* Վարագայ, *ի գեաւղս* Շուշանց *ի դուռն*
*սուրբ Գէորգայ զաւրավարին, ի հայրապետութեան տէր* Սահակայ՝

---

* *Ուղղագիծ փակագծերում եղող հատվածը գրված է այլ ձեռագրով ու այլ թանաքով։*

առաջնորդին Վարագայ, եղբաւր Պաւղոսի նախորդ առաջնորդին, ի թվ. Հայոց ՊԽԸ. (1399)։ Յիշեցէք զՏիրացու կրաւնաւորն, եւ զտէր Ստեփաննոսն, եւ զծնողսն իւրեանց՝ զՀայրապետն եւ զԴաւապետն, զՇնա-հորն եւ զՍամէլիք, եւ զպապն նորին զՍաւարն, եւ զԱւետիս քահա-նայն..զՋեանխաթունն, եւ զԳուրջիխաթունն...զՆարատինն, եւ զՍահ-մատինն...եւ զերիցս երանեալ Սիմէոն բարունապետն, որ եղեւ պատ-ճառ եւ ուսուցիչ գործոյս գրագրութեան, տուեալ նուէր սուրբ առա-քելոցն Բարգուզիմէոսի։

782.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երևան 1136 (տես նաև 1381 թ.)

Հետ. ստացող՝ Կարապետ

222ա Կամաւն աստուծոյ ամենակալին ես՝ Կարապետ աբեղայս, յամի ՊԽԸ. թուականիս Հայոց տոմարի (1399), ստացայ զցանկալիս բաղմաց, զգանձս անկապուտ փարթամութեան՝ զՄեկնութիւնս Ալարածոց, ի վայելումն անձին իմոյ և ի սփոփանս մտաց՝ աստի կենացս, և յետ աստեացս՝ յիշատակ ինձ, և հաւր իմոյ Զարուխին, և մաւրն իմոյ Թաղա/մելիքին, և մաւրաքերն իմոյ Խոյանդին, և այլ արեան մեր-ձա[ւորա]ց և երախտաւորաց իմոց և ամենայն ազգականաց։ Որք հան-դիպիք զաստուած-ողորմին անյապաղ ասացէք, և աստուածն, որ առատն է ի տուրս բարեաց, մեզ և ձեզ ողորմեսցի, ամէն։

Այլ և ղուսթայ Մելիքշէն յիշեցէք։

783.

## ՏԱՂԱՉԱՓՈՒԹԻՒՆՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 1537

Գրիչ՝ Յովաննէս
վայր՝ Սանահին

191ա Արդ, ի սպառել ժամանակի,
Եւ ի վերջին այսմ դարի,
Դէպ մեզ եղև փոփոխելի,
Գալ ընակել ի սմին տեղի,
Ի ղրան քաւարանի,
Աստուածարնակ այս տաճարի,
Յերկնահանգէտ տանս պանծալի,
Զոր Սանահին վերաձայնի,
Տկար ոգւով ի պանդըխտի,
Ծաւեալ անձամբ ողորմելի,
Փարատելոյ ճարակ չլինի
Ու ոչ մխիթար ի սոյն վշտի։



113—40

Արդ, զամենայն վիշտս և զաղէտս կոծելիս ո՞ կարէ պատմել
զերկնահանդէտ սուրբ աթոռիս, զպատուելին յիշխանաց և ի հոգևկիր
191բ արանց, թափուր և զատարկ ի փարթամ արդասեաց։ ‖ Եւ մեք ի սոյն
ժամանակի եկեալ բնակեցաք ընդ հովանեաւ Աստուածածնիս, երկու եղբարքս հարազատ՝ Յով[ա]նն[է]ս և Ղազար սոսկանուն վարդապետս, այլ միեղէն եղբայրութեամբ։ Եւ այս ոչ ըստ արժանեաց մերոց, այլ թէ ինքն կամեցաւ, զի աւտար և հ[եռի] էաք յայսմ գաւառէ, և կոչեցաք յետին սպասաւոր այս գերահռչակ սուրբ ուխտիս։ Եւ սկսաք շարագրել զերկուս կտակս ի մի ափեակ, այլ և յուսացաք ի զօրացուցիչն Քրիստոս. և գրեցաք շնորհիւ տեառն զսա անջինջ յիշատակ նախնեաց և հոգւոց մերոց։ Արդ, գրեալ եղև սա ի ժամանակս թագաւորութեան Գէորգեա որդւոյ Բագրատ յաղթող և հզօր արքայի, զի յաւուրս սորա եղև խորին խաղաղութիւն կողմանն Վրաց, ձեռամբ Յովաննիսի և Յոհաննիսի սիրասնունդ աշակերտի։ Արդ, աղաչեմք զձեզ հեզարար սիրով, զի որք աւգտիք ի սմանէ յիշեցէք ի գերամաքուր յաղօթս ձեր զծերողքս և զայլ աշխատակից եղբարքս՝ զԿիրակոս, և զՄաքէոս, և զվերոյգրեալքդ, և կողկողագին զմօք ծնաւղիկն մեր, որ է սպասաւոր այս միաբանութեանս....*

* Բագրատ Զ.-ի որդի Վրաց Գեորգի Է. թագավորը գահակալել է 1394—1407 թվականներին։ 1399 թվականին Լանկ-Թեմուրն արշավեց Վրաստան և «զամենայն արս կոտորեաց...զկանայս և զաղայս գերի խաղացոյց՝ անթիւս և անհամարս» (տես № 784 հիշատակարանը)։ Գեորգիի թագավորության հաջորդ տարիները նույնպես արհավիրքների ու անընդհատ պատերազմների տարիներ էին։ Սույն հիշատակարանում, սակայն, գրված է, թէ՝ «յաւուրս սորա (Գէորգեայ) եղև խորին խաղաղութիւն կողմանն Վրաց», ուստի և այն գրված պետք է լինի 1399 թվականից առաջ։ Վերոհիշյալ նկատառումներով հիշատակարանը տեղադրում ենք 1399-ի թվաշարքում, համարելով այդ տարեթիվը նրա գրության վերջին հնարավոր ժամանակագրական եզր։



**ՊԽԹ** **1400**

## 784.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Երևան 5435*

*Գրիչ՝* Գրիգոր [Խլաթեցի]
*վայր՝* ի վանս Սուխարայ, որ այժմ ասի Խառաքաստ

ա

469բ *...Զոր և ի նոյն շնորհաց հողոյն լըդեալ երից երանեալ և երջանիկ վարդապետն սուրբն Սարգիս՝ վարտեսուչն և անուանի իմաստասէրն Հայոց և խորին փիլիսոփայն, որ վասն խոնարհութեան հոգոյն և լուսաւոր մտացն տեսութեան շնորհընկալ եղև յաստուածային հոգոյն։ Եւ զի Սեաւ Սարգիս անուանեցաւ, վասն զի մթնատես էր և խրթընահայեաց։ Սա մեկնեաց զԿաթողիկեայս... ի թըւականիս Հայոց ի ՋՃ. և Գ. (1154) ամին, և յայտնեաց զիմաստս հոգոյն, որ ի նոսա, և գանձ անկապուտ եթող եկեղեցւոյ սրբոյ և ուսումնասէր մանկանց նորին։ Եւ է սա ի պարծանս պայծառութեան Արևելեան տանս Թորգոմեան, այլ և յամենայն ազգս, որպէս և ասի բան, եթէ ի լսել զզարմանալի համբաւ սորայս գեղեցկութեան... ազգն Ֆռանկաց, փաղփաղակի, անյապաղ փութով տարեալ թարգմանութեամբ ի Հռոմ...։*

470բ *...Այսմ երևելի և մեծ ճոխութեանս ցանկացաւ այր ոմն կուսակրօն քահանայ և մանկամիտ աբեղայ զՍտեփաննոս անուն, լերդահատոր եղբայր հոգևոր մատնադեղն և փրցնագիր ըղծողիս Գրիգորի, յիշելով զասացեալն ի մարգարէէն, թէ՝ երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և յիշատակ բաբի յԵրուսաղէմ։ Վասն որոյ ստացաւ զսա, եռափափագ սրտիւ ետ գրել զսա մեղսամած գրչիս։ Եւ ես՝ հարկեալ ի սիրոյ և յեռատարփ փափագանաց նորա առ ցանկալի մատեանս և ըղձալի կտակարանս, մոռացա զտակարութիւն մարմնոյս և զաղկաղկութիւն եղկելի անձինս տառապելոյ։ Եւ ձեռն ի գործ արկեալ գրեցի ըստ իմում կարի, թէև կատարելոյն անախորժելի, և յանկ հանեալ, յաւարտ սորին ժամանեալ հասի, ողորմութեամբ աստուածամաւր տիրածին կուսի, ի դառն և ի չար ժամանակիս, յորում զաւրացեալ է ի վերայ աշխարհիս կարապետ Նեռինն և արբանեակն սատանայի, մարդն անաւրէնութեան, որդին կորըստեան և ժառանգն անդնդային դժոխոց, սլեղծն անագորոյն և անխնամ արեանարբուն* Լանկ-Թամուրն *կոչեցեալ, որ վասն ծովացեալ մեղաց մերոց անբարկանալին աստուած բարկացաւ և բարեբարութիւն նորին մեղ ի բարկութիւն դարձաւ, քաղցրն դառնացաւ, և բարին յեղափոխեցաւ։ Եւ տյս Ր.*

*(3) անգամ չարն այն և գաւազանն խրատու սաստիցն աստուծոյ ելեալ ի վերայ աշխարհիս պատուհասիւ։ Նախ և առաջին ելանել աստուածասաստ չարին եղև ի ՊԼԴ. (1385) ամին Թըւականիս մերում, որ ել ի վերայ Պարսից աշխարհին և աւերեալ գերեաց զ*Պարսկաստան *և* Հայաստան *ամս Բ. (2), մինչ ի յաւարտ ՊԼԶ. (1387) ամին, յորում եղեն շատ աւերք, արեանց բազմաց հեղումն, և սովք, և սասանութիւնք անթիւք։*

*Եւ դարձեալ ի ՊԽԲ. (1393) ամին ել և էջ ի* Բաբելոն, *և աւերեալ զամենայն* Ասորեստան, *ել յերկիրս* Հայոց*՝ կրկին աւերմամբ, և գերելով անց ընդ* Պահակն Հոնաց, *և գնաց բարկութեամբ ի վերայ*
471ա *արքային* Հոնաց, *և անդ ես ‖ արար շատ աւեր և գերութիւն, և յաղթեաց*
*նոցա։ Բայց և ինքն տկարացաւ զաւրաւքն ի սովոյ, և անթիւք պակասեցան ի զաւրաց զօրողին այնմիկ։ Եւ անտի դարձաւ ընդ* Դուռն Ալանաց, *և գնաց յաշխարհն իւր։ Եւ դարձեալ զաւրացաւ. սպայիւք և հեծելաւք, և խաղաց, գնաց ի* Հնդուստան, *և անտի ես բազում աւարաւ և փղաւք դարձաւ մեծաւ յաղթութեամբ ի տեղի իւր՝ ի* Սամարղանդ:

*Եւ մինչ սակաւ մի խաղաղացեալ երկիր փոքր ինչ ոգի առին մարդիկ ի սաստից ցասմանէ չարին, արքայն վրաց* Գորգի *անարի յաղթութիւն ինչ արարեալ... եկն ի դղեակն* Երընջակոյ *ի գաւառին* Նախջաւանայ, *և եհան անտի զորդի* Ահմատ *ղանին՝ զսուլտան* Տահիրն, *որ էր հսարեալ ի զաւրացն* Թամուր-Լանկին *յՊԼԵ. (1386) ամէն մինչ ի ՊԽԸ. (1399) ամ Թըւականին, զամս ԺԳ. (13)։*

*Վասն որոյ մըրմռեալ գազանութեամբ կատաղին այն* Լանկ-Թամուրն, *և դարձեալ ել երրորդ անգամ անթիւ զաւրաւք բազմութեամբ, առաւել քան զառաջինն և զերկրորդն։*

*Եւ եկն, եկաց ի վերայ աշխարհին* Վրաց *յաշնանային յեղանակէն, մինչև յամառնայինն, ամիսս Է. (7), աւելի և ոչ պակաս։ Եւ առեալ բազում ամրոցս, և սպան զբազումս ի նոցանէ, մինչ գրեթէ զամենայն արս կոտորեաց, զորոց զկանայս և զտղայս գերի խաղացոյց, անթիւս և անհամարս։ Որոց տեսողքն աղիողորմ աղետիցն, ոչ միայն քրիստոնէից այլ և յայլասեռից, որք տեսանէին զայնպիսի անմեղ զաւրինսն մատնեալ ի ձեռս արիւնախանձ և մարդադէմ գազանացն, որ ոչ կանանցն խըղճային, և ոչ տղայոցն ողորմէին, ոչ ի հիւանդսն գթային, և ոչ ի կարիսն նայէին, ոչ ի յալեացն հարկէին, և ոչ ի մատաղ մանկունսն խնայէին, այլ անողորմաբար հետիոտս տանէին՝ մերկ, բոկոտն և գլուխ ի բաց։ Եւ որք ոչ կարէին գնալ՝ քարամբք սպանանէին և անցեալ գնային։ Եւ որք զայնպիսի կըսկիծսն տեսանէին, ասէին լերանց, թէ՝ անկերուք ի վերայ մեր, և բլրոցն, թէ՝ ծածկեցէք զմեզ։*
471բ *Արդ, յոյս դառն աւուրքս և յահագին ժամանակիս յանկ ելեալ*
*կատարեցաւ սա, ի Թըւականիս մերում ՊԽԹ. (1400) ամի, ի հայրապետութեան տեառն* Դաւթի *նահանգիս* Ախթամարայ, *ի գաւառիս* Քաջբերունեաց *ի վանս* Սուխարայ, *որ այժմ ասի* Խառաքաստայ *և այլաբանի խեռաբարձայ, Ընդ հովանեաւ հոյակապ և հռչակաւոր,*

բարձրաբերձ և պայծառաշէն, ըղմբեթարդ և հրաշագեղ, դեղեցկայարմար սուրբ տաճարիս, որոյ անուն ամենամաքուր և սուրբ աստուածածին կուսին Մարիամու կառուցեալ կայ՝ Ցառաջնորդութիւն սուրբ ուխտիս հեզահոդի և բարի հոգւոյ տէր Զաքէոսի եպիսկոպոսի՝ շինարարի և բարեսիրի, առ. ոտս երջանիկ և բարեբարւոյ, հանդարտ և հըմտավարժ վարդապետի, ամենագով և հանճարեղ, գիտնական, իմաստնական, և արդիւնական, մեծանուն Սարգիս բաբունապետի։

Արդ, գրեցաւ սա ի վերոյասացեալ սուրբ ուխտին Խառաքաստայ: Եւ վասն վրդովմանց աւուրցս, որ զաւրքն Լանկ-Թամուրին պատերազմաց և աւերման աղագաւ անցեալ խաղացին ի տունն Գամրաց: Եւ մեր խրտեալ ի կայանից մերոց իջաք ի յԱորնշիկ, և անդ զաղարեալ կեցաք աւուրս, և Է. (7) տեարիկ անդէն գրեցաւ, և կատարեալ վճարեցաւ լուսազարդ դիրքս ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի և Անանիայի։

Ո՜վ մանկունք սուրբ եկեղեցւոյ, որք հանդիպիք սմա և օգտիք ի սմանէ, յիշեցէք ի Քրիստոս սրտի մտաւք և բարի կամաւք զվերոյասացեալ ստացող սուրբ գրոցս զՍտեփաննոս աբեղայ և զծող սորին զԳրիգոր՝ խնդրող բանի։ Նայ և զԽաչատուր սրբակրաւն քահանայ, որ վասն քարտիս հող տարաւ և ի գին թղթիս մասնաւորեցաւ, Ուրանցի Խաչատուր երէցն ի Բաղիշոյ, այլ և զՅակոբ սարկաւագ կոկիչ քարտիս, և զՍարգիս քահանայ կազմող գրոցս յիշեցէք ի բարի, յիշողն յիշեալ եղիցի, և որ զաստուած-ողորմին ասէ, աստուած նմա ողորմի։ Մանաւանդ սիրելի եղբաւրն մեր Յովանէս աբեղայի, որ լըբջմիա սրտիւ և յաւժար կամաւք զաւրինակն շնորհեաց։ Ցաշնան, հոռոտից ամիսն ի ԺԳ. (13), յաւուր յիսնակամտին սկսեալ եղև գիրքս, և յամոան հրոտիցն Լ. (30) աւարտեցաւ, յաւուր հինգշաբաթոջ, աթառոց Աստուածածնին։

Ծաղկող՝ Ներսէս

Բ

453ա Զներսէս պատանի՝ նըկարաւղ խորանիս՝ եղբայր վարպետ Յովանէսին, յիշեցէք։

Ստացող՝ Սանէլ

Գ

125ա Նաև զստացող գրոցս՝ զայրն բարեմիտ, զմիակեցն Սանէլ և զքոյրն իւր զՃիրանց, որ զողջախոհութեամբ անցուցին զկեանս իւրեանց ճնացեալ յամուսնոց, և այլ ոչ զուղեցան ըստ նմանութեան տատրակի, կացին, ճնացին շատ ամաւք չէն տուն ունելով իւրեանց աշխատութեամբն, և բազում արդիւնս առնէին կարաւտելոց և չքաւորաց՝ ողորմութեամբ և փոխտըւութեամբ աղքատաց և տնանկաց, վանաց և ուխտականաց, կարգաւորաց և շրջականաց՝ զամենեցուն կարիս կատարեալ և զկարաւտութիւնս լըցուցեալ, աստուած իւր ամե-

* Սանվելը ձեռագրի երկրորդ ստացողն է, հնագրական տվյալներով նրա հիշատակարանը գրված պետք է լինի 1400-ից մի քանի տարի միայն հետո։

նառատ ողորմութեամբն քաղցր աչաւք հայի ի Սանահին և ի Տիրանցն, և ի ծնօղս նոցին՝ ի Կիրակոսն և յՌստղնայն, և ի զաւակս նոցին, ամէն։

## 785.

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 346

Գրիչ՝ Յովանէս
վայր՝ Հիզան քաղաք

ա

555բ ...Եւ արդ, ես՝ յետինս ի մանկունս եկեղեցւոյ և տրուպս ամենայն վարդապետաց՝ Յովհաննէս վարդապետ,* ցանկացող եղէ աստուածախաւս և եդեմական ծաղկաւէտ բուրաստանիս՝ աստուածաշնչի, և ետու գրել զսայ յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղացն իմոց...։

Եւ արդ, գրեցաւ սուրբ աւետարանս այս ձեռամբ մեղապարտ Յովանիսի անիմաստ և տխմար գրչի, յ[ը]նտիր և ի ստոյգ աւրինակէ՝ կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ, ի մեծ թուիս Հայկազեան սեռի ՊԽԹ. (1400), ի դաւառիս և ի քաղաքիս Հիզան կոչեցեալ, ընդ հովանեաւ սրբուհւոյ Աստուածածնին, և սրբոյն Սարգսի զաւրավարի, և Գէորգեայ սակաւ հեռի, ի հայրապետութեան Կիլիկեցւոց տեառն Կարապետի, և ի մերոյ հայրապետութեան Ուշտունեաց, որ յԱղթա[մա]ր կղզի՝ տեառն Դաւթի՝ եղբաւրն տեառն Զաքարիայի, զի նման հնոյն մարգարէի վկայական արեամբ փոխի յանաւրինաց։

Որոգայթի բռնեցաւ յանկարծակի,
Բնաւ չկայր մեզ յուր մարմնի,
Այլ անպատճառ նայ քարկոծի,
Բորբոքեցաւ հուր յՈստանի,
Բարկացաւ տէր նորս Իսրայէլի,
Այլ տէր աստուած ամենայնի
Զաւէր Դաւիթ պահէ անսա[սա՛ն]ելի։
Եւ թագաւոր մեզ չերևի,
Որ ի մատեանս գծագրէի.
Թամուր-Լանգին Սըմըրղնդի,
Որ կարծրացաւ նայ յաշխարհի,
Արձանացեալ դէմ ամէնի։
Սլանաց Դունն բացուի,
Այն, որ փակեալ էր վաղեմի,
556ա Թամուրն եկեալ չար ‖ ուժգնակի
Եւ գկծեցոյց զամէն հոգի։
Եկեալ եհաս ի Վրաստանի,
Էառ բազում առ և գերի։
Աշխարհս ամէն կայ յերերի,
Որպէս ճնճղուկ, որ ի ճղի։

* 1ը և 441ը էջերում կան այս Հովհաննես վարդապետի նկարները։

Արդ, յայսմ նեղ ժամանակի,
Որ ընաւ դառն է և լալի,
Եղև լրումն այսմ տարի,
Աստուածաշունչ սուրբ մատենի։
Որք հանդիպիք դուք այս գանձի,
Ու կամ աւգտիք սիրով սրտի,
Միշտ յիշեսջիք անձանձրալի
Զմեծն Յովհաննէս րաբունի
Եւ զծնաւղսն իւր ըստ մարմնի...։*

Ընդ նոսին և զիս՝ զանպիտան և զախմար դրիչ զՅովանէս սուտանուն քահանայ, և զհայրն իմ զՄկրտիչ քահանայ, որ տարաժամ փոխեցաւ ի Քրիստոս և սուգ անմխիթար եթող ինձ..., յիշեսջիք զնայ, զի յոյժ բարի էր ընութեամբ, և ես վասն այնորիկ զտկար անձս զատեցի, զի սայ և մեզ յիշատակ լիցի, և զմայրն իմ, և զեղբարսն իմ՝ զՋաֆարայ քահանայ և զՆերսէս սարկաւագ, և զերախտաւոր մեծ մամն մեր զԷլխաթունն, որ սնոյց զմեզ, և զամենայն արեան մերձաւորսն մեր, և զԳրիգոր քահանայ, և Ստեփաննոս քահանայ՝ որդի նորին։ Յիշեցէք ի Քրիստոս զբարեսէր և զշնորհազարդ տանուտէրն՝ զպարոն Ամիրմուքն, և զծնողսն իւր, և զծաղկազարդ որդիսն իւր՝ զԱստուածատուրն, և զպարոն Ումէտն, և զկենակիցն իւր զՄօրիմելէքն, որ զթուղթս շնորհեցին գրոցս, եղիցի գիրքս այս յիշատակ սոցին. և ընկալցի զսայ տէր, որպէս պատարագ անուշ, ընդ Աբրահացն և ընդ Սահակեանցն։ Յիշեցէք ի Քրիստոս և զԴանիէլ իմաստայեղց տանուտէրն, որ զվարձ գրոցս, զոր ի նայ յանձնեալ, որ անպակաս ի մեզ հասոյց։ Այլ և սխալանաց և խոշորութեան գրիս անմեղադիր լերուք, զի յոյժ տառապանաւք գրեցի զսայ, և ձանձրանայի յոյժ, և զսխալանսն ի սմայ եղբայրաբար ուղղեցէք։ Եւ աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, տացէ ձեզ՝ յիշողացդ և մեզ՝ յիշեցելոցս առհասարակ զկեանսն անվախճան և զփառսն անպատում, ամէն։

Բ

489բ ...Գրեցաւ սա ի թուականութեանս հայոց ՊԼԹ. (1390), ի յանապատս Նորշինայ, որ մանուկ սուրբ Նշան կոչեն, ընդ հովանեաւ սորին և այլ սուրբ եկեղեցեացս. ի վայելումն սայ եղիցի Յովանէս րաբունապետին...։**

Գ

Աւաղ ժամանակս ասեմ՝ զտատանելս յալեկոծութիւն, ի յանպարտելի ազգէն յանողորմ ի Թամուր-Լանգէն:

* Ծնողների անվանց լրացման համար դատարկ է թողնված մեկ և կես տող։
** Սույն հիշատակագրության տվյալով ձեռագրի ընդօրինակությունն սկսված է եղել դեռևս 1390 թվականին, բայց ավարտվել է 10 տարի անց՝ 1400 թվականին (տես՝ էջ 630)։

*Աստէն եմք մեղօք խրտտեալ,*
*Անպատում ահիւ փախուցեալ,*
*Ա՜յ, վա՜յ, ընդդէմ անդէնին կապեալ,*
*Ուր անշէջ հուրըն կայ ի վառ,*
*Վասն աստուծոյ դինահար։*
*Ձիս յիշ[եցէք] ի Քրիստոս։**

## 786.

## ՄԱՇՏՈՑ

**Երեւան 6827**

*Գրիչ՝* Սիմէոն
*վայր՝* Տաթև

363բ ...*Արդ, ցանկացաւղ եղեալ աստուածային ե հոգեկեցոյց մատե-*
*նիս ոմն անուն* Երեմիա *և սարկաւագ, ըստ բանի մարգարէին, որ*
*ասէ՝ երանի, որ ունի զաւակ ի Սիոն, փափագեցաւ տենչմամբ սրտին*
*և ստացաւ իւր յիշատակ յաւիտենից ե առիթ փրկութեան հոգւոյ։*
364ա *Արդ, գրեցաւ աստուածային զանձարանս, ‖ որ կոչի Մաշտոց և*
*Քահանայաթաղ՝ ամենայն որպիսութեամբ, ի սուրբ ուխտս և յաթոռս*
Եւստաթէի *սուրբ առաքելոյս, ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս,*
*և սուրբ Լուսաւորչիս, և այլ միահամուռ սրբութեանցս զումարելոց*
*աստ, իշխանութեան տեղոյս ի բարի շառաւիղէ ծնեցեալ պարոն*
Սմպատի *և* Բուրդելի, *զոր աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ*
*զոսսա, ի յառաջնորդութեան ուխտիս քաջ և տրի հսկողի, բարունաց*
*պետի և ընդդիմի հարկանողի, ուղղափառութեամբ և ամենայն ճար-*
*տասանութեամբ, հերձուածողացն գնդի* [Գրիգորի Տաթևացւոյ], *ի զառն*
*և յանձուկ ժամանակիս ե անիշխանութեան աշխարհիս Հայոց, որում*
*ի մեծ վտանգի կային քրիստոնեայք ի ձեռն այլազգաց, որ կոչին*
364բ *Ջղաղայք։ ‖ Ձեռամբ մեղսամակարթ և զառածեալ անաւրէնութեամբ և*
*փցուն ե անարժան գրչի* Սիմէոնի *ե պիտակ աշակերտի, որ զանունս*
*միայն ունիմ, և ամենայն բարի գործոց թերի։*
*Արդ, յերեսս անկեալ աղաչեմք զամենեսեան ըղձմամբ սրտիս,*
*որք հանդիպիք սմա յաւրինակելով կամ կարդալով կամ տեսութեամբ,*
*յիշեցէք զստացաւղ սորին՝ զվերասացեալ մանուկն* զԵրեմիա, *ե զա-*
*մենայն արեան մերձաւորսն իւր ի Քրիստոս աստուած յոյսն մեր,*
*նախ՝ զպապն* Ստեփաննոս, *և զհայր նորին* Սարգիս, *և զմայրն* Ծիանխաթուն, *և զեղբարսն՝* զՅովանէս *և* զՄկրտիչ *և* զԹովմա, *և աստուած*
*զձեզ յիշէ։ Նաև զիս՝ զանարժանս, արժանի առնել միոյ տէր ողորմի,*
365ա *թերևս թողութիւն զտից բազում յանցանաց իմոց, և խոշոր ‖ ութեան*
*գրոյս անմեղադիր լերուք, զի այսչափ էր կար մեր, զոր և աստուած*
*վայելել տացէ մինչև ի խորին ծերութիւնն, զի ստացաւ զսա ի հա-*
*լալ արդեանց իւրոց բազում աշխատութեամբ և սիրով։ Գրեցաւ ի*
*թուաբերութեանս հայոց ՊԽԹ. (1400)...։*

---

* *Գրված է 198ա էջի ներքին լուսանցքում։*

## 737.

## ԱՄՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 84

Գրիչ՝ Յոհան Ապարանեցի

ա

44ա *Փառք... որ ետ կարողութիւն տկարութեանս իմո հասանել յայսմ նվագ ի փառՏ Քրիստոսի, ի թվականիս Հայկազեանս տոմարիս ՊԽԹ. (1400), և ի թվին մարդեղութեան տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ՌԳԾ. (1400), և ի թագաւորութեանն* Թամուրին *և որդո նորա* Միրանշային: *Յայսմ ամի շարժեցան զօրքն* Շամա, *որդի* Իլդրումին *ի վերայ* Թամուրին:

բ

121ա *Զնուաստս և զապիկար գրիչս՝ զփրա* Յոհանես Ապարանեցի, *յիշեա Քրիստոս աստուած ի քո սուրբ արքայութիւնդ։*

## 788.

## ՀԱՐՑՄԱՆՑ ԳԻՐՔ ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑԻՈՑ

Երևան 3106

Գրիչ՝ Յովան
վայր՝ Տաթև.

491ա | | | *առ դուրս* | | | *սուրբ Նշանացս և աստուածաընակ [տաճար]ացս սուրբ առաքելոյս* Եւստաթէի, *և սուրբ Աստուածած[նի, և Լ]ուսաւորչին մերոյ Գրիգորի, առ ոտս վերոյ[ասացեալ վարդա]պետին իմոյ* [Գրիգորի]. *որ սնուցանէ մտերմաբար զմանկունս [եկ]եղեցոյ կրկին ուսմամբ* | | | *տեսականաւն և գործ[նակ]անաւն, ձեռամբ բազմամեղ անձին* Յովաննու *պ[իտ]ակ աշակերտի, ի վայելումն մանկանց Սիոնի։*

*Արդ, [ով] դասք լուսերամից, որք հանդիպիք ի սմա տեսմամբ, կ[ամ գ]աղափարելով, և կամ ընթերցմամբ, յիշեցէք... յաղաւթս ձեր զանարժան գծողս,* | | | *զծնողսն իմ, և զվարպետն իմ՝* Սարգիս *կուսակրաւն աբեղայ, և սխալանացն անմեղադիր լերուք...։*

*Արդ, գրեցաւ սա ի թվիս ՊԽԹ. (1400)։**

---

* *Պահպանվել է հիշատակարանի միայն վերջին մասը, չափազանց մաշված ու դժվար ընթեռնելի վիճակում։*

# ԺԳ. ԴԱՐԻ

## ԸՆԹՎԱԿԱՆ

# ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

ՀԻՇԱՏԱԿԱԳԻՐՆԵՐԻ ԱՆՎԱՆՑ
ԱՅԲՈՒԲԵՆԱԿԱՆ ՑԱՆԿԵՐԱՄԲ

## 789.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*Վենետ. 170 Սարգ. Ցուց. Ա, էջ 714*

*Ծաղկող՝* Անանիա
*վայր՝* Մելիտինոյ վանք

295ա *Ես՝* Անանիա *գծող, որ ծաղկեցի զսուրբ աւետարանս ի դուռն ի սուրբ Լուսաւորիչն ի* Մելիտինոյ *վանքս, և առաջին ծաղիկս այս էր, որ ուսայ իր վարդապետէն իմոյ տէր* Սիմէոնին*՝ արհիեպիսկոպոսի այս ուխտիս։ Մի մեղադրէք, զի առաջին ուսումս և ծաղիկս այս էր, և ծաղկագրերն աւետարանին գրողն հաներ [էր], ես զքովի ծաղկնին եմ հանել, ով եղբարք, զի կարս մեր այս էր։*

## 790.

### ՀԱՄԱՌՕՏ ԺՈՂՈՎՈՒՄՆ ՄԵԿՆՈՒԹԵԱՆ ԽՍԱՑԵԱՑ, ԳԷՈՐԳԱՅ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

*Երևան 1209*

*Գրիչ՝* Անդրէաս

218ա *Աւարտեցաւ քրիստոսահիմն մարգարէաշէն այս տառ՝ սուրբ և աստուածային երգարանս ի վախճանն քրիստոսարնակ և աստուածային զանձուցն վերակացու և ուղղափառ տեսուչին* Վարդան *վարդապետի, զի աստուած վախճան տացէ նմա աղօթիւք. Նաև զանպիտան ծառայս՝ զ*Անդրէաս *գրիչ յիշեսջիք ի տէր, և զծնողսն իմ։ Թողութիւն զրիս և սխալութիւն անմեղադիր [լերուք], զի շուտ ու աղեկ ոչ լինի, խիստ շտապեցուցին, ու շտապով մեր կարս այս էր։*

## 791.

### ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ ԵՒ ԱՅԼՆ

*Երևան 824*

*Գրիչ՝* Անկուկ
*վայր՝* Երուսաղէմ

ա

257ր *Գրեցաւ հոգեշահ բանքս ի յաստուածակոխ քաղաքս* Երուսաղէմ*, ընդ հովան[ե]աւ սուրբ Հրեշտակապետացս, ձեռամբ անարժան և մեղսաթաթախ անձին, որ* Անկուկ* *վերակոչիմ։ Ցերես անկեալ աղաչեմ զամենեսին, որք վայելէք կամ աւգտիք ի սմանէ, յիշեցէք զող | | |*

* *Հ. Աճառյանի «Հայոց անձնանունների բառարան»-ում չկա այս անունը։*

Բ

35բ Յիշեսցուք զստացող ճառիս՝ զԳրիգոր միա[յնակեց], և զծնօղս իւր ի Քրիստոս, և զողորմելի Անկուկս և զիմսն ամենայն, և աստուած զձեզ յիշէ, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

792.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 6142

Գրիչ՝ Աստուածատուր

154բ Արդ, ես՝ Քուրդ Մուղդաղիս ետու գրել զաստուածաշունչ ճառերս || ի սուրբ վարդապետէն Գրիգորէ ասացեալ, յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց, և ի վայելումն զաւակաց իմոց՝ Յովանեսի և Մլքոյ, զոր տէր աստուած անփորձ պահեսցէ զնոստ։ Որք հանդիպիք սմայ կարդալով, յիշեցէք ի բարի զմեզ, և աստուած ողորմի ամենայն քրիստոնէից և զ[յ]իշողացն, որ զմեզ յիշեն, և ինձ մեղաւորիս Աստուածատրոյ, ամէն։

793.

## ՅԱՂԱԳՍ ԲՆՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՅ ՆԵՄԵՍԻՈՍԻ ԵՄԵՍԱՑԻՈՅ

Երևան 417

Գրիչ՝ Բասիլ

143բ Ընդ նոսին և զյետնեալս ի բոլոր բարեաց գործառնութեանց, զսորին դծող՝ զԲասիլ, որ բազում ամօք ծառայեցի զրոյն և ի հոգին ոչ ժամանեցի, աղաչեմ յիշել ի տէր, ո՜ բարեմիտ պատահողք սմին, նաև զաշակերտն իմ զԳրիգոր, և որ առատն է յամենայնի յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի։ Եւս և զծնողսն իմ և զեղբարսն ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ աղաչեմ յիշել ի մաքրափայլ յաղաւթս, զի և դուք յիշեալ լիջիք յողորմութիւն աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

794.

## ՄԱՇՏՈՑ

Երևան 4652

Գրիչ՝ Գրիգոր

ա

Փառս տացուք հաւր անեղին...*
178ա Այլ և պատմեմ ձեզ բան բարի,
Որ յայս կտակս է գովելի,
Մաշթոց անուն վերայձայնի,
Գործ Մեսրոպայ վարդապետի,
Որ է հայր Հայաստանի

* Բաց ենք թողնում 13 անհեաաքրքիր տող։

Յետ սուրբ Գրիգոր Լուսաւորչին:
Այլ և զգիր Հայաստանին
Նմա շնորհեաց աստուած հոգին։
Նմանեցաւ ոա Մովսէսին,
'Ի աստուածագիծ սուրբ տախտակին
Գրեալ մատամբն աստուածային,
Ի յաւրինակ ծնընդեան կուսին,
Որ վառեցաւ ի մորենին,
Նման կուսին աստուածածնին։
Նոյնպէս և սայ առեալ զհոգին
Տեսիլ ետես յարթուն ժամին,
Զի ձեռն ելեալ բարձր ի վիմին
Մատամբն գրել յերկս պալին։
Զոր նշանեալ սուրբ Մեսրովպին,
178բ Զգիր Հայկազան՝ ըստ ‖ Մովսէսին,
Երեր պաշար մերում լեզուին,
Որ բերէ զհեճ մերում բառին։
Ապա առեալ թարքմանեցին
Սուրբն Սահակ ընդ Մեսրովպին։
Յայնժամ սկսեալ սահմանեցին,
Զգիրս աւրինացն, որ ի կարգին։
Զոր և պատմէ գիրք առակին,
Զլուսեղէն սիւնքն եւթնեքին։
Նախնի պսակն է առաջին,
Որ յաստուծոյ առաջն առին,
Զի զԱղամայն և զԵւային,
Մինչև ի սպառ ի շար եղին։
Նախ զխաչաւրհնեայն առաջք եղին
Եւ զկնունք[ր]ն հետ նորին.
Թէպէտ պսակն է առաջին,
Այլ հետ կնքոյն ի կարգ եղին,
Քանզի խաչին հաստատի
Զինչ աւրինաց բան կայ յերկրի,
Եւ այլ ամէնն, որ կարգի,
Գրեալ ի գիրս Մաշթոցի,
Ընդրեալ ձեռամբն Մեսրովպի
Եւ Սահակայ սուրբ Պարթևի:*
Բարեխաւսութեամբ սոցին
Յիշեալ զհոգի տէր Պետրոսին,
179ա Յանդոյն ի ‖ դասս աջակողմին
Զիւր ծնաւղին՝ զտէր Թաւրոսին,

* Գրիչը թյուրիմացության մեջ է. «Մաշտոց» անվամբ մեզ հասած ծիսարանը կազմավորվել է ոչ թե Ե. դարում՝ Մեսրոպ Մաշտոցի և Սահակի, այլ Թ. դարում՝ Մաշտոց կաթողիկոսի (893—898) կողմից։

Եւ զՅակոբոս եղբայր նորին,
Եւ զտէր Թաւրոս եղ[բ]աւրորդին։

Բ

31ա Ցիշեսցի ի Քրիստոս
Եպիսկոպոս տէր Պետրոս,
Եւ քահանայ հայրն իւր Թորոս,
Եղբայրն իւր Յակոբոս,
Ու եղբաւրորդեակն նորա Թորոս:

Գ

67ա Զաէր Գրիգոր զծողս յիշեա, ով եղբայր։

795.

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱԿԱՑՆ ՍՈՂՈՄՈՆԻ
ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երևան 1143

Գրիչ՝ Գր[իգոր]

147բ Զաստուածասէր և զբարեպաշտ իշխանն՝ զպարոն Կոստանտին՝ զստացող գրոյս յիշեցէք ի Քրիստոս, և զիս՝ զմեղաւոր գրիչս Գր[իգոր] աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ։

796.

ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ

Երևան 5097 (տես նաև 1589 թ.)

Գրիչ՝ Գրիգոր

271ա Ո՜վ տէր Մարգարէ, սպասաւոր բանի և ճաշակող քաղցր կերակրո, յորժամ զմայլիս բանաւոր կերակրովս, յիշեա զքաղցեալ հոգի և զսովամահ լեալ Գրիգոր անարժան[ս]։

797.

Մ Ա Շ Տ Ո Ց

Երևան 826

Գրիչ՝ Գրիգոր

ա

379բ Փառք... որ ետ կարողութիւն մեղսամած և տարտամ և անարժան անձինս Գրիգորի հասանել յաւարտ այսմ աստուածաշունչ կտակիս, որ կոչի Մաշտոց | | | *

Բ

Քրիստոս աստուած | | | և զպարոն Յովանէսն, որ յայսմ վայրի անոյշ ըմպելոյք ուրախացոյց զմեզ ի զարիպութեանս, տէր աստուած

* Վերջին թերթեր են ընկել. հիշատակարանը մնում է թերի։

զհոգի նոցա ուրախացուցէ, անտրտում ուրախութեամբ աստուածա-
յին և անմահական բաժակաւն, ամէն։*

798.

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 531

Գրիչ՝ Գրիգոր Սամսոնեցի

Ա

45բ Գրեցաւ սակաւ սատարս այս ձեռամբ յիմարի միոյ, զոր Գրի-
գոր ճանաչչի, մականուն Սամսոնեցի, հրա[մա]նաւ Մկրտչի, աղաչեմ
յիշել ի տէր։

Բ

158ա Զսատացող սորին զըրբազան քահանա զՄկրտիչ յիշեսջիք ի տէր.
և զիս՝ զանպիտան ծրօղս, մի մոռանայք, և խոշորութեանս թողու-
թիւն շնորհեցէք, զի կարս այս չափ էր, և աստուած ձեզ թողու զյան-
ցանս ձեր։

Ստացող և գրիչ՝ Մկրտիչ

Գ

72ա Քրիստոս, ողորմեա Խաչատրոյ և Արզուին, ամէն, ընդ նմին և
անպէտ Մկրտչի սպա[սա]ւորի բանի, որ զգիրքս ծրեցի։

Դ

86ա ԶՄկրտիչ՝ զոքնունակս մեղաց և ծառա չարաչար տերանց, ախ-
տիցն ասեմ, որ Քրիստոսիւ ազատեցայ և տէր ի վերա կարգեցայ, և
զի ոչ ազուշացայ՝ անկայ յիշխանութենէն, մերկացա զպատմուճան
տէրութեանն։ Տեսեալ զայս ծառաիցն, ախտիցն ասեմ, թէ վատթա-
րեցայ, խզեցին զլուծ ծառայութեանն, ի ձեռն առե[ա]լ զաւազան տի-
րական՝ հարին զիս, և եղին զփայտ ծառայութեան առանց փոխանա-
կի ի պարանոցի իմում, ծառայքն և սոսկականքն տիրեցին զարձեալ
ինձ։ Աւա՜ղ թշնամանացս, այս ինձ՝ քան զգեհեննն ահագին, այս՝ քան
զտարտարոսն քստմնելի, քան ի ժանիս մատնել որդանն անքունի,
86բ արտասուաց արժանի։ Ո՞վ ոք տեսեալ թագաւոր ի շղթայ պ[նդեա՜լ] ||
և խարազանաւք ի ծառաից արեամբ ներկեալ, և ոչ արտասուեսցէ,
որ ծառաեցի գրոյն և ոչ հոգոյն, ի տառսն աշխատեցայ և իմաստիցն
ոչ | | | պատրաստեցայ, մանիցն և ոլորից բանիցն ցաւեցա և զու-
մարեցի զաւրս ուշի իմոյ և ասացելոցն ի գործ խլացայ։ Եւ ցրեցան
զաւրք իմաստիցս, և թէ զինչ առնեմ, ոչ գիտեմ, կարաւտիմ աւգնա-
կանութեան սրբոցս, | | | որ ի գիրս աշխատեցայ, և բարի ի յիշատակ
ձեզ, թերևս և այց արասցէ ինձ բարերարն և զընդդէմն ասացելոցս
շնորհեսցէ։

---

* Գրված է 298բ—299ա էջերի ներքին լուսանցքներում։

799.

ԱՒԵՏԱՐԱՆ .

Վասպ. 126, Հալ. Ցուց. էջ 267—268 (Վանի Արարուց եկեղեցի)

Գրիչ՝ Դաւիթ

Քրիստոս աստուած, քո սուրբ աւետարանչիս բարեխաւսութեամբ, ողորմեայ ստացողի սուրբ աւետարանիս, բարեսէր և հաւատարիմ կնոջն՝ Մրջանին և ամենայն արեան մերձաւորաց իւրոց, և տուր սոցայ վարձս ընդ արդարոցն և պսակեցելոցն ի քէն, և թող զմեղս սոցայ՝ զկամայ և զակամայ...։

Այլ և զիս, զանարժան դրչակս զԴաւիթս, աղաչեմ յիշել ի Քրիստոս Յիսուս և թողութիւն խնդրել բազում մեղաց իմոց, զի ոչ ունիմ հանդիստ յայլեաց ծովացեալ մեղաց իմոց, և աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

800.

Գ Ա՞ՆՁԱՐԱՆ

Երևան 8251

Գրիչ՝ Երեմիա

232ա Ընդ աչաւք բղքեղ տեսողին
Ձեռաւք բղկողդ շաւշափողին,
ԶԵրեմիա մեղաւք մեռեալ ողիս,
Կենդանացոյ տէր իմ բանի,
Որ քո տեսլեան արժան լինի,
Լրսել բղձայն քո բարբառի՝
Եկայք աւրհնեալ յամենայնի,
Յաջայկողմեանըդ քում դասի,
Տէր ողորմեա, տէր ողորմեա մեղաւորիս,
տէր ողորմեա։

801.

ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 2695

Գրիչ՝ Երեմիայ

48բ Տէր աստուած, բարեխաւսութեամբ քո սուրբ մկրտչին և կարապետին [Յովհաննու] ողորմեա մեղուցեալ դծողի սորա Երեմիայի և ծնողաց իւրոց և ամէն ասացողացն։

802.

ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեննա. 106. Սարգ. Ցուց. Ա. էջ 473—474

Հետ ստացող՝ Սիրիանոս

5բ Զվերջին ստացող սուրբ աւետարանիս զՍիրիանոս, որ ստացաւ դհրամանս աստուածային պատուիրանի, և ի պայծառութիւն սրբոյ հրաշազարդ և երկնանման տաճարաց ի վերջացեալ ե. յանբարի դառ[ն]

ժամանակիս, որում խառնակութիւն եղև ազգին նետողաց, որ քրիստոնէից հարկապահանջութիւնն հանապազ կու յաւելցնեն և կու նեղեն։ Զի կատարեցաւ առ մեզ մարգարէութիւնն հոգելից մարգարէին Եսայեա, որ ասէ, թէ ամենայն անձն ի ցաւ և ամենայն սիրտ ի տրտմութիւն։ Արդ, ի յայսմ թշուառելի և ի դառն ժամանակիս աստուածասէր և հաւատարիմ և հեզահոգի Եփրիանոս, ցանկացող եղեալ սուրբ աւետարանիս՝ խնդիր ելեալ յամենայն սրտէ, և տէր կատարեաց զփափագս սրտի իւրոյ...։

Արդ, աղաչեմ զամենեսեան զլուսամնունդ մանկունսդ նոր Սիովնի յիշել ի տէր զստացող սուրբ աւետարանիս՝ զԵփրիանոսն, և զհայրն իւր՝ զՎարդանն, և զմայրն իւր՝ զՓոփխիկն, և զպապն՝ զԱստուածատուրն, և զմամն՝ զԱւագտիկինն, և զքոյրն՝ զԵմինն, և զայր իւր՝ զՀոգեղ, և զորդին իւր՝ զԴաւիթն, զհաւրեղբայրն իւր՝ զՅոհանն, և զկինն իւր՝ զԳուէարն, և զորդին՝ զՄուրատն, և զթոռն իւր՝ զՍիմէոնն, և զմայրն իւր՝ զՂիմաքն, և զայլ ամենայն մերձաւորսն իւր՝ զկենդանիս և զհանգուցեալս ի Քրիստոս....

## 803.

## ՄԱՍՈՒՆՔ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Երևան 354

Գրիչ՝ Զաքար[իա]

19բ Աւրհնեալ է հայրն անծին և անըսկզբան,
Որդին միածին և անճառական,
Յաւիտենական, անուր, անթուական,
Անպարագրական, ոչ անջատական,
Ի ծոցս ծնաւղէն փթթել միական.
Եւ միշտ փառարանեմք զհոգին վեհական,
Անձինք յատկական ընութիւնք միական,
Փառք յաւիտեան։
Զմեղապարտ գծողս Զաք[արիա] աղաչեմ
յիշել ի Քրիստոս։

## 804.

## ՀԱՐԱՆՑ ՎԱՆՔ

Երևան 851

Գրիչ՝ Թադէոս

231ա Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք, կամ հանդիպիք, կամ աւրինակէք, զյոգնամեղ գծողս սորա՝ զԹադէոս սուտանուն կրաւնաւորս յիշեցէք ի Քրիստոս, և զեղբայրս իմ զԱնտոն* ի տէր, և որք յիշէքդ յիշեալ լիջիք և դուք ի տէր, ամէն։

* Անունը քերված է, «Անտոն» ընթերցումը առաջարկում ենք կասկածանքով։

## 805.

### Ճ Ա Շ Ո Ց

**Երևան 0501**

Գրիչ՝ Թովմա

ա

21բ *Քրիստոս՝ որդի աստուծոյ...զարգարեայ զհոգի ստացողի գրոցս զՄատթէոսին, և զՅոհաննէս արհեպիսկոպոսին, և ծնողաց նորին՝ զՍիմէոն քահանային և Մերէքին, և զհոգիս սոցա դասաւորեա ընդ սուրբըս յաջակողմեան քում դասուն, ամէն։*

Բ

12ա *Ո՛վ, ընթերցողք, զեղկելի գրիչս Թովմա յիշեցէք ի Քրիստոս, և աստուած [զձեզ] յիշեսցէ։*

## 806.

### Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ

**Երևան 5349**

Գրիչ՝ Թորոս

87բ *Տէր աստուած, քո սուրբ ծննդեամբ և մաքուր և անբիծ մաւրդ բարեխաւսութեամբ, ողորմեա ստացողի սուրբ տառիս Սիոն քահանայի*, նաև բազմամեղ գրչիս՝ Թորոսի, և կարդացողացդ և լսողացդ, առհասարակ, ողորմեսցի Քրիստոս, և որ զամէն ասէ։***

## 807.

### Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

**Բրիտ. Թնգ. 7 (Add. 19,730), Կոնիբ. Ցուց. էջ 10**

Գրիչ՝ Թորոս Վահկա/ցի
վայր՝ Կիլիկիա

ա

18ա *...Յիշեցէք զպատուական քահանայ Կոստա[նդին] և զամենայն զարմն իւր՝ զայժմուս և զանցեալսն, առաջի զենլոյն Յիսուսի Քրիստոսի, և զիս՝ զանպիտան գրիչս զԹորոս, և զամենայն հաւատացեալս, ամէն։*

Բ

45ա *ԶԹորոս Վահկա/ցի նուաստ քահանայ աղաչեմ յիշել...։*

---

* Այլ ձեռագրով տողամիջում ավելացված է. «և Սարգիս քահանային»։

** Շարունակությամբ, այլ ձեռագրով, ավելացված է. «Նայ և բազմամեղ Անդրիաս ուստանուն կրաւնաւորի ողորմեսցի Քրիստոս աստուած իւր սուրբ ծննդեամբն, ամէն»։

808.

**ԹՈՒՂԹՔ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ**

*Երևան 5147*

Գրիչ՝ Թորոս Վանկա/ցի
Վայր՝ Կիլիկիա

116ա ...Արդ, ով երկասէր ընթերցող այսմ տառի,
Վարդապետիս եռամեծի
Եւ մեր նախնեացն հռիտորի,
Առաջելոյս մեր Քրիստոսի,
Սա ի ցեղէն Բենիամի[նի],
Վերաձայնեալ փող. Տարսոնի,
Գամաղ[ի]էլին աշակերտի,
Որում Պաւղոս անուն կոչի,
Որոյ հայցեմ միշտ բաղձալի
Յիշել ստ[ացա]ւղ այսմ տառի,
Որոյ անուն Գրիգոր կոչի,
Որ գաւառաւ է Մլուճցի.
Վասն`սիրոյն մեր Յիսուսի,
Խնդրել թողութիւն իմո անձին
Եւ հաւրըն իմո Յոհանէսի,
Եւ ընթանուք իմո ազգի,
Նաև հարազատիցն իմ երկուակի՝
Ստեփանոսի և Կոստանդնի,
Եւ մաւրն իմո մեծատոհմի,
Որում անուն Յաւդեր կոչի,
Եւ ամենայն մերձակայի,
Արեանառու իմո զարմի,
Փոխեցելոյն ի մէնջ յաստի
Եւ որ ծըփին յայսմըն ծովի.
Ընդ նմին և զըգըրիչս Վանկա/ցի,
Որում անուն Թորոս կոչի,
Անտես չառնել յիշատակի,
Զի ուղղութեան ես փոյթ աչրի,
Որ յիմ ջանուց իսկի չթողի,
Ապա թէ ոք յիշէ զմեզ ի բարի,
Հարիւրապատիկ նա ընկալցի, ամէն.

809.

**ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ**

*Երևան 148 (տես նաև 1667 թ.)*

Կազմող՝ Մատթէոս
Վայր՝ Լեռնակողմ անապատ

107ա Ո՜վ, զտերեաթափս և զանպտուղս ի բարեաց, զանարժան, զեղկելի և զմեղաւոր հողս՝ զկազմող սորա զՄատթէոս, և զծնաւղսն իմ,

և զեղբայրս իմ, և զամենայն ազգաինսն յիշեսջիք առ Քրիստոս, և աստուած յիշաւղացս և յիշելոցս ողորմեսցի, ամէն։

Արդ, կամեցաւ սա յանապատիս, որ կոչի Լեռնակոզմ, ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս և սուրբ Ծնընդիս, և յիշաւ.զքն աւրհնին յաստուծոյ, ամէն։*

## 810.

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

Վենետ. 35, Սարգ. Ցուց. Ա, էջ 210

Ստացող՝ Մաքիւն
վայր՝ Կիլիկիա

61ա Զբարեպաշտ և զքրիստոսասէր տիկնաց տիկինն Մաքիւն** և աստուածասէր ծնաւղսն իւր յիշեսջիք աղաւթիւք ի Քրիստոս։

## 11.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 715 (տես նաև 1645 թ.)

Ա. մասի գրիչ՝ Մարտիրոս
վայր՝ Սուրբ Պաւղոս անապատ

ա

79բ Ո՜վ ընթերցողք և լսողք, որք կերակրիք յաստուածային սեղանոյս հոգով և մարմնով, յիշեցէք զեղկելի ոգիս՝ զՄարտիրոս սուտանուն քահանայի՝ զգծողի սորա և մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ ինձ և ծնողաց իմոց և ամենայն հաւատացելոց և իմոցն ամենայնի։

Եւս առաւել աղաչեմ յիշել ի տէր զպատուական հայրն իմ և զուսուցիչն զՍտեփանոս պատուելի քահանայն և զՄարկոս սրբասնեալ աբեղայն, որ զաւրինակս երետ. և որ յիշէ յիշեալ լիցի ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

բ

84բ Ո՜վ, ուրբ ընթերցողք, յիշեցէք զգրող սորայ ի Քրիստոս։ Արդ, գրեցօ սա և կատարեցաւ յաւուր մեծի ծնընդեան տեառն մերոյ ի յանապատիս, որ կոչի սուրբ Պաւղոս, ընդ հովանեաւ սրբոյն Գրիգորի և այլ կենսակիր սուրբ Նշանացս, ձեռամբ մեղապարտ և անարժան գրչի Մարտիրոսի, և ոչ վասն արծաթոյ կամ այլ ինչից, այլ ի յիշատակ հոգոյ իմոյ և իմ[ոցն] ամենայնի. որում լինա սա յիշեցէ ի Քրիստոս զմեզ, և աստուած ձեզ՝ յիշողացդ ողորմեսցի, ամէն։

---

* Ձեռագրի ընդօրինակության տարեթիվը հայտնի չէ. գրչից պահպանվել է միայն մի փոքրիկ հիշատակագրություն, ուր ասված է. «Յիշեսջիք զամենայնմեղ և սուտանունս Յոհ[աննէս]» (էջ 107ա)։

* Հավանաբար Գաղտին Մարաջախաի կին և Կոստանդին Բ-ի մայր Մաքիունն է, որ, ըստ Ալիշանի, մահացել է 1352-ին, ուստի ձեռագիրը գրված պետք է լինի մինչև այդ թվականը։

Բ. մասի գրիչ՝ Յովանէս

Գ

105բ Զմեղաւք մեռեալ գր[իչս] Յովանէս և զհանգուցեալ եղբայրն իմ զՍտ[եփաննոս] աբեղայ ե զլոյժ գիտնականն աղաչեմ յիշել։

Դ

150ա Զմեղուցեալ Յոհանէս գրիչս ե զսուտ քահանայս յիշեցէք ի Քրիստոս, որ զայս երկու տետրս գրեցի։ Նա և զԹումայ աբեղայն և զամբիծ աղաւնին, զհեզն ե զհանդարտն՝ ստացող սուրբ տառիս յիշեցէք...։

Նայ և զծնօղքն զԳօիք քահանայն, ե. զմայրն, և զեղբայր՝ զԱռաքել, և զքորքն՝ զՆզիրայ և զՀռեփսեմ, և զամենայն արեան մերձաւորքն յիշեցէք ի Քրիստոս։

## 812.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑԻՈՑ

Երևան 1195

Գրիչ՝ Մարտիրոս

177ա Զմարտիրոս տրուպ վարդապետ աղաչեմ յիշել ի տէր, ո՛ ընթերցողք։

268բ Զմարտիրոս բանի սպասաւոր յիշեա ի տէր, և աստուած զյիշողդ յիշէ ի բարին։

## 813.

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Երևան 760

Գրիչ՝ Մեսր[ոպ]

62ա Ո՛վ սուրբ ընթերցողք, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք ի տէր զեղկելի ծրողս զՄեսր[ոպ] և զիմ վարպ[ետն]՝ զԿոստա[նդին] անյաղթ գրիչ։

## 814.

## ՑԱՂԱԳՍ ՏՆՕՐԻՆՈՒԹԵԱՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԹՈՎՄԱՅԻ ԱՔՈՒԻՆԱՑԻՈՑ

Երևան 3038

Գրիչ՝ Մխիթարիչ

ա

185ա Ո՛վ բարի ընթերցօղ, յիշեա զնուաստ զփրա Մխիթարիչս՝ զծրող սմին, որ առաջին եմ ի մեղաւորացն և յետին ի կարգաւորացն։

Նորոգող՝ Նիկողոս

բ

105բ Ցորժամ կարդայք, ո՛վ եղբայրք, և բան օգտիք, զվերջի նորոգող գրչիս՝ զմեղուցեալ Նիկողոսն յիշեցէք։

## 815.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՒՂԻԿԷԻՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՑ

*Երևան 4694*

*Գրիչ՝* Մկրտիչ

349բ *Քրիստոս աստուած, ողորմեա և թող զ[յ]անցանս ստացողի սուրբ գրոցս* Յովանէս *կրաւնաւորին, և* Արուսխաթունին, *և ինձ՝ մեղապարտ գրչի* Մկրտչի, *և ամենայն արեան մերձաւորացն, և աշխատողացն, և լաւ պահողացն, ամէն, և քեզ փառք, աստուածւ*

## 816.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔՆՐԱԿԱՆԱԿԱՆ ԳՐՈՑ

*Երևան 5919 (տես նաև 1616 թ.)*

*Գրիչ՝* Մկրտիչ

ա

221ա *...Զթարմատար գրիչ՝ զ*Մկըրտիչ *զպիր, և զծնաւղսն իմ, և զեղբայրսն իմ յիշեա ի մաքրափայլ յաղաւթս քո, ով սուրբ վարդապետ, և Քրիստոս քեզ պարգևեսցէ զիւր արքայութիւնն, որում փառք յաւիտեանս, ամէնւ*

*Ստացող՝* Մկըրտիչ

բ

221ա *Ես՝* Մկըրտիչ *սպասաւոր բանի, ցանկացե[ա]լ այսմ գրոց, ետու գրել զսա ի վայելումն ցանգացողաց իմաստից և ի յիշատակ հոգոյ իմոյ և ծնաւղաց իմոց...ւ*

## 817.

### ՀԱՄԱՌՕՏ ՀԱՒԱՔՈՒՄՆ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԱԼԲԵՐՏՈՍԻ ՄԵԾԻ

*Երևան 86 (տես նաև 1644 թ.)*

*Գրիչ՝* Յեսու

129ա *Զտառապեալ ոգի ֆրա* Յեսու, *բիւր քանքարոյ պարտական, և վերջին ի կարգս միաբանողաց, և զառաջինս մեղաւորաց, որ սակաւ աշխատեցայ ի գիրքս յայս, յաղօթս յիշեցէք և սխալանացն անմեղադիր լերուք, զի բազում անգամ տկարացայ ի գրելն զսա, նաև զմայրն իմ այբի՝* Մամբր *կոչեցեալ, որ բազում աշխատեցաւ ի վերայ իմ, յաղօթս յիշեցէքւ**

---

** Ալբերտոսի այս աշխատությունը թարգմանվել է 1344 թ. Պետրոս Արագոնացու և Հակոբ Քռնեցու կողմից, ուստի ձեռագիրը, հետու գրչի հիշատակարանի հետ միասին, գրված կարող է լինել 1344 թվից ոչ շուտ։*

## 818.

### ԳԻՐՔ ՍԱՀՄԱՆԱՑ ԴԱՒԹԻ ԱՆՅԱՂԹԻ

*Երևան 1745*

Գրիչ՝ Յոհաննէս

114բ *...Զտէր Ստեփաննոս՝ զստացաւղ գրոցս մի մոռանայք, որք վայելէք և արդիւնիք ի սմանէ, զի վասն այդմ յուսոյ էր ստացեալ զսա ընդ նմին և զանպիտանս Յոհաննէս, զի բազում աշխատեցայ ի յուղղութիւն սոցա։*

## 819.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԳՐՈՑ ԵՒ ՄԵԿՆՈՒԹԵԱՆՑ

*Երևան 50*

Գրիչ՝ Յոհան Եզնկայեցի

301ա *Զաշխատող սորին Յոհան սպասաւոր բանի Եզնկայեցի յիշեսջիք ի Քրիստոս, ո՛վ հմտագոյն ընթերցողք, և զբիս մի մեղադրէք, զի շտապով գրեցի, ի զառն զաղափարաց ստուղեալ։ Վասն որոյ ընկալ, և զգծողս յիշեա, և զթերին ուղղեա։**

## 820.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 40*

Գրիչ՝ Յոհաննէս

ա

11բ *Որք աւգտիք ի հոգեկեցոյց բանիցս, թողութիւն մեղաց խնդրեցէք ի Քրիստոսէ անարժան և բիւր բիւր մեղաց պարտականիս՝ գրչիս Յոհաննէսի, և ծնողաց իմոց, և եղբարցն...։***

---

* Հայագիտության մեջ շփոթված են իրար երկու համանուն մատենագրեր. ա) Հովհ. Երզնկացի, բանաստեղծ, քարոզիչ ու գիտնական, որն աշակերտել է Վարդան Արևելցուն (մահ. 1269 թ.), 1280-ական թ.թ. որպես ճանաչված ու հեղինակավոր քարոզիչ շրջել է Կիլիկիայի քաղաքներում, ապա եղել է Թբիլիսիում։ Մահացել ու թաղվել է Հաղբատի վանքում. և բ) Հովհ. Երզնկացի, գրիչ և մատենագիր. սովորել է Գլաձորյան համալսարանում, Եսայի Նչեցու մոտ. աշակերտական տարիներում և հետագայում ընդօրինակել է մի շարք ձեռագրեր (1302, 1306, 1318, 1321 թ.թ.)։ Ընդունել է կաթոլիկություն և 1321 թ. թարգմանել է Թովմա Աքվինացու «Ցաղագս ութն խորհրդոյ եկեղեցւոյ» աշխատությունը (տես՝ հիշատակարան № 218)։ Թաղված պետք է լինի Երզնկա քաղաքում, Ս. Նշան եկեղեցում («Թորոս Աղբար», Բ, 50)։ Սույն ձեռագրի գրիչը, հավանաբար երկրորդ Հովհան Երզնկացին է. ուստի և ձեռագիրը պետք է ընդօրինակված լինի, մերձավորապես, ԺԴ. դարի առաջին քառորդում։

** Գրչի կողմից գրված համանման բովանդակությամբ հիշատակարաններ կան նաև 25բ, 54ա և այլ էջերում։ Ամենայն հավանականությամբ ձեռագիրն արտագրված է Ականց անապատում։

Ստացող՝ Կոստանդին

բ

Յիշեցէք ի բարին Քրիստոս զԿոստ[անդին] և զամենայն ազգայինսն՝ զկենդան[իսն և զհանգու]ցեալսն...։*

գ

Խնդրեցէք ի Քրիստոսէ զթողութիւն ստացաւղի գրոցս Կոստ[անդընին և ծնաւղաց իւրոց, ամէն։**

դ

Ողորմեսցի Քրիստոս ստացաւղի գրոցս Կոստանդնին և ծնաւղաց իւրոց, ամէն. և Թաւրոս դպրին։***

## 821.

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8897

Ծաղկող՝ Յովանէս

Արդ, աղաչեմ զձեզ, ով աստուածասէր հոգիք, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զծաղկող սուրբ աւետարանիս՝ Յովանէս սուտանուն կրօնաւոր, և լի բերանով և բոլոր հաւատով ասացէք, թէ աստուած թողնու զնորա յանցանսն և զծնողաց | | | և որ ասիցէ և ոչ յապաղէ՝ զհատուցումն ի Քրիստոսէ առցէ, ամէն։ Եւ անմեղադիր լերուք խոշորութեան և անարհեստութեան ծաղկիս, զի անվարպետ էի, այլ զայս չափս ի շնորհացն աստուծոյ արարի։ Եւ է ի Սսիցի աւրինակէ գիրս և ծաղիկս, բայց ցանկն | | |****

## 822.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Երևան 4084

Գրիչ՝ Յովհաննէս

ա

139բ Զմեղուցեալս Յովաննէս յիշեցէք, աղաչեմ։

Հետ. ստացող՝ Ատոմ

բ

182բ Ես Ատոմս գ[ն]եցի զՆարեկեցիս ի խալալ արդ[ե]անց իմոց, յիշատակ ինձ և ծնողաց իմոց՝ Ումեկին, և մօ[ր]ն իմ՝ Քնարին, և եղ[բ]աւր իմոց Սարգիսին: Ովք կարդայք կամ աօրինակէք յիշեցէք առ Քրիստոս, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

---

* Գրված է 3բ—4ա էջերի ներքին լուսանցքներում։

** Գրված է 11բ—12ա էջերի ներքին լուսանցքներում։

*** Գրված է 53բ—54ա էջերի ներքին լուսանցքներում։ Այսպիսի հիշատակագրություններ ստացողի մասին պահպանվել են նաև մի շարք այլ էջերում (217ա, 177բ—178ա և այլն)։

**** Հիշատակագրությունը գրված է 4բ—5ա էջերի (խորաններ) ներքին լուսանցքներում։ Վերջում մի քանի բառ. մաշվել և դարձել է անվերծանելի։

### 823.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՆԻՒԹԵՐԻ

*Երևան 5305 (տես նաև 1798 թ.)*

Գրիչ՝ Յոհաննէս Մոքիկ

210ա ... *Քրիստոս՝ որդին աստուծոյ, իւր սուրբ ծնօղին բարեխօսութեամբ, զգիրքս գրողիս ի վայելս տացէ, պարագայ ամօք և երկար ժամանակօք, ինձ՝* Մոքիկ Յոհաննիսիս, *ամէն...։*

### 824.

### ՄԱՇՏՈՑ

*Երևան 4054*

Գրիչ՝ Յովաննէս

ա

73ա *Զստացող Մաշտոցիս՝ զտէր* Վարդան *արքեպիսկոպոսն յիշեցէք ի Քրիստոս։*

բ

78ա *Տէր Յիսուս, ողորմեա ստացողի գրոցս* Վարդան *եպիսկոպոսին, և ծնողաց նորին՝* Յովանէսին *և* Բանուշին, *և* Հերապետին, *և ծնաւղաց նորին՝* Ստեփանոսին, *և* Յովանէս *մեղապարտ գրչի։*

գ

108ա *Շնորհաբաշխ հոգիդ՝ սուրբ աստուած ճշմարիտ, շնորհեա ծառայիս քո տէր* Վարդան *արքեպիսկոպոսի, ստացողի սուրբ տառիս, զասիլ յաջակողմեան քում դասուդ, ընդ ԻԴ. (24) քահանայապետսն, մանաւանդ և զծնաւղսն իւր՝* զՅովանէս *և* զԲանուշայն, *և զամենայն արեան մերձաւորսն իւր, ամէն։*

### 825.

### ՄԱՐԳԱՐԷՈՒԹԻՒՆ ԵՍԱՅԵԱՅ

*Երևան 3480*

Գրիչ՝ Յովանէս

3ա *Զվշտացեալ և զեղկելի գր[իչս]* Յովանէս *աղաչեմ յիշել ի տէր Յիսուս, և զծնաւղսն իմ հանգուցեալ, և զեղբայրն իմ* զՍտ[եփանոս]՝ *զամենիմաստ գիտողն հին և նոր կտակարանաց, զի [նա] հանգեաւ ի տէր և ինձ տրտմութիւն մնաց...։*

### 826.

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4820 (տես նաև 1511 և 1588 թ.թ.)*

*Կազմող և ծաղկող՝* Ովանէս

ա

252ա *Զկազմող և զծաղկող սուրբ աւետարանիս* զՈվանէս *և զծնողսն իմ և զամենեսեան, որք աշխատեալ են ի սմայ, ով աստուածասէր*

*ընթերցողք, որք հանդիպիք այսմ լուսաւորչիս, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, և զուք յիշեալ լիջիք ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որ է աւրհնեալ։**

**բ**

158բ *Արդ, ով եղբարք, զստացող սորա՝ զՍարգիս քահանա, և զծնողսն իւր, և զաւակսն, և զկենակիցն, և զամենայն արեան մերձաւորքն յիշեսջիք ի սուրբ և յարժանաւոր յաղօթս ձեր, և մեղաց թողութիւն հայցեցէք յանցանաց սոցա, և զուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

**գ**

159ա *Ես՝ Սարգիս քահանա, ծառա աստուծոյ, ստացա զսուրբ աւետ[արանս] ի հալալ արդեանցն իմոց, յիշատակ ինձ և ամուսնոյն իմս Թամարի և Բ. որդեկացն իմոց՝ Ստեփաննոս քահանայի և Յովաննեսի։***

## 827.

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

*Երևան 1875 (տես նաև 1804 թ.)*

*Գրիչ՝* Յովանէս

**ա**

163ա *Յիշեցէք ի Քրիստոս զստացող աստուածաշունչ տառիս, և զծնողսն իւր, և զիս՝ զՅովանէս գրիչ, և զհայրն իմ՝ զՄկրտիչ քահանայ։*

**բ**

198ա *Զստացող աստուածաշունչ տառիս զՅոհաննէս կրաւնաւորն և զծնողսն իւր յիշեցէք ի Քրիստոս, որք օգտիք ի սմանէ, աղաչեմ վասն Քրիստոսի, և զիս՝ զգրիչս, և զհայրն իմ՝ զՄկրտիչ քահանայ. վա զիս։*

**գ**

136ա *... Աղաչեմ զձեզ, ուղիղ սրտիւ աստուած-ողորմի ասացէք ինձ՝ գրչիս, և հօրն իմ* Մկրտիչ *քահանայի, որ կարճեցաւ ի ժամանակի, անմխիթար սուգ եդ մեր սրտի...։*

## 828.

## ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՐՈՑ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

*Երևան 1331 (տես նաև 1591 թ.)*

*Գրիչ՝* Յովսէփ

133ա *Ո՜վ դասք լուսերամից, յիշեցէք ի սուրբ աղաւթս ձեր զՅովհան-*

---

* *Նկարիչը մեծ արվեստի տեր, ինքնատիպ նկարների, խորանների ու լուսանցազարդերի հեղինակ է։*

** *Գրված է Ղուկաս ավետարանչի նկարի տակ։ Նման հիշատակություններ կան նաև մյուս ավետարանիչների նկարներին կից (էջ 15բ, 103բ, 253բ)։*

Ես քահանայ և զծնողսն իւր ըստ մարմնոյ։ Եւ ըզպարտականս տեառն իմոյ ըւր քանքարոյ զՅովսէփ ծրողս, և զուք յիշե[ա]լ լիջիք։*

## 829.

## ՏՕՆԱԳԱՏՃԱՌ

Երևան 644

Գրիչ՝ Ներսէս

ա

71բ Քրիստոս աստուած, քո սուրբ Նախավկային՝ սրբոյն Ստեփանոսի բազմաչարչար նահատակութեամբն ողորմեա գրողի սորա Ներսէս անարժան կր[աւնաւոր]ի, և թող զմեղս իւր, և որ զմեզ յիշէք միով տէր-ողորմայիւ, յիշեալ լիջիք ի սոսկալի ատենին ննջեցելօք ձերովք, և Քրիստոսի փառք յաւիտ[եան]։

բ

101ա Զմեզօր հոգս՝ զՆերսէս գրիչ, աղաչեմ յիշել ի տէր, և թողութիւն հայցել ի Քրիստոսէ ծովացեալ մեղաց իմոց, և տէր զձերն ոչ յիշեսցէ։**

Հետ. ստացող՝ Մարտիրոս

գ

3բ Յոր և զմեզ զամենեսին, հանդերձ ստացողի սորին Մարտիրոս քահանայիւ, արժանաւորս արասցէ ընդ սրբոց առաքելոցն և մարգարէիցն ժառանգաւոր լինել հանդերձելոց բարեացն, ի Քրիստոս Յիսուս՝ ի տէր մեր, որ է աւրհնեալ ընդ հօր և ընդ սուրբ հոգւոյն, այժմ և [յաւիտեան]։

## 830.

## ՃԱՇՈՑ

Երևան 940

Ստացող և ծաղկող՝ Ներսէս

ա

5բ Յերեսս անկեալ աղաչեմ, մեղաւոր հոգս Ներսէս՝ զառաջնորդ անապատիս, որ ի տարին մէկ աւր զիս յիշատակէք ի պատարագն, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

բ

6ա Ներսէս՝ ծաղկաւղ խորանիս՝ ծառայ Քրիստոսի աստուծոյ։

* Նման հիշատակագրություններ պահպանվել են նաև ձեռագրի 66բ, 82ա, 92բ, 110բ և այլ էջերում։ Հիմնական հիշատակարանից պահպանվել է միայն անհետաքրքիր սկզբնավորությունը («փառքի» մասը)։

** Ձեռագիրն ուշագրավ է գրչի կողմից օգտագործված բազմաթիվ նշանագիր-հապավումներով։

գ

95ա Զսատացաւղ և զաշխատաւղ լուսազարդ մատենիս զՆերսէս յիշեսջիք, և զծնողսն իմ, և զքեռին իմ Յովաննէս, և աստուած զձեզ յիշէ։

### 831.

### ՄԱՇՏՈՑ ԵՒ ԺԱՄԱԳԻՐՔ

Երևան 8544

Հեռ. ստացող՝ Ներսէս
վայր՝ Կիլիկիա

24ա ... Արդ, ես՝ Նուաստ Հեթում քահանայ, յոյժ ցանկացաւղ եղէ եռափափաք սրտիւ այսմ տառի, և ետու դրել զսա ի վայելումն անձին իմոյ և յիշատակ հոգոյ իմոյ, և ծնաւղաց իմոց, և ամենայն զարմից, և ազգականաց իմոց. և կալեալ զժամանակ աւուրց իմոց զգիրքս զայս ուրախութեամբ վայելեցի։ Եւ յետ իմոյ ելանելս յաշխարհէս և փոխելով աստի առ հայր, ետու զգիրքս զայս Ներսէսի քահանայի, և ոչ ոք ունի իշխանութիւն զտուրս զայս առնել ի դմանէ։ Եւ արդ, ես՝ Ներսէս քահանայ, ընգալա պարգևս զայս, միշտ և հա-
24բ նապազ յիշելով յաղաւթս և յեկեղեցիս և ի պատարագս զ || առաջին ստացաւղ՝ զՀեթում քահանայ՝ ըզշնորհաւզ տառիս, և զվերջին ժառանգաւղ սորա զՆերսէս քահանայ։

Արդ, ոչ էր կատարեալ գիրքս այս ամենայն աւանդութեամբ հաւատոյ, այլ էր թերի և պակաս, և ետու գրել զՄկրտութիւնն և զԹաղումն, զՀադորդ Տալոյն և զԵւղարերից աւետարաններն, և եդև կատարեալ գիրքս այս ըստ այս չափոյս, զոր և է։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք այսմ տառի, յիշեսջիք ի սուրբ և ի մաքրափայլ աղաւթստ ձեր զՆերսէս քահանայ, և զհայրն իմ Կոստանդին քահանայ, և զմայրն իմ զՇահընդուխտ, և զորդին իմ զՊաղտին, և զդստերքն իմ՝ զՋապլունն և զՄարունն, և զամենայն ազգայինս, և աստուած յիշողացս և յիշելոցս առհասարակ ողորմեսցի, և նմա փ[առք]։

Ո՜վ պատուական քահանայ Ներսէս, ընկալ զսակաւ գծիկս և յիշեա զՀ[ե]թ[ում] գպրիկս։ Գիրքս կապած էր, մի մեղադր[էք]։

### 832.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ ԵՒ ՆԱԽԵՐԳԱՆԱՑ

Երևան 2262

Գրիչ՝ Շմաւոն

ա

62բ Զանբաժս ի բարեաց և զշտեմարանս չարեաց, եղկելի ոգիս Շմաւոնս, աղաչեմ յիշել ի տէր իմ Յիսուս, ո՜վ պարծանաց պարոն իմ, և սիրով հոգոյն յեռեալ ի սիրտ իմ, և ճշմարտութեամբ նորին

*տրամակացեալ հոգի իմ։ Մաքրամիտ և սրբասնեալ տէր իմ* Յովանէս, *գքո* տառապեալ ոգիս* Շմաւոնս *յիշ[եա]. ընդ նմին և* զՄանուէլ *եղբայրս։*

*Գրիչ՝* Էմանուէլ

Բ

167բ *Զնուաստ և զչնչին, զտրուպ և զփանաքի գրիչ* Էմանուէլ *յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր**, ով սուրբ բանի սպասաւորք, և աստուած զձեզ յիշէ յիւր արքայութիւնն, եղիցի, եղիցի։ Իմ պարոն տէր* Յովանէս՝ *մաքրամիտ և սրբասնեալ քահանա, խոշորութեանն անմեղադիր լեր, զի ձմեռն էր և տունս ցուրտ։*

*Գրիչ՝* Դանիէլ

Գ

284բ *Ով ընթերցող սուրբ ճառիս, վասն սրոյ յերես անկեալ աղաչեմ զիս՝ զբաղմաշարօ զզազրալի և զմեղօք դատապարտեալ գերիս՝* զԴանիէլ *անարժան գրիչ, ասացէք ի խորոց սրտէ, թէ տէր աստուած ողորմեա նորա։****

## 833.

## ՄԱՍՈՒՆՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ

*Երևան 156*

*Գրիչ՝* Պետրոս

296բ *Զթափուրս ի գործոց բարեաց* զՊետրոս *զսուտանուն կրաւնաւոր, որ և գծող գրոյս ըստ կարի, ով մակացուք, յիշման արժանի արասջիք յամենառատ շնորհսն* Յիսուսի։

## 834.

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԵԱՆ ՍՏԵՓԱՆՈՍԻ ՍԻՒՆԵՑԻՈՅ

*Երևան 1851*

*Գրիչ՝* Պետրոս

69բ *Զմեղաւք դատապարտեալ ծառայս ամենայն ծառաից աստուծոյ* զՊետրոս *քահանայ, և զծնաւղսն իւր, և զեղբարսն, և զորեան մերձաւորսն, նաև զսրբասէր պատանեակն* զԱստուածատուր՝ *զստացող գրոցս, աղաչեմ յիշել ի տէր, ով գասք քահանայից։*****

* *Այս բառի «քո»-ն այնպես տարօրինակ է գրված, որ կասկածում ենք սույն («գքո») ընթերցման վրա։*

** *«Ձեր» բառը կրկնված է։*

*** *Դանիել գրչին են պատկանում ձեռագրի 249—284 թերթերը, սա Նախորդ գրիչների կրտսեր ժամանակակիցն է։*

**** *Համանման բովանդակությամբ հիշատակարաններ պահպանվել են նաև ձեռագրի 200բ և 236ա էջերում։*

## 835.

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՑԼԵՒԱՑԼ ՄԱՍԱՆՑ ՀՆՈՑ ԿՏԱԿԱՐԱՆԻ

*Երևան 7336*

Գրիչ՝ Սարգիս

68բ *Ո՜վ, պատուականք և աստուածասէրք քահանայք և վարդապետք, մանկունք լուսոյ և զարդք եկեղեցոյ, որք այժմ ընթեռնոյք զգիրս և զգիրքս ի մէջ եկեղեցոյ. ի տեղոջն զաստուած ի ձայն աւրհնելոյ, անգ և յիշեսջիք ի տէր զորբասնեալ, զպատուական և զառաքինի անձն ի տէր՝ զԿիրակոս վարդապետն, որ և ետ գրել զբանս և զգիրքս զայսոսիկ և աստուած զձեզ [յիշէ]։ Ընդ նմին և զքեռին մեր զՑ…նածես վարդապետ, որ անկաւ ի ձեռս անաւրինացն և սրով վախճանեցաւ ի Քրիստոս, և աստուած թողցէ զյանցանս իւր, ամէն։*

*Եւ այժմ զքուրորդին իւր՝ զՍարգիսս, որ գրեցի տխմարաբար զգիրս և զբանքս զայսոսիկ, և Քրիստոս տացէ ի ս[ի]րտս լսողացս մերոց և լսողացդ, այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

## 836.

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ՔԱՐՈԶԻՑ

*Երևան 725*

Գրիչ՝ Սարգիս

300ա *Զբիւր քանքարաց պարտականս և զտառապեալս՝ զմեղաւք լցեալ գծաւղակս՝ զՍարգիս սուտանուն քահանա, աղաչեմ յիշե[ս]ջիք ի սուրբ յաղօթս ձեր։*

## 837.

### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՑ

*Երևան՝ 1567*

Գրիչ՝ Սարգիս

85ա *Տէր Յիսուս, բազումողորմ մաղթանաւք և բարեխաւսութեամբ սրբոյդ Ցակորայ խնայեայ ի մեղուցեալ* Սարգիս *գրիչ, ի ծնողսն իւր և յեղբարսն, և յամենայն երախտաւորսն նմայ։ Եւ դու՝ անճառ վկայ Քրիստոսի տէր սուրբ Ցակոբ, միշտ և հանապազ բարեխաւսեայ վասն* Սարգիս *գրչի, և ի փառս տէրութեանդ քում կատարեա զխնդիրս մեր։**

## 838.

### ՇԱՐԱԿՆՈՑ

*Երևան՝ 2002*

Գրիչ՝ Սարգիս

ա

155բ *… Յիշեա զմեռեալս հոգւով զՍարգիս երէց գծող։*

---

* *Նման հիշատակագրություններ պահպանվել են նաև ձեռագրի 50ա, 60բ, 349բ և այլ էջերում։*

Բ

223բ Քրիստոս աստուած... երկակի գալստեամբ քո նորոգեա լուսափայլ գնողի ստացողի սորին տէր Յոհաննիսի, ընդ սուրբս քո, ամէն։

Ստացող՝ Յոհաննես-Լևոն

Գ

39բ Աղաչեմք յայոմ վայրի զաստուածասէր և զրաբեսէր կարդացողսդ և զաստուածային աւրհնութեանց արժանի արարէք լսողսդ, սրտի մտաւք և ախորժելի կամաւք յիշելո արժանի արարէք զստացողս սուրբ գրոցս՝ զտրուպս և զեղկելիս զտէր Յոհաննես երկանունս Լևոն, որ միայն անունս է և ոչ գործս, զի մեծաւ յուսով և բղձմամբ և փափագանաւք և ջանիւ եստ գրել զսա. և յոյժ աշխատեցաւ գրիչ սորա ի բաղում աւրինակաց գրելո, և փարթամացուցաք զսա յոյժ, որպէս և տեսանէք իսկ, ոչ յաղագս մարմնաւոր ինչ շահավաճառութեան, այլ հոգևոր և աստուածային, յիշատակ բարեաց և պատճառ յիշելո և աստուած-ողորմեա ասելո, և որք զաստուած-ողորմին սրտի մտաւք ասեն և զամէնն, և նոցա ողորմեսցի Քրիստոս աստուած, աւրհնեալն յաւիտեանս։

## 839.

## ՏՕՆԱԳԱՏՃԱՌ

Երևան 2042

Գրիչ՝ Սիմաւոն

Ա

38բ Զմեղաւ լցե[ա]լ գրիչս՝ զՍիմաւոն, և ծնողսն իմ, և զեղբարսն իմ յիշել յաղաւթս ձեր, ով սրբասէր ընթերցողք։

Ստացող՝ Աստուածատուր

Բ

259բ Զստացող սորա զԱստուածատուր արեղա յիշեցէք։

## 840.

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5000*

Գրիչ՝ Ստեփ[անոս]

Ստացողի սուրբ աւետ[արանիս]՝ տէր Յովհաննիսի[ի] և ծնողաց իւրոց՝ ողորմեսցի Քրիստոս աստուած, ա[մէն]։**

332ա Եւս և ծնաւղսն իւր զՆղիսեէ և զՍևաստիայ, նաև զեղբարսն իւր՝

* Ձեռագրի մեջ կան կենսախինդ ու գրավիչ բազմաթիվ լուսանցազարդեր, նվագածուներ՝ 32բ, 92բ, 127ա էջերում, հետաքրքիր հանդերձանքով մարդիկ՝ 58ա, 61բ էջերում, ջրավաճառ 132ա էջում. ուշագրավ են նաև 102ա, 207ա, 128ա էջերի նկարները։

** Այս պարբերությունը գրված է բնագրի և 332ա էջից սկսվող հիշատակարանի գրերից մանր գրերով, և չի կապվում հաջորդ պարբերության հետ իր շարահարությամբ։ Պետք է ենթադրել, որ 331—332 թերթերի արանքից ընկել է առնվազն մի թերթ, ուստի՝ բուն հիշատակարանը սկզբից թերի է։

զՎարդ, զՍահակ և զՅակովբ, այլ և ողջոյն իւր զՉահեր և Շահեր, և զամենայն զարմս իւր, հանդերձ ամենայն սիրելեաւք։

333ա ... Ընդ նմին և ես՝ եղկելի և չանորդի Ստեփ[աննոս], որ սակաւ ինչ աւժանդակեցի սմայ, առ սաս անկանիմ բարեսէր ընթերցաւղացդ արժանի առնել միոյ աստուած-ողորմ[է]ի զմերն ննջեցելոյն...։

## 841.

## ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

*Երևան 1079 (տես նաև 1641 թ.)*

*Ստացող՝* Ստեփաննոս եպիսկոպոս

ա

37ա *Քրիստոս աստուած... կոչեա զծառայս քո* զՍտեփ[աննո]ս *եպիսկոպոս՝ ստացաւղ տառիս, զհայրն իմ զ*Կիրակոս*, և զմայրն իմ զ*Նազխաթունն*...։ Ընդ նոսին և զեղբարսն իմ՝ զկենդանիքս և զհանգուցեալսն ի Քրիստոս, նաև զերախտաւորսն, և զ*Յոհ[ան] *բարունի, և զ*Կիր[ակոս] *վարդապետ՝ իւրեանցայովքն, ամէն։*

բ

77ա *Ո՜վ սուրբ մկրտիչ Քրիստոսի... աղաչեա զմկրտեալն առ ի քէն... զի զասակից քեզ և ամենայն սրբոց արասցէ զստացօղ տառիս՝ զ*Ստեփաննոս *եպիսկոպոս, և զ*Ներսես *վարդապետ, զ*Յովաննես, զՊօղոս, զՎարդան, զԿարապետ, զՍտեփաննոս, *և զ*Մկրտիչ, զԽութեանէն, զՊետրոս *սարկաւագ, զ*Յովսէփ *և զայլ միաբանքս, որ կան յայս տեղիս, ընդ նմին և զծնօղս իմ։*

գ

94 *... Զստացող սորա զ*Ստեփաննոս *եպիսկոպոս և զծնօղսն իմ աղօթիւք մասին, աղաչեմ, յիշել առ տէր։ Նաև զուսուցիչն մեր և զերախտաւորն՝ զ*Ներսես *վարդապետն և զծնօղսն իւր։ Եւս առաւել զքահանայքս մեր՝ զ*Յովանէս, զՊօղոս, զՎարդան, զԿարապետ, զՍտեփաննոս, զՄկրտիչ, *և զսարկաւագունքս մեր՝ զ*Պետրոս, զՅովսէփ, զԴաւիթ, *և զմիւս* Դաւիթն, *նաև զգործաւոր սուրբ ուխտիս՝ զտնտես, զմաճակալ, զհովիւ...։*

## 842.

## ՈՍԿԵՓՈՐԻԿ

*Վենետ. 266, Սարգ. Ցուց. Բ. էջ 268*

*Գրիչ՝* Վասիլ Ատանցի

ա

188ա *Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ և կամ աւրինակէք, յիշեսջիք զ*Վասիլ *սարկաւագ* Ատանցի*՝ զախմար և զառաջին գրիչ, և Քրիստոս զձեզ յիշեսցէ։*

*Հետ. ստացող՝* Ստեփաննոս

բ

83 *Աստուած ողորմի սիր* Ամիրին, *հաւրն հոգւոյն՝* Գրիգորին, *մաւրն՝*

Ուլուպիճային, որ երետ զգիրքս յիշատակ, աստուած լուսաւորէ զիւր-եանց հոգին։ Տուին ինձ՝ Ստեփանոս վարդապետիս, զայս գիրքս յի-շատակ, աստուած զիւրեանք ա[ւ]րհնէ։

843.

ՑԱՂԱԳՍ ԿԱՐԴԻՆԱՐԱԿԱՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ

Երևան 3639

Գրիչ՝ Վարդան

301բ Ընդ Նմին և զիս՝ զտառապեալս՝ զՎարդան սարկաւագս, և զիմ ծնօղն՝ զԹամամն, որ բազում աշխատեցաւ վասն մարմ[ն]ո իմոյ, արժանաւորեսցէ աստուած հայր երանութեանն յաւիտենական և ծո-ցածին իւր Քրիստոս ժառանգորդ արասցէ արքա[յ]ութեանն իւրոյ և երանելեացն...։

844.

ՃԱՌԸՆՏԻՐ

Վենետ. 217 Սարգս. ցուց. ը. էջ 269

Ստացող՝ Վարդան

192ա Զստացող լուսագարդ գրոցս՝ զՎարդան երէցն, և զհայրն իւր զՄուրատն, և զմայրն Խոնդխաթունն, և զեղբայրն իւր Ամիր-Եզդինն, աղաչեմ յիշել ի տէր, և աստուած զձեզ յիշէ, ամէն։

845.

ԱՒԵՏԱՐԱՆ

Վաղպ. 112, Լալ. Ցուց. էջ 242 (Վարագ)

... Քահանայապետ յաւիտենից՝ տէր Քրիստոս աստուած... գթայ ի հոգի Սարգիս քահանային, և Սաղաթելին, և Մխիթարայ, և Արքայի, Ուրրաթկան, Թայիկանն, Արապ-խաթունին, Հիրիճին, Զատկանն, Գոհար տիկնա, Ուրրաթկանն. ամէն։ Եւս առաւել, արա արժանի անճառելի ղրախտիդ և երկնից արքայութեանդ, զծառայս քո՝ զԽէրն և զԳուհա-րըն, զՄինիկն, և զսուրբ քահանայն՝ զՎահրամն, զԱնթառամն, և զԲոյ-բիկն, ամէն։

